# ԺԷ ԴԱՐԻ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ
# ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ



ՄԱՍՆ

Ա

ИНСТИТУТ ИСТОРИИ АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
МАТЕРИАЛЫ ПО ИСТОРИИ АРМЯНСКОГО НАРОДА
КНИГА ШЕСТАЯ

# ПАМЯТНЫЕ ЗАПИСИ АРМЯНСКИХ РУКОПИСЕЙ XV ВЕКА

## ЧАСТЬ ПЕРВАЯ
## (1401—1450 гг.)

*Составил*
*Л. С. ХАЧИКЯН*

ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1955

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ՆՅՈՒԹԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ
ԳԻՐՔ ՎԵՑԵՐՈՐԴ

ԺԵ ԴԱՐԻ

# ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ
# ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ

ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ
(1401—1450 թթ.)

*կազմեց*
*Լ. Ս. ԽԱՉԻԿՅԱՆ*



ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1955

ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարանները պարունակում են բազմահարուստ նյութեր Հայաստանի և հարևան երկրների քաղաքական, սոցիալ-տնտեսական ու կուլտուրական կյանքի պատմության տարբեր կողմերի և երևույթների ուսումնասիրման համար:

Հիշատակարանները, որպես պատմական սկզբնաղբյուր, ունեն որոշ առավելություններ այլ կարգի սկզբնաղբյուրների, հատկապես անհատ հեղինակների կողմից գրված ժամանակագրությունների ու պատմությունների նկատմամբ:

Հիշատակագիրները, լինելով իրենց կողմից գրանցվող դեպքերին ու անցուդարձերին ժամանակակից, իսկ հաճախ նաև ականատես ու ականջալուր վկաները, բնականաբար, շատ ավելի ճշմարիտ տվյալներ են հաղորդել դրանց մասին, քան դեպքերից տասնամյակներ հետո ապրած ու ստեղծագործած պատմիչները: Նրանց տեսադաշտից չեն վրիպել ժամանակակից կյանքի այնպիսի ուշագրավ երևույթներ, ինչպիսիք են, օրինակ, հաճախակի կրկնվող տարանցիկ հիվանդությունները՝ մահտարաժամները, սովը և թանկությունը, մորեխն ու թրթուրը և բազմաթիվ այլ աղետներ, որոնք ժամանակի ընթացքում մոռացվելով, տեղ չեն գտել հետագա շրջանների պատմագրական երկերում: Քաղաքական անցուդարձերի, սոցիալական և կուլտուրական կյանքի երևույթների մասին գրելիս ևս հիշատակագիրները հաճախ կենդանի ու ճշգրիտ նկարագրություններով բովանդակալից լրացումներ են կատարում այլ աղբյուրներից հայտնի տվյալների վրա:

Հիշատակագիրների մեծագույն մասը աշխատավոր ժողովրդի ծոցից դուրս եկած գրչի չարքաշ մշակներ լինելով, ժողովրդի հետ մեկտեղ տառապել են օտար նվաճողների ավերիչ արշավանքների ընթացքում, անձամբ կրել են անասելի այն զրկանքները, որ երկար դարերի ընթացքում բաժին էր ընկել հայ աշխատավոր գյուղացիությանը: Բնականաբար, նրանցից շատերը հասարակական այս կամ այն երևույթի, քաղաքական կյանքում տեղի ունեցած այս կամ այն իրադարձության գնահատականը տվել են՝ ելնելով աշխատավոր ժողովրդի շահերից: Անտարակույս, այս հանգամանքը նույնպես բարձրացնում է հիշատակարանների արժեքը որպես պատմական սկզբնաղբյուր:

Նկատի ունենալով հիշատակարանների վերոհիշյալ դրական առանձնահատկությունները, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Պատմության ինստիտուտը լույս է ընծայում հիշատակարանների երկրորդ գիրքը՝

«ԺԵ. դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» ժողովածուի Ա. մասը, որը հավաքել ու հրատարակության է պատրաստել ինստիտուտի ավագ գիտական աշխատող Լ. Ս. Խաչիկյանը:

Մոտ ապագայում հրատարակության կհանձնվի նաև սույն ժողովածուի Բ. մասը՝ ԺԵ. դարի երկրորդ հիսնամյակի՝ 1451—1500 թթ. հիշատակարանների նյութերով:

ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ԱՌԱՋԱԲԱՆ

ԺԵ դարի առաջին հիսնամյակի ընթացքում պատմական Հայաստանի հողի վրա հաջորդաբար տեղի ունեցան հայ աշխատավոր ժողովրդի համար աղետաբեր հետևանքներ ունեցող մի շարք պատերազմներ՝ Թամուրյանների ու Կարա-Կոյունլու և Ակ-Կոյունլու քոչվորական ցեղերի միջև։ Այդ գոտեմարտերի ու բախումների պատմությունը Մ. Չամչյանից հետո դեռևս ոչ ոք հանգամանորեն չի շարադրել։

Նկատի ունենալով, որ հրատարակվող հիշատակարանները լայնորեն օգտագործվելու են հայ ժողովրդի միջնադարյան կուլտուրայի ու պատմության, գրականության ու կենցաղի բազմապիսի հարցերի և պրոբլեմների ուսումնասիրությամբ զբաղվող մասնագետների կողմից, և համոզված լինելով, որ նշված ժամանակաշրջանի քաղաքական խառն ու բարդ պատմության գիտական շարադրանքի բացակայությունը մեծ դժվարություններ է հարուցելու նրանց առջև, անհրաժեշտ գտանք այս Առաջաբանով փոքր ինչ դյուրացնել նրանց աշխատանքը՝ հիշատակարանների նյութերի օգտագործմամբ համառոտակի շարադրելով ԺԵ դարի առաջին հիսնամյակի քաղաքական անցուդարձերի պատմությունը։

## 1

Հայ ժողովուրդը թևակոխեց ԺԵ դարը, երբ Լանկ-Թամուրի հրոսակախմբերը, երրորդ անգամ լինելով, ասպատակում էին Անդրկովկասի ու Փոքր Ասիայի երկրներն ու քաղաքները։

1399—1400 թվականներին Լանկ-Թամուրը իր բանակներով ներս խուժեց Վրաստան և, ինչպես հաղորդում է Սարգիս գրիչը Տաթևում ընդօրինակած իր ձեռագրի հիշատակարանում՝ «զամենեսեան առհասարակ ի սուր և ի գերութիւն վարեաց, թուով ՃՌ. (100000)—ու գրեցաւ զկորուստն, և զեկեղեցիս քարահատակ կործանեաց» (էջ 5)*։

Ժողովուրդը կոծում ու սգում էր իր հարազատների կորուստն ու գերությունը, իսկ Թամուրի զորքերը շարունակում էին իրենց ասպատակությունները, այս անգամ արդեն Հայաստանի արևմտյան նահանգներում։ Կարճ ժամանակում նրանք գրավեցին Սեբաստիան ու Մելիտենեն, այնուհետև մտան Ասորիք՝ ավերեցին Հալեպը և Դամասկոսը, իսկ քիչ անց՝ 1401 թվականի կեսերին՝ Մերդինն ու Բաղդադը Միջագետքում։

Այս արշավանքի և Թամուրի գործած աննկարագրելի հրեշագործությունների մասին գրել են ժամանակակից շատ հիշատակագիրներ։ Լսենք Երևանի

* Այստեղ և ամենուրեք ցույց են արվում սույն ժողովածուի էջահամարները։

*№ 5707 ձեռագրի ստացողներից մեկին, որը 1401 թվականին շարադրած իր հիշատակարանում խոսում է նաև նախորդ տարվա աղետալի իրադարձությունների մասին։*

*«Ի սոյն ամի,— գրում է նա,— Թամուր-Բէկն էառ զՍեաստ քաղաք և քանդեաց և աւերեաց, և սրախողող արար զամենեսեան, և զբազումս գերեաց՝ ի կանանց և ի տղայոց, և ԳՌ. (3000) մարդ զերկիր բացեալ և կենդանոյն թաղեալ՝* զայնոսիկ, որ նետ արձակեցին ի նա։ Եւ զայս արարեալ բազմութեամբ զօրօք գնացեալ ի Շամբն՝ ի վերայ Հալպայ և Դամասկոսի, և մատնեաց աստուած ի ձեռս նորա. էառ և անչափ կոտորումն արար ի Հալպայ քաղաք, որ Գ. (3) գլխէ մնիրա շինեաց ի տաճկանց։ Եւ էանց ի վերայ Դամասկոսի, և էառ՝ Լ. (30) օր թալան արար՝ զոսկի, զարծաթ և մարգարիտ, և ԲԺՌ. (12000) ուղտ իւրն հասայ եբարձ։ Եւ յետ այնր հրաման եհան և հրով այրեցին զքաղաքն առհասարակ...։*

*Եւ եկեալ մեծաւ հաղթութեամբ ի վերայ Մերդնայ և տապալեաց զքաղաքն ի հիմանց, և արար որպէս զհող արտավարաց, բայց զբէրթն ոչ կարաց առնուլ, այլ յերկրէն շատ գերի եբեր ի քրիստոնէից» (էջ 3—4)։*

*Այս արշավանքների ընթացքում հավասարաչափ գերվում ու կոտորվում էին և՛ հայ, և՛ վրացի, և՛ ադրբեջանցի ու թուրք աշխատավորները։ Երկրին հասցրած վերքերն այնքան ծանր էին, որ նշանավոր մատենագիր և գրիչ Գրիգոր Խլաթեցին, դեպքերից քսան տարի հետո գրած իր չափածո հիշատակարանում, սարսափով է վերհիշում այդ դեպքերը։ Իր հիշատակարանի վերոհիշյալ անցուդարձերի նկարագրությանը նվիրված բաժինը Խլաթեցին ավարտում է այսպես.*

*«Ո՜հ, զայն զաղայն, զոր արարին*
*Արանց, կանանց և ընդ մանկտին,*
*Ջարսն թաղեալ մինչ կենդանին,*
*Հողով, ջրովըն հեղձուցին,*
*Իսկ ըզմատաղ տըղայ մանկտին՝*
*Ջայն կալտուխս ձիոցն արկին...» և այլն (էջ 279—280)։*

*1401 թվականի վերջերին Լանկ-Թամուրը, ձմեռելու նպատակով, իր զորքերը հետ քաշեց Ղարաբաղի դաշտային մասը և նախապատրաստվեց գարնանը նոր արշավանք սկսելու Փոքր Ասիայում։*

*1402 թ., Անկարայի մոտ, պարտության մատնելով Սուլթան Բայազիտի (Իլդրումի) զորքերը և գերելով նրան, Լանկ-Թամուրը վերադարձավ Անդրկովկաս։ Այս մասին մի հիշատակարանում կարդում ենք.*

*«Եւ ի միուսում տարին (1401) գնաց ի Հոռմանց տունն, և էառ զԿամախ և այլ բազում տեղիս։ Եւ ի միւս այլ տարին (1402) դարձաւ ի Հոռոմս և զՀլտրումն խանն կալաւ, որ ունէր անթիւ հեծեալս և անհամար զաւրս. ցրուեաց և գերեաց զամենեսեան» (էջ 52)։*

---

** Գրիգոր Խլաթեցին հայտնում է, որ չորս օր կենդանի թաղվածների ձայնը լսվում էր գետնի տակից. «Ո՜, յահագին պատուհասին, և անծանաւթ, որ ոչ պատմին, զի մինչ աւուրքն չորրորդին գոռունն գայր անդընդայընս»։*

*Մի այլ հիշատակագիր (Հովհաննես Խիզանցի գրիչը), նույն այս արշավանքի մասին գրում է հետևյալը.*

*«Եւ յայսմ ամի (1402) եմուտ (Թամուր-Լանկ) ի տունն Հոռոմոց, և նուաճեաց զամենեսեան ընդ ձեռամբ իւրով, և զամիրապետն աշխարհին՝ Իլդրում անուն ըմբռնեաց և կապեաց՝ հանդերձ որդւովն» (էջ 22)։*

*Մեկ ուրիշն ավելացնում է, որ գերվածները «յանկան յա[յ]լ աշխար[հ], և մեռան» (էջ 33)։*

*1403 թվականին Լանկ-Թամուրը նորից արշավեց Արևմտյան Վրաստան և Աբխազիա։*

*Անցյալ և այս արշավանքների ընթացքում Թամուրի գործած անգթություններն նկատի ունի Թումա Թավրիզեցի գրիչը, երբ 1403 թ. Շիրվանի Մադրասա գյուղում շարադրած իր հիշատակարանում փորձում է «ստուգաբանել» Թամուր անունը, կապելով այն հայերեն «դառ» և «մուր» բառերի հետ, որովհետև Թամուրը «ուր և հասանէ մթնատեսակ և մրրատեսակ առնէ, զոմն կողոպտելով, զոմն չարչարելով, զոմն սպանելով, զոմն գերելով, զհայր ի յորդւոյ բաժանելով և զորդի ի հօրէ և այլն» (էջ 31)։*

*1403/4 թթ. ձմեռը Թամուրն իր զորքերով (Առաքել Սյունեցու հայտնած տվյալներով նա «զօրք ունէր ութհարիւր հազար», տե՛ս էջ 35) անցկացրեց Ղարաբաղում «և ապա չուեալ գնաց յերկիրն իւր ի Սամարղանտ, և անդ սատակեցաւ» (էջ 52)։*

*Լանկ-Թամուրը մեռավ 1405 թ. փետրվարին, 70 տարեկան հասակում, դեպի Չինաստան ձեռնարկած մեծ արշավանքի ճանապարհին։*

*Նրա մահվան լուրը ցնծությամբ ընդունվեց ժամանակակիցների կողմից.*

*«Յայսմ ամի,— գրում է հիշատակագիրներից մեկը,— մեռաւ Թամուր ղան, որ Ի. մի (21) ամ իբրև զբաժակ բարկութեան առեալ էր զնա աստուած ի ձեռն, և ում կամէր արբուցանէր, զի յարևելից մինչև ի մուտս արևու զամենեսին հասարակ գերեաց՝ զհաւատացեալսն և զանհաւատս, զամենեսեան սրախողխող արար...» (էջ 53)։*

## *2*

*Թամուրի մահվանից հետո, նրա հսկայածավալ պետությունը, որ կյանքի էր կոչվել հրի ու սրի միջոցով, և իր կազմի մեջ ուներ տարացեղ ու տարալեզու, միմյանց հետ տնտեսական ու կուլտուրական կապերով չշաղկապված երկրներ ու ժողովուրդներ՝ սկսեց արագությամբ քայքայվել։*

*Թամուրի ժառանգորդների միջև ծայր առան գահակալական ավերիչ կռիվներ։ Միրանշահը, որը հոր կողմից զրկվել էր Թամուրյան պետության արևմտյան երկրների («Հուլաուի թախթի») վրա իշխելու իրավունքից, սկսում է պատերազմ իր որդու՝ Միրզա-Օմարի դեմ։ Թամուրի մյուս որդին՝ Շահրուխը, որը պայքար էր մղում պետության արևելյան շրջաններում Միրանշահի մյուս որդի Խալիլի դեմ, օգնում է Միրանշահին՝ հոր և որդու անհաշտ պայքարում։*

*1405 թվականին Միրզա-Օմարի կողմից բանտ նետված Աբու-Բաքր եղբայրը փախչում, միանում է հորը՝ Միրանշահին, և նրանք երկուսով արշավում են Ադրբեջան՝ Օմարի դեմ։ Զորքը լքում է Օմարին և Աբու-Բաքրը Սուլթանիայում իր հորը՝ Միրանշահին հայտարարում է փադիշահ։*

1406 թվականի գարնանը Միրզա-Օմարը թարմ ուժեր հավաքելով Թ-ամուրյան պետության արևելյան շրջաններից, կրկին արշավում է իր հոր և եղբոր դեմ։

Օգտվելով միջղինաստիական պայքարից, կարճ ժամանակով Թավրիզը գրավվում է Շիրվանշահ Իբրահիմի կողմից *։

1406 թվականին գահակալական պայքարի հրապարակ են իջնում նոր ուժեր՝ Ջելաիրյան սուլթան Ահմադը և Կարա-Կոյունլու քոչվորական ցեղերի առաջնորդ Կարա-Յուսուֆը։ Սրանք երկուսն էլ, որպես վտարանդի, պահվում էին Մամլուկյան սուլթան Ֆարաջի մոտ։ Լանկ-Թ-ամուրի մահվանից անմիջապես հետո նրանք ազատ են արձակվում, և դաշնակցելով միմյանց՝ ուժեր են հավաքում Թ-ամուրյանների դեմ ելնելու նպատակով։

Կարա-Յուսուֆը կարճ ժամանակում իր շուրջն է համախմբում Կարա-Կոյունլու քոչվորական ցեղերի և Հայաստանի ու Հարավային Ադրբեջանի քուրդ ամիրների զինական ուժերը։ Այսպես, նրան հպատակություն են հայտնում և ցույց են տալիս զինական օգնություն Բաղեշի ամիր Շամս-ադ-դինը, Ոստանի ամիր Եզդինը, նրա որդի Մելիքը և ուրիշները։

1406 թվականի աշնանը Կարա-Յուսուֆը պարտության է մատնում Միրանշահի որդի Աբու-Բաքրին և գրավում Թավրիզը։

Քաղաքական այս իրադարձությունները լայն արձագանք են գտել մեր հիշատակարաններում։

1407 թվականին Տաթևի վանքում ընդօրինակած ավետարանի հիշատակարանում Մատթեոս վարդապետը հայտնում է, որ աշխատել է՝

«Ի դառն և ի նեղ ժամանակիս, որում ազգն նետողաց անչինչ կորաւ, և փոխանորդ նորին իշխեց աթոռոյս Ատրպատականի թորգոմածին Ղարա-Ուսուֆ անուամբ։ Որ և մարտեաւ երկու անգամ և հաղթահարեաց զոմն ի թոռանց չար գազանին Թ-ամուրին՝ չարաբարու, ահեղատեսիլ և չարասիրտ Աբ[ու-Բ]աքր»։

Գրիչն ուրախությամբ է արձանագրում կատարված փաստը։ Նա հույս ունի, որ Կարա-Յուսուֆը վերջ է տալու անիրավ հարկապահանջությանը և հաստատելու է խաղաղություն։

«Եւ այն ևս,— շարունակում է նա,— ի վերին խնամոցն ամենակարողին աստուծոյ [եղև], որ ազատեաց աշխարհս ի յայն անիրաւ խնդրողացն, որ և զամենայն ազդ և զամենայն լեզու ի ներքոյ նոցա հնազանդ և դերի կային...» (էջ 76)։

Թ-ամուրյանների պարտությունից ոգեշնչված և իրենց դառն վիճակի բարելավումը տենչացող հպատակ ժողովուրդները, սակայն, շուտով պիտի հուսախաբ լինեին։ Կարա-Կոյունլուների դինաստիան հիմնականում շարունակեց կողոպուտի, ջարդերի ու ահաբեկման նույն քաղաքականությունը։

1407 թվականին Կարա-Յուսուֆը արշավեց Վրաստան, գրավեց մի շարք ամուր բերդեր, պարտության մատնեց վրացական զորքերին, ճակատամարտում ընկավ Գիորգի է. թագավորը (1393—1407)։

---

* Գահակալական այս կռիվների մասին տես И. П. Петрушевский, „Государства Азербайджана в XV веке" աշխատությունը, հրատարակված „Сборник статей по истории Азербайджана", выпуск I, Баку, 1949 г. ժողովածուի մեջ (էջ 153—213)։

Ժամանակակից Հովհաննես Խիզանցի գրիչը հայտնում է, որ արշավանքի ընթացքում սպանվեց 5 հազար և գերեվարվեց 15 հազար մարդ։ Լսենք հիշատակագրին.

«Ահա եղև խաւար երկրիս,
Ղարա-Յուսուֆի չար համբաւիս,
Որ է պարոն Թուրքըստանիս,
Խրոխտ և անյաղթ յայս աշխարհիս։
'Ի իւծեալ բեկէ զմէջս ամենից՝
Ի Մէրդնայ սկսեալ բերդիս,
Մինչ ի քաղաք Թաւրէժ տեղիս
Ղեղի արբոյց դառն վշտիս.
Գնալով ի տուն Վըրաց ազգիս,
Լըցաւ թունօք նըման իժից,
Մահացոյց զա[զգս] քրիստոնէից։
Ուստի առեալ բազում գերիս՝
Հնգետասան հազար ի թիւս,
Եւ հինգ հազար սպանեալ յանգիս,
Չարչարանօք ազգի ազգիս։
. . . . . . . . . .
Ամուր բերդեր արձանաւոր,
Եւ քրիստոնեայք անդ փառաւոր,
Ի միասին բոցով յորդոր,
Այրեալ եղեն որպէս փայտ չոր...» (էջ 68—70)։

Հիշատակագիրն այնուհետև հայտնում է, որ Կարա-Յուսուֆը՝ այդ նորնեռը՝ հրաման է արձակել անխնայաբար կոտորել քրիստոնյաներին։ Զափածո հիշատակարանի վնասված շարունակության մեջ խոսվում է «Խիզանա երկրի» վրա, ըստ երևույթին նույն Կարա-Յուսուֆի զորքերի կատարած արշավանքի մասին։ Նրանք՝

«Յարիւն չիմնայէն /// ոյ զինչ կայ,
Զասեն թէ կին և [թէ տ]ղայ,
Զամէն խոցեն ի յանխը[նայ],
Որ ցաւ վիրին չառողջանայ»։

Կարա-Յուսուֆի և Թամուրյանների վերջին բախումը տեղի ունեցավ 1408 թ. ապրիլի 21-ին, Հարավային Ատրբեջանում, Սարդրուդի մոտ։ Միրանշահը, ստանալով իր եղբայր Շահրուխից 20 հազարանոց օգնական ուժ՝ հույս ուներ պարտության մատնել իր ախոյանին։ Սակայն ճակատամարտում Թամուրյանները կատարյալ պարտություն կրեցին, Միրանշահը սպանվեց, Թավրիզը գրավվեց, Կարա-Յուսուֆը տիրեց ամբողջ Հարավային Ադրբեջանին՝ մինչև Արդավիլ և Սուլթանիե։ «Թւին ՊԾԸ. (1408). յայս ամի Ղարա-Յուսուֆ էառ զԱտրպայճան Թաւրէզ» հակիրճ արձանագրում է այդ դեպքը ժամանակակից գրիչ Հակոբ Ասպիսընկցին։

Վերջ տալով իր հիմնական հակառակորդներին, 1408—1410 թվականներին, Կարա-Յուսուֆը նվաճողական կռիվներ սկսեց Արևմուտքում։ 1409 թ. նա Արտուխյան Սալըխից գրավեց Մերդինը, 1410-ին հարձակվեց Ակ-Կոյունլու—

ների վրա, ջարդեց նրանց Մշո դաշտում, այնուհետև պաշարեց Դիարբեքիրը (Ամիդ) և Արզնին։

Օգտվելով այն հանգամանքից, որ Կարա-Յուսուֆը զբաղված է Ակ-Կոյունլու Կարա-Յուլուք Օսմանի (մեր հիշատակարաններում՝ Օթման) դեմ պատերազմներ մղելով, Ջելաիրյան Ահմեդը մտադրվում է դուրս գալ իր հզոր «դաշնակցի» դեմ և Թամուրյանների ջախջախման պտուղները վայելել միայնակ։

Այս նպատակով նա դաշնակցում է Շիրվանշահ Իբրահիմի հետ։ Ամենայն հավանականությամբ նա իր կողմն էր գրավել նաև հայ ֆեոդալական տների որոշ ներկայացուցիչների *։

Տեղեկանալով Ահմեդի դիտավորությունների մասին, Կարա-Յուսուֆը շուտափույթ հաշտություն է կնքում Կարա-Յուլուք Օսմանի հետ և արագ արշավով վերադառնում է Ադրբեջան։ 1410 թ. օգոստոսի 30-ին տեղի ունեցած ճակատամարտում ապստամբները կրում են լիակատար պարտություն և Սուլթան Ահմեդը խեղդամահ է արվում։ 1411 թվականին Կարա-Յուսուֆը Ջելաիրյաններից գրավում է նաև Բաղդադը։ Եվ այսպիսով, Մերձավոր Արևելքի երկրների՝ Ադրբեջանի, Հայաստանի, Քուրդիստանի և Իրաքի վրա հաստատվում է Կարա-Կոյունլուների տիրապետությունը (1410—1468)։

**3**

Անդրկովկասի եղբայրական ժողովուրդները՝ ադրբեջանցիները, վրացիներն ու հայերը, ինչպես առիթ ունեցանք նշելու, Լանկ-Թամուրի և նրա հաջորդների անկումով հույս ունեին, որ երկրում կհաստատվի խաղաղություն, հարկային լուծը կթեթևանա և կստեղծվեն որոշ հնարավորություններ անդորր կյանքի ու աշխատանքի համար։ Սակայն Կարա-Կոյունլուների տիրապետության հենց առաջին տարիները ցույց տվեցին հակառակը։

1409 թվականին արդեն հայ հիշատակագիրները տվյալներ են հաղորդում աշխատավոր ժողովրդի վիճակի հետագա ծանրացման մասին։ Մոկքի գյուղերից մեկում ընդօրինակած ավետարանի հիշատակարանում Հովհաննես գրիչը հայտնում է, որ «պահանջումն անաւրինաց խստանայ ի վերայ քրիստոնէից, և միշտ և հանապազ ի հոսման և ի ծորման է աշխարհ ամենայն, և ոչ երբէք հանդիպի դադարման» (էջ 95)։

Եվ ահա Հյուսիսային Ադրբեջանի տիրակալ, հեռատես ու քաջարի քաղաքական գործիչ Շիրվանշահ Իբրահիմի գլխավորությամբ Անդրկովկասի ժողովուրդները, դաշնակցելով միմյանց, ապստամբություն են բարձրացնում Կարա-Յուսուֆի դեմ։

Այս ուշագրավ դեպքի մասին ժամանակակից աղբյուրները չափազանց կցկտուր տվյալներ են հաղորդում։ Օտար աղբյուրների** և հիշատակարանների տվյալների համեմատական ուսումնասիրությամբ հնարավոր է լինում պարզել հետևյալը.

Շիրվանշահ Իբրահիմը դաշնակցում է վրաց թագավոր Կոստանդին Բ-ի (1407—1411) հետ։ Վերջինս երկու հազար ընտիր հեծյալների գլխավորու-

---

* Թովմա Մեծոփեցին հաղորդում է, որ Օրբելյան Սմբատ իշխանը, խարվելով յուրայինների խորհուրդներից, գնում է Թավրիզ՝ Սուլթան Ահմեդի մոտ և նրանից մեծարվելով՝ պարգև է ստանում Անգեղակոթ գյուղը (Թ. Մեծոփեցի, էջ 72—73)։

** Տես И. П. Петрушевский, Նշվ. աշխատ., էջ 159—161։

*թյամբ միանում է Իբրահիմին։ Ամենայն հավանականությամբ վրաց զորախմբում կային նաև հայկական զինական միավորումներ, ամենից առաջ Սյունիքից Վրաստան գաղթած Սմբատ Օրբելյանի ուժերից**։*

*Աշխատավոր լայն զանգվածների մասնակցությունն ու ակտիվ համակրությունն ապստամբության նկատմամբ պարզ երևում է այն դաժան հաշվեհարդարից, որ ապստամբությունից հետո կատարեցին Կարա-Կոյունլուները Հյուսիսային Ադրբեջանում և Հայաստանում։*

*Թշնամի ուժերի բախումը տեղի ունեցավ 1411 թվականին Կուր գետի ափին, Չալաղանի դաշտում (մեր հիշատակագիրները ճակատամարտի վայրը կոչում են Վատնիարյան դաշտ)***։*

*Կարա-Յուսուֆը կարողացել էր հավաքագրել Հարավային Ադրբեջանի քոչվոր ավագանիների և ենթակա այլ երկրների ու շրջանների զորքերը, որոնք թվական մեծ գերակշռություն ունեին ապստամբների նկատմամբ։ Ճակատամարտը վերջացավ ապստամբների պարտությամբ։ Շիրվանշահ Իբրահիմը, իր որդիների և մերձավորների հետ միասին, վրաց Կոստանդին Բ. թագավորը, վրացական բանակի բազմաթիվ հրամանատարների հետ մեկտեղ գերի ընկան։ Կարա-Յուսուֆն անձամբ սպանեց Կոստանդին թագավորին։ Գազանաբար կոտորվեցին նաև վրաց բանակի երեք հարյուր զորահրամանատարներ****։ *Կարա-Յուսուֆի զորքերը ավերեցին ու ամայացրին Ադրբեջանի և Հայաստանի շատ շրջաններ։*

*Այս և նախորդ տարիների անցուդարձերի մասին ուշագրավ են Մատթեոս Մոնոզոնի 1417 թվականին շարադրած հիշատակարանի տվյալները, որ բերում ենք ստորև.*

*«Զի դառնացաւ ժամանակս,— գրում է նա,— և թագաւորեաց ոմն թուրքման անումն Ուսուֆ...։ Բռնացեալ Ուսուֆն, պատերազմեալ ընդ որդիսն նորա (Թամուրի)՝ երիցս անգամ, և սպան զնոսա, և մնացեալքն փախըստական գնացին յաշխարհն իւրեանց։ Իսկ զընական խանն Ահմատ կոչեցեալ, որ եկն կա-*

---

* Այս մասին ուղղակի վկայություններ չկան, բայց կան կողմնակի ակնարկներ։ Մինչև ապստամբությունը Կարա-Յուսուֆը բռնագրավել էր Սմբատի ռեզիդենցիան՝ Որոտան բերդը։ Սմբատն իր ընտանիքի ու ազատների հետ ապաստանել էր Վրաստանում, որտեղ և, վրաց արքունիքի կողմից, ստացել էր կալվածքներ։ 1412 թ. Վրաստանի Սաֆլիսցիխե (Գորիի մոտ, Ուֆլիսցիխե) գյուղաքաղաքում շարադրված հիշատակարանի մեջ Սմբատը կոչվում է այդ վայրի իշխան. «Իշխանութեան տեղոյս պարոն Սմբատի և որդւոյ նորին պարոն Բէշքենի, որ ի յաստմանէ չարին վտարեցան ի հայրենեաց իւրեանց» գրված է այնտեղ (էջ 133)։ Արդ, դժվար է պատկերացնել, որ հայրենազուրկ արված Սմբատն ու հայ մյուս իշխաններն անտարբեր մնային իրենց թշնամու դեմ պատրաստվող ապստամբության ժամանակ, և իրենց զինական ուժերով չմասնակցեին ապստամբությանը։

** Թվականի վերաբերյալ աղբյուրներում կան հակասական տվյալներ։ Ըստ Աբդուրրեզակ Սամարկանդու ճակատամարտը տեղի է ունեցել 1412 թ. նոյեմբերի 6-ի—դեկտեմբերի 4-ի արանքում (Շաբան ամսին), իսկ Հասան Ռումլին նշում է 1414—15 սխալ թվականը (տես И. П. Петрушевский, նշված աշխատ., էջ 160)։ Մենք ընդունում ենք 1411 թվականը Մատթեոս վարդապետ Ջուղայեցու «Մեկնութիւն Գործոց առաքելոց» աշխատության 1411 թ. գրած հիշատակարանին համապատասխան։ Այնտեղ ասված է, որ այդ թվականին Կարա-Յուսուֆը «հարեալ զՎատնիարեան դաշտն, և զկալավ տէր նորա (զՇիրվանշահն Իբրահիմ), և սպան զթագաւորն Վրաց Կոստանդին, և զբազումս գերի վարեալ» (էջ 119)։ Նույն թվականն է հայտնված նաև «Վրաց պատմության» դասագրքում (տես „История Грузии", մասն I, Թբիլիսի, 1950, էջ 301)։

*** И. П. Петрушевский, նշված աշխատ., 160—161։

ման իւրով ի Բաբելոնէ ի քաղաքն Թաւրէզ, և ի վերայ նորա ևս յարուցեալ Ուսուֆն, և սպան զնա։ Եւ մնացեալ աստանոր միայն ամիրայն Շըրուանայ (Իբրահիմ), յորոյ յապստամբելն, երից անգամ եկն ի վերայ նորա Ուսուֆն. և ի վերջին գալն՝ ձեռրակալ արար զնա և զրաղումս ի միջի նոցա. եսպայն զԹշվառական Թագաւորն վրաց զԿոստանդին, որ եկեալ էր յօգնականութիւն իշխանին Շըրուանայ և զերկիրն առ աւար և գնաց։

Զայսչափ չարիս առ գլխաւորս աշխարհիս հասոյց Ուսուֆն, իսկ առ փոքունս զի՞նչ ասացից։ Զի վայրենացեալ զինուորք նորա ուր և հասանէին ոչ վընտանիսն գիտեն և ոչ զօտարսն, Թալանեն և կոփեն ղձեռնահասն իւրեանց, Թէ ի ճանապարհի, Թէ ի տան, Թէ առանձին, Թէ ի քաղաքի, և այսպէս ոչ գոյր Թիւ աղաղակի մերոյ» (էջ 194—195)։

Նույն Մատթեոսը նաև չափածո ողբ է հորինել աղետալի այս դեպքերի և Վրաց Թաղավորի սպանության առթիվ.

«Սպանաւ արքայն Վրրացտանոյ՝
Այն Կոստանդին՝ գերեալն յոգւոյ,
Ի ձեռն չար ազգ Թուրքմենոյ,
Որոյ Ուսուֆ անուն դոլոյ։
Եւ մեղ էած սուգ գերագոյ...
Զի փոխանորդ զնա ունէաք,
Մեր մեծ ազգին, զոր կորուսաք...» (էջ 197)։

Շիրվանից հաղԹանակով ու մեծ ավարով վերադառնալով, Կարա-Յուսուֆը իր ռեզիդենցիան տեղափոխեց Ալաշկերտ և հաստատվեց այստեղ։

Հպատակ ժողովուրդներին տնտեսապես կեղեքելու և հարստահարելու նպատակով Կարա-Յուսուֆը ստեղծեց հարկահանման ուժեղ ապարատ։ Հարկերը շատ ծանր էին. այդ մասին ուշագրավ վկայություններ կան ժամանակակից մի շարք գրիչների հիշատակարաններում։

1413 Թվականին Կարապետ գրիչը Մոկքի Ծպատա վանքում գրում է, որ «հարկապահանջութեամբ ազգս տապալի ի չար ազգէն նետողականի» (էջ 149)։

1414 Թվականին Հովսեփ գրիչը Կտուց անապատում գրում է, որ «հարկապահան[ջութեամբ ազգս տապալի՞|||, զի կարի ձանձրացեալ եմք յանարինաց բռնութենէ՝ ի քրԹէ, ի ԹաԹարէ և այլ ամենայն [պահանջողա՞ց]» (էջ 166)։

1417 Թվականին Հովանես գրիչը, Խիզանում, Կարա-Կոյունլուների մասին գրում է.

«Անումն է չար սոցա մեծիս,
Թուրքըստանաց խըրոխտ ղանիս,
Ղարա-Յուսուֆ սև մակագրիս,
Որ սևէ զազգս մեր և զազինս...
Նըւաճելով զքուրդ և զպարսիկս
Պահանջէ հարկ և տոկոսիս...» (էջ 200)։

Համանման տվյալներ հաղորդում են նաև այլ հիշատակագիրներ։

Այնուամենայնիվ, շնորհիվ այն բանի, որ Կարա-Յուսուֆի իշխանության հաջորդ տարիներն ընԹացան համեմատաբար խաղաղ պայմաններում, ժողովուրդը փոքր ինչ շունչ քաշեց և, նույնիսկ, որոշ վայրերում սկսվեցին շինա-

բարական ու վերանորոգչական աշխատանքներ։ 1412 թվականին պատմական Հայաստանի Արարատյան նահանգի տիրակալ կարգված Փիր-Հուսեին պարոնի* կառավարչության ժամանակ վերաշինվեց Կարս քաղաքը՝ «Եղև շինութիւն և նորոգութիւն հռչակաւոր քաղաքիս Կարուց»,— կարդում ենք մի հիշատակարանի մեջ (էջ 134) և այլն։

Նշված ժամանակաշրջանում, ինչպես դիպուկ արտահայտվել է Թովմա Մեծոփեցին՝ «թէպէտ հարկապահանջութիւնն բազում էր, սակայն խաղաղութիւն առանց խռովութեան էր»**։

Գրիգոր Խլաթեցին նույնիսկ հաղորդում է, որ Կարա-Յուսուֆի թագավորության ժամանակ «էր էմնութիւն և էժնութիւն» (էջ 280)։

Սակայն, իհարկե, այս տվյալներից պետք է օգտվել մեծ զգուշավորությամբ։

Մենք տեղեկություն ունենք այն մասին, որ Կարա-Յուսուֆի տիրապետության սկզբին ցորենի կապիճը*** Հայաստանում (ավելի կոնկրետ՝ Խիզանի շրջանում) արժեցել է մոտ 33 դրամ****։ Իհարկե, դա բարձր գին չէ, եթե նկատի առնենք, որ եղել են անբերրիության, մորեխի և սովի տարիներ, երբ մեկ կապիճ հացը վաճառվել է նույնիսկ 200 դրամով (1401), մեկ մոթ***** հացը 800 դրամով (1422), կամ մեկ բեռ հացը 1000 դրամով (1428) և այլն։

Սակայն, երբ համեմատում ենք Հայաստանի վիճակը այլ երկրների հետ, միանգամայն պարզ է դառնում, թե որքան դառն ու դժվարին է եղել հայ ժողովրդի դրությունը նշված ժամանակներում։ Հրատարակվող հիշատակարաններից տվյալ ունենք այն մասին, որ 1401 թվականին Ղրիմում հացի սղություն է եղել և գները բարձրացել են ու հացի կապիճը վաճառվել է 30 դրամով (էջ 30)։ (Նույն այդ 1401 թվականին Հայաստանում նույնպես սղություն է եղել և հացի կապիճը վաճառվել է 200 դրամով, այսինքն՝ վեցից ավելի անգամ թանկ, քան Ղրիմում)։ Ուրեմն, նույնիսկ սղության տարիներին, երբ հացի գները բարձրացել են, Ղրիմում մեկ կապիճ հացը վաճառվել է 3 դրամով ցածր Հայաստանի համար «էժնութեան» տարիների գներից։

---

* Սահաթի որդի Փիր-Հուսեյնը և նրա Փիր-Ղաիպ և Աւգուլ որդիները հիշատակվում են 1411, 1412, 1414, և 1425 թթ. Բագարանում, Կարսում, Օշականում և Ջաղավանքում ընդօրինակված ձեռագրերի հիշատակարաններում, որպես նշված վայրերի պարոններ (տես էջ 124, 134, 162, 335)։

** Թ. Մեծոփեցի, էջ 73։

*** Կշռի չափ։ Ուսումնասիրողները հակասական արժեքներ են վերագրում կապիճին։ Ըստ Եղիազարովի հաշիվների՝ կշռում է 3,75 փութ (150 կգ.) (տես С. А. Егиазаров. Исследования по истории армянского права, публичного и частного, вып. I, Киев, 1919)։ Ըստ И. Фаас-ի՝ կշռում է 1,25 լիտր (տես „Записки коллегии востоковедов", том I, Ленинград, 1925, стр. 492)։ Ըստ Հ. Մանանդյանի՝ կշռում է 1,224 կիլոգրամի կամ 979,5 դրամի (տես «Կշիռները և չափերը հնագույն հայ աղբյուրներում», Երևան, 1930, էջ 90)։

Կարծում ենք, որ շատ ավելի հավանական ու ընդունելի պետք է համարել Ստ. Մալխասյանցի «Հայերէն բացատրական բառարանի» երկրորդ հատորի (Երևան, 1944) էջ 512-ում բերված տվյալը, ըստ որի կապիճը «միջնադարյան գեղաբանության մեջ գործածվող կշիռ է, հավասար 2913, 240 գրամի»։ Այլ խոսքով, կապիճը մոտավորապես կշռում է 3 կիլոգրամի։

**** XIV—XV դդ. Իրանում և Անդրկովկասում դրամը պարունակում էր 1,5 գր. արծաթ։

***** Մոթը կշռում է 29 կգ. 376 գրամի։

Բառացի չպետք է հասկանալ նաև հիշատակարանների տվյալները Կարա-Յուսուֆի տիրապետության հետագա տարիների անդորրության ու խաղաղության մասին։

1416 թվականին Կարա-Յուսուֆը արշավեց Վրաստան և գրավելով Ախալցխան, անխնա կոտորեց բնակչությանը, ավելի քան 10 հազար դերի վերցրեց։ Այս մասին ուշագրավ տվյալ է հաղորդում Գրիգոր գրիչը, Կապոսի վանքում ընդօրինակած Գր. Տաթևացու «Քարոզգրքի» հիշատակարանում։ Նա գրում է. «Այլ և գնացեալ ի տունն Վրաց, և առեալ զքաղաքն Յաղլծխա, և զամենեսեան, առհասարակ, զարսն ի սուրն սուսերի մաշեալ, և զկանայս և զմանկունս դերի վարեալ» (էջ 186—187)։

Կարևոր են նույն արշավանքի մասին նաև Գրիգոր Խլաթեցու հայտնած տվյալները.

«Եզև գընալ խան Ուսուֆին
ՅԱխըլծըխէ Վրաց քաղքին,
Արար զաղայ և գերութիւն,
Անթիւ վնաս և չարութիւն։
Այս էր ի թիւ ութհարիւրին,
Այլ և վաթսուն և հինգ ամին (1416)։
Իսկ զգերիսըն զոր առին,
Յաւտար երկիր վըտարեցին՝
Բաղդատ 'ւ ի Մըսըր հասուցին
'Ի ի Խորասան Պարսկացտանին.
Ոչ մի հազար կամ հինգ վեցին,
Այլ քան ըզբիւրըն էր աւելին,
Նոյն սպանելոցն էր բազմութիւն
Եւ անհամար, որ ոչ թըւին» (էջ 280—281)։

1418 թվականին Կարա-Յուսուֆն արշավեց Հյուսիսային Միջագետք՝ Ակ-Կոյունլու Կարա-Յուլուք Օսմանի դեմ և պարտության մատնեց նրան։ Այնուհետև նա մտավ Ասորիք, բայց լսելով իր Փիր-Բուդաղ որդու մահվան լուրը՝ հետ վերադարձավ։

1419 թվականին, ըստ երևույթին, Շահրուխի հետ գաղտնի պայմանավորվածությամբ, Ակ-Կոյունլու Օսմանը հարձակվեց Կարա-Յուսուֆի պետության արևմտյան շրջանների վրա և գրավեց Երզնկան։ Քիչ անց, Արևելքից զինական մեծ ուժերով հարձակում սկսեց նաև Միջին Ասիայի և Իրանի մեծ մասի տիրակալ սուլթան Շահրուխը։ Կարա-Յուսուֆը դուրս եկավ նրա դեմ, բայց մահացավ արշավանքի ճանապարհին, 1420 թ. նոյեմբերին։

4

Կարա-Յուսուֆի մահվամբ նրա զորքի մեջ մեծ խուճապ է ստեղծվում. «Ձի շփոթեցաւ զաւրքըն չարին և յիրերաց փախուստ առին»,— գրում է Գր. Խլաթեցին (էջ 281)։ Երեք օր նրա դիակը անթաղ է մնում «իսկ ետ երից աւուրց.— շարունակում է Խլաթեցին,— եկին, բարձին՝ յԱրջէշ բերին»։

Այնուհետև սկսվում է անկազմակերպ այդ զորքի ավերածությունների ու խժդժությունների իրենց անցած ճանապարհին։ Այդ մասին «Յիշատակարան աղետից»-ում կարդում ենք.

*«Իսկ զաւրք չարին՝ Միր-Ուսուֆին
Ընդ որ գնացին՝ աւերեցին» (էջ 281)։*

*Մի այլ ժամանակակից՝ Հովաննես գրիչը, Լիմ անապատում ընդօրինակած ավետարանի հիշատակարանում, հետաքրքիր մանրամասնություններ է հաղորդում նույն դեպքերի մասին.*

*«Յամի ութհարիւր և եւթանասուն թուականի Հայոց (1421), յետ մահուան Ղարա-Յով[ս]ուֆին,— գրում է նա,— եղև խռովութիւն և յոյժ սասանումն ընդ ամենայն երկիրս Հայաստանեայց, զի հեծելազաւրքն ամենայն շփոթեալ՝ զմիմեանս հարկանէին և կողոպտէին։ Որ և գունդ մի ի զաւրացն հատեալ, զորս փաւռնակ կոչէին՝ հինգ հազար տուն, և եկեալ հասին յերկիրն Քաջբերունւոյ, և բազում աւար և գերի առին» (էջ 254)։*

*Կարա-Կոյունլուների բանակի ներքին կառուցվածքի ուսումնասիրության համար այս վկայությունը մեծ հետաքրքրություն է ներկայացնում։ Ինչպես պարզվում է, բանակի մեջ ընդգրկված գնդերից յուրաքանչյուրը թուրքմենական Կարա-Կոյունլու ցեղախմբի բաղկացուցիչ ցեղերից մեկն է եղել։ Փոռնակ վաչկատուն ցեղը, ինչպես և մյուս ցեղերը, գտնվելիս է եղել Կարա-Յուսուֆի գործող բանակում իր ընտանիքներով ու գույքով՝ բաղկացած լինելով հինգ հազար տնից։ Գալով Քաջբերունիք, նրանք՝ «տնով ու խոստակաւք» սփռվում են ողջ գավառով մեկ և մեծ ավերածություն գործում։ «Եւ զչարչարանս և զաղետս կսկծանացն ո՞ կարէ ընդ գրով արկանել, զոր առնէին ընդ տառապեալ ազգս քրիստոնէից է. (7) ամիս բոլոր»,— վշտալի սրտով բացագանչում է մեր հիշատակագիրը։*

*Սուլթան Շահրուխը իր «երեսուն և հինգ բիւր» (350 հազար) զորքով մըտնում է Կարա-Կոյունլուների տիրապետության սահմանները և հասնում Խլաթ։ Կարա-Յուսուֆի խուճապահար զորքերը խուսափում են կռվի բռնվելուց և փախչում «ի ներքին երկիրն»։*

*1421 թվականին Կարա-Յուսուֆի Իսքանդար որդին պետության արևմտյան մասում պատրաստվում է Շահրուխի դեմ դուրս գալու։ Սակայն, մինչ այդ, նա պարտության է մատնում Շահրուխի դաշնակից Ակ-Կոյունլու Օսմանին և 1421 թ. մայիսին, 150 հազար հեծյալ զորքով, անցնում է Արաքսը և պատերազմական գործողություններ սկսում Շահրուխի դեմ։ Վճռական ճակատամարտը տեղի է ունենում Ալաշկերտի դաշտում, Բագվանի մոտ, 1421 թ. օգոստոսի 1-ին։ Կարա-Կոյունլուները՝ Իսքանդար և Սպանդիար (Իսպենդ)* եղբայրների գլխավորությամբ, խայտառակ պարտություն են կրում և փախչում Մերդինի ու Մոսուլի կողմերը։*

*Քաղաքական այս անցուդարձերի ու բախումների մասին կարևոր տվյալներ են հաղորդում մեր հիշատակագիրներից Կարապետ գրիչ Աղեթցին և Գրիգոր Խլաթեցին։*

*«Շահըրուխ չաղաթայն,— գրում է Կարապետը,— ... եկն ի Խլաթ և փախոյց զթուրքմանն, և շատ պակասութիւն եղև մեզ և շատոց, զի թուրքմանն զառաջինն փախեաւ ի ներքին երկիրն, և անտի դարձեալ եկն ի վեր թուրքմանն բազում զաւրաւք՝ Ճ. և Ծ. (150) հազար ձիաւորաւք. և խիստ խայտառակ կոտորեցան ի չաղաթի զօրացն, ի գաւառն Վաղաշկերտոյ, մերձ Բագւանայ։ Բայց*

---

* *Թ. Մեծոփեցին Սպանդիարին կոչում է Ասպահան։*

զի ողորմած էր Շահրուխըն և քաղցր էր բարուքն՝ թոյլ ետ նոցա փախչել մազապուրծ, և զօրս ղերեցան՝ աղատ արար» (էջ 250)։

Տեղի ունեցած ճակատամարտի և Կարա-Կոյունլուների պարտության մասին Գրիգոր Խլաթեցին գրում է հետևյալը.

«Քանզի խրտան նախ և փախեան
Եւ յետ դարձեալ կոտորեցան,
Ըստ արժանեացն ի ձեռս անկան
Շահրրուխին և մատնեցան։
Շատք ի սըրոյ նոցա մեռան,
'Ի այլքըն փախեան և գերեցան,
Ձիոց կոխան սատակեցան,
Խաղք խայտառակ թալանեցան,
Ի սար 'ւ ի ձոր փախըստական։
Ընդ որ փախեան հալածեցան
'Ի ինքեանք միմեանց դահիճ դարձան» (էջ 282)։

Խլաթեցին նույնպես հայտնում է, որ Շահրուխը «ասախ արար, հուքմ և հրաման ոչ կոտորել զամենեսեան», այլ թույլ տվեց Կարա-Կոյունլուների ջախջախված բանակի մնացորդներին՝ փախչել։ Երկու հիշատակագիրներն էլ Շահրուխի այդ արարքը բացատրում են նրա «քաղցր բարքով», «ողորմածությամբ» ու «արդարադատությամբ»։

Սակայն Շահրուխի համեմատաբար մեղմ քաղաքականությունը Կարա-Կոյունլուների նկատմամբ բացատրվում է, նախ և առաջ այն հանգամանքով, որ նա Հայաստանն ու Հարավային Ադրբեջանն իր ձեռքում պահելու համար չուներ համապատասխան զինական ուժեր ու հնարավորություններ։ Բացի այդ, նա ստիպված էր հաշվի նստել նաև իր ժամանակավոր դաշնակիցների՝ Ակ-Կոյունլուների ու Շիրվանշահերի հետ, որոնք չէին կարող հանդուրժել Թամուրյանների հզորացմանը անմիջապես իրենց սահմաններին կից*։ Այսպիսով, Շահրուխը ստիպված էր բավարարվել իր գերիշխանությունն ընդունել տալով Հայաստանի ու Ադրբեջանի նկատմամբ, և 1421 թվականի աշնանը, ինչպես հաղորդում է Գր. Խլաթեցին՝

«Գնաց դարձաւ ի Խորասան,
Երթեալ յաթոռն իւր բընական՝
Ի Սըմըրղընդ հայրենական»։

Պատերազմական այս գործողությունները, որ հիմնականում տեղի էին ունենում հայկական հողի վրա, մեծ զրկանքներ ու աղետներ պատճառեցին հայ ժողովրդին։ Այս մասին իրենց հիշատակարաններում բազմաթիվ անմիջական տվյալներ են հաղորդում գրչի համեստ աշխատողները։

Գրիգոր Խլաթեցին գրում է, որ՝

«Կին և տըղայքն ի թիւ չանկան,
Ջոր գերեցան և կոխեցան» (էջ 282)։

---

* Այս մասին տես մանրամասն И. П. Петрушевский, նշվ. աշխատ., էջ 163—164։

Սարգիս գրիչն ընդօրինակում է իր ձեռագիրը Շահրուխի զորքերից ահաբեկված «անհուն դառնութեամբ՝ տեղաց ի տեղս փախչելով, ի յաւտարութիւն ընթանալով, անհանգիստ, քաղց[ած] և ծարաւ» (էջ 260)։

Հովհաննես գրիչն իր կիսատ թողած ձեռագրի ընդօրինակությունը շարունակում է «ի քարանձաւս վիմանց լերանց, յորում փախուցեալ էաք [յերկիւղէ] անհուն զօրաց չաղաթայից և թուրքաց, յորում նեղէին զմեզ յերկուց կողմանց» (էջ 255)։

Գրիգոր գրիչը հաղորդում է, որ ընդօրինակել է ձեռագիրը «ի թվ. ՊՀ. (1421), յամի յորում եկն ազգն նետ[ող]աց և աւերեաց զբոլոր ա[շխարհս] Հայաստանեայց» (էջ 256) և այլն, և այլն։

Շահրուխի վերադարձից հետո, կրկին անգամ Հայաստանում երեում է Կարա-Յուսուֆի կրտսեր որդի Սպանդիարը։ Նա մեծ ավերածություններ է գործում Արճեշի և Արծկեի շրջաններում, քանդում է Բասենի ու Ավնիկի ամրությունները և հատկապես մեծ վնասներ է պատճառում Կարին քաղաքին («ԶԿարնոյ քաղաքըն զԱրզրում, քան զամենայն խիստ աւերեց»,— գրում է Գր. Խլաթեցին)։ Ապա նա արշավում ու գրավում է Թավրիզը։ Սակայն շուտով նրա դեմ է դուրս գալիս Իսքանդար եղբայրը։ Կարա-Յուսուֆի որդիների միջև հաշտություն է հաստատվում. Ջհանշահը ենթարկվում է Իսքանդարին, Սպանդիարը բավարարվում է արաբական Իրաքով*։

Եվ այսպիսով, Իսքանդարին հաջողվում է վերահաստատել Կարա-Կոյունլուների պետությունը՝ իր նախկին սահմաններով։ 1428 թվականին Կարապետ գրիչը, Իսքանդարի պետության սահմանների մասին խոսելիս, հայտնում է, որ նա «տիրեաց Պարսից և Բաբելացւոց, Հայոց և Միջագետաց Ասորւոց, յԱրարաթեան տանէն Հայոց՝ մինչ յՇզնկայն, ի Մերդին, ի Բաղդատ, ի Սալթանիայ, և ի Գանձակ շահաստանն Թաւրէզ, և մինչ ի գետն Քուռ։ Զայս ամենայն ի բռին ունէր Իսքանգար Իմիր[զ]այն» (էջ 380—381)։

5

Հաստատվելով գահի վրա, Իսքանդարը, 1422—1427 թթ. ընթացքում, համառ ու երկարատև պայքար է ծավալում իր պետության սահմաններում գտնվող քրդական դինաստիաներով կառավարվող կիսանկախ ամիրություններին ու ֆեոդալական տիրույթներին վերջ տալու նպատակով։

Կիսանկախ այդ ամիրությունները, որ հաստատվել էին Հարավային Հայաստանի գավառներում՝ Բաղեշում, Խլաթում, Ոստանում, Վանում, Խիզանում և այլ վայրերում, իրենց կենտրոնախույս ձգտումներով և տեղական շահերով հաճախ բախվում էին կենտրոնական իշխանությանը։ Վտանգի պահին կամ քաղաքական աննպաստ պայմաններում նրանք լքում էին իրենց սյուզերենին և հաճախ հանդես գալիս նաև թշնամիների բանակում։

Իսքանդարի համար պարզ էր, որ Կարա-Կոյունլուների ընդարձակ պետության ամրապնդման և արևմտյան սահմանների ապահովման համար ան-

* Թ. Մեծոփեցին հաղորդում է, որ Սպանդիարը (Ասպահան) իրեն բաժին ընկած երկրամասում մեծ անգթություններ է գործում. «Աւերեաց և գերեաց զՄօսլ և զՍնջար և զԹկլադ և զամենայն աշխարհն, և ապա եկն ի վերայ Ջիզիրու՝ անթիւ արիւնս արար։ Եկն ի վերայ Մերտնայ և սպան երեսուն քրիստոնեայս» և այլն (Թ. Մեծոփեցի, էջ 82)։

*հրաժեշտ է նախ և առաջ սանձել կիսանկախ ամիրների կենտրոնախույս ձըգտումները։*

*Ամիրությունների դեմ Իսքանդարի ձեռնարկած արյունահեղ պայքարի ծանրությունն ընկնում էր առաջին հերթին հայ աշխատավոր գյուղացիության վրա, որը հանդիսանում էր այդ շրջանների հիմնական արտադրող ուժը։ Պատկերացում կազմելու համար, թե ինչ տառապանքներ ու զրկանքներ կրեց հայ ժողովուրդն այդ համառ կռիվների ընթացքում, անհրաժեշտ է ծանոթանալ ժամանակակից հիշատակագիրների հաղորդած ուշագրավ տվյալների հետ։*

*Իսքանդարը՝ «ի տարեկից իւր փախըստին, որ ի ձեռացն չաղաթին», այսինքն՝ 1422 թ. օգոստոսին, ինչպես հաղորդում է նշանավոր գրիչ Թովմա Մինասենցը իր ընդարձակ հիշատակարանում՝ «եկն բազում զաւրաւք ի վերայ Խըլաթայ, և բազում անձինք քրիստոնէից ի գերութիւն վարեցան ի ձեռաց նոցա, և բազումք սրոյ ճա[րակ եղեն]» (էջ 375)։*

*Նույն արշավանքի մասին ավելի մանրամասն խոսում է Գր. Խլաթեցին։ Նա հաղորդում է, որ Իսքանդարը՝*

*«Հեծել արար շատ բազմութիւն*
*'Ի եկն ի վերայ Խլաթայ բերդին.*
*Բերդին վնասել ոչ կարացին,*
*Այլ զքաղաքն այրեցին.*
*Ի յԱղուվանք արշավեցին*
*Եւ չար ոճիրս անդ գործեցին,*
*Ըզբերդն առին, կոտորեցին,*
*Շատ քրիստոնեայք անդէն սպանին,*
*Քան զերկերիւրն այլ աւելի,*
*Զորս սըրոյ ճարակ տըւին.*
*Թող զորս ի ծովըն խեղդեցան*
*Եւ քարավէժ եղեալ կորեան» (էջ 283—284)։*

*Արշավանքը չի սահմանափակվում Խլաթի շրջակայքով, Գր. Խլաթեցին հայտնում է, որ հինգ հարյուր գերվածների թվում, բացի Խլաթի մերձակա գյուղերի՝ Տղաքի, Ազաղի, Աղեթի բնակչությունից, կային նաև մարդիկ Խիզանից ու Բաղեշից։ «Յիշատակարան աղետից»-ի հեղինակը որոշակի տվյալ է հաղորդում նաև արշավանքի դրդապատճառի մասին.*

*«Այս ամենայն ի պատճառէ*
*Այն Շամըզդին ամիրայէ...*
*Որ նա արար հպարտութիւն*
*Զհնազանդեցաւ Ըսքանդարին» (էջ 284)։*

*Կարապետ գրիչ Խլաթեցին 1422 թվականին գրած իր հիշատակարանում հայտնում է, որ ընդօրինակությունը կատարել է «ի ժամանակս նեղ և անձուկ, որ կանք փախուցեալ ի յամուրս և ի ծերպս վիմաց ի յահէ անօրինաց, բազում աշխատութեամբ և տառապանօք» (էջ 291)։ Հասկանալի է, որ Կարապետ գրչի վիճակում էր գտնվում Խլաթի շրջակայքի բնակչության այն մասը, որին հաջողվել էր խուսափել Իսքանդարի զորքերից և ապաստանել լեռներում։*

1423 թվականին Իսքանդարը «բազում զաւրաւք» հարձակվում է Ավրեխի վրա և գրավում այն։ Թովմա Մինասենցը հայտնում է, որ իրենց իշխան Մելիք Մահմադը մեծ ընծաներով գնացել է նրա մոտ «ի գործ պատերազմին», այսինքն՝ պատերազմելու համար նրա կողմում, սակայն Իսքանդարը թունավորելով սպանել է նրան։

1424 թվականին Իսքանդարը «խաբանաւք» իր մոտ է հրավիրում Ոստանի ամիր Ահմադին և ամիր Շամս-ադ-դինին, որը Կարա-Յուսուֆից սոյուրղալական իրավունքներով ստացել էր Խլաթի, Մուշի, Բաղեշի և Խնուսի շրջանները։ Շամս-ադ-դինը սպանվում է Խլաթում, իսկ ամիր Եզզինի որդի ամիր Ահմադին, որին ժամանակակիցները կոչում են «ամիրապետ Ոստան քաղաքի, սուլթան Ահմատ», Իսքանդարը շղթայում, ապա սպանել է տալիս Երնջակի բերդում։ Նույն թվականին նա պաշարում է Վանի անառիկ համարված բերդը և մեծ ավերածություններ է գործում շրջակայքում։

Աղետալի այս դեպքերը գրավել են ժամանակակից շատ գրիչների ուշադրությունը. լսենք նրանցից մի քանիսին։

Ոմն խոջա Գորգ, որ 1424 թվականին, վճարելով 1500 դրամ, հետ է գնել Իսքանդարի զորքերի կողմից գերի վերցված մի ավետարան, իր հիշատակարանում գրում է. «Եւ յայսմ ամի (1424)... եկն Սքանդարն յերկիրն Ըռշտունեաց բազում հեծելօք, և զՎանայ բերդս խսարեաց, և շատ աւեր էած՝ զոր սպանմամբ, և զոր գերութեամբ, և զոր այրելով։ Եւ զեկեղեցիքն կործանեցին, և զգրեանքն գերի վարեցին և բերին ի քաղաքն Սղերտ...» (էջ 467)։

Նշանավոր ու մեծավաստակ գրիչ Թովմա Մինասենցը, 1425 թվականին Աղթամարում ընդօրինակած ավետարանի հարուստ բովանդակությամբ հիշատակարանում, Իսքանդարի այս արշավանքի մասին կարևոր մանրամասնություններ է հաղորդում.

«Բոլոր աշխարհս Հայոց ի յառ և ի յաւարի, ի սուր և ի գերութիւն մատնեցաւ վասն ծովացեալ մեղաց իմոց, ի ձեռս անաւրէն և անիծեալ ազգին նետողաց. վասն զի այս բոլոր տարի մ' է, որ չար բռնաւորն ամիրզա Սքանդարն՝ տէրն Թավրիզոյ՝ ազգաւ Թուրք, զամիրապետն Ոստան քաղաքի՝ զսուլտան Ահմատն ըմբռնեալ է և երկաթի կապանաւք ի յԱլընջոյ բերթն ի բանտի է եդեալ, խնդրելով ի նմանէ զանառիկ ամրոցն նորա. և զերկիրս Հայոց՝ զԱղբակ, և զՔարպահ, և զՈստանայ երկիրս, մինչ ի Բաղէշ անմարդաբնակ արարեալ։ Եւ բնակիչք աշխարհիս մերկ և բոկ և սովալըլուկ տարաշխարհիկ եղեալ, և ոմանք յաստուածախնամ կղզիս անկեալ, ա[պաւին]ելով յաստուած և յամենայաղթ զաւրութիւն սուրբ խաչիս՝ ազատեցան ի գերութենէ չար բռնաւորին» (էջ 326)։

Այս տարիներին Վանա լճի շրջակայքի բնակչությանը բաժին ընկած աղետներին ավելանում է նաև սաստիկ մահտարաժամը, որը նույնպես մեծ հունձ է կատարում։

1425 թվականին Իսքանդարին հաջողվում է գրավել Վանը * և այլ ամրու-

* Վանի գրավման թվականի վերաբերյալ հիշատակագիրները չեն միաբանում։ Մի ձեռագրի հետագա ստացող ոմն Կիրակոս, իր հիշատակարանում գրում է, որ «ի թվաբերութեանս Հայոց ՊՀԳ. (այսինքն՝ 1424-ին) Սկանդար ղանն զՎանա բերթն էառ... և բազում քրիստոնէք հալածական եղան ի սար աշխարհս»։ Եվ ընդհակառակը, Կարապետ Հիզանցու 1425 թ. հիշատակարանից երևում է, որ Սքանդարը հիսուն օր պաշարել է Վանի ղլյակը, բայց չի կարողացել գրավել։ Նա գրում է. «Իսքանդարն ըմբռնեաց զամիրայն մեր զսուլ-

*թյուններ Վասպուրականում։ Թովմա Մինասենցի դիպուկ արտահայտությամբ նա «մլքում», այսինքն՝ սեփականում է քուրդ ամիրների տիրույթները։*

*1426 թվականին Իսքանդարը պաշարում է Բաղեշը, բայց չի կարողանում վերցնել։ Ապարդյուն պաշարումը շարունակվում է մինչև 1428 թվականը։ Բերկրիի վանքերից մեկում 1426-ին շարադրած իր հիշատակարանում Պետրոս գրիչը հայտնում է, որ Իսքանդարը այս երրորդ տարին է, ինչ դալիս ու ավարի է մատնում ողջ երկիրը. «Եւ մեք փախըստական եղաք ամենեքեան առհասարակ՝ հայրապետք և վարդապետք, կրօնաւորք և քահանայք, տանուտերք և տանտիկնայք, ի յաւտար աշխարհ շրջեցանք և ի դռնէդուռն ւատարացանք» (էջ 353)։*

*Հրատարակվող ժողովածուի մեջ կան համանման բովանդակությամբ այլ հիշատակարաններ ևս։*

*1426 թվականին Իսքանդարը պատերազմական գործողություններ է սկսում նաև իր պետության արևելյան մասերում։*

*Նույն այս թվականին վերջ է տրվում Հայաստանում իր գոյությունը պահպանած միակ հայկական ֆեոդալական տիրույթին՝ Մակու բերդին, ուր իշխում էր հայ իշխան Նուր-ադ-դինը։*

*1426 թվականին Թադեոս առաքյալի վանքում ընդօրինակած ձեռագրի հիշատակարանում վանահայր Գրիգորը (ամենայն հավանականությամբ հետագայում կաթողիկոս դարձած Գրիգոր Մակվեցին) ցնծությամբ է նշում Մակվի հայկական իշխանության անկման փաստը։*

*«Ի սոյն ամի,— գրում է նա,— ... էառ Ըսքանդար անուն ոմն քռնաւոր՝ որդի Ղարա-Ուսուֆին՝ զանառիկ բերդն Մակուայ, և զերկարնակ ազգն ախթարմայից տարագիր և տարաշխարհ արար... և ետ (զբերդն) շխ Բայազիթ ումն այլազգոյ» (էջ 353)։*

*Գրիգորը գոհունակությամբ նշում է, որ վանքի նկատմամբ այդ շեխ Բայազետը տրամադրված է շատ ավելի բարյացակամորեն, քան հայ կաթոլիկ Նուր-ադ-դինը։*

*Մակվի անկումը, սակայն, ուրախություն պատճառեց միայն Թադեոս առաքյալի վանքի վանահորը և նրա նմաններին, որոնք իրենց նեղ տնտեսական շահերը վեր էին դասում ամեն ինչից։*

*«[Անմխի]թար կըս[կիծ է]հաս բոլոր ազգացս քրիստոնէից,— գրում է Մակվի անկման առթիվ Թովմա Մինասենցը,— զի բոլոր աշխարհացս այն մին բերթն միայն էր մնացեալ ի ձեռս քրիստոնէից. և այն ևս առաւ ի մէնջ» (էջ 376)։*

*1427 թվականին Իսքանդարը հարձակվում է Շիրվանի վրա և ստիպում Շիրվանշահ Խալիլուլլահ Ա-ին (1417—1462) ենթարկվել Կարա-Կոյունլուներին։*

*Եվ այսպես, 1422—1427 թթ. ընթացքում, Իսքանդարը, մեծ համառությամբ ու անգթությամբ, մեկը մյուսի ետևից վերջ է տալիս Հայաստանի հարավային*

---

*թան Ահմատն, և եկեալ բազում զօրօք ի վերայ մեր, և յիսուն օր խսարեաց զանառիկ զղեակս Վան, և ոչ կարաց առնուլ զսա, և սուտ երդմամբ գնացեալ ի Դաւրէժ, և ի գարնանային աւուրսն առաքեաց զզօրս և գերեաց և աւերեաց զերկիրն Ռշտունեաց» (էջ 328)։*

*Ըստ երևույթին Վանի գրավումը տեղի է ունեցել Կարապետ Հիզանցու հիշատակարանի գրությունից հետո։*

շրջաններում գոյություն ունեցող կիսանկախ քրդական ու հայկական համարյա բոլոր ֆեոդալական իշխանություններին և կատարում նոր նվաճումներ։

Իսքանդարը այդ թվականներին ձեռնարկած իր արշավանքներով, ինչպես հաղորդում է բազմարդյուն հիշատակագիր Թովմա Մինասենցը, «տիրեաց աշխարհիս մերում, և էառ բռնութեամբ զանառիկ ամրոցք աշխարհիս մերոյ, այս է՝ զանմատչելիս և զանկոխս ոտից թշնամեաց և զտեղիս ապաստանի բոլոր աշխարհացս՝ զկղզիս Աղթամարայ, և զանառիկ ամրոցս և զմայրաքաղաքս երկրիս զՈստան, և զպարանոցատանչն զԱմուկ, և մինչ ի Հէշատ և ի Նրւան՝ բոլոր աշխարհս բռնակալեաց ընդ ձեռամբ իւրով և ընդ իշխանութեամբ։ Եւ բազում և անթիւ չարիս և դառնութիւնս անասելիս և անպատմելիս լեզուաց անցոյց ընդ աշխարհս մեր, զոր ոչ կարեմ մի ըստ միոջէ ընդ գրով արկանել ղաւէր աշխարհիս մերոյ և [կործա]նումն բնակչաց սորին» (էջ 374)։

6

Ներքնապես ուժեղ ու կենտրոնաձիգ պետություն ստեղծելու իր պլաններն իրագործելու նպատակով, բացի կիսանկախ ամիրություններին վերջ տալու ուղղությամբ կատարած իր համառ քայլերին, Իսքանդարը ձգտում էր նաև օգտագործել Կարա-Կոյունլուների պետության մեջ էթնիկապես կարևոր տեղ գրավող հայ ժողովրդի տիրող շերտերին։ Նա իրեն կոչում էր «Հայաստանի թագավոր» (Շահի-արմեն), պետության բարձր պաշտոնների էր առաջ քաշում իրենց տիրույթներից զրկված հայ ֆեոդալական անվանի տների որոշ ներկայացուցիչների*, իր զորքերի մեջ հավաքագրում էր նաև հայ ռազմիկների և այլն։

Բացի այդ, նա երբեմն նույնիսկ սիրաշահում էր Սյունիքի ու Արարատյան դաշտի որոշ վայրերի հայ բնակչությանը։ Այսպես, օրինակ, Մատթեոս Ագուլեցի գրիչը, 1425 թվականին շարադրած իր հիշատակարանում, Իսքանդարի մասին ասում է, որ իբր նա «յոյժ ողորմած էր ազգիս Հայոց, եւ առաւել մեր գեղիս Ագուլեաց, իւր խաս արար, և մէկ տարի թարխան արար» (էջ 337)։

Կարծես հենց այս հիշատակագրության հեղինակին նկատի ունի Թովմա Մեծոփեցին, երբ իր «Պատմության» մեջ գրում է, թե «տգէտք ոմանք վասն սակաւ սիրելոյն զհաւատացեալս թէ ազգ բարի է՝ երկարութիւն կենաց խնդրէին (Իսքանդարայ), որ և կարծիք է մարգկան, թէ քան զաստեղս աւելի մարդիկ մեռեալ եղեն վասն սորին»**։

---

* Ինչպես ցույց է տալիս Պատմության ինստիտուտի գիտական աշխատող ընկ. Հ. Փափազյանը «Ագրարային հարաբերությունները Երևանի խանության մեջ XVII դարում» իր դիսերտացիոն աշխատության մեջ, այդպիսիններից էր Օրբելյան ֆեոդալական տան շառավիղներից իշխան Սմբատի թոռ Բեշքենի որդի ամիր Ռուստամը, որը 1432 թ. վաճառեց (ավելի ճիշտ վաճառքի անվամբ նվիրաբերեց) Էջմիածնի վանքին, Էջմիածին, Աշտարակ, Բաթռինջ, Նորադավիթ, Աղավնատուն և Թանիս-Բիրաշլի գյուղերը։ Վաճառքի կալվածագրի հայերեն թարգմանության մեջ (պահպանվել է նաև բնագրի պարսկերեն պատճենը) ամիր Ռուստամը մեծարված է հետևյալ տիտղոսներով՝ «Բարձրիշխան, հռչակավոր, բարձրաստիճան, բարձրապաշտօն մեծ վեզիրն, մերձաւորագոյնն մեծին փադիշահի և նախամեծարեալն ի պետութենէ. գլխաւոր արքունի խորհրդական և հաւատարիմ արքունեաց, արժանին ամենայն գովասանաց իւրով երեւլի ծագմամբ՝ Ամիր-Ռուստամ՝ որդին Ամիր-Միշկինայ (այսպէս), որդի Ամիր-Սումբատայ (տես Հ. Աբրահամյան, «Կալվածագրեր», Երևան, 1941, էջ 12)։

Հ. Փափազյանը ապացուցել է, որ «Ամիր-Միշկինայ» անունը աղավաղված է, և բնագրում եղել է «Ամիր-Բեշքենայ»։

** Թ. Մեծոփեցի, էջ 105։

7

*1425 թվականին, Իսքանդարի կողմից ոչնչացվող քուրդ ամիրների պաշտպանության դիմակի տակ, Վանա լճի հյուսիսային շրջաններում հանդես է գալիս Ակ-Կոյունլու Կարա-Յուլուք Օսմանը, որը մեր հիշատակարաններից մեկում կոչվում է «Թագաւոր ամենայն Միջագետաց, պարոնաց պարոն շահ Օթման Պահատուր» (էջ 403)։ Նա Կարա-Կոյունլուների արևմտյան սահմանամերձ շրջանների վրա հարձակում էր սկսել տարիներ առաջ։ 1422 թվականին նա տասներեք շաբաթով պաշարել էր Երզնկան և մեծ ավերածություններ գործել շրջակայքում։*

*Այս մասին ժամանակակից գրիչ Սիմեոնը հայտնում է հետևյալը.*

*«Երեկ Աւթմանն ի վերա մեր և դառն աւարեց, և ԺԳ. (13) շաբաթ ի վերա քաղաքիս նստաւ և զվաստակն կերցուց, և ով որ ի ձեռք անկաւ՝ զոմն սպանեց և զոմն ծառա բռնեց և խիստ խսարեց։ Եւ ով որ ի յափ ընկաւ՝ նա բերին ծախեցին. և հանց խսարեց, որ մոթ հացն Ըճ. (800) դրամ եղաւ և մոթ աղն ի ՌԲճ. (1200) դրամ. և ոնց որ յԱնի անկ եղաւ» (էջ 289—290)։*

*Մի Ավետիք 1425 թվականին շարադրած հիշատակարանում արձանագրում է, որ Երզնկան երեք տարի պաշարումից հետո գրավված է Օսմանի կողմից. «Եկն տէրն Ամթայ ի վերայ Եզնկիս,— գրում է նա,— և ... հրդեհեաց զգեղաստանսն առհասարակ և զվանօրայս...։ Եւ երեք ամ ի խսար պահեաց զքաղաքն, և առեալ ապա խաղաղացոյց» (էջ 344)։*

*Գրավելով Երզնկան, Օսմանը, դաշնակցելով Իսքանդարի կողմից սպանված Բաղեշի ամիր Շամս-ադ-դինի եղբայր Սավալանի գլխավորած Ռոժիկ քրդերի հետ, մտնում է Վանա լճի հյուսիսային գավառները։*

*«Եւ եկ[ի]ն ի վերա երկրին արիւնակեր գազանքն՝ զօրքն Օթմանին և հեծեալքն Ըռօշկանին, և առ և գերի արարին զերկիրս զօրս և կարացին, և շատոց արիւն հեղին» (էջ 329),— գրում է Խառաբաստի վանքում Հակոբ գրիչը։ Նա հայտնում է նաև, որ զոհվածների թվում է գտնվում «մեծ րաբունապետ», նշանավոր գրիչ և հիշատակագիր Գրիգոր Ծերենց Խլաթեցին։*

*Նույն արշավանքի մասին ավելի կարևոր են Թովմա Մինասենցի հաղորդած տեղեկությունները։ «Դարձեալ պատմեցից,— գրում է նա,— և այլ ևս աղէտ և կըսկիծ արժանի արտասուաց, որ եկն եհաս ազգիս քրիստոնէից։ Վասն զի Աւթման բէկն՝ տէրն Ամթայ, ջատագով եղեալ մերոյ իշխանացս, և եկեալ բազում զաւրաւք, և զերկիրն Արճիշոյ և զԱրծկոյ բնաջինջ գերի վարեալ և սրոյ ճարակ արարեալ» (էջ 326)։*

*Իսքանդարն անկարող էր հակահարված տալ Օսմանին, որովհետև այդ ժամանակ զբաղված էր նվաճումներ կատարելով իր պետության արևելյան սահմաններում։ Ուրմիան գրավելուց և Շիրվանը հպատակեցնելուց հետո, 1427 թվականին նա սկսեց մեծ արշավանք Շահրուխին պատկանող երկրամասերում, գրավեց Սուլթանիե, Զենջան և Ղազվին քաղաքները։*

*Թախումը Թամուրյանների ու Կարա-Կոյունլուների միջև դարձավ անխուսափելի։ 1428 թվականի հոկտեմբերին Իսքանդարի դեմ պատերազմական գործողություններ սկսեց Շահրուխի զորահրամանատարը, իսկ 1429 թվականի մայիսին գլխավոր ուժերով հանդես եկավ ինքը՝ Շահրուխը։ Նա ջարդեց Իսքան-*

դարին Սալմաստի մոտ և սկսեց ասպատակել Ադրբեջանն ու Հայաստանը։ Աշխատավոր ժողովուրդը թալանվում, ընաջնջվում ու գերեվարվում էր երկուստեք, թե՛ Շահրուխի զորքերի և թե՛ Իսքանդարի պարտություն կրած բանակի կողմից։

Ժամանակակից հիշատակագիրները կարևոր տվյալներ են հաղորդում քաղաքական աղետալից այս իրադարձությունների մասին։

Գրիգոր գրիչը Գառնիի գավառում 1429 թվականին շարադրած հիշատակարանի մեջ գրում է.

«Ի յայսմ ամի եկն չաղաթէն արևելից՝ ի Սամարղանդայ՝ Շահռուխ անուն, որդի Լանգ-Թամուրին, բազում զաւրաւք և անթիւ հեծելաւք, և էառ զԴաւրէժ քաղաք, և զթուրքման ազգն աւառ էառ և զբազումս գերի վարեաց...։ Եւ ազգս քրիստոնէից փախստական ի ծերպ և ի ծակ մտած և ի յիւրեանց բնակութենէն էլած։ Եւ փախուցեալ թուրքմանն թալանեաց զաշխարհս Հայոց. զհաց և զգինի հանին և մեծ աւերութիւն ածին աշխարհիս, և ի խիստ վտանգի կայ ազգս, ահն ու երկիւղն պատել է, կու վախեն, թէ զամէն ազգս գերի վարեն յորժամ գարնանէ» (էջ 391)։

Այս արշավանքի ընթացքում հատկապես տուժում են Վասպուրականի և Քաջբերունիքի հայերը, որոնցից Շահրուխի զորքերը մեծ թվով գերիներ են քշում Սամարղանդ։ Երեք տարի անց՝ 1432 թվականին մեծ վշտով վերհիշում է այս դեպքերը Դավիթ գրիչը, Երերան անապատում գրած իր հիշատակարանում։ «Վասն ծովացեալ մեղաց մերոց,— հայտնում է նա,—եկեալ [է՞]ր թագաւորն Պարսից Շահրուհ յաշխարհս Հայոց յերկրորդ գալստեան իւրոյ։ Եւ աւերեալ քանդեաց զբազում տեղիս, և զբազումս գերեաց, նաև յերկիրն Վասպուրականի և Քաջբերունոյ՝ կին և տղայ ոչ մնաց, այլ զամենայն առեալ տարաւ ի Սամըրղընդ» (էջ 419)։

Շահրուխը այս անգամ ևս պահպանեց Կարա-Կոյունլուների պետությունը։ Նա գահը հանձնեց Իսքանդարի եղբայրներից Աբու-Սեիդին, որը ճանաչեց Թամուրյանների գերիշխանությունն իր նկատմամբ ու ստացավ Շահրուխից հրովարտակ՝ Հարավային Ադրբեջանը, Ղարաբաղն ու Հայաստանը տիրակալելու մասին։

Շահրուխը 1430 թվականի մայիսին թողեց Ադրբեջանը և ուղևորվեց դեպի Խորասան։

Աբու-Սեիդի մասին հրատարակվող հիշատակարաններում կա միայն համառոտ մի գրանցում, ուր ասված է. «ՊՀԸ. (1429). միջին գալն [Շահրուխին], և Բուսաիտն /// ի թա՞[խտն] եդիր» (էջ 506)։

Այս զորաշարժերի ու ավերածությունների ժամանակ, աշխատավոր ժողովուրդը ստիպված էր ծվարել անմատչելի լեռնածերպերում, փախչել իր բնակավայրերից և երկիրը թողնել անմշակ։ Այդ բանի հետևանքով 1431 թվականին Ադրբեջանում ու Հայաստանում առաջ է գալիս սարսափելի սով, որն իր հերթին մեծ թվով մարդկային զոհեր է քաղում։

Շահրուխի Ադրբեջանից հեռանալուց ոչ շատ հետո, նորից հրապարակ է գալիս Իսքանդարը, մեծ ավերածություններ է գործում Հարավային Ադրբեջանում, պարտության է մատնում ու սպանում իր եղբայր Աբու-Սեիդին, և կրկին անգամ իր ձեռքն է առնում իշխանությունը՝ 1431 թվականին։

Օգտվելով կենտրոնական իշխանության թուլացումից և Կարա-Կոյունլու

եղբայրների միջև մղվող միջդինաստիական պայքարից, Հարավային Հայաստանում նորից գլուխ են բարձրացնում քուրդ ամիրները։ Վանի և Ոստանի ամիր Եզդինի թոռներից մեկը՝ Փիրի-Բեկ անունով, որը տիրում էր Ամուկ բերդին, սկսում է մեծ ավերածություններ գործել Վանա լճի արևելյան և հյուսիսային շրջաններում։ 1431 թվականին նա գրավում է Աղթամար կղզին. «Եւ ի գերութիւն վարեաց,— հայտնում է Թովմա Մինասենցը,— զսպասք և զզարդք երկնանման տաճարին, զբոլոր ծովեզերոյս վանորայիցս և գեղորայիցս զաստուածաշունչ մատեանքս և զայլ անաւթք սրբութեանցն, և ցան և ցրրիւ ընդ ամենայն աշխարհ տարածեաց» (էջ 505, այս մասին տե՛ս նաև էջ 433, 434—435 և 463)։

8

1434 թվականին, երբ դեռևս ժողովուրդը շունչ չէր քաշել Շահռուխի երկրորդ արշավանքի և հաջորդող աղետալի իրադարձությունների ծանր հետևանքներից, մի կողմից Իսքանդարի և մյուս կողմից՝ Շիրվանշահ Խալիլուլլահի և Շահռուխի միջև վերսկսվեցին պատերազմական գործողությունները։

Պատերազմի առիթը հետևյալն էր։ Իսքանդարի որդիներից մեկը՝ երիտասարդ Յար-Ալին, որը իշխան էր կարգված «ի յամուրն Տոսպ գաւառի, ի յոտն Վարագայ, ի Վան քաղաքի... և առնէր զանիրաւութիւն հարկապահանջութեամբ ազգիս մեր և տաճկաց»*, գժտվում է իր հոր հետ, և երկու հազար հեծյալ զորամասով փախչում Շիրվան։ Իսքանդարի պահանջը՝ որդուն իրեն հանձնելու մասին անտեսվում է Շիրվանշահ Խալիլուլլահի կողմից, և Իսքանդարը, օգտագործելով այդ առիթը, 1434 թվականին կրկին անգամ արշավում է Շիրվան՝ այն նվաճելու մտադրությամբ։

Այս արշավանքի ընթացքում Իսքանդարի զորքերն անխնայաբար ոչնչացրին Շիրվանի այգիները և զարգացած շերամապահության համար անհրաժեշտ բազա հանդիսացող մեծաքանակ թթենիները։ Մի ամբողջ տարի Իսքանդարը մնաց Շիրվանում և ամայացրեց երկիրը**։

Շիրվանշահ Խալիլուլլահը օգնություն խնդրեց Շահռուխից և վերջինս ձեռնարկեց թվով երրորդ իր արշավանքը Իսքանդարի դեմ։

Շիրվանշահի ու Շահռուխի դաշնակից զորքերը պաշարեցին Երնջակի բերդը. Իսքանդարն ստիպված էր փախչել իր պետության արևմտյան շրջանները։

1435 թվականին շարադրած իր մի հիշատակարանում Թովմա Մեծոփեցին գրում է. «Արդ, գիտելի է, զի մինչ ոչ էր աւարտեալ սուրբ գիրս, անաւրէն թագաւորն Շահրուհ եկն բազում զօրօք յաշխարհս մեր, եւ նստաւ ի վերայ բերդին Երընջակու, եւ թուրքմանն էշ ի ներքին կողմ աշխարհիս Հայոց» (էջ 667)։

Անասելի ծանր դրություն ստեղծվեց հայ ժողովրդի համար։ Շահռուխի արյունարբու զորքերը, շուրջ մի տարի շարունակ բնաջնջում էին խաղաղ բնակչությանը, ավերում ու հրդեհում գյուղերն ու շեները, կողոպտում ու թալանում, գերում ու հավատափոխ անում քրիստոնյաներին։ Ժողովրդի դառն հեծեծանքի աղեկտուր ձայնը լսվում է աշխատավոր գրիչների սրտաճմլիկ հիշատակարաններից։

Մխիթար գրիչը, որին 1437 թվականին հանդիպում ենք հայրենի երկրից

* Թ. Մեծոփեցի, էջ 99։

** Նույն տեղում, էջ 99—100։

փախստական, օտար հորիզոններում, սարսափով վերհիշելով անցյալի դառնությունները, հաղորդում է հետևյալը.

«Եկաւ Շահրուխ իմիրզէն՝ անիծեալ շունն նետողական, բազում և անթիւ զօրաւքն, և աւեր էած աշխարհին Հայոց, և բազումս գերեաց և կոտորեաց, քակեաց և այրեաց և ի հաւատոց էհան։ Եւ մեք տեսաք և վայ կարդաւինք անձանց մերոց և լսելեացս։ Եւ մեք լալագին աչաւք և դառն սրտիւ թողաք զծնող, զեղբայր, զքոյր և զմայր և եկաք մինչև ի Համիթ քաղաքս» և այլն (էջ 471)։

Աստվածատուր գրիչը՝ Կոտայքի Արծնի գյուղից, շատ շատերի հետ մեկտեղ փախել էր իր հայրենիքից ու ապաստան գտել Հյուսիսային Հայաստանում, վրացական պետության հովանու ներքո։ Նա իր հիշատակարանում հայտնում է, որ Շահրուխը իր «անգութ, և անագորոյն, և անողորմ» զորքերով «բաղում և անասելի աւեր ած ի վերայ աշխարհիս Հայոց։ Զի զոր սրով կոտորեաց, և զոր անողորմ գերի վարեաց և կորոյս, և զոր սովամահ եղան, և զոր մահն տարաւ, և զորս գայլք և գազանք կերան և պատառեցին, և մնացեալքն այսր և անդր փախեան բնաջինջ և մտին յաշխարհն Վրաց» (էջ 485)։

Եվ իրոք, հարևան Վրաստանը գլխավոր այն վայրն էր, ուր պատսպարվելու և պաշտպանվելու հույսով դիմում էին Հայաստանի տարբեր շրջաններից կեղեքված ու թալանված հազարավոր աշխատավոր գյուղացիներ։ Դրա պարզ ու անմիջական ապացույցը գտնում ենք հենց հրատարակվող հիշատակարաններում։ Շահրուխի երրորդ արշավանքին անմիջաբար հաջորդող տարիներին (1436—1438) Վրաստանում և այդ ժամանակ Վրաստանի տիրապետության տակ գտնվող հայկական շրջաններում ընդօրինակվում են մեծաքանակ հայերեն ձեռագրեր։

1436 թվականին Թբիլիսիի արվարձան Կրծանիսում Հովհաննես Գանձակեցի գրիչն ընդօրինակում է մի Գանձարան, հաջորդ թվականին Սանահնի վանքում Շարակնոց է ընդօրինակում Տաթևի տարագիր եպիսկոպոս Շմավոնը։ 1438 թվականին Հաղբատում է գտնվում և ընդօրինակում մի Ճաշոց մեզ արդեն ծանոթ Աստվածատուր գրիչը՝ Կոտայքի Արծնի գյուղից։ Նույն՝ 1438 թվականից մեզ հասել են ձեռագրեր ընդօրինակված՝ «ի մայրաքաղաքս Տըփղիս», «յերկիրս Ախալցխոյ», «ի մայրաքաղաքն, որ կոչի Գորի», «ի Մուխրանիս, ի գեղս, որ կոչի Վարդիսուպան» և այլն (տե՛ս էջ 486, 487, 489)։

Հայ տարագիր ժողովրդի անունից է կարծես խոսում այն անանուն հիշատակագիրը, որը 1438 թվականին, ի դեմս վրաց Ալեքսանդր թագավորի (1412—1443), իր երախտագիտությունն է հայտնում Վրաց պետականությանը։ Հանձինս Վրաց թագավորի, նա տեսնում է այն քաղաքական ուժը, որն ի վիճակի է պաշտպանելու հայերին, ուստի և նա երկար կյանք է մաղթում նրան՝ «զաւրաւք և զաւակաւք իւրովք՝ ի վանումն և ի հերքումն անաւրինաց խմբից» (էջ 488)։

Շահրուխի զորքերը իրենց երրորդ արշավանքի ժամանակ ավերում են նաև Սյունյաց նահանգը։ Օրբելյան իշխան Բեշքենը, Սմբատի որդին, որը Կարա-Յուսուֆի օրոք վտարվել էր Սյունիքից, բայց Իսքանդարի ժամանակ նորից վերահաստատվել իր տիրույթներում*, ստիպված է լինում իր ընտանիքով՝ Ռոս-

* Այս վերհաստատությունը, անշուշտ, կատարվել էր Բեշքենի որդի Ռուստամ-գործուն օժանդակությամբ, որը, ինչպես տեսանք, Իսքանդարի պետության մեջ բարձր պաշտոններ էր գրավում։

*տամ որդու հետ միասին, «ազատաւք և ժողովրդաւք» կրկին անգամ ապաստանել Վրաց պետության սահմաններում։ Ալեքսանդր թագավորից նա Լոռիում ստանում է կալվածքներ։*

*Շահրուխի երրորդ արշավանքի ու Սյունիքում գործած ավերածությունների մասին մեծ արժեք են ներկայացնում իր միաբանակիցների հետ միասին Լոռի գաղթած Շմավոն եպիսկոպոսի 1437 թվականին Սանահնում գրած հիշատակարանի տվյալները։ Ստորև մեջ ենք բերում այդ հիշատակարանի պատմական մասից մի ընդարձակ և պերճախոս հատված.*

*«Որդի անակն սատանայի Շահըրուխն, որդի Լանկ-Թամուրին, յազգէն պարսից, ելաւ բազում զաւրաւք և անթիւ հեծելաւք ի կողմանց Հարաւու, և եկեալ տապալեաց զաշխարհս մեր, և արար կապուտ կողոպուտ, և գերի էառ զամենայն, և փախըստական արար զաշխարհակալս մեր՝ զկոչեցեալն Ասկանդար՝ զորդին Յուսուֆին, յազգէն Թորգոմա։ Եւ զաղէտն և զկոծն և զազգի ազգի վիշտ և դառնութիւն ժամանակիս ընդ գրով ո՞ կարէ արկել, զի այս երրորդ գալն էր և աւերելն և եկեղեցեաց մերոց խաւար ածելն։ Եւ վասն աւերման հրեշտակաբնակ աթոռոյն մեր Եւստաթէի սուրբ Առաքելոյն, ղի բնաշինչ աւեր ածին ե, առհասարակ, զտներն այրեցին և զստացուածքն զամենայն կողոպտեցին. և միաբանաւք մերովք փախստական և ցանուցիր եղաք յաշխարհս Վրաց՝ աստուածապարգև իշխանաւս մեր և ամենայն աւրհնութեանց արժանաւոր պարոնաց պարոն Բէշքենաւս, և ազատաւք, և ժողովրդաւք» (էջ 469—470)։*

*Շահրուխի զորքերը իրենց ասպատակությունները տարածում են մինչև Գանձակի և Աղստաֆայի շրջանները։ 1436 թվականին Աղստաֆայի մոտ նրանք հարձակվում են մի խումբ հայերի վրա, որոնք մեծ կարավանով Գանձակից շարժվում էին դեպի Վրաստան, ազատվելու համար Շահրուխի հրոսակախմբերից։ «Եկաք մինչև Աղեստև,— պատմում է թալանվածներից Հոհաննես գրիչը,— հանդիպեցաւ չաղաթին իլչարն՝ բազում հեծեալ. և թալանեցին զմեզ ու զամէն քրիստովնեայքն, և մերկեցուցին, որ քան զոտից ամանն այլ իրք չթողին. այլ ձմերան աւուրք և ցուրտ» (էջ 461)։*

***9***

*Շահրուխը այս անգամ ևս հնարավոր չգտավ վերջ տալ Կարա-Կոյունլուների իշխանությանը։ Նրա զորքերը արշավանքի ընթացքում պաշարել էին նաև Վանի բերդը, ուր գտնվում էր Իսքանդարի Ջհանշահ եղբայրը։ Վերջինս, անհուսալի համարելով իր դրությունը, նպատակահարմար գտավ դուրս գալ բերդից և հնազանդվել Թամուրյաններին։ Շահրուխը Կարա-Կոյունլուների տիրույթները հանձնեց իրեն հպատակություն հայտնած Ջհանշահին և հարուստ ավարով ու բազմաթիվ գերիներով, 1436 թվականի գարնանը թողեց Հայաստանի և Ադրբեջանի սահմանները։*

*Այս դեպքերի մասին ուշագրավ են Հովանես Արծկեցի գրչի տվյալները։ Նա հայտնում է, որ ձեռագիրն ընդօրինակել է «ի դառն և ի չար ժամանակիս, յորում եկն ազգն չաղաթից, թագաւորութեան Շահրուխին, և փախոյց զՍքանդարն, /// և հեծեալն Շահռուխին եկն ի վերայ ամրոցին Շամիրամայ, որ է բերդն Վանայ, զի /// անդ է՞ր] եղբայրն Սքանդարին Ջհանշահուն, և նա ել ի*

բերդէն և գնաց առ Շահրուխն, և ներեաց զնա, և ետ զԹախտն Թամանովս, և գնաց» (էջ 484)։

Կարապետ գրիչը ևս համառոտ արձանագրում է այդ դեպքը այսպես. «Ջիհանշայն գնաց հնազանդութեամբ մօտ ի Շախրուխն, և նստաւ նորին հրամանաւ ի Թաւրէզ» (էջ 457)։

Իսքանդարը, իր փախուստից (1435) հետո, Կարա-Կոյունլուների պետության արևմտյան շրջաններում պատրաստություններ էր տեսնում դիմադրություն կազմակերպելու համար։ Նույն 1435 թվականին, ընդամենը երեք հազարանոց բանակով, Էրզրումի մոտ նա պարտության է մատնում Շահրուխի դաշնակից Ակ-Կոյունլուների մի քանի անգամ իր ուժերից գերազանցող բանակին։ Ճակատամարտում սպանվում են Կարա-Յուլուք Օսմանը, նրա որդին և շատ անվանի մարդիկ։

Կարապետ գրիչը այս դեպքերի մասին գրում է. «Իսքանդարն փախստական գնաց ի ներքին աշխարհն և սպան զՂարայ-Օթմանն և զորդին և զայլ բազումք ընդ նմա» (էջ 457)։

Այնուհետև, հալածվելով Շահրուխի որդի Ջոնգայի գլխավորությամբ գործող զորաբանակից, Իսքանդարը ստիպված էր փախչել Սեբաստիայի կողմերը։ Իսկ երբ Շահրուխն իր զորքերով թողեց Հայաստանն ու Ադրբեջանը, Իսքանդարը, օգնություն ստանալով օսմանյան թուրքերից, կրկին անգամ իշխանությունը վերագրավելու փորձ կատարեց։ Նա, ավերելով Սեբաստիայի, Թոխաթի, Խարբերդի ու Դերջանի շրջանները, գերեց ու տեղահանեց մեծ թվով հայերի և նրանց՝ մերկ ու քաղցած, քշեց Արարատյան և Սյունյաց նահանգները, այնտեղ բնակեցնելու համար։ Ճանապարհին շատերը մահացան։

«Եւ [Իսքանդարն] գնաց մինչև Սևաստ,— հայտնում է այս մասին ժամանակակից Սարգիս գրիչը,— և բազում գաւառք աւերեաց, և զբազումս յազգէ Հայոց գերի արար և եբեր, բազումք ի մերկութենէ և ցրտոյ ի սարին մեռան, և բազումք սովամահ եղեն» * (էջ 486)։

Այս նույն ժամանակ Արճեշի ու Արծկեի վրա ասպատակություններ է կատարում մեզ արդեն ծանոթ քուրդ ամիր Փիրի-Բեկը կամ Փիր-Ալին, որի ձեռքին էր գտնվում Ամուկ բերդը։ Նա «հանապազ ելանէր ի բերդէն և գայր ի վերայ երկրիս Արճշայ և Արծկայ. չարչարէր, զոմանս սպանանէր և զոմանց զտղայսն գերի առնէր» և այլն (էջ 484)**։

1437 թվականին, որոշ ուժեր հավաքելով, Իսքանդարը վերջին փորձը կատարեց իշխանությունը վերագրավելու ուղղությամբ։ Սկզբում նա որոշ հաջողություններ ունեցավ և վերագրավեց պետության արևմտյան շրջանները։ Մեզ արդեն ծանոթ Հովանես Արծկեցի գրիչը հայտնում է նույնիսկ, որ «Սքանդարն դարձաւ և փախոյց զեղբայրն և նստաւ ի թախտն» (էջ 484)։

---

* Թ. Մեծոփեցու «Պատմութեան» տվյալներով, հենց միայն մի ցուրտ գիշերվա ընթացքում, տեղահանված ու գաղթեցվող հայ բնակչությունից մահացել են յոթ հարյուր հոգի (էջ 105)։

** Հմմտ. Թ. Մ ե ծ ո փ ե ց ի, էջ 110—111։ Մեծոփեցին հայտնում է նաև, որ հետագայում այդ նույն Փիր-Ալին, «տէր և իշխան» կարգվելով իրենց աշխարհում (այսինքն՝ Թաշբերունիքում)՝ «ձգեալ է զամենայն հաւատացեալս ի ներքոյ հարկապահանջութեան՝ մինչ զի ամենայն մարգագլուխ 40 թանկայ առնուն, թող զբահրայ եւ ղշարեք՝ ի ծերոց եւ ի տղայոց, յորբոց եւ յայրեաց, ի կուրաց՝ յազքատաց եւ ի տնանկաց։ Եւ ամենեքեան կենդանի մեռեալ եւ սովեալ կան» (էջ 111)։

Սակայն դրությունը շուտով փոխվեց։ Իսքանդարի հրամանատարության ներքո գործող Կարա-Կոյունլուների զորախմբերը, հոգնած ու ձանձրացած անվերջ ու հարատև արշավանքներից և պատերազմներից՝ լքեցին նրան և անցան Ջհանշահի կողմը. Իսքանդարը պատսպարվեց Երնջակի անառիկ բերդում, որտեղ և սպանվեց իր որդի Շահ-Կուբադի ձեռքով։

Ժամանակակից Սարգիս գրիչն այդ մասին գրում է. «Եւ ինքն (Սքանդարն) գնաց ի վերայ Ջհանշին, և ի նորա զաւրութենէն հեծելն ամէն յեղբայրն դարձաւ, և նա փախեաւ ի յեղբաւրէն՝ ի Ջհանշահէն, և ամրացաւ ի յամուրն Երնջակայ, և ընկալաւ զհասն ի յափտենական տանջանացն» (էջ 486)։

Նույն տվյալը համառոտակի արձանագրում է նաև Կիրակոս գրիչը 1438 թվականին Բաղեշում շարադրած հիշատակարանում. «Յայսմ ամի (իմա՛ գրելուց ամիսներ առաջ՝ այսինքն 1437-ին) Սքանդար... սպանաւ ձեռամբ որդւոյ իւրոյ, և նստաւ ի թախթն Ջհանշէն» (էջ 487)։

Եվ սակավ ժամանակով, ինչպես հաղորդում է Թովմա Մեծոփեցին իր «Պատմության» մեջ, երկիրը խաղաղացավ, որովհետև նրա կենդանության օրոք, Խորասանից սկսած մինչև Եգիպտոս, աշխարհը վրդովման ու ալեկոծման մեջ էր. «Ի զՊՀ. (1421) թուականէն ի հետ, մինչ ի մահ սորա (1437) ամենայն երկիր ի վրդովման կայր և ի խռովութեան»,—գրում է նա *։

## 10

Ջհանշահը իշխեց մինչև 1467 թվականը։

Ժամանակակից գրիչներից շատերը, ըստ երևույթին, համեմատելով Ջհանշահին իր նախորդի հետ, սրան անվանում են «խաղաղարար», կամ «խաղաղասէր» թագավոր։ Այդ մասամբ ճիշտ է. Ջհանշահի թագավորության օրոք Հայաստանի տերիտորիայի վրա տեղի չունեցան մեծ մասշտաբի այնպիսի արշավանքներ ու ասպատակություններ, իրենց աղետաբեր ու կործանարար հետևանքներով, ինչպիսիք լինում էին Իսքանդարի տիրապետության համարյա բոլոր տարիներին։ Սակայն Ջհանշահի ժամանակ ևս պատերազմները անպակաս էին։

1440 թվականին Ջհանշահը մեծ արշավանք ձեռնարկեց դեպի Վրաստան, որի թագավոր Ալեքսանդրը չէր ներկայացել Ջհանշահին իր հպատակությունը հայտնելու համար և հրաժարվում էր սահմանված հարկը վճարելուց. «Զի ոչ եկն առ նա յոգչոյն խաղաղութեան և ոչ ետ զսահմանեալ հարկս թագաւորական»,— գրում է Հովհաննես գրիչն իր հորինած վկայաբանական դրվածքի մեջ (տե՛ս էջ 507 *)։

Ջհանշահը «ժողովեալ աւելի քան զքսան հազար ոգիս, առեալ գնաց ի տունն Վրաց»։ Կարա-Կոյունլուների զորքերը նախ գրավեցին Թբիլիսին։ Վերոհիշյալ Հովհաննեսը այդ առթիվ գրում է. «Եւ նոցա երթեալ ի քաղաքն Տփխիս՝ քանդեցին, աւերեցին և զքաղաքն հրոյ ճարակ տուին, և զամենայն եկեղեցիս ի հիմանց տապալեցին»։

Վրաստանի հարավային շրջաններում Ջհանշահը կոտորել տվեց մոտ ութ հազար և գերեվարեց ավելի քան ինը հազար մարդ**, գերազանցապես հայերից։

---

* Թ. Մեծոփեցի, էջ 108։

** Գերվածների ու սպանվածների թվի մասին հիշատակագիրների հաղորդած տվյալների մեջ կա որոշ անհամապատասխանություն։ Վերոհիշյալ թվական տվյալները

Այնուհետև նրանք պաշարում են Սամշվիլդե բերդը։ Երկու ամիս* ապարդյուն կռվելուց հետո, Կարա-Կոյունլուները հաշողվում է խաբեությամբ գրավել բերդն ու դաժան հաշվեհարդար տեսնել բնակչության նկատմամբ։ Սամշվիլդեի աղետի լուրը արագ տարածվում է ողջ Հայաստանում, անմեղ զոհերի համար սգում է հայ ժողովուրդը Լոռիից սկսած մինչև Վասպուրական։

1441—1443 թթ. և հետագա տարիներին շարադրված հիշատակարաններում Սամշվիլդեի կոտորածի մասին կան բազմաթիվ կարևոր տվյալներ։ Ծանոթանանք դրանց մի մասի հետ։

Հաղբատի վանքում 1441 թվականին ընդօրինակած ավետարանի հիշատակարանում անանուն մի գրիչ հայտնում է.

«Զի յայսմ ամի ղանն Դայվրիժու Ջահանշահ... ելեալ բազում զաւրաւք և անթիւ հեծելաւք մահմետականաւք՝ եկն ի Վերաստում, ի վերայ Վրաց, զի ոչ հնազանդէին ազգն Վրաց ղանին Թավրիժու... Եւ իբրև զկատաղած գազան յարձակեցաւ ի վերայ Հայոց, և սուր եդեալ ի վերա, և սպանին իբրև հազարաց հնգից անողորմ. և աւելի քան զվաթսուն կրաւնա[ւ]որ և քահանայ սրով և քարիւ քարկոծեցին և սպանեցին, և բազում եկեղեցիք ի հիմանց տապալեցին, և զբազում մանկունս ի մարցն խլէին և ընդ քարիւ հարկանէին, և մայրն զայն տեսանէր. և զբազում մանկտիս անմեղս մերկացուցանէին և սրով խոցոտէին, և տղայն ճչէր և աղաղակէր և լայր, և անաւրէնքն ծիծաղէին...։ Բազում կանայք զտղայն ի գիրկն առնէին և քար ի վայր ան[կ]անէին։ Եւ Գ. (3) ամիս նստան ի վերա ամուրին Սամշուլտու, և յորժամ խաբէութեամբ առին զբերդն, թէ որպէս յափշտակեցին զինչսն կամ որպէս բաժանեցին զայրքն ի կանանցն, կամ որպէս խլէին զորդ[ի]քն...» (էջ 514—515)։

Հիշատակարանի շարունակությունը չի պահպանվել, սակայն պակասն առանց թերության լրացնում է Ովհաննես Թմոքվեցի գրիչը, որին 1442 թվականին հանդիպում ենք Արագածոտն գավառի Սերկևլի գյուղում, գյուղի հայ տերերից մեկի՝ պարոն Շալուեի համար ձեռագիր ընդօրինակելիս։

Շատ կողմերով հետաքրքիր իր հիշատակարանի մեջ Ովհաննես Թմոքվեցին Սամշվիլդեի աղետի մասին գրում է հետևյալը.

«Եւ ի սոյն ժամանակի եղև կոտորումն անմեղ քրիստոնէիցն Սամշուիլդոյ...։ Վասն զի շարժեցան ի սատանայէ ազգն Սկիւթացւոց Ջահանշահ միրզէն, և առ ընդ ինքեան զբազմութիւն լեգէոն զաւրացն, և նստաւ ի վերա բերդին Դ. (4) ամիս, և ի նեղութիւն էարկ զնոսա, զի բազումք մեռան ի վշտաց։ Եւ անաւրէնքն երդուեցան յաստուած կենդանի, թէ առնել չենք ձեզ վնաս։ Եւ նոքա վստահացեալք ի սուտ երդումն նոցա՝ բացին զդուռն բերդին, և անաւրէնքն դիմեցին ի ներքս և սուր ի վերա եդեալ կոտորեցին անխնայաբար աւելի քան Վ. (3000)։ Եւ զողբումն և զաղիողորմ և զկսկիծ դառնութեան ոչ

---

ստացել ենք հրատարակվող մի շարք հիշատակարանների (տես էջ 504, 514, 532, 546, 644 և այլն) և Թ. Մեծոփեցու «Պատմության» մեջ (էջ 120) եղող թվական տվյալների քննության ու համադրության ճանապարհով։

* Տարբեր տվյալներ են պահպանվել նաև բերդի պաշարման տևողության մասին։ Ոմանք 3 և նույնիսկ 4 ամիս են ասում։ Թ. Մեծոփեցու տվյալներով պաշարումը տևել է մեծ զատկից մինչև պենտեկոստեի օրը, այսինքն 50 օր, իսկ Հովհաննեսի շարադրած «Վկայաբանության» մեջ պաշարման տևողությունը հաշված է ընդամենը 40 օր։

կարեմ ընդ գրով արկանել, ղի զոմանս սրով խո[ղ]խողեցին, զոմանս քարկոծեցին, զոմանս բրաւք ջարդեցին, զոմանց զգլուխն հատին և Գ. (3) մինիրա շինեցին*։ ... Եւ էր թիւ գերելոցն աւելի քան Ք. (9000), որ բաժանեցին ի վերայ իւրեանց...։ Զոմանս ի նոցանէ յարեելս տարան՝ ի Խորասան, զոմանս յարևմուտս՝ ի Հոռոմաստան, զոմանս ի հարաւ՝ ի յԱրաբստան, զոմանս հիւսիս՝ ի Լակըստան...» (էջ 532)**։

Շամշվիլդեի աղետից երկու տարի հետո՝ 1442 թվականին, Ջհանշահը Շատախի կողմերում գրավում է «զանառիկ բերդն Ջըռել և զՋուլամերկ» (էջ 536)։

1445 թվականին նա մեծ բանակով արշավում է Ախալցխա։ Ժամանակակից գրիչ Կարապետը, Վանում շարադրած հիշատակարանում հայտնում է, որ Ախալցխայում Ջհանշահը «բազում քրիստոնեայս գերի արար, զոր տեսաք աչօք մերովք զխիղճ և զկսկիծ սոցա» (էջ 584)։ Ցավոք, այլ մանրամասնություններ այս արշավանքի մասին չեն պահպանվել։

1446 թվականին Ջհանշահը գրավում է Բաղդադը։ Նրա այս արշավանքի մասին տվյալներ է հաղորդում Հովսեփ գրիչը։ «Եւ հրաման արարեալ,—գրում է նա Ջհանշահի մասին,— ժողովեաց զամենայն Թորգոմացիս յարևելից (այսինքն՝ Կարա-Կոյունլու թուրքմեններին), և բազում զօրօք գնաց ի վերայ Բաղդատայ, և կռիւ եդեալ, և ոչինչ կարաց առնել, բայց ի զօրականացն կոտորեցաւ ԲՌ. (2000) այր ու Գճ. (300) պարոն» (էջ 595)։ Հովսեփ գրչի հիշատակարանի դրությունից քիչ հետո, նույն 1446 թվականին, Բաղդադը գրավվում է։ Այդ մասին են վկայում Թովմա Մինասենցը և Վարդան գրիչը. վերջինս արձանագրում է, որ «յամի ՊՂԵ. (1446)... էառ (Ջհանշայն) զանառիկ քաղաքն զԲաղդատն» (էջ 597)։

1449 թվականին Ջհանշահը հարձակվում է Թամուրյանների տիրույթների վրա։ Հովհաննես գրիչը հակիրճ խոսքերով սոսկ նշում է միայն, որ նա «գնաց ի Հրէ (Հերաթ) ու ի Խորասան» (էջ 639)։

1450 թվականին Ջհանշահը մտադրվում է վերագրավել Երզնկան և հարևվան շրջանները Ակ-Կոյունլուներից, որոնք տեր էին դարձել այդ շրջաններին Կարա-Յուսուֆ Օսմանի ժամանակ, 1425 թվականին։ Այս նպատակով նա 60 հազարանոց բանակով մտնում է Ակ-Կոյունլուների պետության սահմանները, գրավում է Երզնկան, Կամախի շրջանից գերում է 10 հազար բնակչություն, ավերում է Ներքին և Վերին Դերջանները, Բաբերդը, Կեղին, Սատաղը և այլ շրջաններ, այնուհետև փորձում է նաև գրավել Ակ-Կոյունլուների նշանավոր քաղաքները՝ Ամիթը, Արզնին ու Մերտինը, բայց անհաջողության հանդիպելով՝ հետ է վերադառնում։ Արշավանքի ընթացքում Ջհանշահի զորքերը թալանում, սպանում են անպաշտպան բնակիչներին, բռնաբարում կանանց և այլն։

---

* Թ. Մեծոփեցին հայտնում է, որ այդ երեք մինարեները (բուրգերը) շինվել են 1664 մարդու գլուխներից։

** Մեզ արդեն ծանոթ վարքաբանական գրվածքի հեղինակ Հովհաննեսը Սամշվիլդեում սպանվածների թիվը մեկ հազար է հաշվում («Սպանին ի նոցանէ աւելի քան զՌ. հոգի»), իսկ գերվածներինը՝ ավելի քան 10 հազար. «Եւ հրամանս տուեալ,—գրում է նա,—չար բռնաւորն՝ զամենայն կանայս և զորդիս նոցա գերի առնուլ՝ աւելի քան զԺՌ. (10000) ոգի, և ցրուեալ յամենայն կողմանս Տաճկաստանեաց՝ ի Մսր և ի Խորասան» (էջ 508*)։

Այս արշավանքի մասին գրել են մի շարք ժամանակակից հիշատակագիրներ՝ Մարտիրոս եպիսկոպոսը Թորդանի վանքում, Գրիգոր գրիչը Երզնկայում, ձեռագրի ստացող Ղազարը Տիվրիկում և ուրիշները։ Սակայն, ամենից բովանդակալից տվյալները գտնվում են Դավիթ Խարբերդցու 1453 թվականին շարադրած հիշատակարանում, որի մեջ նա խոսում է նաև անցյալ տարիների պատմական անցուդարձերի մասին։

«Ի թուականութեան Հայոց ՊՂԹ. (1450),— գրում է նա,— ելեալ սուլթանն Թավրիզու Ջիհանշահ անուն, բազում և անթիւ զաւրաւք՝ ԿՌ. (60000) — աւ, ելեալ էառ զԵզնկայն յազգէն Թուրքմանաց, որ էր ազգաւ Պայընտուր (խոսքը Ակ-Կոյունլուների մասին է) և կալեալ զիշխանն Եզնկա քաղաքին *, և Խ. (40) անուանի ամիրայ զհետ նորա, և տարեալ յարևելս կորուսին։ Եւ Կամխայ աստուածաշէն երկիրն ևս առհասարակ գերեաց իբրև ամձինս ԺՌ. (10000)՝ ընդ այր և ընդ կին, թող զայն, որ մաշեցան. և զՆերքին Դերջանն, և Վերին Դերջանն, զԲաբերդ, զԿեղի, զԿոճակն, և զԳայլգետն, զՇիռեան, զՍատաղ առհասարակ գերեաց...։

Եւ գնացեալ նստան ի վերայ Ամթայ և ի վերայ Արղնու և ի վերայ Մէրտընու... և ոչինչ կարաց առնել կամ զԱրղնի, կամ զԱմիթ, կամ զՄէրտին, այլ դարձաւ յաշխարհ իւր»**։

Ջհանշահը մի շարք արշավանքներ է կատարում նաև իր թագավորության հետագա տարիների (1451—1467) ընթացքում, բայց դրանց մասին առիթ կունենանք խոսելու «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» ժողովածուի երկրորդ մասի առաջաբանում։

Այսպիսով, ակնհայտ է դառնում, որ «խաղաղարար» Ջհանշահը, աննշան չափով միայն տարբերվելով իր եղբորից, Գալուստ գրչի խոսքերով ասած, «իբրև էառ զիշխանութիւնն... սկսաւ սայ աւերել և տապալել զգաղում քաղաքս և զգաւառս, և ամայի և անմարդաբնակ առնել» (էջ 537)։

Ջհանշահի ժամանակ հարկապահանջությունը հպատակ ժողովուրդներից անասելի ծանրացավ։ Թ. Մեծոփեցին հաղորդում է, օրինակ, որ Սամշվիլդեի ավերումից հետո, մահմեդական բարձրաստիճան հոգևորականության խորհրդով Ջհանշահը հայերից հավաքվող հարկերն ընդհանրապես, և մասնավորապես խարաճը անչափ բարձրացրեց ***։

Հարկերի ծանրացման մասին նշումներ ունեն նույնիսկ այն գրիչներն ու հիշատակագիրները, որոնք Ջհանշահին «խաղաղասեր» են անվանում։

Ոմն Թումա գրիչ, 1444 թվականին հայտնում է, որ ձեռագիրն ընդօրինակել է «ի թագաւորութեան Ջհանշահին, որ տիրեաց երկու թախտի՝ Հայոց և Ասորոց, և արար խաղաղութիւն ոչ սակաւ, բայց հարկապահանջութիւնն բուռն և ծանր էր ի վերայ քահանայիցս» (էջ 567)։

Սա խոսում է միայն քահանաների մասին, որոնք, անտարակույս, տնտեսական ավելի բարենպաստ վիճակում են գտնվել, քան աշխատավոր գյուղացիությունը։

---

* Երզնկայի իշխանի անունը, ինչպես հայտնում է Ղազար Տիվրիկեցին, եղել է «Խութլուպակ» (էջ 645)։

** Հիշատակարանը հրատարակված է Գ. Սրվանձտյանի «Թորոս Աղբար»-ի Բ. հատորում, էջ 379—381։

*** Թ. Մեծոփեցի, էջ 124։

*Նույն այս թվականին Թովմա Մինասենցը իր ժամանակը «դառն և չար» կոչելով, հայտնում է, որ տիրողները «տառապեցուցանեն և նեղեն զազգս քրիստոնէից ազգի ազգի կեղեքմամբ, և անողորմ հարկապահանջութեամբ, և յաշխարհէ յաշխարհ վրտարմամբ իբր զգերի՝ տամբ և ընդանեաւք» (էջ 563)։*

*Եվ այսպես, բազմաթիվ հիշատակագիրներ, Ջհանշահի իշխանության բոլոր տարիներին, միմյանց նման արտահայտություններով, խոսում են հարկային անհասելի ծանր լծի և ժողովրդի դառն վիճակի մասին. մեկը գրում է, որ «նեղիմք յանաւրինաց և յանիրաւ պահանջողաց», մյուսը՝ «յոյժ հարկապահանջութեամբ տառապի ազգս Հայոց», մի երրորդը՝ «զրկեն զազգս Հայոց և քահանայից ի յընչից իւրոց և դատեն անողորմ», մի չորրորդը աղերսում է աստծուն կործանել Ջհանշահին, «որ առաւել հարկապահանջութիւն խնդրէր ի քրիստոնէից» և այլն, և այլն։*

### *11*

*Ջհանշահի թագավորության օրոք՝ 1441 թվականին, հայ եկեղեցու կյանքում տեղի ունեցավ կարևոր մի իրադարձություն՝ կաթողիկոսական աթոռը Սսից տեղափոխվեց էջմիածին։*

*Կաթողիկոսական աթոռի Արևելյան Հայաստան տեղափոխելու ուղղությամբ հայ հոգևորականության որոշ շերտեր, հատկապես Սյունյաց մետրոպոլիտությունը, գործունեություն էին ծավալել դեռևս ԺԴ. դարի վերջերին։*

*Այդ պլանների արգասիքը պետք է համարել Ստ. Օրբելյանի «Ողբ ի սուրբ Կաթուղիկէն» պոեմը, որի մեջ հեղինակը բաղձանք է հայտնում էջմիածնում վերականգնված տեսնել «զաթոռ թագաւորին և զգասազան պատրիարգին»։*

*Կաթողիկոսական աթոռի Արևելյան Հայաստան տեղափոխելու ուղղությամբ աշխատանքը ավելի մեծ ծավալ է ընդունում Կիլիկյան հայկական պետականության թուլացման և անկման շրջանում՝ ԺԴ. դարի երկրորդ հիսնամյակում։*

*Գրիգոր Տաթևացին հայտնում է, որ Հովհան Որոտնեցին (մհ. 1386 թ.) իր ժամանակ կամեցել է «սուրբ աթոռն փոխել... ի յԱղուանս, որ ճշմարիտ կաթողիկոս է և սուրբ աթոռն Գրիգորիսի»։ Նա հայտնում է նաև, որ «սրբոյն Ռստակիս[ի] աջն առ մեզ է և Գեղարդն սուրբ և այլ բազում սրբութիւն»*։*

*Մենք արդեն առիթ ունեցանք նշելու, որ 1432 թվականին, կաթողիկոսական աթոռը էջմիածին տեղափոխելու պաշտոնական ձեռնարկումից և Կիրակոս Վիրապեցուն կաթողիկոս ընտրելուց ինը տարի առաջ Սյունյաց իշխան Բեշքենի որդի Ռուստամը էջմիածնին էր «վաճառել» վեց մեծ գյուղ։ Այս մի վճռական քայլ էր Սյունյաց իշխանների կողմից էջմիածինը կաթողիկոսական նստավայր դարձնելու ուղղությամբ։ Նրանց կողմից առաջադրված կաթողիկոսացուն՝ Գրիգոր Մակվեցին, որի անունով էր ձևակերպված «վաճառված» կալվածքների հանձնումը վանքին, մինչև Կիրակոս Վիրապեցու ընտրությունը մի հիշատակարանում կոչվում է «հայրապետ սուրբ էջմիածնի» (էջ 522)։*

*Կաթողիկոսական աթոռի էջմիածին փոխադրելու գործի նախաձեռնողները, անշուշտ, ունեին քաղաքական որոշ հեռանկարներ։ Պատմական Հայաստանի սրտում՝ Արարատյան դաշտում, վերահաստատված «հայրապետական*

---

* Գրիգոր Տաթևացի, «Բանք գեղեցիկ և յոյժ պիտանի վասն աթոռոյն Աղթամարայ», Մատենադարան, ձեռագիր № 4669, էջ 199ր—200ր։

աթոռը» գոյություն ունեցող պայմաններում պետք է նպաստեր համահայկական կենտրոն ստեղծելու գործին, պետք է որոշ չափով շաղկապեր միմյանց հայ ժողովրդի տարբեր բռնապետական իշխանությունների տակ հեծող հատվածները։

Անշուշտ, Էջմիածնի վանքը տնտեսապես ապահովող աշխարհիկ ու հոգևոր ֆեոդալների համար խորթ չէին նաև շահադիտական որոշ ակնկալություններ։ Կաթողիկոսական աթոռը հսկայական հասույթներ էր ձգելու Հայաստանի տարբեր նահանգներից, ինչպես և աշխարհով մեկ ցրված բազմաթիվ հայկական գաղթավայրերից, և այդ հասույթներից անմասն չէին մնալու նաև գործի նախաձեռնողները։

Էջմիածինը հայ եկեղեցու կենտրոն դարձնելու գործը շահագրգռում էր նաև երկրի տերերին։ Արարատյան նահանգի տիրակալ Յաղուբ-Բեկը քաջ գիտակցում էր այդ քայլի քաղաքական ու տնտեսական նպաստավորությունն իր համար և ամեն կերպ օժանդակություն էր ցույց տալիս գործի կազմակերպիչներին։ Կաթողիկոսական ընտրությունների կապակցությամբ Երևան հավաքված հոգևորականներին, ֆեոդալներին ու ազատներին Յաղուբ-Բեկը Էջմիածին է ուղևորում իր զորքի պաշտպանությամբ, «փողով և թմբկով և զուռնով»։

Սսի աթոռի դեմ կազմակերպված շարժումը համակրություն էր վայելում նաև հայ աշխատավոր ժողովրդի լայն շերտերում, որովհետև Սսի կաթողիկոսները և նրանց կողմից կարգված եկեղեցական պաշտոնյաները անխնա կեղեքում ու թալանում էին ժողովրդին։ Նրանք հոգևորական էին ձեռնադրում միայն նրանց, ովքեր «տեարք էին ընչից»*, որովհետև «արծաթով տային զշնորհս հոգւոյն սրբոյ»։ Նրանք միևնույն թեմի վրա նշանակում էին երեք, երբեմն չորս եպիսկոպոսներ, որոնք «ի վերայ միմեանց յարուցեալ՝ զանօրէնս և զանհաւատս և զսուտ քրիստոնեայս բարեկամս արարեալ գայթակղութեամբ զաշխարհս մեր կործանեցին»։

Այդ եպիսկոպոսները անց էին կացնում շռայլ ու անբարոյական կյանք՝ «անառակութեամբ և արբեցութեամբ և պիղծ վարուք շրջէին», և դրամով գնած լինելով իրենց պաշտոնը, միջոցի առաջ կանգ չէին առնում հնարավորին չափ կարճ ժամանակում հարստություն դիզելու համար, որովհետև շատ չանցած նրանց փոխարինելու էր գալու այդ նույն թեմը ավելի մեծ գումարով գնած մի այլ եպիսկոպոս։

Հրատարակվող հիշատակարանների մեջ կարևոր տվյալներ կան Գր. Լուսավորչի աջի Սսից գողացվելու և ի վերջո Էջմիածին բերվելու, 1441 թվականին տեղի ունեցած կաթողիկոսական ընտրության, ինչպես և դրան հաջորդող իրադարձությունների մասին։

Կարապետ գրիչը, օրինակ, 1442 թվականին շարադրած իր հիշատակարանում արձանագրում է, որ «ի յայսմ ամի եղև ժողով եպիսկոպոսաց և վարդապետաց, որոց էր գլուխ մեծ րաբունապետն Թովմայ և Յովհաննէս վարդապետն. և եդին զտէր Կիրակոս յէջմիածին՝ կաթողիկոս ամենայն Հայոց, և նոր նորոգեցաւ աթոռ սուրբ Լուսաւորչին Գրիգորի» (էջ 536, տե՛ս նաև Ռհաննես Թմոքվեցու ընդարձակ հիշատակարանը, էջ 531—532)։

---

* Այս և հաջորդ երեք փոքրիկ մեջբերումները քաղված են Թ. Մեծոփեցու «Յիշատակարանի» «Վասն միաբանութեան հայոց և կաթողիկոս ձեռագրութեան» գլխից (Հրատ. Կ. Կոստանյանցի, Թիֆլիս, 1892, էջ 51—61)։

*Սրանով մենք ավարտեցինք ԺԵ. դարի առաջին հիսնամյակի ընթացքում տեղի ունեցած կարևոր իրադարձությունների և աղետաբեր ու հարատև պատերազմների համառոտ տարեգրությունը։*

*Ինչպես արդեն ասացինք, պատմական այս համառոտ ակնարկի հիմնական նպատակն է եղել որոշ չափով դյուրացնել ընթերցողների աշխատանքը, որպեսզի անհրաժեշտության դեպքում ամեն ոք հնարավորություն ունենա շաղկապելու հիշատակարանների հաղորդած տվյալները Մերձավոր Արևելքի պատմության ժամանակակից դեպքերին։*

*Այս ակնարկով նպատակ ենք ունեցել նաև ցույց տալ հայ ժողովրդի անասելի ծանր վիճակը Լանկ-Թամուրի արշավանքների և դրանց հաջորդող Կարա-Կոյունլու քոչվորական ցեղերի մղձավանջային տիրապետության ժամանակաշրջանում։*

*Պատկերը լիակատար դարձնելու համար, անհրաժեշտ է համառոտ թվարկումով շարադրել նաև ԺԵ. դարի առաջին հիսնամյակի ընթացքում տեղի ունեցած բնական աղետների՝ մորեխի, մահտարաժամի, ինչպես և սղության տարիների ու համատարած սովերի սրտաճմլիկ տարեգրությունը՝ քաղված հրատարակվող հիշատակարանների տվյալներով։*

*ԺԵ. դարը սկսվում է սաստիկ սովով։ 1041 թվականին Ասորիքի կողմերից գալիս է «սաստիկ և թանձր» «չորսթևեան» մորեխ (էջ 3), որը ավերում է «զբազում տեղիս և գաւառս» (էջ 17). առաջ է գալիս «սով սաստիկ ընդ ամենայն երկիր, որ բերէր կապիճ հացն Մ. (200) դրամ» (էջ 8)։*

*Ժողովրդի տնտեսական ծանր վիճակի, անընդհատ զորաշարժերի ու գաղթերի հետևանքով ԺԵ. դարի ընթացքում մի շարք անգամ երկրում տարածվում են սուր-վարակիչ հիվանդություններ՝ զանազան «մահտարաժամեր», «մանկամահեր» ու «անասնամահեր»։*

*1404 թվականին Ստեփանոս գրիչը Ուշտունիքի Տշող գյուղում ընդօրինակած ձեռագրի հիշատակարանում հայտնում է, որ «եղև մահտարաժամ սաստիկ ի վերայ երկրի», որին զոհ է գնում նաև գրչի հայրը (էջ 43)։*

*Շատ ավելի մեծ զոհեր է տանում 1407 թվականի մահտարաժամը, որի բռնկման օջախը, ըստ երևույթին, Սյունիքն է եղել։ Այդ մասին տվյալներ են հաղորդում երեք տարբեր հիշատակագիրներ։ Լսենք դրանցից Հոհաննես գրչին. «Զի այսմ ամի,— հաղորդում է նա,— մահտարաժամ շարժեցաւ ի վերայ աշխարհի, զողայոց վերջք արար, որ բերանով չէ պատմելի, ի քսանէ, ի երեսնէ, ի յսնէ թէ մին տզ[այ] մնաց՝ ԺԵ. (15) տարոյ ի վեր, պակաս՝ մեռաւ» (էջ 82, տե՛ս նաև էջ 75, 80)։ Ըստ երևույթին, այս մահտարաժամը եղել է ծաղկի կամ կարմրուկի ուժեղ բռնկում։*

*1413 թվականին մահտարաժամը հնձում է հատկապես մատաղհասակ երեխաներին. «Գծագրեցաւ սուրբ մատեանս,— հայտնում է ոմն Հովհաննես գրիչ Խիզանում,— ի դառն և բազմավրդով ժամանակիս, որ մահտարաժամ է անկեալ վասն մեղաց մերոց յաստուածասաստ բարկութենէն, և կոճոպէ և յափշտակէ զմատաղ մանկունս ի գրկաց ծնողացն և մորմոքեցուցանէ զծնողս և զեղբայրս» (էջ 152)։*

*Երեք տարի անց՝ 1410 թվականին սաստիկ մահտարաժամ է բռնկվում Եկեղյաց գավառում։ Այդ մասին տվյալ հաղորդող Գրիգոր գրիչը, որն աշխա-*

տում էր Երզնկային մերձ գտնվող Կապոսի վանքում, հրաժարվում է մանրամասնություններ հաղորդելուց, «Ո՞վ կարասցէ ընդ գրով արկանել զաղէտս տարակուսանացս»,— բացագանչում է նա (էջ 186)։

1419 թվականին, Շահրուխի և Ակ-Կոյունլուների միատեղ ձեռնարկած արշավանքի ժամանակ, սովը, մահտարաժամը և մորեխը հանդես են գալիս միասին։ Ստեփանոս Ռշտունցի գրիչը հայտնում է, որ ձեռագիրն ընդօրինակել է «ի դառն ժամանակիս, որ... եկն ազգի-ազգի պատուհաս ի վերայ երկրի՝ սով, սրածութիւն, մահտարաժամ։ Եւ յայսմ ամի եկն մարախ բազում ի յաշխարհս մեր, և եկեր զամենայն բոյս դալարի, և եղև նեղութիւն մեծ, յորում էր թիւս Հայոց ՊԿԸ. (1419)» (էջ 226)։

Մորեխը, որ շարժվում էր արևելքից, տարածվում է Սալմաստից մինչև Էրզրում, այսինքն՝ համարյա ողջ պատմական Հայաստանում. «Թանձրախիտ ծածկեաց զդաշտ և զլերինս, զսար և զձոր, միահաղոյն, ի Սալմաստայ մինչ յԱրզրումն, և կերաւ շատ վաստակ ի բազում տեղիս, յորմէ սաստկեցան մարգիկք, և եղև սղութիւն»,— տեղեկություն է տալիս Գրիգոր Խլաթեցին 1419 թվականին Ցիպնա վանքում ընդօրինակած ավետարանի հիշատակարանում (էջ 225)։

Թովմա Մինասենցի տվյալների համաձայն, 1419 թվականի մորեխի գործած վնասները այնքան ծանր չէին, որովհետև նա՝ «ըստ անչափութեան աւազոյ ծովուս եկավ հնձի ժամանակ, ուստի հնարավոր եղավ բերքի մի մասը փրկել («Իրք մի կերաւ զվաստակն և իրք մնաց»)։ Ավելի սարսափելի էր հաջորդ տարին՝ 1420 թվականը. «Եւ միւս այլ տարին,— շարունակում է Մինասենցը,— ձագն ելաւ և խիստ աւէր էած» (էջ 375, նաև 239)։

Աղվանքի շրջաններում մորեխը ավերածություններ էր գործում յոթ տարի շարունակ, այսինքն՝ 1413—1420 թվականների ընթացքում. «Է. (7) ամ է, որ մարախ զամենայն աշխարհ աւերեաց, և դեռևս եմք ի կասկածի» (էջ 374),— գրում է այդ մասին անհայտ մի գրիչ, 1420 թվականին։

1423 թվականին նույնպես մահտարաժամն ու մորեխը դաշնակցում են միմյանց, որի հետևանքով երկրում տարածվում է սով. «Սաստիկ սով եղև,— արձանագրում է ժամանակակից մի գրիչ,— մի մոթ հացն Պ. (800) դրամ եղև» (էջ 307)։

Մահտարաժամից տուժում է հատկապես Վանա լճի շրջակայքի բնակչությունը, որովհետև, ինչպես հաղորդում է Թովմա Մինասենցը, իր բովանդակալից հիշատակարաններից մեկում՝ 1423 թվականից սկսած մահտարաժամը «մնաց Բ. (2) տարի ի բոլոր ծովուս, և բազում տունք աւերեցան և ծնաւղք անզաւակ մնացին» (էջ 375)։

Թովմա Սպատկերցին 1423 թվականին մորեխի գործած ավերածությունները նկարագրում է ուշագրավ մանրամասնություններով և գեղարվեստական վառ պատկերներով։ Նրա հաղորդած տվյալները վստահորեն կարող են օգտագործվել երկրագործական վնասատուների դեմ պայքարի գործով զբաղվող մեր մասնագետների կողմից՝ հարցի պատմությունն ուսումնասիրելու ժամանակ։ Նա կարծում է, որ մորեխը, որպես պատժիչ զորախումբ, ուղարկված է աստծու կողմից՝ մեղքերի մեջ թաթախված մարդկանց խրատելու համար։

«Զի առաջին տարին,—շարունակում է Սպատկերցին,— ինքն թևաւորն [եկն] և սերմանեաց, և ի միւս այլ տարին՝ ի գարնան յեղանակին ընդ խոտոյն

ի վեր փչեաց՝ առաւել քան զրոյս, մինչ զի լի եղև ի խորութիւն ձորոց և ի լայնութիւն դաշտաց, ի գագաթունս լերանց. էր երկիր առաջի նորա իբրև զդրախտ փափկութեան և վերջ նորա՝ դաշտ ապականութեան...։ Եկեր զամենայն խոտ և սպառեաց զամենայն վաստակն սերմանեալ, նուազէին անասունք, լքեալ դատարկացան երկրագործք ի վաստակելոյ, խցեալ կալնուին զերդ և զպատուհան ի ներքս լինելոյ նոցա, մինչ զի զերդս պահէին աւելելով կամ մաղ ի վերայ դնելով, և ապա հաց եփէին ի ներքս կամ ուտէին։ Ամենայն ժողովք շուրջ պարզք և բարեհամք՝ գիշտհոտեալ տղմային արիւնատեսիլ իբրև զեդիպտացւոցն լինէր ի ներքս կուտելոյ նոցա։ Անբնակ ի մարդոյ և յանասնոյ գեօղք լինէին. գնալով նոցա յայլ տեղոջէ յայլ. քակտեցաւ ամենայն միաբանութիւն, որ հացիւ և կերակրով էին շաղկապեալ» (էջ 301—302)։

Տառապյալ ժողովուրդը բնական այս մեծ արհավիրքի դեմ պայքարելու ոչ մի միջոց չուներ։ Միակ բանը, որ կարողանում էին անել, տան երդիկները մաղով ծածկելն էր։ Հավատում էին նաև, որ կան թռչուններ, որոնք սուրբ ջրի հետքով գալիս ու կոտորում են մորեխին։ 1419 թվականի մորեխի ժամանակ Վանի ու Ոստանի ամիր Եզդինը, մարդ է ուղարկում սրբազան ջրի ետևից, և, իբր, ջրի հետքով թռչուններ են գալիս ու վերջ տալիս մորեխին. «Իշխան աշխարհիս մերոյ Ամիր-Եզդինն,— հայտնում է Թովմա Մինասենցը,— առաքեաց մարդ և եբեր ջուր, և հաւ եկն զկնի ջրոյն, և սատակեաց զմարախն, և ազատեցաւ երկիրս» (էջ 375)։

1428 թվականին Ստեփանոս գրիչը իր ժամանակը բնորոշում է որպես «թշվառ և չար» ժամանակ, որովհետև,—շարունակում է նա,—«եղև թանկութիւն սաստիկ, որ մի բեռ հացն է Ռ. (1000) դրամ» (էջ 381)։

Նույն թվականին, ինչպես արդեն առիթ ենք ունեցել նշելու, Ադրբեջանում և Հայաստանում առաջ է գալիս սարսափելի սով, որ նույնպես մարդկային մեծ զոհեր է տանում։ Որոշ վայրերում, նույնիսկ, մարդ են ուտում, իսկ Թավրիզում, ինչպես հավատացնում է Դավիթ գրիչը, «զեւզն մարդոյ որպէս զանասնոյ վաճառէին միմեանց» (էջ 419)։

Թ. Մեծոփեցին հաղորդում է, որ Արճեշի շուկայում մի մոթ ցորենի գինը բարձրանում է մինչև 60 թանկայի *. «Եւ մեռանէին ամենայն մարդիկք՝ բնիկք և օտարականք»,— հայտնում է նա **։

1437 թվականի մահտարաժամը մեծ հունձ է կատարում Ասորիքում և Հայաստանում, «Կոտորեցան անթիւ տղայք և մանկունք»,— գրում է Կարապետ գրիչը Վանում (էջ 473)։ Իսկ Ավետիք գրիչը Բաղեշում հայտնում է, որ մահտարաժամի սաստկությունից այնքան շատ մարդ էր մահանում, որ նրանց թաղմամբ զբաղված լինելով, քահանաները ժամանակ չէին ունենում հաց ուտելու (էջ 476)։

1446 թվականին հացի մեծ սղություն է լինում։ Ստեփանոս գրիչը Բաղեշում գրած իր հիշատակարանում արձանագրում է, որ «մին բեռն ցորեան եղև ի Կ. (60) թանկայ» (էջ 592)։

1449 թվականին «յելանելոյն արևու մինչև ի մուտս արևու, ի հիւսիսոյ մինչ ի հարաւ» տարածվում է ժանտախտը։ Ըստ երևույթին, հիվանդության

* XIV—XV դարում Անդրկովկասում և Իրանում գործածության մեջ եղող արծաթ թանկան (թենգա) կշռում էր 6 գրամ։

** Թ. Մեծոփեցի, էջ 94—95։

տարածողները մկներն էին, որ նույն այդ թվականին, Ներսես եպիսկոպոս Աղթամարցու վկայությամբ, տարածվել էին ողջ աշխարհում («Եւ ժանգն ապականեաց զվաստակ դաշտաց, և մուկն եռաց յամենայն երեսս դաշտաց և ապականեաց զվաստակս», էջ 633)։

Այդ «սաստիկ մահտարաժամը» այնպիսի չափեր էր ընդունել և այնքան մեծ մահացումներ էր տալիս, որ մերտինցի ժամանակակից մի հիշատակագրի վկայությամբ՝ «ոչ ոք ետես կամ լուաւ ի հնոց կամ ի նորոց այսպիսի դառնալուր պատիժ» (էջ 634)։

Այդ նույն հիշատակագիրը ճշգրիտ ձևով նկարագրում է նաև հիվանդության ընթացքը և ախտանիշերը։ Նա գրում է.

«Մինն այս է դառնութիւն սորա, զի բոլոր ամ մի է և երեք ամիս, որ ի Մէրտինս է և ոչ վերանայ. և երկրորդ եղեռնագոյն դառնութիւն, որ մի անգամ և երկու հանէ խոց և ողջանայ զաւուրս բազում, և դարձեալ կրկին հանէ և մեռանի. և երրորդ դժնեայ դառնութիւն սմին, զի յոր տունն որ մտանէ՝ մնաչինչ առնէ ամենայնիւ. չորրորդ սաստկութիւն սորա, զի ոչ տայ իմանալ զցաւն, եթէ թէ անվնաս է և իսկոյն մեռանի...» (էջ 635)։

Այնուհետև հիշատակագիրը խոսում է ժանտախտի հետևանքով երկրի ամայացման և անմարդաբնակ դառնալու մասին. «Ընդ ամենայն գաւառս տարածեցաւ,— գրում է նա,— և բազումս լալագին արար; և զբազում աւանս անմարդաբնակս, շատ մայր առանց որդւոյ արար, և շատ ծնող առանց զաւակաց, բազում տուն առանց տանուտէր, և բազում հարսն առանց փեսայի» (էջ 636)։

Այսպիսով, ինչպես պերճախոս կերպով վկայում են ժամանակակից հիշատակագիրները, ԺԵ. դարի առաջին հիսնամյակում գրեթե չի եղել ոչ մի խաղաղ ու հանգիստ տարի։ Երկիրն ավերվել է ու ժողովուրդը բնաջնջվել կամ օտար նվաճողների արշավանքներից ու ասպատակություններից, կամ սովից կամ մահտարաժամներից, կամ այդ բոլոր աղետներից՝ միաժամանակ։

13

Հայ ժողովուրդը այդ դառն ու վշտաբեր ժամանակներում, ուժերի մեծ լարումով շարունակում էր զարգացնել իր գրականությունն ու կուլտուրան։ Երկրի տարբեր մասերում, նույնիսկ թշնամի բանակների կողմից խուճապահար փախուստի օրերին և նրանց ահից անձավներում ու լեռնածերպերում պատսպարվելով, շարունակում էին իրենց ուսուցչական ու վարդապետական գործունեությունը Հովհան Որոտնեցու (մհ. 1386 թ.) և Գրիգոր Տաթևացու (մհ. 1409 թ.) անվանի աշակերտներից շատերը։

Հրատարակվող հիշատակարանները հարուստ են այդ ժամանակ ստեղծված գիտական ու գեղարվեստական արժեքների, ինչպես և ուսումնական հաստատությունների գործունեության ու վիճակի մասին արժեքավոր տվյալներով։

Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանումն են ապրել ու ստեղծագործել հայ միջնադարյան գիտության ու գրականության բազմաթիվ անվանի գործիչներ՝ Գրիգոր Տաթևացին, Հակոբ Ղրիմեցին, Մատթեոս Ջուղայեցին, Առաքել Սյունեցին, Գրիգոր Խլաթեցին, Թովմա Մեծոփեցին, Մկրտիչ Նաղաշը, Առաքել Բաղիշեցին և բազմաթիվ մանր ու խոշոր այլ հեղինակներ, տոկուն ու բազմար-

դյուն գրիչներ ու ծաղկողներ, որոնց արժեքավոր հիշատակարանների մեծագույն մասը առաջին անգամ լույս է ընծայվում սույն ժողովածուի մեջ*։

Կուլտուրական նշանավոր կենտրոնները ԺԵ. դարի առաջին կեսին, ինչպես և նախորդ ժամանակաշրջաններում խոշոր վանքերին կից ստեղծված ուսումնական հաստատություններն էին։

Մինչև 1408 թվականը շարունակում էր գործել Հայաստանի ամենանշանավոր ուսումնական հաստատությունը՝ Տաթևի համալսարանը, Գրիգոր Տաթևացու տնօրինության տակ։ Համալսարանը բաժանված էր երեք «ուսումնարանների». դրանցից մեկում Տաթևացին «ուսուցանէր զնախկին երգիչ վարդապետաց զերաժշտութիւն քաղցրալուր ձայնի եղանակաւ. մինչև անգամ յամենայն երկրէ և ի քաղաքաց եկեալ պարապէին առ ոստ նորա։ Եւ ի միումն՝ նկա-

---

* Ստորև տալիս ենք ԺԵ. դարի առաջին հիսնամյակում շարադրված միայն կարևոր աշխատությունների ժամանակագրական ցանկը, որ կազմել ենք հրատարակվող հիշատակարանների տվյալներով։

1. 1401 Թ. հրապարակվում է Գրիգոր Տաթևացու «Ոսկեփորիկ» աշխատությունը, գրված Թավրիզեցի խոջա Մասուտշահի պատվերով, բաղկացած է չորս հատորից։

2. 1401 Թ. Առաքել Սյունեցու «Ադամգիրք» ընդարձակ պոեմի Ա. (ըստ Պոտուրյանի Գ.) խմբագրությունը։

3. 1403 Թ. Նույն «Ադամգրքի» Բ. և Գ. խմբագրությունները։

4. 1405 Թ. Գրիգոր Տաթևացու «Մեկնութիւն Սաղմոսաց» աշխատությունը։

5. 1407 Գր. Տաթևացու «Քարոզգրքի» ձմռան և ամռան ընդարձակ հատորները, սոցիալ-տնտեսական հարաբերությունների, ժողովրդի կենցաղի ու վիճակի մասին բազմաթիվ արժեքավոր տեղեկություններով։

0. 1408 Թ. Գր. Տաթևացու «Լուծմունք դժուարիմաց բանից ի մեկնութիւն գրոցն Յոբայ» աշխատությունը։

7. 1408 Թ. կամ դրանից քիչ առաջ, Գրիգոր Ծերենց Խլաթեցու խմբագրությամբ լույս է տեսնում հոգևոր երգերի ու մեղեդիների «Գանձարան» կոչվող ժողովածուն։

8. 1411 Թ. Մաթեոս Ջուղայեցու «Մեկնութիւն գործոց առաքելոց» ուշագրավ և երկրի սոցիալ-տնտեսական հարաբերությունների մասին կարևոր նշանակություն ունեցող հատվածներով լի աշխատությունը, որը մինչ այժմ չի գրավել մասնագետների ուշադրությունը։

0. 1415 Թ. Հովհան Կոլոտիկի (Գր. Տաթևացու աշակերտներից) «Հաւաքեալ ի լուսաւոր բանից սուրբ վարդապետաց ի պատճառս իմաստից... մարգարէին Եսայեայ» աշխատությունը։

10. 1416 Թ. Նշանավոր տիեզերագետ ու տոմարագետ Հակոբ Ղրիմեցու «Մեկնութիւն տումարի» բազմաբովանդակ ու արժեքավոր տիեզերագիտական աշխատությունը, որ կազմված է Մեծոփի դպրոցում, Թովմա Մեծոփեցու խնդրանքով, հեղինակի կարդացած դասախոսությունների մշակումով։

11. 1422 Թ. Գրիգոր Խլաթեցու «Յիշատակարան աղետից» կոչվող պատմական վիպասանությունը։

12. 1427 Թ. Սարգիս Շնորհալու «Մեկնութիւն աւետարանին Ղուկասու» աշխատության նոր խմբագրությունը՝ կատարված Թովմա Մեծոփեցու կողմից։

13. 1428 Թ. Թովմա Մինասենցի ընդարձակ հիշատակարանը՝ 1419—1428 ԹԹ. պատմական անցուդարձերի մասին։

14. 1434 Թ. Առաքել Բաղիշեցու «Պատմութիւն Հովասափու և Բարղամու» չափածո գրվածքը։

15. 1435 Թ. Թովմա Մեծոփեցու խմբագրությամբ՝ «Խմբագիր մեկնութիւն չորեքտասան թղթոցն Պաւղոսի» աշխատությունը։

16. 1436 Թ. Մկրտիչ Նաղաշի դավանաբանական գրությունը կաթոլիկների դեմ՝ «Պատասխանի լատինացոց թղթոյն ի Մկրտիչ նկարագրէ, զոր գրեաց հրամանաւ կաթողիկոսին և մեծ բաբունապետին Թումայի» խորագրով։

րաղրութիւն պատկերահանութեան և զանազան նկարչութիմնս: Եւ ի միասումն զներքին և զարտաքին գրեանս»*:

1402 թվականին Մատթեոս Ջուղայեցի նշանավոր վարդապետը կարգվում է Տաթևի համալսարանի գլխավոր դասախոս: Այդ մասին տեղեկություն է հաղորդում Թոմա Սյունեցի գրիչը, Գր. Տաթևացու «Մեկնութիւն աւետարանին Մատթէոսի» աշխատության Ծար գավառի Քարավաճառ գյուղում կատարած ընդօրինակության հիշատակարանում: Նա հայտնում է, որ Տաթևացին զծաղկեալն ամենայն բարութեամբ և զարդարեալն ամենայն շնորհիւ վարդապետական խոհեմութեամբ և փիլիսոփէական արհեստիւ» Մատթեոս Ջուղայեցի վարդապետին համարում էր իր հոգևոր որդին և «ժառանգ վարդապետութեան իւրոյ», և որ 1402 թ. «ջանիւ մեծ վարդապետին Գրիգորի և աղաչանաւք դրոց աշակերտեալ անձանց նստաւ (Մատթէոսն) յաթոռ տէլէտութեան» (էջ 25):

1408 թվականին, Սարգիս գրչի խոսքերով արտահայտված, «վասն իւիք ինչ պատճառի» Գրիգոր Տաթևացին թողնում է իր նստավայրը և գալիս Մեծոփավանք: Նրա շուրջը կարճ ժամանակում հավաքվում են բազմաթիվ աշակերտներ և նա դասախոսություններով մեկնում է հին կտակարանի Հոբի գիրքը, Արիստակեսի և Գեորգի «Խրատ գրչութեան» աշխատությունը և Հովհաննի ավետարանը: Այս մասին խոսում են մի շարք հիշատակագիրներ: Լսենք իրեն՝ Գրիգոր Տաթևացուն.

«Եւ ի թուականութեանս հայոց ՊԾԷ. (1408) ամի,— գրում է նա,— եկեալ մեր յերկիրս Քաջբերունի, և ձմերեալ ի հրեշտակաբնակ վանքս Մեծոփոյ, ի սպասու դամբարանաց վարժապետացն սրբոց: Եւ ընթերցմամբ հաւաքեցի զդժուարալոյծ բանս Յոբայ և զմեկնչաց նորա, այլ և սակաւ ինչ լուծումն Առիստակիսի և Գէորգեայ՝ ի խրատս գրչութեան, ընդ նմին և զքաղուածոյ մեկնութեանն Յովհաննու աւետարանչի, և ընծայեցի ի պատիւ սուրբ տեղւոյս ուսումնասէր անձանց» (էջ 86):

Մեծոփի վանքում նա մնում է լրիվ մի տարի, ապա գալիս են նրա սիրելի աշակերտները, Առաքել Սյունեցու գլխավորությամբ, և գիշերով «գողանում» նրան: Այս դեպքը տեղի է ունենում 1409 թ. հոկտեմբեր կամ նոյեմբեր ամսին:

---

17. 1444 թ. Եսայի վարդապետի «Տումար արեգական և լուսնի» տոմարագիտական յուրջ աշխատությունը, որը կարոտ է մասնագիտական ուսումնասիրության:

18. 1443 թ. Թովմա Մեծոփեցու «Յիշատակարանը» կաթողիկոսական աթոռը Սսից Էջմիածին տեղափոխելու, կաթողիկոսի ձեռնադրության և Կիրակոս Վիրապեցու աքսորման մասին (տես Կ. Կոստանյանցի հրատարակությունը, Թիֆլիզ, 1892 թ.):

19. 1446 թվականից քիչ առաջ Թովմա Մեծոփեցին ավարտել է նաև իր մեծարժեք «Պատմութիւն Լանկ-Թամուրայ և յաջորդաց իւրոց» աշխատությունը (հիշատակարան չունի):

20. 1449 թ. Մկրտիչ Նաղաշի Վարք-հիշատակարանը, գրված Աստվածատուր վարդապետի կողմից:

Նշված ժամանակաշրջանում գրվել են նաև բազմաթիվ այլ մեծ ու փոքր աստվածաբանական ու մեկնողական աշխատություններ, բանաստեղծություններ, աշխարհիկ թեմաներով տաղեր և այլն:

* Մատենադարան, ձեռագիր № 7823, էջ 42—43 (տես նաև մեր «Գլաձորյան համալսարանը և նրա սաների ավարտական ատենախոսությունները» հոդվածը, տպագրված Երևանի Պետական համալսարանի «Գիտական աշխատությունների» XXIII հատորում, 1946, էջ 428):

Շատ չանցած, նույն թվականի դեկտեմբերի 27-ին, նա վախճանվում է Տաթևի վանքում։

Գր. Տաթևացու մահը ողբում են իր բազմաթիվ աշակերտներից ու դասընկերներից շատերը, տեղեկություններ հաղորդելով նաև նրա կյանքի վերջին դրվագների մասին։

Թովմա Մեծոփեցին իր հիշատակարաններից մեկում հայտնում է, որ ինքը 1406 թվականին, 12 ընկերակիցների հետ միասին մեկնել է Տաթև՝ Գր. Տաթևացու համալսարանում սովորելու մտադրությամբ։ Ապա նա շարունակում է.

«Եւ կացաք առ ոտս նմա ամս Բ. (2)՝ իմաստածութեամբ և սիրով նորին։ Եւ յեր[րոր]դ ամին... եկեալ բնակեցաւ յերկիրս Քաջբերունւոյ, ի սուրբ ուխտս Մեծոփոյ։ Եւ ժողովեաց բազում վարդապետս և կրօնաւորս, աւելի քան զութսուն ոգիս *։ Եւ զամ մի լըման դասիւ վարդապետութեան զամենեսեան լուսաւորեաց...։ Եւ եկեալ սիրելի աշակերտք նորա՝ գողացան զնա ի գիշերի։ Եւ մեք ելեալ գնացաք զկնի նորա՝ հանդերձ վարդապետաւք և եպիսկոպոսաւք և գրոց աշակերտաւք, և հասաք նմա յերկիրն Արայրատեան, լալով, ողբով, արտասուօք, աղիողորմ կսկծանօք, և ոչ կարացաք դարձուցանել զնա։ Եւ անդ ետ մեզ հրաման վարդապետութեան։ Եւ մինչ դեռ յառագաստի պարէաք և հոգով և մարմնով ուրախ էաք, իսկոյն համբաւ մահու խռովեցոյց զմեզ, զի յետ բաժանելոյն մեր ի նմանէ ԼԶ. (36) օր միայն եկաց ի մարմնի...» (էջ 101)։

Գրիգոր Տաթևացու մահվանից հետո նրա և Հովհան Որոտնեցու աշակերտներից շատերը, երկրի զանազան վայրերում փորձեր են կատարում բանալ նոր դպրոցներ, որոնք, սակայն, կարճատև կյանք են ունենում և չեն կատարում այն խոշոր դերը, ինչ տարիներ շարունակ կատարել էր Տաթևի դպրոցը։

Սյունիքի Հերմոնի վանքում դասախոսություններ է կարդում Տաթևացու աշակերտ Հովհաննես Կոլոտիկը։ Հերմոնի վանքը Սարգիս Ղրիմեցի գրչի կողմից կոչվում է «վարժապետական աթոռ»։ Գրիչն այդտեղ ընդօրինակում է Կյուրեղ Ալեքսանդրացու «Պրապմանց գիրքը», ինչպես ինքն է ասում՝ «առ ոտս մեծ վարժապետին... Յովաննիսի՝ աշակերտին Գրիգորի Հայոց փիլիսոփայի, որ և կրկին ընթերցմամբ լուսաւորեալ առաջնորդեցայ ի նմանէ» (էջ 164)։

1421 թվականին Կարապետ Դերջանցին մի «Քարոզգիրք» է ընդօրինակում Հերմոնի վանքում՝ «առ ոտս մեծ րաբունապետին Յովհանիսի»։ Նա խնդրում է հիշել իր քեռորդիներին, որոնք «դասատուն» գնալու համար տվել են նրան մի գրաստ (էջ 258)։

1443 թվականին Հովհաննես Կոլոտիկ վարդապետը դեռ կենդանի էր «ականջօք խլացեալ» և «սպիտակ մորուօք» և «մօտեալ գերեզմանի»** (ուստի՝ խորին ծերության հասակում) և շարունակում էր մեծ դեր խաղալ հայ եկեղեցու կյանքում։

Նույն ժամանակ Եղվարդ գյուղի վանքում դպրոց էր բացել Գր. Տաթևացու աշակերտներից մեկ ուրիշը՝ Սիմեոն Րաբունին, որը վախճանվեց 1428 թվա-

* Թ. Մեծոփեցու հիշատակած 12 աշակերտներից Սարգիսը, 1409 թ. գրած իր հիշատակարանում, Մեծոփա վանքում Տաթևացու շուրջը խմբված աշակերտների թիվը կրկնակի անգամ ավել է ցույց տալիս. «Եւ են ժողովեալ առ ոտս սորա անձինք ՃԿ. (100) աբեղայ և Ը. (8) վարդապետ և այլ միակեցունք» գրում է նա (էջ 93)։

** Թ. Մեծոփեցի, «Յիշատակարան», էջ 84։

*կանին Կոտայքի Ջագավանքում, որի վանահայրն էր կարգված իր կյանքի վերջին տարիներին։*

*Սիմեոն Բաբունու գործունեության մասին Եղվարդի վանքում կարևոր տվյալներ է հաղորդում մի գրիչ, Սիմեոնի պատվերով գրված մայր օրինակից, 1444 թվականին, ընդօրինակելով մի Յայսմավուրք։ Նա խնդրում է հիշել «զ·արդիմական և մեծ վարժապետն Հայոց զՍիմէոն, որ յայնմ ժամանակի (իմա՝ 1410—1420 թթ.) փայլէր ի մէջ եկեղեցւոյ իբրև զարեգակն, և մեծաւ յուսով և եռափափագ սիրով սկսաւ նորոգել և զարդարել զվանորայս Արարատեան նահանգիս...։ Նախ բնակեցաւ յաստուածաշէն և ի տիրախնամ գեղն Եղիվարդ, ի փոքր վանս, որ մէջ գեղին, և բազում արդիւնս արարեալ անդ...։ Բազում կրօնաւորս և աշակերտեալ մանկունս եկեղեցւոյ ժողովեալ յուսուցանել զհինն և զնոր մատեան աստուածաշունչ գրոց, զնուրբ և զարտաքին փիլիսոփայութիւն՝ ամս տասն» (էջ 561)։*

*Սիմեոնի ուսուցչական գործունեության մասին խոսում են նաև այլ հիշատակագիրներ (տե՛ս, օրինակ. էջ 143)։*

*Անվանի էր նաև Մեծոփա վանքի դպրոցը, որտեղ դասախոսում էին Թովմա Մեծոփեցին ու որոշ ժամանակ նաև նշանավոր տիեզերագետ Հակոբ Ղրիմեցին։ 1416 թվականին Հակոբ Ղրիմեցին, ինչպես ինքն է ասում «զՏումարն դաս ասացի ի հռչակաւոր վանքս Մեծոփու, ի խնդրոյ Թումայ րաբունապետին»։ Այնուհետև նա շարադրում է իր դասախոսությունները տիեզերագիտության մասին, «զի դիւրին լիցի ուսումնասէր մակացու արանց» (էջ 181)։*

*Մեծոփի դպրոցում Թովման «դաս է ասում» (դասախոսությամբ մեկնաբանում է) կամ այդ նպատակով խմբագրում ու մշակում զանազան մեկնողական աշխատություններ, որոնցից են «Մեկնութիւն աւետարանին Ղուկասու» և «Խըմբագիր մեկնութիւն չորեքտասան թղթոցն Պաւղոսի» աշխատությունները։*

*ԺԵ. դարի սկզբին, Երզնկայում, շարունակում էր դեռևս իր գործունեությունը նշանավոր վարդապետ Գեորգ Երզնկացին (Հակոբ Ղրիմեցու ուսուցիչը)։*

*Գեորգին շատ բարձր է դասում նրան որոշ ժամանակ աշակերտած Հովհաննես Երզնկացի գրիչը, որը 1408 թվականին, «լուեալ զհամբաւս համալսարանի տանս Արևելեան» (այսինքն՝ Տաթևի համալսարանի), թողնում է իր հայրենիքը և գալիս Սյունիք, Գր. Տաթևացու դասախոսությունները լսելու համար։ Նա ժամանակի երեք նշանավոր վարժապետներին՝ Գր. Տաթևացուն, Գեորգ Երզնկացուն և Հակոբ վարդապետին մեծարում է հավասար չափով, նույնիսկ հայտնում է, որ դժվարանում է «գտանել զկարգ շարագրութեան սոցա, թէ զորս նախադաս գրեցից կամ զորս ըզկնի որոյ, զի զանազան պատուականութիւնս երևի ի սոսա, յիւրաքանչիւրսն անհամեմատ միմեանց» (էջ 141)։*

*Դպրոցներ էին ստեղծվել նաև հայկական հեռավոր գաղթավայրերում։ Ղրիմի դպրոցի ղեկավարն էր Սարգիս վարդապետը, որը Կաֆա (Թեոդոսիա) քաղաքի մոտ գտնվող սուրբ Անտոնի վանքի վանահայրն էր։ Իր աշակերտների կողմից նա մեծարվում է «մեծ վարդապետ» և «քաջ հռետոր» կոչումներով։ Ուշագրավ է, որ Սարգիսն իր աշակերտների համար մեկնում էր հատկապես փիլիսոփայական բովանդակությամբ աշխատություններ՝ Արիստոտելի ու Պորփյուրի հայերեն թարգմանությունները և նրանց մասին Հովհան Որոտնեցու գրած մեկնությունները։ Այս մասին տվյալ է հաղորդում Սարգսի աշակերտներից Թադեոս Ավրամենցը։ Նա հայտնում է. «Յայսմ աւուր (այսինքն՝ 1428 թ. նոյեմբերի 30-ին) սկիզբն արար մեծ վարդապետս և քաջ հռետորս և արին·*

տէր Սարգիս դաս տալ և ուսուցանել (գլուծմունս իմաստասիրական գրոց Յովհաննու Որոտնեցւոյ)... մեզ՝ եղբարցս՝ տէր Թորոսին և տէր Սիմէոնին և ինձ՝ հետնեալ փանաքոյս Թադէոսիս» (էջ 389—390, տե՛ս նաև էջ 394—395)։

Վերոհիշյալ դպրոցներից բացի, Հայաստանի տարբեր վայրերում ստեղծվել էին նաև մի շարք այլ դպրոցներ, որոնցում դասախոսություններ էին կարդում ոչ անվանի կամ նվազ հեղինակություն ունեցող մի շարք վարդապետներ։

## 14

Վանական ու եկեղեցական կալվածատիրության և տնտեսության մասին ևս ԺԵ. դարի առաջին կեսի հիշատակարանները արժեքավոր ու հետաքրքրական տեղեկություններ են պարունակում։

Եկեղեցական կալվածքները, չնայած նույնպես ենթակա էին պետական պաշտոնյաների ու առանձին տիրողների չարաշահումներին և հարկահանմանը, սակայն, ընդհանուր առմամբ, զերծ էին մնում հափշտակումներից և վայելում էին հարկային որոշ արտոնություն։ Ժողովրդին հպատակության մեջ պահելու գործում հայ եկեղեցու կատարած կարևոր դերը քաջ գիտակցում էին երկրի նվաճողները և երբեմն նույնիսկ նպաստում էին վանքերի ու եկեղեցիների վերանորոգման ու տնտեսապես ապահովման գործին։

ԺԵ. դարի ամենանշանավոր եկեղեցական գործիչ և մատենագիր Գրիգոր Տաթևացին իր «Քարոզգրքում» Հայաստանի նվաճողներին նմանեցնում է փշերով ամրացված ցանկապատի, որը պատսպարում է ու պաշտպանում այգին, այսինքն՝ քրիստոնեական եկեղեցին։ Նա քարոզում է հնազանդվել երկրի տիրողներին, որովհետև «այժմ քրիստոնեայք ի ներքոյ բռնաւոր իշխանաց խաղաղութեամբ ունին զիւրեանց եկեղեցականութիւնն» *։

Թովմա Մեծոփեցին տեղեկություն է հաղորդում այն մասին, որ 1402 թվականին, Մեծոփա վանքի վերաշինման ժամանակ, Քաջբերունիքի վրա Թամուրի կողմից իշխան կարգված շեխ Ահմատը՝ «գայր և անձամբ առնոյր ի վերայ անձին իւր զքարինսն, և բերէր դնէր ի հիմն սուրբ եկեղեցւոյն» **։

Վանքերի ու եկեղեցիների արտոնյալ այս վիճակը հաշվի առնելով, հայ աշխարհիկ ֆեոդալներից շատերը դեռևս իրենց ձեռքում գտնվող փոքրաթիվ կալվածքները ապահով տիրելու ակնկալությամբ դրանք «նվիրաբերում էին» զանազան վանական հաստատությունների, նախօրոք դրանց ղեկավար պաշտոններում նշանակելով իրենց մերձավոր ազգակիցներին կամ հլու և հպատակ անձանց։

1410-ական թվականներին Սյունյաց մետրոպոլիտական աթոռը գտնվում էր պարոն Սմբատի որդի տեր Ստեփանոսի ձեռքին (մհ. 1422 թ.)։ Ստեփանոսին հաջորդող Շմավոն եպիսկոպոսը, ինչպես և նրա հետագա հաջորդներից շատերը, նույնպես Սյունյաց Օրբելյան իշխանական տան հետ մերձավոր կամ հեռավոր ազգակցական կապեր ունեին։

Ժառանգաբար հաջորդում էին միմյանց նաև Աղթամարի և Գանձասարի կաթողիկոսները, Սանահնի վանահայրերը, ինչպես և Բջնիի ազգեցիկ եպիսկոպոսները, որոնց իրավասության տակ էր գտնվում երկար ժամանակ Արա-

* Գիրք քարոզութեան, որ կոչի ամառան հատոր, Կ. Պոլիս, 1741, էջ 452։
** Թ. Մեծոփեցի, էջ 58։

րատյան նահանգը, և բազմաթիվ այլ եպիսկոպոսական աթոռների ու վանական խոշոր հաստատությունների առաջնորդներ։

Որոշ վանքերի նույնիսկ հաջողվում էր մեծացնել իրենց կալվածքները՝ ինչպես նվիրաբերությունների ու գնումների, այնպես էլ գյուղական համայնքներին պատկանող վարելահողերի ու արոտավայրերի սեփականման ճանապարհով։

Ուշտունյաց գավառում գտնվող սուրբ Վարդանի վանքի առաջնորդ Թումայի ջանքերով Կարա-Յուսուֆի տիրապետության տարիներին (1407—1420) վանքը վերաշինվում է «ի հիմանց», և Վանի ու Ոստանի ամիրների՝ ամիր Եզդինի և Մելիք-Մահմադի օժանդակությամբ վանքը ձեռք է բերում մի շարք նոր կալվածքներ։ Այդ մասին Թովմա Մինասենցը հայտնում է հետևյալը.

«Կրտըրվաւ և նոյն Թումայ վանից հաւր ձեռօքն Նաշբադընի վէցքու հողն արտ, ամիրաց մըլքաթղթովն և նըշանովն՝ սուրբ Վարդանայ մուլք գընվաւ և (մի բառի տեղ դատարկ) էգին, և Կաթողիկոսենց արտերն, և Պէշգէնի դրախտն՝ սուրբ Վարդանայ վանիցն մուլք, շինեցաւ և ձիթահանքն սուրբ Վարդանայ, ի Գաւաշ գեաւղս» և այլն (էջ 565)։

Նույնպիսի տվյալներ իր մի այլ հիշատակարանում հաղորդում է Թ. Մինասենցը նաև Ուշտունիքի սուրբ Հակոբի վանքի մասին։

Ստեփաննոս Փիր վարդապետի առաջնորդության ժամանակ (1412) վերաշինվում է վանքը, «յաջողութեամբ աստուծոյ ժողովին ի տեղիս և այլ կրօնաւոր և աշխարհականք՝ գործաւոր վանացս»,—գրում է նա։

Վանքի վանահայր Սիմեոն վարդապետը զանազան ճանապարհներով ձեռք է ձգում նոր կալվածքներ։ «Սա ստացաւ,— գրում է Թ. Մինասենցը,—և բազում մուլք և արտորայք, այգի և ծառատունկք վանիցս, զոր ինքեամբ գնեաց՝ տրօք քրիստոնէից, և զոր յորդորեալ զքրիստոնեայս՝ զքահանայս և զաշխարհականս, ետ գնել նոցա ի հալալ արդեանց իւրեանց մուլք և անդաստան վանիցս» (էջ 581)։

Կալվածքների բնույթի ու չափի մասին մոտավոր պատկերացում կազմելու համար ավելորդ չի լինի մեջ բերել նաև հիշատակարանի այն հատվածը, որտեղ թվարկվում են նոր ձեռք բերված կալվածքները։

«Եւ արդ, այսոքիկ են նոր տուած և արծաթագին մուլք վանացս։ Զինչ որ բնական մուլք է վանացս՝ թէ կաղամախի պըակն, և թէ արտ, և թէ ափն, որքան և է ի յԸնծափու դաշտս՝ յայտնի է ամենեցուն, և երկու արտ ի Շատուան, և ծառ ի Գանձակ, և երկու արտ ի Դեզձիսն, և հինգ արտ և Սաղաթիէլ երիցանց այգւոյ կէսն ի Մոխրաբերդ, և Օմար Շամշանի բաժին հողն, ԺԳ. (13) արտ, և խոտոնցն, և փագախն, և կալն, և Մանդուկանց Ամիրպէկի այգին՝ ծառերովն՝ ի Մոխրաբերդն...։ Եւ երկու արտ ի Նարեկ, և մէկ՝ ի Բախվանց» (էջ 582)։

Ուրեմն վանքը տարբեր ճանապարհներով իր ունեցած կալվածքներին ավելացրել է 26 արտ, մեկ և կես այգի, մեկ ծառաստան, խոտհունձ, փարախ, կալ և այլն։

Ձեռքի տակ ունենք նաև Խառաբաստի վանքի կալվածքները նշող փաստաթուղթ՝ գրված Կարա-Յուսուֆի տիրապետության տարիներին։ Պարզվում է, որ

վանքը 1410-ական թվականներին ուներ 19 արտ, 70 մոթ ջրովի հող, 20 մոթ անջրդի հող, երեք ջրաղաց և մի այգի*։

Վանքերն ու առանձին բարձրաստիճան հոգևորականներ զբաղվում էին նաև վաշխառուական գործարքներով։ Աղվանից կաթողիկոս Մատթեոսը, օրինակ, հայտնում է 1434 թվականին, որ ինքը Առաքելի որդի Հովհաննես երեցին պարտք է տված եղել «ԶՌ. (6000) դեկան ստակ ու Ի. (20) թաղար ցորեն՝ զապալու չափովն»։ Պարտապանը մահանում է և պարտքի դիմաց ընտանիքը ոչինչ չի ունենում վճարելու, բացի մեկ ձիուց, թամբից և մեկ ավետարանից։ «Տանուտէրք և ք[ահանայք],— հայտնում է կաթողիկոսը,— մէջ ընկան, աւետարանս ու Ա. ձի, Ա. թ[ամբ] բերին, թէ իրքմին չունին, երես դրին, թէ /// խեղջ են, ես այլ խղջացի, ձին ու թամբն յետ տվի, զաւետարանն առի» (էջ 439)։ Հետագայում նա այդ ավետարանը վաճառում է 1200 դահեկանով։

Քրիստոսատուր Կաֆայեցու մի ընդարձակ հիշատակարանից տեղեկանում ենք, որ Ղրիմի հայ վանքերի եկամտի կարևոր աղբյուրներից են եղել նաև բանկերում դրված տոկոսաբեր դրամագլուխները։ Հիշատակագիրը 1431 թվականին հայտնում է, որ Կաֆա քաղաքի մերձակայքում գտնվող սուրբ Անտոնի վանքին, միաբաններից Եսայի կրոնավորի մայրը նվիրաբերել է «Ճ. (100) սոմ ի պանքն եդեալ, անդրդուէլի, մնալով անդ ի կոմինին գլուխքն, որ է Ճ. (100) սոմ, և մուտքն նորին յամենայն ամի ուտէ վանքս՝ ՌՆ. (1400) սպ[իտակ]» (էջ 414)։

Բանկային նման գործարքների բուն Հայաստանում կատարված լինելու մասին այս ժամանակաշրջանի հիշատակարաններում և այլ կարգի սկզբնաղբյուրներում վկայություններ չեն պահպանվել։

Հրատարակվող հիշատակարաններում կան մի շարք տեղեկություններ վանքերում աշխատող հոգևոր և աշխարհիկ պաշտոնյաների և «վանաց գործաւորների» մասին։ 1425 թվականին Բերկրիի Հուական որդու վանքում կային 48 միաբաններ ու գործավորներ (էջ 339)։ 1420 թվականին հիշատակվում են այդ վանքի գործավորներից՝ Գորգի տնտեսը, Մկրտիչ մաճակալը, Մեծատուր հովիվը (էջ 242)։ 1425 թվականին Ագուլյաց վանքի միաբան Մկրտչի պարտականությունն է եղել «զարդիւնս հասարակաց» ժողովել շտեմարաններում, իսկ տնտես Ցարուխը «սպասաւորել» է միաբաններին (էջ 337)։

Կարելի է ենթադրել, որ վանքի «գործաւորների» վիճակումն էին գտնվում նաև գրիչները։ Նրանք, անշուշտ, գերազանցապես, իրենք էին գործարքի մեջ մտնում և պայմանավորվում ձեռագրի պատվիրատուի հետ, որոշում էին ընդօրինակության վարձը և այլն։ Սակայն կան տվյալներ, որոնք խոսում են այն մասին, որ գրչի աշխատավարձի մի մասը պատկանում էր վանահորը, եպիսկոպոսին կամ այն անձնավորությանը, որի հրամանի տակ էր աշխատում տվյալ գրիչը։ Այս տեսակետից որոշ հետաքրքրություն է ներկայացնում Հովհաննես գրչի կողմից 1407 թվականին ընդօրինակված յայսմաւուրքի Գ. հիշատակագրությունը (տե՛ս էջ 71)։

Բարձրաստիճան հոգևորականները՝ եպիսկոպոսներն ու արքեպիսկոպոսները, աշխարհիկ ֆեոդալների նման ունեցել են ճորտեր ու ծառաներ, որոնք սպասավորել են նրանց, կատարել զանազան հանձնարարություններ, երբեմն, նույնիսկ, հանդես են եկել որպես զինված շոկատներ՝ բռնի ուժով ի կատար

* Տե՛ս Ղ. Փիրղալեմյան, «Նոտարք հայոց», էջ 31—32։

ածելու համար իրենց եկեղեցական ֆեոդալի այս կամ այն հրամանն ու կարգադրությունը։

Մկրտիչ Նաղաշի զորեղ ծառաները երբեմն հարձակվել են թշնամի բանակների փոքր զորամիավորումների վրա և ազատագրել գերիներին։ Այս մասին որոշակի տվյալ կա Նաղաշի Վարք-հիշատակարանում։ «Առաքէր (Մկրտիչն) ի ծառայից իւրոց արս զօրեղս և սրտապինդս, և խլէին զգերիս յանաւրինաց և բերէին ի նորաշէն վանս իւր ապաստանի»,—գրված է այնտեղ (էջ 626)։

Նման մի վկայություն էլ պահպանված է Տաթևի եպիսկոպոս Ստեփանոսի Վարքի մեջ։ Սրա եպիսկոպոսության տարիներին Տաթևի միաբաններից մեկը սիրահարվում է մի աղջկա, փախչում է վանքից ու հեռավոր մի գյուղում ամուսնանում նրա հետ։ «Իսկ ազատորդին տէր Ստեփաննոս,— կարդում ենք վարքաբանական այդ գրվածքում,— քանզի ունէր բազում ճորտս այլազգիս, հեծեալ նոքօք ի ձի, և գնացեալ ի դեօղն յայն, քարշեաց զաբեղայն և զաղջիկն բռնութեամբ...» և այլն *։

Հիշատակարաններում կան նաև կարևոր տվյալներ վանականների և ընդհանրապես հոգևորականության ընկած բարքերի՝ անբարոյականության ու շվայտության մասին։

1444 թվականին Այրիվանքում ընդօրինակված Յայսմաւուրքի անծանոթ գրիչը հայտնում է, որ «շատ անկարգութիւն և անօրէնութիւն մտեալ է յեկեղեցի»։ «Քահանայք զանազան զգեստուք պճնեալ և զոտեւորեալ իբր այլազգի, և աբեղայք թողեալ զվանս և զանապատս և զամենայն հոգևոր ուսմունս՝ ի գիւղս բնակէին» (էջ 561)։ Վանականներից շատերը իրենց հարկի տակ պահում էին կանանց՝ սանամայրերի, քույրերի և մորաքույրերի կեղծ անվան տակ։ Սիմեոն րաբունապետը (մհ. 1428 թ.), ստանձնելով Ջագավանքի վանահայրությունը, ձգտում է սանձահարել անբարոյական հոգևորականներին։ Նույն գրիչը հայտնում է, որ նա «զվանքն պարըսպեաց և ամրացոյց, և որոշեաց ի յաշխարհականացն, զի աբեղայ ի շուրշ պատի կողմն բնակեսցէ, և սանամայր մի արասցէ և քոյրաքոյր և մայրաքոյր. և ամառն և ձմեռն ի մի վայր ժողովին ի քնոյ ժամն» և այլն (էջ 562)։

15

Հրատարակվող հիշատակարաններում կան նաև որոշ տվյալներ, որոնք ցույց են տալիս, թե տվյալ ժամանակաշրջանում Հայաստանի տարբեր մասերում շարունակում էին գոյություն ունենալ ու իշխել իրենց փոքրաթիվ կալվածքների վրա հայ ֆեոդալական քայքայված տների որոշ ներկայացուցիչներ, ինչպես նաև նորելուկ մեծատուններ ու կալվածատերեր։ Նրանք, հոգևորականության հետ միասին, դաշնակցում էին երկրի տերերի հետ հայ աշխատավոր ժողովրդին շահագործելու գործում։

Սյունյաց Օրբելյան իշխաններից Սմբատի, նրա որդի Բեշքենի, Թոռ Ռուստամի, Ստեփանոս և Շմավոն եպիսկոպոսների մասին եղած տվյալների հետ արդեն մասամբ առիթ ունեցանք ծանոթանալու։ Սրանք իրենց «զասակօք, զօրօք և ամենայն հնազանդելովք» հիշատակվում են Սյունիքի տարբեր վայրերում և

* Հ. Մանանդյան, Հ. Աճառյան, «Հայոց նոր վկաները», գիտական հրատարակություն, Վաղարշապատ, 1903, էջ 313։

Լոռիում գրված մի քանի հիշատակարանների մեջ (տե՛ս էջ 4, 77, 133, 194, 258, 292, 382 և 392)։

Հատկապես ուշագրավ է 392 էջի (№ 418) հիշատակարանը, որտեղ, որպես վկաներ նախկինում Սյունավանքին պատկանած մի ավետարանի հետ վերադարձման, ստորագրում են Սմբատի որդի Բեշքեն իշխանի ազատներից մի քանիսը՝ Լեշի որդի Դիլանճին, Էլեքսանի որդի Պաշարաթը (հավանաբար եղել է Լոր գյուղի տերը) և Դավաքար գյուղի տեր՝ Սեթիկի որդի Ավագը։

Թովմա Սյունեցի գրիչը 1411 թվականին շարադրած իր հիշատակարանում նշում է Ծար գավառի իր ժամանակի Դոփյան իշխաններին՝ «պարոն Վահրամայ, պարոն Տուսունին, պարոն Շրուանին, պարոն Սատօին, պարոն Պռօշին, պարոն Գրիգորին», ինչպես նաև այդ նահանգի հանգուցյալ իշխաններին, որոնք են՝ Դոփի որդի Հասանը, նրա ամուսին Խոնձան, սրանց զավակներ ու շառավիղներ պարոն Գրիգորը, Սարգիսը, Շանշան (Շահնշահ), Ջհանշան, Աղբուղան, Շրվանը, և «թագազարմ իշխան» Սադունը (էջ 122)։

Սյունյաց Օրբելյանների և Խաչենի իշխանական տների մասին հատկապես կարևոր են Մատթեոս Մոնոզոնի հաղորդած տեղեկությունները՝ 1417 թվականին Գանձասարում ընդօրինակած ժողովածուի հիշատակարանում։ Նա գրում է.

«... Այն, որ կայր մնացեալ շառաւիղ տանն Բիւրթելեանց՝ գնաց փախստական ի տունն Վրաց, որոյ անուն Սմբատ կոչիւր, և անդ ի յօտարութեանն վախճանեցաւ։ Եւ մնացեալ Բ. որդիք իւր (Նկատի ունի Բուրթելին ու Ստեփանոսին) եկին ի հայրենիս իւրեանց, և ոչ են տեարք իշխանութեանն իւրենաց, այլ ընդ ձեռամբ անօրինաց։ Իսկ տանս Խաչենոյ բարեպաշտ ոմն կայր՝ Ջաղայ անուն, այն փոխեցաւ յաստեացս, և մնացեալքն յազգէ նորին՝ Ջալալն և որդիք նորին, և որդիք Ջաղային՝ Արղութէն և Ջալալադաւլէն, և եղբարք նորին Էլէգումն և Էլէգանն՝ են ի ներքոյ ձեռին անօրինաց. և այսպէս պակասեալ է իշխանութիւն տանս Հայկազեան» (էջ 194)։

ԺԵ. դարի առաջին կեսին հայկական կիսանկախ իշխանություն է գոյություն ունեցել նաև Համշենում։ Այդ իշխանության մասին մեր պատմագրության մեջ ոչինչ չի ասված։ Հրատարակվող հիշատակարաններից երկուսը, և նրանց լույսի տակ Ռույ Գոնցալեց դի Կլավիխոյի ուղեգրական հուշերի մի հատվածը (որը նոր իմաստ է ստանում)՝ հնարավորություն են ընձեռում որոշ խոսք ասելու հայկական այդ իշխանության մասին։

Համշենի առաջին մեզ հայտնի իշխանը եղել է պարոնաց պարոն Առաքելը։ Կլավիխոն, որ Լանկ-Թամուրի ռեզիդենցիայից Իսպանիա վերադառնալու իր ճանապարհին 1406 թ. սեպտեմբերի 13—15-ին անցել է այս իշխանության միջով, այն անվանում է Արրաքիել (Arraquiel): Հայտնում է նաև, որ երկրի անունով «Արրաքիել» էր կոչվում նաև երկրի տերը*։ Կլավիխոյի ճանապարհորդությունից քիչ առաջ այդ իշխանությունը գրավվել էր Սպերի ամիրի կողմից։ Վերջինս, ինչպես հաղորդում է Կլավիխոն, բանտարկելով Առաքելին, «մի իսլամ կառավարիչ նշանակեց նրա տեղ՝ կառավարելու համար Արրաքիելի

---

* Նա, անշուշտ, սխալվում է. ինչպես հայտնի է «Արրաքիել» երկրանուն տեղական ոչ մի աղբյուր չի նշում։ Ակնհայտ է, որ Առաքել իշխանի անունով ժամանակակիցների կողմից Համշենը կոչվել է «Առաքելի երկիր»։

հողերը, բայց միաժամանակ մի քրիստոնյա փոխկառավարիչ նշանակեց նրա օգնականը»*։

Ըստ երևույթին, այդ դրությունը երկար չի շարունակվում և Առաքելին (դժվար է ասել երբ) հաջողվում է կրկին տեր դառնալ իր երկրին։ Համենայն դեպս պարզ ու որոշակի տվյալ ունենք այն մասին, որ 1422 թվականին «պարոնաց պարոն Առաքելը» կրկին իր երկրի տերն է, և նրա խնդրով Համշենում ընդօրինակվել է Գր. Տաթևացու Քարոզգրքի մի ձեռագիր (տե՛ս էջ 515, առաջին ծանոթագրություն)։

1425 թվականին որպես Համշենի իշխան հիշատակվում է արդեն պարոնաց պարոն Դավիթը, ամենայն հավանականությամբ՝ Առաքելի որդին (էջ 344)։ Այս Դավթի իշխանությունը շարունակվել է երկար տարիներ։ 1440 թվականին Համշենի Խուժկա վանքում Աստվածատուր գրչի կողմից ընդօրինակված Մաշտոցի հիշատակարանում նույն այդ պարոն Դավիթը, իր դեռաբույս զավակի՝ պարոն Վարդի հետ միասին, դարձյալ հիշվում է որպես Համշենի իշխան (էջ 510)։

Համշենի ճանապարհների, լանդշաֆտի ու ժողովրդի բարքի մասին կարևոր են Կլավիխոյի ուղեգրության հետևյալ տողերը. «Այս Արրաքիելի բոլոր երկրամասը շատ լեռնոտ է, նեղ արահետներով, որ կիրճերից է անցնում, և սրանք այնքան ժայռոտ և զառիվեր են, որ բեռնակիր ձիեր չեն կարող առաջ երթալ։ Մի կարգ տեղերում նրանք ստիպված են եղել փայտյա կամուրջներ շինել ժայռից ժայռ՝ անցնելու համար լեռների կատարները։ Բեռնակիր կենդանիները անպետք են այստեղ, բայց բեռնակիր մարդիկ կրում են բեռներն իրենց ուսերի վրա։ Շատ քիչ հացահատիկ է աճում այդ շրջանում» և այլն։ Այնուհետև Կլավիխոն հայտնում է, որ շրջանի բնակիչները, չնայած հայ են և քրիստոնյա, բայց ավազակաբար են վարվում ճամբորդների նկատմամբ։ Այսպես գրելու առիթը, անշուշտ, եղել է այն, որ համշենցիները ստիպել են Կլավիխոյին և նրա ուղեկիցներին վճարել ապրանքների համար բարձր մաքս. «Ազատ անցնելու համար,— գրում է Կլավիխոն,— նրանք մեզ ստիպեցին ապրանքներից ուղեբաժ տալ, անցքի արտոնության համար»**։

Համշենի կիսանկախ իշխանության պատմության համար մեծ կարևորություն ունեցող փաստաթուղթ է Երուսաղեմի Մատենադարանի № 1617 ձեռագրի մեջ ընդօրինակված գրությունը, որը հասցեագրված է պարոն Դավթին։ Այնտեղ ասված է.

«... Պարոն Դաւիթ, յառաջն դուն զայս ուխտէ աստուծոյ, որ ճամփորթ[ի] համար լաւ լինաս ու զճամփորթի ապրանքն հանց պահես՝ որպէս զաստուծոյ տված հոգիդ, ով որ լինա՝ թէ քրիստոնեա և թէ այլազգ, ատ քեզ ավանդ։ Եւ զինչ քեզ ես Շամշադինս ավանդ դնեմ՝ զայն առնուս, այլ աւելի տամահութիւն չլինայ։ Վրայ այս բանիս գրէ մօտ ի Սպերու տէրն, որ բեռն բեռ բռնէ, թամպալիթ՝ թամպալիթ, իլոման՝ իլոմայ, խուրճին՝ խուրճի, պողչան՝ պողչայ. և բեռին տալիքն ընդ սաղւաթ ընդ ամեն խարճ, մինչև Բասենու սինօռն՝ զան որ պիտ առնուն՝ զան յիստակ գրեն, որ [թա]մահ և ստութիւն չլինայ ի մէշնս» (էջ 345 *)։

Այս գրության հեղինակը, ամենայն հավանականությամբ, քուրդ ամիր Շամս-ադ-դին Ռոժիկն է, որը Կարա-Յուսուֆից ստացել էր Խլաթի, Մուշի, Բաղեշի և Խնուսի շրջանները։

Դավիթը, որն ընդունել էր Իսքանդարի հպատակությունը (1425 թ. հի-

* «Ուղեգրություններ», հատ. Ա, ԺԳ—ԺԶ դար, Երևան, 1932, էջ 142։
** «Ուղեգրություններ», Ա, էջ 143։

շատակարանի մեջ որպես թագավոր նշված է Իսքանդարի անունը), ըստ երևույթին, կախման մեջ էր Շամս-ադ-դինից։ Վերջինս այս գրությամբ ձգտել է կարգավորել Համշենի մաքսատների գործունեությունը և ապօրինի գանձումների առաջն առնել, որոնցից, ինչպես տեսանք, դժգոհում է իր «Ուղեգրության» մեջ նաև Կլավիխոն։ Դավիթը Շամս-ադ-դինի պատվերը կատարելու համար, ինչպես ասված է գրության մեջ, պետք է կարգադրություն աներ Սպերի տիրոջը։ Այստեղից էլ կարելի է ենթադրել, որ Դավթի ժամանակ Սպերի իշխանությունը ենթարկվում էր Համշենին։ Գրության մեջ առաջարկվում է նաև «յիշտակ գրել» առևտրականների բեռներից պահանջվող մաքսի չափը՝ «մինչև Բասենու սինօռն», թերևս պետք է ենթադրել, որ Դավթի իշխանության սահմանը հասնում էր մինչև Բասեն։

Դժբախտաբար մեր ձեռքի տակ եղած նյութերը հնարավորություն չեն տալիս ավելի բան ասելու Համշենի հայկական այս կիսանկախ իշխանության մասին, որոշելու նրա սկզբնավորման ու վախճանի տարեթվերը և այլ անհրաժեշտ մանրամասնություններ։

Մի քանի հիշատակարաններ տվյալներ են պարունակում նաև Հայաստանի այլ վայրերում ծվարած մանր ֆեոդալների ու կալվածատերերի մասին։

1424 թվականին Սանահնում գրված մի հիշատակարանի մեջ նշվում է «ճիռն ավհնութեան իշխանն իշխանաց պարոն Ջալալին» (էջ 316)։ Մի այլ հիշատակարանից, գրված Տփղիսում, հայտնի է դառնում, որ Ջալալին պարոն Փաշի որդին է և, իր եղբայր Հովհաննես արքեպիսկոպոսի հետ միասին, վախճանվել է 1432 թվականին (էջ 420)։ Այս Հովհաննես արքեպիսկոպոսը՝ Ոսկեփոր մականունով, մեզ հայտնի է նաև այլ հիշատակարաններից. նա ամենուրեք կոչվում է «եպիսկոպոս Անւոյ», նրան 1426 թվականին հանդիպում ենք Թմոք (Թմկաբերդ) «անառիկ դղյակում» (էջ 354, 534—535 և այլն)։ Այս տվյալներն ի մի բերելով հնարավոր է եզրակացնել, որ իշխանաց իշխան Ջալալին Անիից Վրաստան տեղափոխված իշխանական տներից մեկի վերջին շառավիղներից է։

1432 թվականին հիշվում է որպես Բջնի քաղաքի «նախարար, վերակացու և առաջնորդ» ոմն Ծատուր (էջ 421)։

Ոհաննես Թմոքվեցու կողմից Արագածոտն գավառի Սերկևլի գյուղում 1442 թվականին շարադրված հիշատակարանից տեղեկություններ ենք ստանում այդ գյուղի հայ տերերի՝ պարոններ Ալիբեկի, Շալուեի, Վաչ[ուտի], Քրդի և Սարգսի մասին։ Գրիչը հատկապես մանրամասն տվյալներ է հաղորդում պարոն Շալուեի (իր ընդօրինակած ձեռագրի պատվիրատուի) մասին և դրվատում է նրան հետևյալ խոսքերով. «Այր հսկայազաւր ի մրցմունս պատերազմաց, դիւցազնական ի յազատաց և պայազատ ի յիշխանաց, ի յազանց և ի տոհմէ ասքանազեան սեռից պարոն Շալուէ, որդի մեծի իշխանին աստուածասէր պարոն Սարգսին, և թոռն պարոն Բուղլախին»։ Հիշատակվում են նաև նրա երկու կանայք (երկուսն էլ կենդանի՞), եղբայրները՝ պարոն Գրիգոր և պարոն Փանուել,՝ երիտասարդ որդին՝ պարոն Դավիթ և ուրիշները (էջ 533)։

1443 թվականին հիշվում է ոմն իշխան որդի Ջաջուռի (էջ 549)։ 1444 թվականին որպես Եղվարդի տեր հիշատակվում է «մեծազգի և փառաւոր... ազատածին» Ազիզպեկը՝ իր Ավագ և Զաքարիա որդիների հետ միասին (էջ 561) և այլն։

Մեջբերված տվյալները ուշագրավ են այն տեսակետից, որ որոշ լույս են

սփռում հայ ֆեոդալական տների հողազրկման երկարատև պրոցեսի վրա, և ցույց են տալիս, թե ինչպես հայ ֆեոդալական դասակարգը, գործակցելով երկրի նվաճողներին, նոր պայմաններում ևս շարունակում էր պահպանել իր նախկին տիրույթների մի մասը և շահագործել հայ աշխատավոր ժողովրդին։

### 16

Հրատարակվող հիշատակարանների մեջ քաղաքների և արհեստների մասին տվյալներն աննշան են։ Եվ դա բոլորովին էլ անսպասելի չէ։ Մոնղոլական աշխարհավեր արշավանքներից հետո, հայկական քաղաքները մտան քայքայման և հետադիմության շարունակ է՛լ ավելի խորացող ընթացքի մեջ։ Զարգացած արհեստագործությունը քայքայվեց։ Միջազգային տարանցիկ առևտրի մեջ ներգրավված մի շարք նշանավոր քաղաքներ, որոնցից էին Անին, Կարսը, Խլաթը, Կարինը և այլն, կամ աստիճանաբար անմարդաբնակ դարձան, կամ էլ շարունակում էին քարշ տալ իրենց կիսակենդան գոյությունը, սոսկ որպես ադմինիստրատիվ կենտրոններ։

Այնուամենայնիվ, սխալ կլիներ կարծել, թե մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում քաղաքային կյանքը և արհեստագործությունը Հայաստանում խափանվել էր ամբողջովին և ամենուրեք։

Հրատարակվող հիշատակարանների տվյալներով պարզվում է, որ ԺԵ. դարի առաջին հիսնամյակում Հայաստանում նշանավոր քաղաքներ էին Ոստանը, Վանը, Մուշը, Խիզանը, Արճեշը, Էրզրումը, Բաղեշը, Կարսը, Երզնկան և մի շարք այլ քաղաքներ ու գյուղաքաղաքներ։

Ուշագրավ է նաև, որ հենց այս ժամանակաշրջանում է բարձրանում Երևանի նշանակությունը, որպես Արարատյան նահանգի ադմինիստրատիվ կենտրոն։ 1405 թվականին ամն ստացող Հակոբ մի ավետարան է նվիրում «Երևանոյ հրաշալի և յորդոր» ժամատեղերին, բայց դեռևս շարունակում է Երևանը, ըստ երևույթին, հին տրադիցիայով՝ կոչել գյուղաքաղաք (էջ 50)։

Շատ չանցած, սակայն, Երևանն արդեն «մայրաքաղաք» է կոչվում և սկսում է որոշակի դեր կատարել Հայաստանի քաղաքական ու կուլտուրական կյանքում։ 1410 թվականին արդեն Երևանում կային անվանի գրիչներ, որոնց Թովմա Մեծոփեցին ընդօրինակել է տալիս Գր. Տաթևացու Քարոզգիրքը («ի գաւառիս Այրարատեան, յանապատիս Երևանոյ, առ դրան սուրբ տաճարիս Անտոնիայ առաքելոյ», էջ 106)։

Զգալի թվով հայ առևտրականներ և արհեստավորներ կային նաև Տփղիսում, Թավրիզում, Տրապիզոնում, Սամսոնում, Ամիթում, Սեբաստիայում և բազմաթիվ այլ մերձավոր ու հեռավոր քաղաքներում, որոնք այս կամ այն չափով պահպանել էին իրենց նշանակությունը, որպես արհեստագործության կենտրոններ, և շարունակում էին որոշ դեր կատարել միջազգային տարանցիկ առևտրի մեջ։

Մկրտիչ Նաղաշի Վարք-հիշատակարանի մեջ կա ուշագրավ վկայություն Ամիթի հայկական գաղութի կյանքում արհեստավորների կատարած մեծ դերի մասին։ Ամիթի կաթուղիկե եկեղեցու վերաշինության (1447) հանգամանքները նկարագրելիս, Նաղաշի Վարքի հեղինակ Աստվածատուր վարդապետը հայտնում է, որ այդ գործում Մկրտիչ Նաղաշին մեծ օգնություն էին ցույց տալիս «տանուտեարքն քրիստոնէից»։ Այդ տանուտերների շարքում նա նշում է

Շահրման Թիլկուրանցուն, Սաղաղա ոսկերչին, «որ էր երեսփոխան և հրամանատար», Ալեքսիանոս ոսկերչին, Յերկեն Դանիելին, Աբրահամին և Սիմեոն դարբնին։ Սրանք «ինքեանք տային ինչս բազումս և կերակուրս, և զամենեսեան յորդորէին ի գործառութիւն սուրբ Կաթուղիկէին» (էջ 629)։

Ոսկերիչ արհեստավորներ հիշատակվում են նաև մի շարք այլ վայրերում. այսպես, օրինակ, 1425 թվականին Երզնկայում հիշատակվում է ստացողի եղբայր Հովհաննես ոսկերիչը (էջ 344)։ 1440 թվականին Ոստանում՝ ոսկերիչ Քրիստոսատուրը (էջ 510), 1449 թվականին Աղթամարում մի ձեռագիր է ստանում Հովհաննես ոսկերիչը (էջ 634)։ Ուսլուն անունով մի ոսկեգործ 1419 թ. ձեռք է բերում մի ձեռագիր ավետարան (էջ 237) և այլն։

Բացի ոսկերիչներից, քաղաքներում հիշատակվում են նաև հետևյալ արհեստավորները՝ Սարգիս ներկարարը (էջ 136) և Խնգուբեկ դերձակը (էջ 167)՝ Ոստանում, Պապուհեր դարբինը՝ Վան քաղաքում (էջ 569), Կարապետ պղնձագործը՝ Բաղեշում (էջ 592) և ուրիշները։

Ավելի հետաքրքիր են գյուղերում բնակվող և աշխատող արհեստավորների մասին եղած տվյալները։ Այդպիսիներից, այլևայլ առիթներով, հիշատակվում են՝ կոշկակար Թովման՝ Տշող գյուղում (էջ 204), հյուսներ Հովհաննեսը՝ Ազեթ գյուղում (էջ 249) և Պետրոսը՝ Նարեկ գյուղում (էջ 510), ուսթա Ամիր-Սարգիսը և նրա որդի ուսթա Էվատշահը (մասնագիտության մասին տվյալ չկա)՝ Վառնիշատ գյուղում (էջ 355), բրուտ Պետրոսը՝ Մոկքի Սուրբկանց գյուղում (էջ 434), դերձակ Գորգասալը՝ Սերկևլի գյուղում (էջ 536) և այլն։

1440 թվականին մի ձեռագիր Ցայսմաւուրքի նվիրաբերության ակտի տակ, որպես վկա, ստորագրում է նաև ոմն քարխանաճի (արհեստանոցի տեր) Առաքելի որդի Ավտուլ (էջ 512)։

Այսպիսով, կարելի է ենթադրել, որ աշխատանքի գործիքների, հագուստի, կոշիկի, կահկարասու և այլ արհեստագործական արտադրանքների համար գյուղացիները ամեն անգամ հարկ չունեին քաղաք մեկնելու. մեծ գյուղերում կային հյուսներ, բրուտներ, կոշկակարներ, դերձակներ, անշուշտ, նաև դարբիններ և այլ արհեստավորներ։

Հիշատակարանները հնարավորություն են տալիս մասամբ պարզելու նաև պատվիրատուի և արհեստավորի հարաբերությունների հետ կապված որոշ հարցեր։ Արհեստավորները, ամենայն հավանականությամբ, աշխատել են և՛ իրենց սեփական նյութով, և՛ պատվիրատուի նյութով, նայած հանգամանքներին ու պայմանավորվածությանը։

1427 թվականին ոմն Սարգիս եպիսկոպոս, ցանկանում է ձեռագիր գրել տալ, և հայտնում է, որ «զթուղթն ու զամէն նիւթ» տվել է ինքը, բայց ինչ-ինչ պատճառներով գրիչը չի համաձայնվել կատարել նրա պատվերը (էջ 363)։

Նույն այդ թվականին, մի այլ պատվիրատու, ոմն Աբրահամ, Գրիգոր Արծկեցի գրչին վճարում է նաև ընդօրինակվող ավետարանի թղթի գինը՝ «Խ. (40) դրամ» (էջ 366)։ Այս անգամ արդեն պարզ է, որ արհեստավորը՝ տվյալ դեպքում գրիչը՝ աշխատել է իր սեփական նյութով։

Ըստ պայմանավորվածության, տարբեր են եղել նաև աշխատավարձի ձևերը։ Հովհաննես Ապարանեցի գրիչը, 1401 թվականին, ընդօրինակության վարձը ստացել է զուտ դրամով՝ 2000 դահեկան. «Եւ առի,—գրում է նա,—շուքրանա գրոցս ՍՌ. (2000) դահեկան, որ առնէ կէսն Ռ. (1000) դահեկան՝ թանկա Թաբրեզի» (էջ 15)։

Մեզ ծանոթ Հովհաննես Խիզանցի գրիչը՝ ընդօրինակության համար աշխատավարձ ստացել է խառն ձևով՝ և՛ դրամով (մեծ մասը), և՛ բնամթերքով։ Նա անձնապես ստացել է ընդամենը 2150 դրամ, 6 կապիճ հաց, 1 լիտր յուղ և 2 լիտր մեղր (էջ 71)։ Չպետք է կասկածել, որ որոշ դեպքերում գրիչը ընդօրինակության վարձն ամբողջովին կարող էր վերցնել բնամթերքով։

Հիշատակարանները հնարավորություն են տալիս պարզելու նաև ԺԵ. դարի առաջին հիսնամյակի շուկայական մոտավոր գները որոշ ապրանքների նկատմամբ։ Իհարկե, տվյալներն այնքան պատահական են, և վերաբերում են տարբեր վայրերի ու տարեթվերի, որ դրանց հիման վրա տնտեսագիտական հարցեր առաջ քաշել ու լուծել գրեթե անհնար է։ Այնուամենայնիվ, ավելի ստույգ տվյալների բացակայության պայմաններում, անշուշտ, դրանք ևս արժանի են ուշադրության։

Մենք արդեն տեսանք, որ շուրջ 310 թերթից բաղկացած ավետարանի գրության համար անհրաժեշտ թղթի դիմաց 1427 թվականին պատվիրատու Աբրահամը վճարել է 40 դրամ (էջ 366)։

Այլ առիթով նշել ենք նաև, որ 1407 թվականին 6 կապիճ ցորենի արժեքը Հովհաննես Խիզանցի գրիչը հաշվում է 200 դրամ, այլ խոսքով՝ մի կապիճ ցորենի արժեքը եղել է մոտավորապես 33 դրամ։ Հացի գինը, բնականաբար, հսկայական տատանումներ է տվել քաղաքական խառն իրադարձությունների՝ պատերազմների ու ասպատակությունների ժամանակ, ինչպես նաև սովի, մորեխի և բնական այլ աղետների հետևանքով։

Նույն Խիզանում, վերոհիշյալ տվյալից ընդամենը վեց տարի առաջ, մեկ կապիճ հացը վաճառվել է 200 դրամով (վեց անգամ թանկ 1407 թվականի գնից), որովհետև, ինչպես հաղորդում է Զաքարիա գրիչը՝ «եկն մարախ և եղև սով սաստիկ ընդ ամենայն երկիր» (էջ 8)։

1413 թվականին գրված մի հիշատակարան հնարավորություն է ընձեռում մոտավոր չափով որոշելու նաև կովի և եզան գինը։ Այդ թվականին ոմն Մարտիրոս 600 դահեկանով վաճառում է իր հանգուցյալ հորեղբոր ավետարանը և ստացած դրամով գնում է «մին կով և մին եզն» (էջ 160)։

Անտարակույս, նոր նյութերի, հատկապես վիմական արձանագրությունների և հետագա դարերի հիշատակարանների ու կալվածագրերի մեջ եղող տվյալների ուսումնասիրության միջոցով որոշ հնարավորություններ կստեղծվեն վերոհիշյալ ապրանքների շուկայական գների ստուգման ու ճշտման համար։

Ահա համառոտակի թվարկմամբ այն կարևոր բնագավառները, որոնց մասին արժեքավոր տվյալներ են պարունակում ԺԵ. դարի առաջին հիսնամյակի ընթացքում գրված հիշատակարանները։ Եթե վերհիշենք, որ հայ ժողովրդի ԺԵ. դարի առաջին հիսնամյակի պատմության ուսումնասիրության համար մասնագետների ձեռքի տակ, բացի Թ. Մեծոփեցու «Պատմությունից» և Գրիգոր Խլաթեցու «Յիշատակարան աղետից» գրվածքից, հայերեն լեզվով կարևոր այլ սկզբնաղբյուրներ չկան, ապա ավելի ցայտուն կդառնա հրատարակվող հիշատակարանների արժեքն ու նշանակությունը։

17

Հիշատակարանները շարադրել են ձեռագրերի ընդօրինակության ու նկարազարդման ծանր և դժվարին գործի համեստ մշակները՝ գրիչներն ու ծաղկողները։

Նրանց մեծագույն մասը իրենց գիտակցական կյանքի ողջ ընթացքում օր ու գիշեր, զբաղվել են ձեռագրերի ընդօրինակությամբ, դրանով իսկ հայթայթելով իրենց և իրենց ընտանիքի սուղ պարենը։

Գրիչների կյանքի ու աշխատանքի պայմանների մասին հիշատակարաններում կան պերճախոս ու բովանդակալից բազմահարուստ տվյալներ։

ԺԵ. դարի ամենաբազմարդյուն գրիչներից է արճիշեցի Հոհաննես Մանգասարենցը (կամ Մանգասարի որդին)։ Նա ծնվել է մերձավորապես 1417—1419 թվականներին, ապրել է 86 տարի, և 14 տարեկան պատանի հասակից մինչև իր մահը, 72 տարի շարունակ, ընդօրինակել է ձեռագրեր։

Նրա աշակերտներից մեկը՝ Զաքարիա գրիչը, 1505 թվականին շարունակելով Հոհաննեսի մահով կիսատ մնացած ձեռագրի ընդօրինակությունը, կարևոր տվյալներ է հաղորդում իր ուսուցչի կյանքի ու գործունեության մասին։ Նա գրում է.

«Եւ արդ, գրեալ եղև Յոհան գլուխն ձեռամբ վարդապետին իմոյ տէր Յոհանիսի Մանգասարենց քաջ քարտողին, որ ՀԲ. (72) տարի՝ ամառն և ձմեռն, գիշերն ու ցերեկ ի գրել եկաց։ Որ գրեալ եղև ձեռամբ նորա Խ. (40) Այսմաւուրք և Տարենգիրք, իսկ փոքր գիրք՝ Տետր և Աղօթամատոյց, Շարակնոց և Սաղմոսարան, Մաշտոց և Գանձատետր՝ Ծ. (50)—Կ. (60) և այլ աւելի, և Աւետարան ԼԲ. (32)։ Եւ զայս Յոհան գլուխս ի ծերութեան ժամանակիս, որ աչք չէր հայիլ և ձեռքն կու դողայր, բազում չարչարանօք հազիւ կարաց աւարտել, և այլ չկարաց դրիչ բռնել մինչ ի վախճան, որ յանգեաւ ի Քրիստոս ՁԶ. (86) ամաց» (էջ 587 *)։

Այսպիսով, իր կյանքի ընթացքում Հոհաննես Մանգասարենցը, որ դեռ երիտասարդական տարիներին գրած հիշատակարաններում գանգատվում է իր աչքերի տկարությունից, ընդօրինակել է 132 մեծ ու փոքր ձեռագիր։

Հոհաննեսը, անշուշտ, միայնակ չէր, և նրա նման իրենց ողջ կյանքն անց են կացրել գրքերի բազմացման տաժանակիր աշխատանքի մեջ Գրիգոր Խլաթեցին, Թովմա Մինասենցը և բազմաթիվ այլ գրիչներ ու ծաղկողներ։

Ծանր է եղել նրանց կյանքի և աշխատանքի պայմանները, նրանք ստիպված են եղել շարունակել գրքերի ընդօրինակությունը քաղցած ու ծարավ, անտուն և անօթևան, տկար և հիվանդ վիճակում, գաղթի ու փախուստի ճանապարհին, օտար նվաճողների հրոսակախմբերի կողմից բռնվելու, կողոպտվելու և սպանվելու վտանգի տակ։

Իրենց տխուր վիճակի մասին ևս գրիչներից շատերը հաղորդում են կենդանի ու խոսուն բազմաթիվ տվյալներ։ Արիստակես գրիչը, Դարանաղյաց գավառի Ավագ վանքում 1408 թվականին ընդօրինակած ձեռագրի հիշատակարանում խնդրում է անմեղադիր լինել իր սխալների նկատմամբ, «զի շաղգամով մալէզն (ալյուրով պատրաստած կերակուր) և կորեկէ ճաթն օգնական եղև մեզ ի գրելն» (էջ 89), Ցռանգ գրչի աղքատիկ կերակուրը «ճաթբուր» է եղել, իսկ ջուրը՝ «ցուրտ»։

Գրիգոր գրիչը Խառաբաստի վանքում տառապում է սաստիկ գլխացավից, բայց ընդօրինակվող գրքի հետաքրքրությունը մոռացնել է տալիս գլխացավը. «վա՜, ի գլխի ցաւէս, թէ որպէս նեղին,—գրում է նա,—բայց փափաքումն բանիս կու յաղթէ» (էջ 145)։

Ծերունի Սարգիս գրիչը 1416 թվականին, «աչօք կուրացած» շարունակում է ձեռագրի ընդօրինակության ծանր աշխատանքը։ Նա գանգատվում է իր վի-

ճակից. «Վա՜յ, որ ձեռս կու դողայ, ու ազգի ազգի կիրս կու ափրեմ, ի՞նչ առնեմ, որ ծեր եմ ու աչքս վատատես է, Խ. (40) տարի է, որ գիր կու գրեմ, թոզութիւն արարէք» (էջ 184)։

Նույն գրչին հանդիպում ենք նաև չորս տարի հետո, 1420 թվականին, ավելի անմխիթար վիճակում, բայց դարձյալ ձեռագիր ընդօրինակելիս։

«Բայց գիտեմ,— գրում է նա,— որ գրիդ բաղում պակասութիւն կայ և անթիւ, թէպէտ որ շատ կայ՝ մեր կարն այդ չափդ էր, ձեռս կու դողայր և աչքս բնաւ չէր տեսնուլ, գրչի մատն չորացած էր, մինչի մատամբս ծրեցաք» (էջ 245)։

Մելքիսեթ գրիչը ցերեկը չի կարողացել աշխատել, «քանզի ցորեկն պզտիկ էր, և ցնորն շատ, և սիրտս խոցած յեղբաւրէ», ուստի ստիպված՝ հիմնականում աշխատել է գիշեր ժամանակ, խավար ճրագի ներքո. «խոշորութեան անմեղադիր լէր, ո՜վ եղբայր,—աղերսում է նա,— զի գիշերն եմ գրեր՝ ի ճրագն, յամէն գիշեր Ը. (8) թուղթ և ցորեկն՝ երկու թուղթ կամ երեք» (էջ 387)։

Թորոս գրիչն աշխատել է 1431 թվականի սովի ու արշավանքների ժամանակ, նրան մեծ չափով խանգարել է նաև ցուրտը՝ «որ ե. թանաքն մսեցաւ և ոչ ելաւ պիտոյ»,—գանգատվում է նա (էջ 417)։

Ավելի ծանր է եղել Սիմեոն գրչի դրությունը։ 1439 թվականին նա հայտնում է, որ «մին աչքս կու ցաւէր, նա խբեցի ու մին աչովն գրեցի՝ խիստ աշխատանաւք»։ Ձեռագրի ընդօրինակության ընթացքում նա մի քանի անգամ գանգատվում է աչքի սուր ցավերից, ի վերջո, երբ հաջողությամբ ավարտում է սկսած գործը, ուրախացած արձանագրում է՝ «Ահայ ազատեցար շլրած աչկունք, կզացաց շլնեկունք, կո[տրած] ոտկունք» (էջ 497)։

Գրիչների մի մասը, տոգորված լինելով քրիստոնեական գաղափարախոսությամբ, մեծ կուլտուրական նշանակություն են վերագրել իրենց կողմից ընդօրինակվող եկեղեցական բովանդակությամբ ձեռագրերին։ Նրանցից մեկը դիմում է իր հետագա ընթերցողներին և աղերսում լավ խնամել գիրքը, «զի գիրքն (իմա՛ սուրբ գիրքը) մարդոյ հոգի է և կեանք. իմ դատաստանն, թէ գրէանքս չէին՝ նա աշխարհըս ամէն ի կռապաշտութիւն անկանէր» (էջ 148)։

Բայց գրիչների մեծամասնությունն անտարբեր է մնացել ընդօրինակվող կրոնական բովանդակությամբ ձեռագրերի նկատմամբ, և օգտագործել է ամեն պատեհ առիթ, ձեռագրի մի անկյունում կամ դատարկ մնացած մի քանի տողերի վրա, բարբառախառն ու կենդանի լեզվով դիմելու իր ընթերցողներին, գանգատվելով աշխատավոր ժողովրդին վիճակված տխուր կյանքից ու ծանր առօրյայից։ Այսպիսով, ստեղծվել են այն բազմաթիվ հիշատակագրությունները, որոնք պատշաճ տեղ են բռնում հրատարակվող ժողովածուի մեջ։

## ԺՈՂՈՎԱԾՈՒԻ ԿԱԶՄՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԱՆԳԱՄԱՆՔՆԵՐԸ

Հրատարակվող ժողովածուի մեջ ընդգրկված 744 հիշատակարանների կեսից ավելին՝ 384 հիշատակարան, քաղել ենք Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պետական ձեռագրատան (Մատենադարանի) հայերեն ձեռագրերից։ Այդ նպատակով մեկ առ մեկ թերթել ենք ոչ միայն 1401—1450 թվականների ընթացքում ընդօրինակված շուրջ 300 ձեռագրերը, այլ նաև բոլոր այն ձեռագրերը, որոնք գրվել են նախորդ դարերում, սկսած 887 թվականին ընդ-

օրինակված հնագույն ավետարանից՝ մինչև 1400 թվականի ձեռագրերը (թվով մոտ 900 ձեռագիր)։ Սրանց մեջ փնտրել ենք հետագա ստացողների ու նորոգողների կողմից ԺԵ. դարի առաջին հիսնամյակի ընթացքում շարագրած հիշատակարաններ։

Բացի այդ, անձամբ ուսումնասիրել ենք Լենինգրադի Արևելագիտության ինստիտուտի Արևելյան ձեռագրերի սեկտորի հայերեն ձեռագրերի հավաքածուն՝ բաղկացած 316 հայերեն ձեռագրերից, Մ. Ե. Սալտիկով-Շչեդրինի անվան հանրային գրադարանի Ձեռագրական բաժնի հայերեն 90 ձեռագրերը (ԺԵ. դարի առաջին կեսից քաղել ենք յոթ հիշատակարան), Վրացական ՍՍՌ Պետական թանգարանի Ձեռագրական բաժնի հայերեն ձեռագրերի հավաքածուն՝ բաղկացած 207 ձեռագրերից (քաղել ենք երեք հիշատակարան), Վրացական ՍՍՌ Պետական կենտրոնական պատմական արխիվի № 223 ֆոնդի 36 հայերեն ձեռագրերը (քագել ենք մի հիշատակարան), Բաքվի Նիզամիի անվան Ձեռադրատան 10 ձեռագրերը (քաղել ենք մի հիշատակագրություն) և Մոսկվայի Լենինի անվան գրադարանի ու Պատմական թանգարանի ձեռագրական բաժիններում, ինչպես և Արևելյան արվեստների թանգարանում պահվող շուրջ 40 հայերեն ձեռագրերը (ԺԵ. գարի առաջին կեսի հիշատակարաններ սրանց մեջ չկան)։

Ժողովածուն կազմելիս օգտագործել ենք նաև Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Պատմության ինստիտուտի արխիվում, Մատենադարանում և Հայաստանի Պատմական թանգարանում պահվող հայերեն ձեռագրերի անտիպ բոլոր ցուցակները։ Դրանք են.

1. Մեսրոպ Տեր-Մովսիսյանի կազմած աշխարհի բոլոր հայերեն ձեռագրերի թերի ցուցակը, որը պարունակում է Երևանի Մատենադարանի ձեռագրերի նկարագրություններից ու հիշատակարաններից բացի, նաև մի շարք այլ երկրների թանգարաններում ու ձեռագրատներում պահվող հայերեն ձեռագրերի նկարագրություններ։

Ցավոք, Մ. Տեր-Մովսիսյանին չի հաջողվել անձամբ ուսումնասիրել Վենետիկի Մատենադարանի ձեռագրերը (նրան այդ բանը թույլ չեն տվել), իսկ Երուսաղեմում նա եղել է շատ կարճատև ժամանակ, ուստի և հնարավորություն չի ունեցել մանրամասնորեն ծանոթանալու և նկարագրելու ս. Հակոբի վանքի Մատենադարանում պահվող բոլոր 3700 հայերեն ձեռագրերը։ Ժամանակի սղության պատճառով նա նույնիսկ չի կարողացել լրիվ ընդօրինակել իր տեսած ձեռագրերի հիշատակարանները և շատ դեպքերում բավարարվել է միայն հիշատակարաններից որոշ քաղվածքներ անելով, կամ նրանց բովանդակությունը համառոտ վերաշարադրելով։

Այնուամենայնիվ, որքան էլ թերի համարենք Մ. Տեր-Մովսիսյանի կազմած հայերեն ձեռագրերի ցուցակը, նրա մեջ կան բազմաթիվ արժեքավոր և մինչ այժմ անտիպ մնացած հիշատակարաններ ու ձեռագրերի նկարագրություններ, որոնք մեծապես օգնել են սույն ժողովածուի լրացման գործին։

Մ. Տեր-Մովսիսյանի ցուցակից քաղել ենք ընդամենը 65 հիշատակարան, դրանցից՝ 30 հիշատակարան Երուսաղեմի ձեռագրերից, 12 հիշատակարան Վենետիկի ձեռագրերից, 23 հիշատակարան այլևայլ վայրերից (Պետերբուրգ*,

* Մ. Տեր-Մովսիսյանը հայտնում է, որ Պետերբուրգում, Կ. Եզյանի տանը պահվում էին 120 հայերեն ձեռագրեր, որոնք գնված էին Կարենի Սանասարյան վարժարան ուղարկելու համար։ Այդ ձեռագրերը հետագայում, Մ. Տեր-Մովսիսյանի կողմից նկարագրվելուց հետո, երբ, զոհ են գնացել մի հրդեհի, որ տեղի է ունեցել այն պահեստում,

Փարիզ, Կ. Պոլիս, Կիպրոսի Նիկոսիա քաղաք, Իրան, Ախալքալաք, Շուշի և այլն)։

Բացի վերոհիշյալից, Մ. Տեր-Մովսիսյանի միջնորդությամբ կարողացել ենք օգտվել նաև Ղ. Ալիշանի կազմած «Հայկարան» կոչվող հիշատակարանների անտիպ ժողովածուից (քաղել ենք 11 հիշատակարան), և Հ. Բարաղամի «Ցուցակ հայերեն ձեռագրաց Վասպուրականի» անտիպ ցուցակից (քաղել ենք 5 հիշատակարան)։

Մ. Տեր-Մովսիսյանի ցուցակը այժմ պահվում է Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Պատմության ինստիտուտի արխիվում։

2. Սմբատ Տեր-Ավետիսյանի կազմած «Նկարագրություն Նոր-Ջուղայի Ամենափրկիչ և այլ վանքերի ու մասնավոր անձանց մոտ գտնվող հայկական ձեռագրերի» անտիպ ցուցակը, որը նույնպես պահվում է Պատմության ինստիտուտի արխիվում (Թղթապանակ № 48)։ Ցուցակում նկարագրված են 580 հայերեն ձեռագրեր և բերված նրանց հիշատակարանները։ Այս նույն հիշատակարանները, սակավ բացառությամբ, կան նաև Մ. Տեր-Մովսիսյանի ցուցակում, ուստի և մենք հնարավորություն ենք ունեցել, մեկի արտագրությունը համեմատելով մյուսի հետ՝ խուսափել սխալներից և լրացնել թերությունները։

Նոր-Ջուղայի ձեռագրերի հիշատակարաններից հրատարակվող ժողովածուում տեղ են գտել 14-ը։

3. Նույն Սմբատ Տեր-Ավետիսյանի կողմից, 1904 թվականին կազմած «Ձեռագիրք Նախավկայի վանաց Դարաշամբի ս. Ստեփանոսի, որ ի Գողթն» անտիպ ցուցակը (Պատմության ինստիտուտի արխիվ, թղթապանակ № 94)։ Ցուցակը պարունակում է 124 ձեռագրերի մանրամասն նկարագրություն ու հիշատակարաններ, որոնցից 3-ը վերաբերում են ԺԵ. դարի առաջին կեսին։

4. Տիրայր վարդապետի կազմած «Մայր ցուցակ Օքսֆորդի Բոդլեյան գրատան հայերեն ձեռագրերի» անտիպ ցուցակը („Ceneral Catalogue of the Armenian Manuscripts in the Bodleian Library at Oxford"), որ պարունակում է 132 ձեռագրերի մանրամասն նկարագրություն։ Ցուցակը պահվում է Երևանի Մատենադարանի արխիվային բաժնում (Անհատական արխիվների ֆոնդ, թղթապանակ № 119—122)։ Այստեղից քաղել ենք 2 հիշատակարան։

5. Երվանդ Լալայանի «Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի» աշխատության անտիպ շարունակությունը։ Սրա մի մասը՝ №№ 481—708 ձեռագրերի նկարագրությամբ, պահվում է Հայաստանի Պատմական թանգարանի ազգագրական բաժնում (Ե. Լալայանի արխիվ, թղթապանակ № 134), որից և անձամբ օգտվել ենք, իսկ մյուս մասի հետ, որի տեղը մեզ անհայտ է, ծանոթացել ենք Մ. Տեր-Մովսիսյանի Ցուցակի միջնորդությամբ։ Ե. Լալայանի Ցուցակի անտիպ մասից քաղել ենք ընդամենը 4 հիշատակարան։

6. Քեշիշյանի կազմած Զմմառի (Բեյրութի մոտ) հայերեն ձեռագրերի ցուցակը, որի լուսանկար մի պատճենը այժմ գտնվում է Մատենադարանում։ Որոշ տեղեկությունների համաձայն, Զմմառի վանքի հայերեն ձեռագրերի քանակը

ուր նրանք ապահովության համար. դրվել էին Կ. Եղյանի կողմից։ Որքանով է ճիշտ այդ տեղեկությունը՝ դժվարանում ենք որոշել։ Սակայն այդ հավաքածուի մեջ մտնող ձեռագրերից մի երկուսը (օրինակ № 8150 ձեռագիրը, որը Սանահնի «Բօթուկի» ընդօրինակությունն է) այժմ պահվում են Մատենադարանում։ Ուստի պետք է ենթադրել, որ կամ հրդեհի մասին տվյալը իրականության չի համապատասխանում և կամ՝ հրդեհին զոհ են գնացել ոչ բոլոր ձեռագրերը։

*պետք է լինի շուրջ 700։ Մատենադարանում եղող ցուցակում, սակայն, նկարագրված է միայն 154 ձեռագիր։ Այդ ձեռագրերից ԺԵ. դարի առաջին հիսնամյակին են պատկանում միայն 4-ը* *։*

*Այսպիսով, հայերեն ձեռագրերի անտիպ ցուցակներից հրատարակվող ժողովածուի մեջ տեղ են գտել 108 հիշատակարան։ Ուստի, անմիջապես ձեռագրերից և ձեռագիր աղբյուրներից քաղված հիշատակարանների քանակն է 504. այլ խոսքով, ժողովածուի մեջ ընդգրկված հիշատակարանների շուրջ 68 տոկոսը քաղված է ձեռագիր աղբյուրներից։*

* * *

*Հիշատակարաններ գտնելու համար նայել ենք առանձին գրքերով և պարբերական մամուլում հրատարակված հայերեն ձեռագրերի մեծ ու փոքր համարյա բոլոր ցուցակները և հիշատակարանների ժողովածուները* **։*

*Ստորև թվարկում ենք ձեռագրերի միայն այն ցուցակներն ու հիշատակարանների ժողովածուները, որոնց մեջ կան ԺԵ. դարի առաջին հիսնամյակում շարադրված հիշատակարաններ։ Թվարկումը կատարում ենք ըստ նրանց օգտակարության. սկզբից տալիս ենք աշխատությունների վերնագրերի համառոտած ձևը՝ այնպես, ինչպես նրանք նշված են սույն ժողովածուի մեջ։*

1. Փիրղ. Նոտարք — *Նոտարք Հայոց, հաւաքեալ և ի լոյս ածեալ ձեռամբ Ղևոնդ վարդապետի Փիրղալեմեան Տոսբեցւոյ, Վարագայ վանուց վանականի... Կ. Պոլիս, 1883"։*

*«Նոտարք Հայոցի» մեջ ԺԵ. դարի առաջին կեսից կա 85 հիշատակարան, որոնց ձեռագրերը կորուստի են մատնվել կամ ոչնչացվել առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ՝ թյուրքական վանդալների կողմից։*

*Օգտագործել ենք նաև այդ աշխատության բնագիրը՝ «Նշխարք պատմութեան Հայոց» խորագրով, որը պահվում է Մատենադարանում, № 6273-ի տակ, ինչպես նաև նույնի լրացումը՝ «Նշխարք պատմութեան Հայոցի» Բ. հատորը (ձեռագիր № 4515)։*

*«Նոտարքի» տպագիր տեքստից Ղ. Փիրղալեմյանն ստիպված է եղել դուրս հանել մի շարք կարևոր հատվածներ, որոնցում հիշատակագիրները խոսել են մահմեդական իշխողների բռնությունների ու հպատակ ժողովուրդների նկատմամբ գործած անգթությունների մասին։ № 4515 ձեռագրում հիշատակարանների բնագրերն ընդօրինակված են անվթար, ուստի և դրանց միջոցով հնարավորություն ենք ունեցել լրացնելու տպագիր տեքստում կատարված սղումների մի մասը։ Այսպես, օրինակ, Մկրտիչ գրիչը 1432 թվականին Արճեշում շարադրած հիշատակարանի մեջ իր ժամանակը բնորոշում է այսպես՝ «Ի չար*

---

** Ջմմառի ցուցակի լուսանկար պատճենը Մատենադարանը ստացավ այն ժամանակ, երբ սույն ժողովածուի բնագրային մասն արդեն տպագրված էր։ Ուստի վերոհիշյալ 4 հիշատակարանները հնարավորություն ունեցանք հրատարակելու վերջում, որպես լրացում։ «Լրացում» կոչված բաժնում ենք հրատարակել նաև Լենինգրադում պահվող հայերեն ձեռագրերի հիշատակարանները։*

*** Կարևոր ցուցակներից ձեռքի տակ չենք ունեցել Լ. Մելիքսեթ-Բեկի «Նյութեր հայերեն ձեռագրացուցակների բիբլիոգրաֆիայի համար» (Թբիլիսի, 1939) աշխատության № 37-ի տակ նշված՝ Ֆ. Մակլերի* „Rapport sur une mission scientifique en Belgique, Hollande, Danemark et Suède. Paris, 1924" *ցուցակը, ուր նկարագրված են 91 հայերեն ձեռագրեր, ինչպես նաև Ա. Սուրմեյանի կազմած Երուսաղեմի Մատենադարանի հայերեն ձեռագրերի Մայր ցուցակի առաջին պրակը։*

և ի դառն ժամանակիս, յորում տառապին ազգ քրիստոնէից զանազան պատուհասիւ ի ձեռաց անօրինաց, ի թոյլ տալոյն աստուծոյ վասն բազմութեան մեղաց մերոց։ Ի թագաւորութեան աշխարհաւէր և անիմաստ Սկանտարին» (էջ 424—425)։ Հիշատակարանի «Նոտարքում» տպագրված տեքստից (էջ 100—101) հանված են վերոհիշյալ նախադասության ընդգծված բառերը։

Թովմա Մինասենցը 1445 թվականին ընդօրինակած Մաշտոցի հիշատակարանում ունի այսպիսի բառեր. «... որք են ազգաւ Թուրք (խոսքը Ջհանշահի և Ղլիճ-Ասլանի մասին է)՝ յոյժ հարկապահանջողք և կեղեքիչք քրիստոնէից» (էջ 579)։ «Նոտարքից» բացակայում են նաև այս ընդգծյալ բառերը և այլն։

Գ. Փիրղալեմյանի հավաքած ու հրատարակած հիշատակարանները, բացի գրաքննչական նկատառումներով կրած աղումներից ու աղճատումներից, կրել են նաև այլ կարգի կրճատումներ ու փոփոխություններ։ Հավաքողը հաճախ իրեն իրավունք է վերապահել կցկցել հիշատակարանների տարբեր մասերի նյութը միմյանց՝ դուրս թողնելով ընդարձակ ու կարևոր հատվածներ։ Հետագայում նա զգացել է իր սխալը և «Նոտարքի» ծանոթագրություններից մեկում այդ մասին գրել է. «Վասն սղութեան ժամանակիս ի մերումս ճանապարհորդութեան բազում անգամ ստիպեալ ակամա զանց արարեալ եմ զպարագայս և զանուանս վարժապետաց և ծնողաց ինձ համդիպեալ յիշատակարանս գրողաց. բայց աւա՜ղ, այժմ ղղջամ յոյժ յոյժ, թերևս նոյն անուանք առաւել ևս կարէին լոյս սփռել ի վերայ մութ և աղօտ պատմութեանց» (էջ 206, ծանոթագրություն 2-րդ)։ Մենք առավել ցավ ենք զգում այդ առթիվ, որովհետև Փիրղալեմյանի տեսած ձեռագրերի մի զգալի մասն այժմ գոյություն չունի...։

2. ԼՑՎ.— Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի, կազմեց Երուանդ Լալայեան, պրակ առաջին, Թիֆլիս, 1915։

Այս Ցուցակից քաղել ենք ԺԵ. դարի առաջին հիսնամյակում գրված 14 հիշատակարան։ Ինչպես ասացինք, 4 հիշատակարան էլ քաղել ենք նույն ցուցակի անտիպ շարունակությունից։

3. «Թորոս Աղբար», Ա.— Գ. Սրուանձտեանց, Թորոս Աղբար, Հայաստանի ճամբորդ, մասն առաջին, Կ. Պոլիս, 1879։ Այստեղից վերցրել ենք 5 հիշատակարան։

4. «Թորոս Աղբար», Բ.— Նախորդ աշխատության երկրորդ մասը (տպ. Կ. Պոլիս, 1885 թ.), վերցրել ենք 9 հիշատակարան։

5. ՍՑՎ, հտ. Ա.—Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, հատոր առաջին, յօրինեց Բարսեղ Սարգիսեան, Վենետիկ, 1914։

6. ՍՑՎ, հտ. Բ.— Նախորդ ցուցակի երկրորդ հատորը (տպ. Վենետիկ, 1924 թ.)։ Այս երկուսից վերցրել ենք ընդամենը 13 հիշատակարան։

7. ՍՑՀ, հտ. Ա.— Ցուցակ հայերէն ձեռագրաց Հալէպի ս. Քառասուն մանկունք եկեղեցւոյ և մասնաւորաց, կազմեց Արտաւազդ արքեպս. Սիւրմէեան, Երուսաղէմ, 1935 (հատ. Ա.)։

Պարունակում է 191 հայերեն ձեռագրի նկարագրություն. քաղել ենք 9 հիշատակարան։

8. ՍՑՀ, հտ. Բ.— Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Հալէպի և Անթիլիասի ու մասնաւորաց. Բ. հատոր, կազմեց Արտաւազդ Սիւրմէեան, Հալէպ, 1936 թ.։

Պարունակում է 54 հայերեն ձեռագրի նկարագրություն. քաղել ենք երկու հիշատակարան։

9. **Նվր. մատն. ճավարումներ**.—*Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Եւրոպայի մասնաւոր հաւաքումներու, կազմեց Արտաւազդ Սիւրմէեան, առաջին հատոր, Փարիզ, 1950։*

*Այստեղ նկարագրված է 38 ձեռագիր. քաղել ենք մեկ հիշատակարան։*

10. **Վիեն**.— *Ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա, կազմեց Յակովբոս Տաշեան, Վիեննա, 1895։*

*Քաղել ենք 10 հիշատակարան։*

11. **Բրիտ. թանգարան**.—A Catalogue of the Armenian Manuscripts in the British Museum, by Frederick C. Conybeare, London, 1913:

*Ունի ԺԵ. դարի առաջին կեսից 8 հիշատակարան։*

12. **Սեբաստիա ս. Նշան**.— *Թ. Գուշակեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց ս. Նշանի վանուց ի Սեբաստիա (տպ. «Հանդէս Ամսօրեայի» 1922—1930 թթ. համարներում). քաղել ենք 5 հիշատակարան։*

13. **Մ. Աթոռ**.— *Ցուցակ մայր Աթոռ ս. Էջմիածնի նոր ստացված ձեռագրերի (տպ. «Էջմիածին» ամսագրի 1950—1952 թթ. համարներում)։*

*Նկարագրված է ընդամենը 101 ձեռագիր. քաղել ենք 4 հիշատակարան։*

14. **Տ. Պալեան, «Լոյս»**.— *Տրդատ եպիսկոպոս Պալեան, «Ձեռագիրք Կեսարիոյ վիճակին վանօրէից, ս. եկեղեցեաց և անհատից սեփական», տպագրված Կ. Պոլսի «Լոյս» շաբաթաթերթի 1905—1906 թթ. համարներում (1905 թ., էջ 286—288, 516—519, 661—664, 776—778, 827—828, 967—971, 1138—1140, 1249—1251. 1906 թ., էջ 333—336, 479—480, 910—911, 1030—1032, 1127—1128, նաև էջ 143 և 645, վերջին երկուսը չեմ տեսել)* *։*

15. **ՔՑԲ**.—Die Handschriften Verzeichnisse der Königlichen Bibliothek zu Berlin, zehnter Band. Verzeichniss der armenischen Handschriften von dr. N. Karamianz, Berlin, 1888.

*(Նույնի ավելի համառոտ վարիանտը՝ Ն. Քարամյան «Ցուցակ Պեռլինի*

---

* *Պրոֆ. Լ. Մելիքսեթ-Բեկի հրատարակած «Նյութեր հայերեն ձեռագրացուցակների բիբլիոգրաֆիայի համար» աշխատության մեջ Տ. Պալյանի ցուցակների մասին տվյալներ չկան։ Օգտվելով առիթից, լրացնում ենք այդ բացը։*

*Բացի վերոհիշյալից Տ. Պալյանը, առանձին պրակներով ու ամսագրերի մեջ, լույս է ընծայել հետևյալ ցուցակները.*

*1. «Ցուցակ հայերէն ձեռագրաց ի Թուրքիա, հտ. Ա. Կեսարիոյ վիճակ, տետր Ա. Ցուցակ հայերէն ձեռագրաց ս. Սարգսի վանուց ի Կեսարիա, կազմեց Տրդատ վրդ. Պալեան, Կոստանդնուպոլիս, 1892», 36 էջ։ Պարունակում է 12 ձեռագրի նկարագրություն։*

*2. «Ցուցակ հայերէն ձեռագրաց ի Թուրքիա, հտ. Ա. Կեսարիոյ վիճակ, տետր Բ. Ցուցակ հայերէն ձեռագրաց սուրբ Աստուածածնայ եկեղեցւոյն Կեսարիոյ և սուրբ Գէորգ եկեղեցւոյ Գըրշէհիրի, կազմեց Տրդատ վրդ. Պալեան, Կոստանդնուպոլիս, 1893», 36—74 էջ։ Պարունակում է 27 ձեռագրի նկարագրություն։*

*3. «Թեմօրայք Կեսարիոյ վիճակին և հայերէն ձեռագիրք» (տպ. «Ծաղիկ» շաբաթաթերթի 1891 թ., № № 47, 48, 50)։ Նկարագրում է 18 ձեռագիր։*

*4. «Ցուցակ հայերէն ձեռագրաց ս. Սիոն եւ ս. Լուսաւորիչ եկեղեցեաց Մաղնիսիայի» (տպ. «Արևելեան մամուլ» կիսամսյա թերթում, սկիզբ՝ 1897 թ. № 4, էջ 127, վերջ՝ 1897 թ., № 16, էջ 555)։ Նկարագրում է 12 ձեռագիր։ Այս նույնը լույս է տեսել նաև առանձին գրքով, Զմյուռնիայում, 1898 թ., որը չենք տեսել։*

*5. «Ազգային հին ձեռագիրք» խորագրի տակ՝ 1484 թ. ընդօրինակված մի ճաշոցի նկարագրությունը (տպ. «Ծաղիկ» շաբաթաթերթի 1891 թ., № 32 համարում, էջ 3—4)։*

*6. «Ցուցակ հայերէն ձեռագրաց ս. Կարապետի վանուց նոր գրատան, ի Կեսարիա»։ Անտիպ, ունեցել է 160 ձեռագրի նկարագրություն, որից միայն 44-ի նկարագրությունը փրկված է ու պահվում է Վիեննայում (տես ՀԱ, 1923, էջ 548—558)։*

*արքայական Մատենադարանի հայ ձեռագրաց», լույս է տեսել «Բազմավէպ» ամսագրում, 1886 թ., էջ 183—192)։*

*Այստեղից քաղել ենք 3 հիշատակարան։*

*16.* **Թավրիզ.**— *Հ. Աճառյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Թաւրիզի, Վիեննա, 1910։*

*Օգտագործել ենք ստուգման ու լրացման նպատակով նաև Հովսեփ Հովհաննիսյանի կողմից, Խաչիկ Դադյանի հանձնարարությամբ, 1898 թվականին կազմած «Ցուցակ Թաւրիզի Հայոց Արամեան գրադարանի ձեռագրերի» անտիպ ցուցակը, որը № 19-ի տակ պահվում է Մատենադարանի հին ցուցակների ֆոնդում։ Հ. Աճառյանի ցուցակից քաղել ենք 3 հիշատակարան։*

*17.* **Թեհրան.**—*Ցուցակ հայերէն ձեռագրաց Թեհրանի, կազմեց Հ. Յ. Աճառեան (ՀԱ, 1935, սյուն. 307—315)։ Ունի ԺԵ. դարից միայն մեկ հիշատակագրություն։*

*18.* **Նոր-Բայազետ.**—*Հ. Աճառյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Նոր-Բայազետի, Վիեննա, 1924։*

*19.* **Գալեմք. Ցուց. Միւնխենի.**— *Ցուցակ հայերէն ձեռագրաց արքունի Մատենադարանին ի Միւնխէն, կազմեց Հ. Գրիգորիս վ. Գալէմքարեան, Վիեննա, 1892։ Քաղել ենք երկու հիշատակարան։*

*20.* **Ագուլիս և շրջակայք.**— *Մեսրոպ Մաքսուդեան, Նկարագրութիւն և յիշատակարանք ձեռագրաց ս. Թովմայ առաքելոյ վանուց և եկեղեցեացն վերին Ագուլեաց, եկեղեցւոյն Տանակերտ գեղջ և անձանց մասնաւորաց (տպագրված է «Արարատ» ամսագրի 1911 թ. №№ 2—12, 1914 թ. №№ 11, 12, 1915 թ. №№ 1, 4, 5-ում)։ Պարունակում է 38 ձեռագրի նկարագրություն, քաղել ենք երկու հիշատակարան։*

*21.* **Լվովի համալսարան.**— *Ն. Ակինյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց համալսարանի Մատենադարանին ի Լվով (տպ. ՀԱ, 1936 թ., սյուն. 501—512, 1937 թ., սյուն. 111—150)։ Նկարագրված է 23 ձեռագիր։ Քաղել ենք մեկ հիշատակարան։*

*22.* **«Արձագանք».**— *Գ. Աղանյանցի հոդվածները՝ «Դարձեալ հայ գրչագիրների մասին» («Արձագանք», 1888, №№ 4, 5, 6, էջ 48—51, 60—64, 73—75) և «Հայ գրչագիրներ» («Արձագանք», 1888, №№ 9, 10, 11, 12, 25, 26, 27, 30, էջ 112—116, 128—131, 141—143, 156—158, 204—206, 352—353, 367, 378—379, 411—412) խորագրերով։ Այստեղից քաղել ենք մեկ հիշատակարան։*

*23.* **ԹԽԴ.**—*Յակոբ Յ. Թօփճեան, Ցուցակ ժողովածուաց Դադեան Խաչիկ վարդապետի, մասն Բ., 1878—1898, Վաղարշապատ, 1900։ Քաղել ենք մեկ հիշատակարան։*

*24.* **Հանդես հայագիտության.**—Rapport sur une mission scientifique en Galicie et en Bukovine, par Frédéric Macler, *տպագրված՝* „Revue des etudes arméniennes, t. VII, farc. 1. 1927, *էջ 94—155։*

*Տալիս է 28 ձեռագրի նկարագրություն, որոնցից մեկը ԺԵ. դարի առաջին կեսից *։*

*25.* **Ֆռնուս.**— *Հ. Յ. Տ., Ցուցակ հայերէն ձեռագրաց ս. Կարապետի վանուց Ֆռնուզի (ՀԱ, 1894 թ., էջ 49—52)։ Քաղել ենք մեկ հիշատակարան։*

---

* *«Հանդէս Ամսօրեայ» ամսագրի (1939 թ.) միջնորդությամբ օգտագործել ենք նաև Ֆ. Մակլերի* „Rapport sur une mission scientifique en Belgique, Hollande, Danemark et Suede“ (Paris, 1924) *ցուցակում հրատարակված հիշատակարաններից մեկը։*

26. Հ. Ոսկեան, Վիեննա, անտիպ.— Հ. Ոսկյանի «Ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա» անտիպ ցուցակի մեջ նկարագրված են Հ. Տաշյանի Ցուցակի հրատարակությունից հետո Վիեննայում հավաքված շուրջ 500 հայերեն ձեռագրերը։ «Հանդէս Ամսօրեայի» 1945 թ. սյուն. 101—116-ում տպված են դրանցից մի քանիսի նկարագրությունները։ Այդտեղից քաղել ենք մեկ հիշատակարան։

Բացի սրանից, հիշատակարաններ ենք քաղել նաև պատմագիտական, բանասիրական ու տեղագրական այն աշխատություններից, որոնց մեջ, այլևայլ նպատակներով ու առիթներով, խոսվել են հայերեն ձեռագրերի մասին և լրիվ կամ հատվածաբար մեջ են բերվել հիշատակարաններ։ Այդպիսի հիշատակարաններ գանելու հույսով նայել ենք մեծ թվով գրքեր ու հոդվածներ, սակայն մեր նպատակի համար օգտակար են եղել միայն հետևյալները.

1. Ղ. Ալիշան, Այրարատ, Բնաշխարհ Հայաստանեայց, Վենետիկ, 1890։

2. Ղ. Ալիշան, Սիսական, Տեղագրութիւն Սիւնեաց աշխարհի, Վենետիկ, 1893։

3. Ղ. Ալիշան, Հայ-Վենետ, կամ յարընչութիւնք Հայոց և Վենետաց ի ԺԳ—Դ և ի ԺԵ—Զ դարս, Վենետիկ, 1896։

4. Ղ. Ալիշան, Կամենից, տարեգիրք Հայոց Լեհաստանի և Ռումինիոյ, հաւաստչեայ յաւելուածովք, Վենետիկ, 1896։

5. Ղ. Ալիշան, Հայապատում, Վենետիկ, 1901։

6. Գիւտ Աղանեանց, Դիւան Հայոց պատմութեան, գիրք Ժ., Մանր մատենագիրք, ԺԵ—ԺԹ դար, Թիֆլիս, 1912։

7. Մկրտիչ եպս. Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք հայ Երուսաղէմի, 1929։

8. Առաքել Սիւնեցի, Ադամգիրք, հրատարակեց Հ. Մկրտիչ Պոտուրեան, Վենետիկ, 1907։

9. Մ. Աւգերեան, Լրումն լիակատար վարուց և վկայաբանութեանց սրբոց, հատոր ԺԱ, Վենետիկ, 1814։

10. Արցախ, Երկասիրեց Մակար եպս. Բարխուտարեանց, Բագու, 1895։

11. Աղուանից երկիր և դրացիք (Միշին Դաղստան), ի Մակար Ծ. վարդապէտ Բարխուտարեանց, Թիֆլիս, 1893։

12. Ա. Հ. Գարտաշեան, Նիւթեր Եգիպտոսի Հայոց պատմութեան համար, Ա, Գահիրէ, 1943։

13. Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ, Վաղարշապատ, 1884։

14. (Գ. Զարպհանալեան), Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց (դար Դ—ԺԳ), Վենետիկ, 1889։

15. Ե. Լալայան, «Ջավախք», Հայ գրչագիրներ, «Ազգագրական Հանդէս», Բ. գիրք, 1897 թ., էջ 278—294։

16. Ղ. Ինճիճեան, Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի, հատոր առաջին, Վենետիկ, 1835։

17. К. Кучук-Иоаннесов, Древние армянские рукописи из Крыма (оттиск из № 47 «Известии» Таврической Ученой Архивной Комиссии).

18. Յակովբ Կարնեցի, Տեղագիր Վերին Հայոց, Յիշատակարան ԺԷ գարու, հրատարակեց Կ. Կոստանեանց, Վաղարշապատ, 1903։

19. Բագրեւանդ, Ջրաբաշխ գաւառ, մասն Ա, գրեց Ս. Հայկունի, Էջմիածին, 1894։

*20. Գարեգին վարդ. Հովսեփյան, Թովմա Մեծոփեցու կյանքը (կենսագրական նոր նյութերով), Վաղարշապատ, 1914։*

*21. Գ. Հովսեփյան, Դավիթ փիլիսոփա (Հարքացի), «Արարատ» ամսագիր, 1916 թ., նոյեմբեր—դեկտեմբեր, էջ 898—911։*

*22. Յ. Կ. Ճանիկեան, Հնութիւնք Ակնայ, Թիֆլիս, 1895։*

*23. Տեղագրութիւն ի Փոքր և ի Մեծ Հայս, ի Ներսիսէ Սարգսեան, Վենետիկ, 1864։*

*24. Մ. Սմբատեան, Նկարագիր ս. Կարապետի վանից Երնջակայ և շրջակայից նորա, Տփխիս, 1904։*

*25. Յակոբ վ. Քոսեան, Հայք ի Զմիւռնիա և ի շրջակայս, հատոր Բ, Վիեննա, 1899։*

*26. Յ. Քոսեան, Բարձր Հայք, հատոր Բ, Վիեննա, 1926։*

*«Հանդէս Ամսօրեայի» 1892, 1903, 1917/18, 1938 և 1942 թթ. ու «Արարատի» 1905 թ. համարներում հրատարակված հոդվածներից ևս քաղել ենք 10 հիշատակարան։*

* * *

*Հիշատակարանները պատրաստել ենք հրատարակության ճիշտ նույն սկզբունքներով, ինչ շարադրել ենք «ԺԴ. դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» ժողովածուի առաջաբանում (տե՛ս էջ XXX—XXXIII)։*

*Գրեթե բոլոր ձեռագիր հիշատակարանները սկզբից ունեն մի քանի վարիանտներով կրկնվող տարտամ ու անհետաքրքիր, փառաբանություններով լի նախաբան՝ ուղղված աստծուն *։ Այդ բաժինը հրատարակությունից դուրս ենք*

---

** Հիշատակարանների այդ «Փառք»-ի բաժինները գրիչները հաճախ բառ առ բառ ընդօրինակել են միմյանցից, սեփական ոչինչ չավելացնելով նրանց վրա։ Ստեղծվել են նաև հիշատակարանների, այսպես կոչված, «օրինակելի» ձևեր, որոնցում չեն գրվել միայն ընդօրինակողի և պատվիրատուի անունները, գրչության հանգամանքները, վայրի և թվականի մասին տվյալները։ Այդ տրաֆարետային հիշատակարաններից օգտվող գրիչները, որոնց թիվը բարեբախտաբար մեծ չի եղել, իրենց հիշատակարանները «շարադրել» են ձեռքի տակ ունեցած տրաֆարետների վրա ավելացնելով՝ միայն մի քանի անուններ ու տվյալներ՝ կապված իրենց աշխատանքի և ձեռագրի ընդօրինակության հանգամանքների հետ։ Այդ ձևով կազմված հիշատակարանները պատմական առումով չնչին արժեք են ներկայացնում։*

*Հիշատակարանների օրինակելի համարված ձևերի հետ ծանոթանալու նպատակով, ստորև հրատարակում ենք դրանցից մեկը՝ քաղելով 1476 թ. ընդօրինակված № 2335 ձեռագրից։*

*«Փառք եզակի պետութեանն և եռահիւսակ զաւանութեանն, համագոյ, համապայծառ, համագաղափար, զուգակշիռ, վսեմագոյ, ինքնագոյ էութեանն և միութեանն, հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ այժմ և անպայմանն յաւիտենիւ, ամէն։*

*Արդ, յանգ եղեալ աւարտեցաւ հոգիաբուխ մատեանս, որ կոչի* [այս անուն]*, ի շրջագայութեան հայոց տումարի այսչափ, ի գաւառս* [այս անուն]*, ի հայրապետութեան տեառն* այս անուն*, ի յերկնահանգէտ և ի դերահռչակ և ի հրեշտակաճեմ և յաստուածաբնակ վանքս, որ կոչի* այս անուն*, որ նման է վերին Երուսաղէմայ, ընդ հովանեաւ* [այս անուն սրբութեան]*, ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս* այս անուն*, որ է վարուքն մաքուր, բնութեամբ հեզ, լեզուաւն քաղցր, սրտիւն առատ, իմաստուն որպէս զանուանակիցն իւր, աւտարասէր որպէս զԱբրահամ* (որչափ որ կամիս ասա)*, առ ոտս* այս [անուն] *առաջնորդի, ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի։ Արդ, ստացաւ կրօնաւոր ոմն* այս անուն*, որ է ժիր և ուրի ի գործս առաքինութեան, անպատասուն, վարժեալ և սնեալ առ ոտս*

թողել։ Որոշ դեպքերում, երբ հիշատակագիրները, շեղվելով պատմական նյութից, հիշատակարանների միջին մասում ևս կրկնել են տրաֆարետային իրենց մաղթանքները աստծու հասցեին, կամ նախորդ պարբերությունների մեջ արդեն հայտնած մտքերն ու անունները՝ համառոտել ենք նաև որոշ հատվածներ միջին մասերից, ամեն անգամ բազմակետերով նշում անելով այդ մասին։

Հիշատակարանների ուղղագրությունը, առանց բացառության, պահպանել ենք նույնությամբ։ Պահպանել ենք նաև տպագիր աղբյուրներից քաղված հիշատակարանների ուղղագրությունը, չնայած որոշ հրատարակություններում (օրինակ, Ղ. Փիրղալեմյանի և ուրիշների մոտ) դրանք «սրբագրված» են ԺԹ. դարում ընդունված ուղղագրական կանոնների համաձայն։

Կետադրությունը կատարել ենք ինքներս, որովհետև միջնադարյան ձեռագրերում կետադրության մշակված կանոններ չեն եղել, և ամեն ոք վարվել է ըստ իր կամեցողության, հաճախ բոլորովին չըմբռնելով իր կողմից գործածվող կետերի նշանակությունը։ Որպես բացառություն, նույնությամբ պահել ենք Հովանես Խիզանցի գրչի 1407 թվականին շարադրած հիշատակարանի կետադրությունը, որովհետև գրիչը հատուկ ուշադրություն է դարձրել այդ բանի վրա և մշակել է սեփական կանոններ (այդ մասին նա մանրամասն հաշիվ է տալիս իր հիշատակարանում, տե՛ս էջ 67—68)։

Մաշված կամ պատռված լինելու հետևանքով, ինչպես և այլ պատճառներով անընթեռնելի դարձած հատվածները նշել ենք երեք ուղղահայաց գծիկներով՝ ///։ Եթե այդ գծիկները դրված են հիշատակարանի վերջում, այդ նշանակում է, որ շարունակությունը չի պահպանվել։

Հիշատակարաններում ամենուրեք թվանշանները գրված են հայկական այբուբենի տառանիշերով, այսպես՝

| | | | |
|---|---|---|---|
| Ա—1 | Ժ—10 | Ճ—100 | Ռ—1000 |
| Բ—2 | Ի—20 | Մ—200 | Ս—2000 |
| Գ—3 | Լ—30 | Յ—300 | Վ—3000 |
| Դ—4 | Խ—40 | Ն—400 | Տ—4000 |
| Ե—5 | Ծ—50 | Շ—500 | Ր—5000 |
| Զ—6 | Կ—60 | Ո—600 | Ց—6000 |
| Է—7 | Հ—70 | Չ—700 | Ւ—7000 |
| Ը—8 | Ձ—80 | Պ—800 | Փ—8000 |
| Թ—9 | Ղ—90 | Ջ—900 | Ք—9000 |

Հիշատակարանների օգտագործումը հեշտացնելու նպատակով, ամեն անգամ, հայկական թվանշանների կողքին՝ շեղ փակագծերի մեջ՝ (  ) տվել ենք այդ նույն թվի արաբական համարժեքը, այսպես՝ ԲԺՌ. (12000), ԺԹ. (19) և

---

այս անուն, իբրև գլպտեր վառեալ ի մէջ եկեղեցւոյ, և իբրև զանուշահոտ խունկ հաճոյացեալ աստուծոյ, և իբրև գծիծառն բանաւոր կանգնեալ ի մէջ տաճարի, և որպէս զմեղու կարօտեալ երկնային ցօղին։ Այսպէս և սա ցանկացաւղ եղև այսմ գրոցս և ետ գրել զսա ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ ծնաւղաց իւրոց։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա՝ ընդ նմին և գիս՝ զանարժան գծողս զայս [անուն], որ կամաւն աստուծոյ սկսայ և աւգնականութեամբ նորին կատարեցի՝ յիշեցէք աստուած ողորմայիւ միով, զի կարող է աստուած ի ձեռն այլոց՝ այլոց ողորմութիւն առնել. և ձեզ գիւրին է ասելն և մեզ կարի պիտանի։ Եւ ձեզ յիշողացդ և մեզ յուսացելոցս ողորմեսցի Քրիստոս աստուած» (Ձեռագիր № 2335, էջ 181բ)։

այլն։ Հայկական տոմարով արտահայտած տարեթվերի կողքին, փակագծերի մեջ նշել ենք ոչ թե նրանց թվաբանական արժեքը, այլ համապատասխան թվականը՝ ըստ Հուլյան տոմարի. այսպես՝ «Ի Թուականութեան Հայոց ՊՀԳ»-ի դիմաց դրել ենք ոչ թե 873, այլ 1424, այսինքն՝ 873+551։

Ուղղագիծ փակագծերը՝ [ ] օգտագործել ենք, երբ ստիպված ենք եղել վերականգնել անընթեռնելի որևէ բառ, կամ բառախումբ, ինչպես նաև, երբ բնագրի ճիշտ ըմբռնման համար անհրաժեշտ է եղել ավելացնել որևէ տառ կամ բառ։ Սակավ դեպքերում օգտագործել ենք նաև սուրանկյուն փակագծեր՝ < >, որի մեջ առել ենք այն տառերն ու բառերը, որոնք գրչի կողմից կրկնվել են կամ դրվել թյուրիմացությամբ։

Հիշատակարանները ջարդասել ենք, խիստ կերպով պահպանելով ժամանակագրական կարգը, ձգտել ենք ժամանակագրական սկզբունքը պահպանել նաև նույն թվականին ընդօրինակված հիշատակարանները շարադասելիս։ ԺԵ. դարի առաջին հիսնամյակի ընթացքում գրված որոշակի տարեթիվ չունեցող հիշատակարանների զգալի մասը հնարավոր է եղել տեղադրել այս կամ այն թվականի տակ՝ տվյալ հիշատակագրի կողմից գրված մի այլ՝ թվական ունեցող հիշատակարանին առընթեր, կամ հիշատակարանի մեջ նշված պատմական դեպքերի ու դեմքերի համապատասխան։ Սակայն մնացել են որոշ թվով հիշատակարաններ, որոնց գրության մերձավոր ժամանակը որոշելու հնարավորություն չի եղել։ Այդ հիշատակարանները կհրատարակվեն «ԺԵ. դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» սույն ժողովածուի Բ. մասի վերջում։

Հիշատակարանները համարակալված են ըստ իրենց շարադասության՝ 1—744 համարներով։ Համարից հետո գլխատառերով տրված է ձեռագրի համառոտ վերնագիրը՝ Աւետարան, Գիրք հարցմանց Գրիգորի Տաթևացւոյ, Գանձարան և այլն։ Մյուս տողում ցույց է տրված ձեռագրի հասցեն՝ որտե՞ղ և ի՞նչ համարի տակ է պահվում այն, և կամ ո՞ր հրատարակված կամ անտիպ աղբյուրից է քաղված։ Օրինակ, 3-րդ էջում, ձեռագրի վերնագրից հետո (Գիրք հարցմանց), գրված է՝ Երևան 813, այդ նշանակում է, որ ձեռագիրը, որտեղից քաղված է № 2 հիշատակարանը, պահվում է Երևանի Մատենադարանում, 813 համարի տակ։ Այնուհետև, էջի աջ կողմում, հնարավորության դեպքում, տվյալներ են հաղորդվում հիշատակագրի և գրչության վայրի մասին։ Վերոհիշյալ էջում գրված է՝ գրիչ՝ **Սարգիս** և հաջորդ տողում՝ վայր՝ **Տաթև**:

Եթե ձեռագրի մեջ նույն տարեթվին գրված մի քանի հիշատակարաններ կան, ապա դրանք անջատված են միմյանցից՝ Ա, Բ, Գ և այլ հերթական թվահամարներով, ըստ որում յուրաքանչյուր հիշատակարանի սկզբում, նույն ձևով տվյալներ են հաղորդվում հիշատակագրի և գրչության վայրի մասին, անշուշտ, եթե այդ հիշատակարանները գրվել են ա՛յլ գրչի կողմից և ա՛յլ վայրում։

Էջերի ձախ ընդլայնական լուսանցքում դրված թվանշանները ցույց են տալիս ձեռագրի էջահամարները։ Նոր էջից սկսվող բառից առաջ դրված են երկու ուղղահայաց գծիկներ՝ //։

Հատորի վերջում տրված են ընդարձակ ցանկեր՝ Անձնանունների ցանկ, Տեղանունների ցանկ և Առարկայական ցանկ, ինչպես նաև օտար բառերի բառարան և այլն։

Անձնանունների ցանկում ամեն մի անվան դիմաց տվյալներ են հաղորդվում նաև ձեռագրի հետ ունեցած նրա առնչության, նրա բնակության վայրի ու թվականի մասին։ Պատմական կարևոր դեր կատարած գործիչների մասին

*տվյալներն ավելի ընդարձակ են և ստացել են ծանոթագրության բնույթ։ Ուստի բերված ցանկերը օգտագործելի են ոչ միայն այս կամ այն գործչի մասին ժողովածուի մեջ եղող տվյալների էջերը գտնելու նպատակով, այլև նրանց մասին անհրաժեշտ գիտելիքներ ձեռք բերելու համար։*

*Հրատարակության համար պատրաստ է նաև սույն հատորի շարունակությունը՝ «ԺԵ. դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» ժողովածուի Բ. մասը՝ 1451—1500 թթ. հիշատակարանների նյութերով։*

Լ. ԽԱՉԻԿՅԱՆ



ՊԾ 1401

## 1

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

**Երևան 5707**

ՈՃ՝ Ոստանցի

1ա ՊԾ. (1401) թուին սաստիկ և թանձր մարախ երեկ ի Շամբէն ի վեր՝ դեղին և Դ. (4) թեեան, ի գարնանային ժամանակն, ի համբարձման աւուրքն։ Եւ աստուածային գթական ողորմութիւնն՝ հասաւ և զամենեսեան կոտորեաց ի ծովս Ռոշաւօնեաց, զոր ալիք ծովուն դէզադէզ, իբր զշիղջս աւազաց, յեզրն կուտեաց. և ի նեհոյն մարդիկ ձանձրանային յանցանելն։

Ի սոյն ամի Թամուր-Բէկն էառ զՍևաստ քաղաք և քանդեաց և աւերեաց, և սրախողող արար զամենեսեան, և զբազումս գերեաց՝ ի կանանց և ի տղայոց, և ԳՌ. (3000) մարդ զերկիր բացեալ և կենդանոյն թաղեալ՝ զայնոսիկ, որ նետ արձակեցին ի նա։ Եւ զայս արարեալ բազմութեամբ զօրօք գնացեալ ի Շամբն՝ ի վերայ Հալպայ և Դամասկոսի.* և մատնեաց աստուած ի ձեռս նորա, էառ և անչափ կոտորումն արար ի Հալպա քաղաք, որ Գ. (3) գլխէ միրրա շինեաց ի տաճկանց։ Եւ էանց ի վերայ Դամասկոսի, և էառ՝ Լ. (30) օր թալան արար՝ զոսկի, զարծաթ և զմարգարիտ, և ԲԺՌ. (12,000) ուղտ իւրն հասայ եբարձ։

Եւ յետ այնր հրաման եհան և հրով այրեցին զքաղաքն առհասարակ և մզեղեցին։ Եւ զմեծ մսքիթն քակել երետ, յորում էր գե-

---

* Լանկ-Թամուրի այս արշավանքի մասին պատկերավոր տվյալներ է հաղորդում Վենետիկի 1205 թ. ընդօրինակված № 038 ձեռագիր ավետարանի հետագա ստացողը։ Ստորև բերում ենք այդ ուշագրավ հիշատակարանն ամբողջությամբ. «Ի ժամանակին որում եկ արքայն Պարսից Թամուր-Ղան խուժադուժ ազգաւ՝ այլակերպ և այլդէմք՝ լայնաճակատ և նեղաչուի, քաւսա և ժանդ. և եկ բազում զաւրաւք յարևելից կողմանէ։ Եւ սաստիկ զաւրաւք եկն ի վերայ աշխարհիս Շամայ, և գնաց մինչև յԵրուսաղէմ. և զայն տարին յաշխարհիս եկաց և յանչափ դառնութիւն արար, որ ընդ գրով չեմ կարել արկանել։ Այնչափ մարդիկ, զոր էսպան, զոր գերի վարեաց, ու զոր ի սովու լաղումք մեռան, որ հայր յորդո կու հեռանայր և որդի ի հօրէ։ Յայնմ ժամանակին գնացեալ Թաւաքալն՝ Հալպա տանուտէրն ի հաց ի գնել, ի յԱնթափ քաղաք. և տեսեալ զսուրբ աւետարանս ի ձեռս այլազգեաց, և յոյժ արտասուեաց վասն այնորիկ, զի անարգէին զաւետարանս և զՔրիստոս։ Եւ յիշեաց զբանն Քրիստոսի որ ասէ. Գանձեցէք ձեզ գանձ...։ Փափաքեցաւ սուրբ աւետարանիս, ետ զիւր հացի գին և էառ զսուրբ աւետարանս, և ազատեաց յանաւրինաց, և էրեր յիւր տունն, և ուրախացան, զի լինի յիշատակ իւրն՝ Թաւաքալին, և իւր կենայկցին Շէն-Տիկնին, և որդոյն Յովանիսին, և դստերն՝ Շնոխվարին, և իւր հաւրն Կարապետին, և մաւրն Քուր-խաթունին, և ամենայն արեան մերձաւորին...։ Ի ժամանակին յայնմիկ, յորում առաք զսուրբ աւետարանս էր թիւն Հայոց ի ՊԽԹ. (1400)» (Տես Բ. Սարգսյան, Ցուցակ, Ա., էջ 401—402)։

րեղմանն Անանիայ առաքելոյն։ Եւ զինչ Թիրոյ և մզկիթ կայր Բ.(2)
քաղաքին՝ զամէն քանդել երետ և քակել։ Եւ զգերելոց համարն որ
էառ, ոչ ոք կարէ ի թիւ արկանել, նոյնպէս և զսպանելոցն։ Եւ եկեալ
մեծաւ յաղթութեամբ ի վերայ Մէրդնայ, և տապալեաց քաղաքն ի
հիմանց, և արար որպէս զհող արտավարաց, բայց զբէրթն ոչ կարաց
առնուլ, այլ յերկրէն շատ գերի եբեր ի քրիստոնէից։ Եւ թամուր-
ցիքն և մարախն հետ իրերաց հասան յերկիրս մեր՝ այսինքն յՈստան
և ի գաւառն իւր։

## 2

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

Երևան 813

Գրիչ՝ Սարգիս
Վայր՝ Տաթև

381 ր ...Ի թուաբերութեան Հայկազեան տոմարի Գ.-երորդի քառաս-
ներորդի և տասներորդի (1401) գրեցաւ և յանկ ելեալ աւարտեցաւ
մատեանս աստուածային, որ կոչի Հարցմունք, ի նահանգիս Սիւնեաց,
ի յիշխանութեան տանս մեր պարոն Սմբատայ և հարազատի իւրոյ
պարոն Բիւրթէլին, որդիք Իւանէի, որդւոյ մեծին Բիւրթէլի, որ յՕրպել-
եանց, բնիկ հայկազնիք, ի մեծ և ի գերահռչակ ուխտիս և հրեշտակա-
բնակ սուրբ մենաստանիս, ի վանս Տեստաթէի սուրբ առաքելոյս, ընդ
հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Լուսաւորչիս, և աստուա-
ծային արեամբ ներկեալ սուրբ Նշանացս, և այլ բազում նշխարաց
սրբոց, զոր աստ կան ժողովեալ, առ ոտս երջանիկ և երիցս երանեալ
բազմերախտ հօրս մեր և երկրորդ արփիաւորչի հայկազեան սեռի՝ Գրի-
գոր քաջ հռետորի և աստուածաբան վարդապետի, զոր յայս դառն և
խաւար ժամանակիս... լուսաւորէ զեկեղեցի, ոչ ունելով հանգիստ մտաց
և ոչ մարմնոյ, քանզի հանէ զգիշերն ի գլուխս* յաղաւթս աստուծոյ և
յարտասուս բազմահոսս, և լնու զկարօտութիւն բազմութեան եղբարցս,
որ առ ոտս սորայ են ժողովեալ, այլ և զբոլոր ազգիս՝ միշտ գնալով
ի մէջ այլազգեաց՝ մեծամեծաց և փոքունց, զի ոչ գոյր իշխան և առաջ-
8 ա նորդ, բաց ի սմանէ, զոր տէր | | | ** ըստ տուեցելոյն շնորհացն նորա։
Եւ ոչ միայն այս, այլ և նման անարիւնն թռչնոյ, որ շրջելով ի տե-
ղիս զանազանս և ի ծաղիկս ազգի ազգիս բերէ զմեզ ճաշակս քաղցրա-
համս և գեղս բժշկարարս, նմանապէս և մեծս այս մտօքն երկնաճեմ
շրջելով ի հինս և ի նորս, այլև յարտաքին գիտութիւնս, ժողովելով
զօգտակարն՝ կազմէ պսակս լուսաւորս ի գլուխս մանկանց եկեղեցւոյ
և վահան ամրութեան ընդդէմ այլադաւանն տոհմի, և զայս միշտ

* «Ի գլուխս» բառը գրված է տողից վերև, այլ ձեռագրով։

** Հիշատակարանի շարունակությունը տեղահանվել է և այժմ ձեռագրի 8-րդ թերթն է կազմում։ Նորոգման ժամանակ այդ թերթի վերին լուսանցքի և առաջին 4 տողերի վրա թուղթ է փակցվել, որի հետևանքով այդ տողերը չեն վերծանվում։

առնելով և անդադար ուսուցանելով լուսաւորէ զեկեղեցի. զոր և կացցէ, ծաւալեսցէ լիբրև զջահ լուսատու ի մէջ եկեղեցւոյ...։ Եւ է ի բազում վաստակոց սորա մինն գիրքս այս, որ է Հարցմունք անուանեալ, զոր ցանկացեալ սմա ետ գրել սրբասնեալ և հեզահոգի, մաքրամիտ և ճրշմարտասէս Յուսեփ չկրօնաւոր, չնման մեծին Յունանու, քանզի տէր աստուած Յիսուս Քրիստոս պահեսցէ զամենայն աւուրս կենաց իւրոց և յամերամս ժամանակաց բարի հոգով և մաքրամիտ մտօք, ի կամս արարչին աստուծոյ անխարբխս, ամէն և եղիցի, հանդերձ ծնողօք, և բարի ազգականօք, և ամենայն երախտաւորօք հասցէ երանաւէտ ձայնին Քրիստոսի աստուծոյ մերոյ, զորմէ լսելոց են արժանաւորացն դասք, եթէ՝ Եկայք օրհնեալք հօր իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալն ձեզ ի սկզբանէ աշխ[արհ]ի. Ընդ նմին և զհոգևոր եղբայրս մեր Մարգարայ, որ զաթոռս կապեաց, յիշել ի տէր, աղաչեմք, զոր յոյժ ցանկայ յուսոյն կենաց, որով տացէ տէր աստուած ըստ կամաց նորա, ամէն։ Եւ այն, որ առատն է ի պարգևս ողորմութեան իւրոյ տացէ ձեզ յիշողացդ և մեզ փափագողացս զերանութիւն. զայն, որ լի է ամենայն բարութեամբ։

Ցբ Ո՜հ, ոհ, ոհ գրիս | | | և մատուցի ընծայ սիրելի և անձկալի եղբօրս իմ Յուսեփ կրօնաւորի և բանասիրի, օգնականութեամբ և կամակցութեամբ մեծիս իմոյ՝ Գրիգոր աստուածունակ պւէտի, ի լաւ և յընտիր օրինակէ, զոր էր գրեալ աստուածամուխ մատամբն իւր և ստուգեալ ամենայնիւ՝ յառաջմէն մինչև ցվերջին նշտնախէծն։

Եւ յանցեալ ամի վասն բազմացեալ մեղաց մերոց եղև աստուածասաստ խռովութիւն և աշխարհակործան տապալումն, զի իշխանն անօրէն, որդին կորստեան, որ յազգէ խորազմին՝ Թամուր-Լանկ անուանեալ, որ զաշխարհս Հայոց երիցս անգամ կործանեալ էր, եկն կրկին բազում և անթիւ զօրօք և էառ զաշխարհն Վրաց, առաջնորդութեամբ և ձեռնտուութեամբ չար և անիծեալ իշխանաց և ազատացն Վրաց, և զամենեսեան առհասարակ ի սուր և ի գերութիւն վարեաց, թուով ՃՌ. (100,000)-աւ գրեցաւ զկորուստն, և զեկեղեցիս քարահատակ կործանեաց։ Եւ զաղէտս տարակուսանաց ոչ կարեմք բանիւ պատմել կամ գրով ի քարտի արկանել, այլ միայն հեծեմք և հոգոց հանեմք տեսանելով զաղէտս ծնողաց, որ հառաչանօք արտասուէն և ասեն՝ Երանի ամլոց, որ ոչ ծնան և ստ[ե]անցն, որ ոչ դիեցուցին։

Արդ, աղաչեմ զամենեսեան սիրողս Քրիստոսի, որք հանդիպիք սմայ կարդալով կամ օրինակելով, յիշեցէք ի յերկնաթռիչ յաղօթս ձեր զփանաքի և զեղկելի գրիչս, հանդերձ ծնողօք և ազգականօք, և զուսուցիչն մեր, որ բազում աշխատեալ են, ընդ նմին զբազմերախտքն մեր, որ բազում ջանիւք զմեզ նուիրեցին։ Այլ և աղաչեմ զձեզ արտասուալից, յիշեցէք զհոգևոր տէրն մեր և զեղբայրն՝ տէր Ալեքսիանոսն, որ մանկական հասակաւ ի Քրիստոս փոխեցաւ, զՅոհաննէս քահանայն ընդ նմին յիշեցէք ի Քրիստոս, զԹամամ զծնօղն իմ յիշել ի տէր. եւ զիս՝ զանարժանս յամենայնի մի մոռանայք, այլ պաղատանօք հայցեմ, զի խնդրիցէք թողութիւն բազում յանցանաց իմոց և

ծնողաց մերոց, և սխալանացն ներեցէք, զի կար մեր այս էր, և նայ՝ որ առատն [է] ի տուրս բարիս ձեզ՝ յիշողացդ և մեզ յուսացողացս առհասարակ ողորմեսցի, ամէն։

Այլ և զհոգոյ ճարակն իմ՝ զԳալուստ աշակերտ ըանի և զԳրիգոր | | | յիշեցէք ի Քրիստոս և ի մաքրափայլ յաղօթս ձեր, ամէն և եղիցի։

ԶԱստուածատուր քահանայն յիշէք ի տէր և աստուած զձեզ յիշէ։

Բ

313 բ ԶՍարգիս մեղապարտ յիշեա ի տէր յաւիտեանս, ամէն։ Աստուած զյիշողն և զմեզ յիշէ, ամէն։

3

## ՏՕՆԱԿԱՆ

**Երևան 1524**

Գրիչ՝ Աւետիս
վայր՝ Վարագ

919 ա ...Եւ արդ, ես... բազմամեղ սուտանուն սարկաւագ Աւետիս տեսի զսէր և զփափագ սոցա՝ զՀայրապետ կրօնաւորին և զՅովանէս միակեցին, զոր ունէին առ հոգևորսն և ըստ իմում տկար անձամբս յանձն առի և ամենակարող զաւրութեամբն աստուծոյ զսուրբ գիրքս զթերին կատարեցի, ի դառն և ի վշտաբեր ժամանակիս, որ է բոլոր աշխարհս ի գերութիւն և ի տարտարոս ի ձեռն անաւրէն ղանին Լանկ-Թամուրին, որ էր թիւս Հայոց ՊԾ. (1401)։

Այլև գրեցաւ սայ ի գերահռչակ և յերկնահանգէտ սուրբ ուխտս Վարագ, ընդ հովանեաւ սուրբ Նշանիս և այլ սուրբ ուխտեացս, և յառաջնորդութեան և յեպիսկոպոսութեան տեղոյս տէր Սանակայ...։

919 բ ... Ընդ նոսին և զիս՝ զանյիշելի գրիչս զԱւետիս և զիմ ծնաւղսըն՝ զՏղապարոն և զՀէլօք, և զուսուցիչն իմ, և ըստ մարմնոյ զեղբայրն իմ զՂազար կրաւնաւոր, և զհայրն իւր զԳրիգոր, և զամենայն արեան մերձաւորսն մեր՝ զկենդանիք և զհանգուցեալ...։

921 ա ...Այլև կրկին յիշա[տակի արժ]անի արարէք և յիշեցէք յերկնագնաց յաղաւթս ձեր զառաջին գրող սորա զՅոհ[անէս] քահանայ, որ յառաջն ԺԹ. (19) տետր գրեաց և տարաժամ մահուամբ փոխեցաւ՝ի Քրիստոս, և սուգ մեծ եթող սիրելեաց իւրոց, զոր տէր աստուած յանսպառ ուրախութիւնսն և յանվախճան կեանսն դասեսցէ զնա, հանդերձ ծնաւղաւք իւրովք և ամենայն ազգականաւք, ամէն, եղիցի, եղիցի։

Ընդ նոսին և ես՝ Յովանէս սուտանուն կրաւն[աւոր], որ ԺԳ. (13) տետր գրեցի, ով զմեզ յիշէ յիշեալ լիցին ի Քրիստոսէ, ամէն։*

* Աւետիս գրիչը իր հիշատակարանը կառուցել է ճոռոմ ոճով, բազմաթիվ անգամ կրկնում է նույն «յիշեցեքները» և ունի անհետաքրքիր մի-շարք էջեր։ Այդ բոլորը դուրս ենք թողել հրատարակությունից։

## 4
## ՏՕՆԱԿԱՆ
Երևան 4670

Գրիչ՝ Ծերուն
վայր՝ Ոստան

ա

813բ ... Զոր տեսեալ զայս ամենայն վայելչութիւնս հրաշից երիցս երանեալ 'և սրբասունուդ կրաւնաւորն Ստեփաննոս և բորբոքեալ ի սէրն աստուծոյ ցանկացաւ սյսմ աստուածային գրոցս, որ կոչի Տաւնական...։

814ա ... [Ցիշեսջիք] ստացող գրոցս զՍտեփաննոս կրաւնաւոր, և զծնաւղսն իւր զՅովաննէս և զԱզիզ. և զայլ ամենայն արեան մերձաւորսն իւր՝ զկենդանիսն և զննջեցեալսն՝ զխութլուշա, և զկենակիցն իւր զՄարգարիտ, զժամահար Հերապետն, և զՄկրտիչ, զՍպանդիարն, և զդուստր իւր զԹաշխաթուն, զՈվաննէս, և զորդին իւր զԱստուածատուր, զԹադէոս և զԳրիգոր տղայն, որ աշխատեցաւ ի Գ. (4) անգամ յերթևեկութիւն, և զայլ ամենայն, որ աւգնական լեալ են ի սմա տրաւք, վասն զի սովաւ զուարճանան մանկունք սուրբ եկեղեցոյ, հանապազ կարդալով զսա անխափան։

Եւ արդ, ես անպտուղս ի բարեաց, մեղաւորս յանմեղաց... զանարժանս մէկ ողորմի ասելոյ արժանի առ[նել աղաչեմ յեր]կնագնաց յաղաւթս ձեր, և զծնօղսն իմ՝ զՍտեփաննոս և զէլխաթուն, և զվարպետն իմ Կիրակոս կրաւնաւոր, և զկենակիցն իմ զԱրղուն, որ աշխատեցաւ ի թուղթ կոկելն, և զերկու քորքն իմ՝ զՄէլէք և զՀերիք, և զայլ ամենայն արեան մերձաւորս՝ զկենդանիս և զննջեցեալս։

Այլ և գրեցաւ սա ի քաղաքիս Ոստան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սրբոյն Ստեփաննոսի նախավկային, ի թուականութիւնս Հայոց ՊԾ. (1401), ի հայրապետութեանն տէր Դաւթա Աղթամարա և Կիլիկեցոց տէր Կար[ապե]տի, ի դառն և ի վշտալից [ժամա]նակիս, յաշխարհակալու[թեան] Ամիր-Թամուրի, որ յայսմ [ամի] աւերեց զՀալապ և զԴ[մշխ՞ և] զԲաղդատ, և բազում [և անմխի]թար սուգ եթող տաճկա[ց ազ]գի...։*

814բ ...Ընդ նմին և զամենամեղ գրիչս՝ զԾերուն և զիմ ծնաւղսն յիշելոյ արժանի առնէք միով աստուած-ողորմիւ, վասն զի մեծ աշխատանաւք հասուցի զսուրբ գիրքս յաւարտ...։

Բ

Կազմող՝ Սարգիս

118ա ԶՍարգիս մեռեալ հոգիս
Զեռնարկեցի յայսմ տառիս
Եւ կազմեցի 'ստ իմում կարիս,
Որ ոք յիշէ զծոյլս ի բարիս՝
Նոքա յիշին յերկնից բարիսն։

* Դուրս ենք թողնում փչացած և անհետաքրքիր մի ընդարձակ հատված։

5

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4223

Գրիչ՝ Զաքարիայ
վայր՝ Հիզան քաղաք

295 ա ...Այլ և գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Զաքարիայի սու-
տանուն քահանայի, որդւոյ Մկրտիչ քահանայի, եղբօր Յովհաննէս քա-
հանայի՝ իմաստուն և աննման գրչի և ծաղկողի։ Եւ իմ անընդունակ
գոլով յաբուեստ գրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ իմ,
այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին սուրբ,
բազում աշխատասիրեալ իմ ի սմա՝ գրեցի անարժան ձեռաւք իմովք
յ[ը]նտիր և ի ստոյգ աւրինակէ, կենաւք տառապանօք և բազում
պանդխտութեամբ և անհանգստութեամբ։ Որ վասն ծովացեալ մեղաց
իմոց ժամանեաց մեզ և եկն մարախ, և եղև սով սաստիկ ընդ ամե-
նայն երկիր, որ բերէր կապիճ հացն Մ. (200) դր[ամ], և այս ամե-
նայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց։ Ի մեծ ի յեղանակ շըր-
ջագայութեան արեգական ստորիջիւք երկնաչու ճանապարհաւ յերկ-
նից յերկիր հայելով, ըստ արարչութեանցն չափեալ, յելանելոյն Ադա-
մայ ի դրախտէն ՋՌ. և ՋԺ. և Է. (6607) ամ՝ ըստ եւթանասնիցն,
որում մեք վարիմք, և է ի մարդեղութենէ բանին աստուծոյ անժա-
մանակ էին և փրկչին Յիսուսի Քրիստոսի ամս ՌՅՂԹ. (1399), իսկ
ըստ Թուոյ խոսրովային Ցաբեթեան տումարի՝ ՊԾ. (1401), և էր մեծ
295 բ շրջանին, ի կաթուղիկոսութեան հայ ‖ կազեանս սեռի տեառն Դաւթի
Աղթամարցւոյ՝ եղբաւր տէր Զաքարիայի, որ վկայական արեամբ կա-
տարեցաւ յանօրէն ամիրայէն էգդնէ, և եղև սուգ մեծ Տանս Հայոց,
և ապա առաջնորդութեամբ հոգւոյն սրբոյ յաջորդեաց զաթոռն եղ-
բայրն իւր համանման՝ տէր Դաւիթ, և լինի ուրախութիւն անբերելի
տրտմութեան մերում։ Եւ ի թագաւորութեանն այլասեռից Թամուր-
Լանկի, որ է յաղթօղ 'ւ անպարտելի, զոր տէր աստուածն Իսբայէլի
պահէ անխախտ, որ չսասանի՝ զաթոռ մերոյս հայրապետի և զմեր
ազին թագաւորի, զի յիշել զանուն սոցա սասանել սաքրին և ոչ եւս
երևին թշնամիք ճշմարտութեանն։ Եւ գրեցաւ աւետարանս ի քաղա-
քիս, որ կոչի Հիզան, ընդ հովանեաւ սրբուհոյ Աստուածածնին, և
սրբոյն Սարգսի զաւրավարի, և սրբոյն Գէորգեայ, որ է հեռի։ Քանզի
ստացաւ զսա պատուական և սրբասէր քահանայն Աստուածատուր, ի
վայելումն անձին իւրոյ և զաւակաց իւրոց՝ Յովանիսին և այլոցն,* և
յիշատակ հոգւոյ իւրոյ, և Յոհանէս միայնակեցին, և ծնօղացն
իւրոց, զոր տէր աստուած վայելել տացէ զսա ընդ երկայն
աւուրս, ամէն և եղիցի։ Եւ կացցէ սա ընդ իշխանութեամբ Աստուա-
ծատուր քահանայի և զաւակի իւրոյ Յովանի, և այլ մարդոյ գաւէ ի
296 ա հետ չկա։ ‖ Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յա-

* Ձեռագրի Յա էջի վրա նկարված են ստացող Աստուածատուր քահանայի, նրա Յովանէս որդու և անանուն մի պատանու ուշագրավ պատկերները (տես_նկ. 1)։

*մենալի սեղանոյս, յիշեցէք ի Քրիստոս զտացաւղ սուրբ աւետարանիս զԱստուածատուր քահանայ, և զհայրն իւր զՎասիլն, և զմայրն իւր զԽոնդի-Խաթունն, և զկենակիցն իւր զՃլխաթունն, և զծաղկեալ զաւակն իւր զՅովանիսիկն, և զամենայն արեան մերձաւորսն իւրեանց, զքոյրն իւր՝ զՏիկին-Խաթունն, և զքեռորդին իւր զԹումա քահանայն, որ իբրև զարեգակն փայլէր ի մէջ աստեղաց և լուսաւորէր զամենայն մարդիկ գիտութեամբն իւրով, որ տղա հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս և սուգ անմխիթար եթող ծնողաց իւրոց, զի զնա միայն ունէին ի բազում զաւակաց իւրեանց և ի նմանէ այլ զրկեցան, և զծերունի հայրն իւր զՅովանէս քահանայն, որ կսկծամահ եղև և հանգեաւ ի Քրիստոս, և զ[Յ]ովանէս միակեցն, և զհայրն իւր, և զմայրն իւր՝ զփոխեալքն ի Քրիստոս, և զամենեսեան, որք աստ յիշեցան...։ Եւ զիս զմեղաւոր գրիչս յիշեցէք ի Քրիստոս, և զհայրն իմ Մկրտիչ քահանայն՝ զփոխեալն ի Քրիստոս, և զմայրն իմ, որ յոյժ աշխատեցաւ ի վերայ մեր, և զմօրքոյրն իմ՝ զփոխեալն ի Քրիստոս, որ յոյժ սիրէր զմեզ, և զՃլխաթունն, որ քան զմայր առաւել աշխատեցաւ ի վերայ մեր և սնոյց զմեզ, և դուք որք յիշէք զվերագրեալքս ի սմա, զնոյն և ձեզ տացէ տւաւղն ամենայն բարեաց՝ ի միւսանգամ գալստեանն իւրոյ, ամէն և եղիցի, եղիցի։*



*Նկ. 1 Ձեռագրի ստացող Աստուածատուր քահանան և իր որդիները։*

6

## ՈՍԿԵՓՈՐԻԿ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՑ

*Երևան 5118, «Նոտարք հայոց», էջ 27**

*Հեղինակ՝* Գրիգոր Տաթևացի
*վայր՝* Տաթև

196 բ *Եւ ես՝ տարտամս յուսունեասիրաց Գրիգոր պիտակ անուն խնդրող բանի հաւաքեցի զգիրքս աստուածաբանութեան, որ անուանեալ կոչի*

** Փիրղալեմյանի մոտ հիշատակարանի թվականը ՊԾԶ. (1407)-ն է, կա նաև ձեռագիր, որ տալիս է ՊԾէ. (1408) թվականը։*

Ոսկեփորիկ, զի ըստ իրին և զանունն եդեալ ունի, ոսկի՝ այսինքն անապական և պատուական գանձիւք աստուածային աոլցեալ, որ և զսասցաւղ իւր և զսիրողս աստուածաբանութեամբ փարթամացուցանէ։

Արդ, գրեցաւ սայ ընդ հովանեաւ սուրբ առաքելոյս, առաքելական աթոռոյս Եւստաթէի և այլ բազմահաւտք սրբութեանց. ի նեղ և ի նուաղեալ ժամանակի, թուականութեան մերոյ ազդի ՊԾ.-երորդի (1401)։ Ի խնդրոյ ումեմն բարեպաշտի խաւջայ Մասուտշահի, բնակութեամբ ի սեպուհ արանց Դավրէժ քաղաքի, զոր խնդրեաց բազում անգամ գրով և բանի[ւ] գրել յաղագս սրբոյ երրորդութեանն և յաղագս Քրիստոսի աստուածութեանն։ Եւ ես տկար ոգով և ծիւրեալ մարմնով հաւաքեցի ի սրբոց արանց զճշմարիտն և զուղիղն և գրեցի կարճաոաւտ բանիւ։ Եւ ի չորս հատորս բաժանեցի վասն դիւրութեան ընթերցողաց։ Եւ յաւելեալ բանս ի մերոց վարդապետաց իբր թագաւորական կնիք և մեկնութիւն ի վերայ եդեալ։

Ցիշեցէք ի Քրիստոս զվերոյ ասացեալն բարեպաշտ զխոջայ Մասուտշահն՝ հանդերձ ծնողօք իւրովք, զհայր նորա զՅակոբշահն և զմայրն Էլխութլուն:*

### 7

### ԱԴԱՄԳԻՐՔ ԱՌԱՔԵԼԻ ՍԻՒՆԵՑՒՈՅ (Գ.)**

«Ադամգիրք», էջ 321—327

Հեղինակ՝ Առաքել Սիւնեցի

ա

Ի յութ հարիւր Հայոց թուական
Եւ յիսներորդ մըտեալ նոր ամ՝
Ոտնաւոր բանքըս գրեցան,
Հարցաբանութն և պատասխան։
Տէր Առաքեալ նըւաստ ոգի,
Շնորհաց թափուր յամենայնի,
Զոտանաւորս շարադրեցի
Վասն Ադամայ և Եւայի։
Բանս որ պատմի համանգամայն՝
Երկուհարիւր տուն և քըսան.
Ունի խորհուրդ սա զանազան,
Զոր հանճարեղ միտքն իմանան։
Անճառ լուսոյն անզըննելի,

* Հետաքրքրական է նաև Ոսկեփորիկի վերջաբանը (էջ 194ա—196ա), որը մի ուղերձ է պատվիրատու Մասուտշահի հասցեին։ Այստեղ Տաթևացին խոսում է աշխատության մեջ հավաքված նյութերի կարևորության մասին։

** Առաքել Սիւնեցին գրել է «Ադամգրքի» երեք տարբեր վարիանտներ։ Ըստ հրատարակիչ Պոտուրյանի թվարկության՝ Ա. և Բ. վարիանտները՝ 1403 թվականին (տես այդ տարվա թվաշարքում), և Գ. վարիանտը՝ 1401-ին։ Ժամանակի տեսակետից առաջին այս վարիանտն իր հերթին բաժանվում է երկու տարբերակի, որոնցից յուրաքանչյուրն ունի իր տարբեր հիշատակարանը։

Երրեակ անձանցըն միակի,
Հոգով մըտօք բանիւ լեզուի
Տացուք միշտ փառս անլըռելի։
Ցորժամ փառօք յերկնից գայցես
Եւ զարարածըս նորոգես,
ՁԹարսեղ եղբայրն իմ որ առ քեզ,
Անճառ լուսով պըսակեսցես։
Սիրողք բանից և ընթերցողք
Զերգողս յիշէք իմով նախնեօք
Ի սուրբ յաղօթս ձեր արտասուօք,
Որում և դուք յիշիք փառօք։
Զմեծ վարդապետն իմ հանճարեղ
Գրիգորիոս հոգով անմեղ,
Բազում իմաստք յայտնեաց համեղ.
Ցիշէք յաղօթս ձեր արտասուեղ։

Բ

Ի յուԹ հարիւր Հայոց Թուական,
Ի յիններորդ սկըսեալ նոր ամ՝
Ոտանաւոր բանքըս գրեցան,
Հարցարանութ և պատասխան։
Տէր Առաքեալ նըւաստ ոգի,
Շնորհաց Թափուրս յամենայնի,
Զոտանաւորս շարագրեցի
Վասն Ադամայ և Եւայի։
Վասըն նախնեաց բանս որ պատմի,
Բարառնաբար ընդ մեղ խօսի,
ԲԾ. ու Ի. տունս ըստ կարգի,
Ի յետիս դէմս բացորոշի։
Անճառ լուսոյն տնզընելի,
Երրեակ անձանցն ի միակի,
Հոգով մըտօք բանիւ լեզուի
Տացուք միշտ փառս անլըռելի։
Դարձցուք ըզբանս առ ցանկալին
Ի դէմըս մեծ վարդապետին,
Զի նա ուղղեաց ըզկարգ բանին,
Ըստ իւրաքանչիւր պատշաճին։
Վերադիտողն իմ ըստ հոգոյ,
Եւ ազգակից հիքիս մարմնոյ.*
Նա հըրամեաց ինձ գըրելոյ
Զոտանաւորքս ըստ խորհըրդոյ։
Ասաց գըրել ինձ ըստ կարգի
Ցաղագս նախնեացն յիշատակի,
Վասն Ադամայ և Եւայի,

* Ակնարկում է Գրիգոր ՏաԹևացուն։

Ի դէմս օձին և բանսարկուի։
Րաբունապետ յոյժ պանծալի
Ծով իմաստից ծաւալք շնորհի,
Ի նոյն շնորհէ մասն ինչ առի,
Զոտանաւորքս շարադրեցի։
Դրախտ նըռնենեաց և դաշտ ծաղկանց,
Մըտօք պայծառ լուսաթափանց,
Իմաստ անջինջ և անանց,
Քան զայլ հռետորս այլ գերազանց·
Ահա տեսի զճանճըն մեղուի,
Որ ի ծաղկունս շըրջագայի,
Առնուլ ըզնիւթըս հընարի
Նըրբատեսակ հիանալի.
Գետ* պայծառ և հրաշաբան,
Ծով իմաստից լուսահոսան.
Վըտակ դեասց քոց ընթանան,
Առոգանեն զողիս մարդկան։
Եւ նա գըրեաց ճառըս բազումս,
Որ և ունի զիմաստս անհունս,
Գիրքս քսան և չորս որպէս ծաղկունս՝
Եկեղեցոյ եդեալ ակունս։
Տուփ խնկալի անուշ ծաղկանց
Բուրեալ ի քիմս հանուրց ազանց,
Զմայլեցուցիչ հոգոց մասանց՝
Գրիգորիոս՝ այր ցանկութեանց·
Ի քէն շընորհք հոսի անանց,
Ախորժ մըտաց մաքուր մանկանց,
Քաղցրաճաշակ պասքեալ անձանց.
Գրիգորիոս՝ պետ հայկազանց։
Նըստեալ ի մէջ աղբերց ականց,
Աստուածաշունչ բանից ծաղկանց՝
Քաղիր ձեռամբ հոգոց մատանց,
Փունջ փունջ բաշխես հոգոց մանկանց։
Բնակեալ ի լեառըն զըմըռսոյ,
Պայծառացեալ նըման լուսոյ,
Սիրտ իմ հալեալ որպէս ի հրոյ,
Ի բաղձմանէ քոյին սիրոյ։
Առեալ զիմաստս աննիւթական,
Ձեռագըրես ի միտ մարդկան.
Եւ դու ի գիրն անզուգական,
Գրեցիս անջինջ յատուկ անուամբ։
Նըստեալ փառօք ի պարտիզի,
Ցանուցահոտ բուրաստանի,

* Բնագրում եղել է «Գետո»։

Զձայն քո արա ինձ լըսելի,
Զի հանդարտի շունչս և հոգի։
Իղձ բաղձանաց սիրովըդ քո,
Տուր ինձ համբոյրըս բերանոյ,
Զի ծարաւի սիրտըս հոգոյ,
Ըմպել գըստինքըս քո գինոյ։
'Ի իւԹ իմաստիցդ յոյժ փառաշարդ,
Այլ հռետորաց անհամեմատ,
Դու հանճարոյ ծառ ե արմատ,
Սուրբ հրեղինացն յանկ և բաղդատ։
Դովեալդ ի գահըս գումարաց,
Մեկնիչ հտնուրց կտակարանաց,
Դու բուրաստան լուսով ծաղկած,
Թագ և պըսակ եկեղեցեաց։
Րամեալ ծըննունդս Հայաստանեաց,
Որք ինչ օգտին ի քոյդ շնորհաց,
Քեզ օրհնուԹիւն տան երգ վանաց
Քե ազգակիցք և նախնեաց։
Եւ ես՝ յետինս յամենայնի,
Շնորհաց Թափուրս և փանաքի՝
Տէր Առաքել նըւաստ ոգի,
Զմարթեմ գովել զվեհդ ցանկալի։
Ցընծացեալ ծափըս հար. հոգով,
Պայծառացեալ սուրբ հաւատով,
Զագախառնեալ սուրբ երամով,
Մուտ յառագաստ ծաղկեալ լուսով։
Ի յուԹ հարիւր Թըւականի
Եւ յիսներորդ սկսեալ ամի,
Զոտանաւորքս աւարտեցի,
Կամօք իմոյն վարդապետի։
Զբանքն Ադամայ և Եւայի
Բարտոնաբար աստ գրեցի,
Վասըն խըրատու մեռ և օգտի
Ի յապագայն ժամանակի...։
Ցորժամ փառօք յերկնից գայցես,
Եւ զարարածս նորոգես,
ԶԲարսեղ եղբայրն իմ որ առ քեզ՝
Անճառ լուսով պըսակեսցես։
Սիրողք բանիս և ընԹերցողք,
Եւ աննախանձ օրինակողք,
Զերգողս յիշէք մերովք նախնովք՝
Ի սուրբ աղօԹս ձեր արտասուօք։
Եւ որ զամէնն ասեն սիրով.

Լսօղ* բանիս ընթեռնըլով,
Լըսեն՝ եկայք օրհնեալք հոգով,
Զկեանս անսպառ ժառանգելով։**

8

## ԼՈՒԾՄՈՒՆՔ ԿԻՒՐՂԻ ԳԱՐԱԳՄԱՆՑ ԳՐՈՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՑ

«Միսական», էջ 239

Գրիչ՝ Մելքիսեդ
վայր՝ Տաթև*

Ի յութ հարիւր Հայոց թուական
Եւ յիսներորդ սկսեալ նոր ամ (1401),
Գիրքս գրեցաւ այս հրաշազան՝
Հարցաբանումն և պատասխան,
Ի մեծ հռետոր վարդապետէ
Գրիգոր անուն և հսկողէ՝
Այն որ զանճառս խորոց յայտնէ,
Ճաշակ մըտաց մատուցանէ։
Շինեաց ըզգիրքս զայս պիտանի,
Որ զամենայն իմաստս ունի.
Թէ ոք ի բան ինչ ծարաւի՝
Աստի ըմպէ որչափ կամի,
Զի այս հանճար է նորագոյն,
Զոր չէր յայանեալ մինչև ի սոյն,
Սայ նոր ճաշակ է քաղցրագոյն,
Ախորժ կամաց ամենեցուն...։

9

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 184

Գրիչ՝ Յոհաննէս Ապարաներեցի

ա

376 ա ...Արդ, գրեցաւ աստուածաշունչ տառս, հոգևոր բուրաստանս ձեռամբ անարհեստ և անպիտան գրչի Յոհ[աննէ]ս քահանայի, ի վայելումն տէր Խաչատրոյ սրբասնեալ և աստուածասէր քահանայի, և յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնողաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց, զոր տէր աստուած վայելել տացէ սմա և ի հանդերձեալն, յիշատակ անջինջ և անսպառ անվախճան յաւիտեանս, ամէն։

* Ձեռագրում եղել է «լսելօզ»։

** Տնատկզբի տառերով հոգվում է հետևյալը. «Ի ավագ վարդապետին բանիւ գրեցի զայս ես»։ Ըստ երևույթին բնագրի մեջ տների ընդգծված «ավագ»—ոչինչ չասող սկզբնատառերի փոխարեն եղել են այնպիսի սկզբնատառեր, որոնցով հոգվել է «Գրիգոր» անունը, և ակրոստիխ հիշատակարանը կարդացվել է այսպես. «Ի Գրիգոր վարդապետին բանիւ գրեցի զայս ե[րգս]»։

Արդ, ես Յոհ[աննէ]ս քահանայ | | | * գրեցի զսուրբ աստուածաշունչս ի վայելումն տէր Խաչատրոյ, և առի շուքրանա գրոցս ԲՌ. (2000) դահեկան, որ առնէ կէսն Ռ. (1000) դահեկան՝ Թանկա Թաբբեզի, վկայութեամբ Անդրէաս սրբասնեալ քահանայի, և որդւոց նորա՝ Գրիգոր քահանայի և Աւետշայ սարկաւագի։ Եւ աղաչեմ զամենեսեան, որք կարդայք կամ օրինակէք, աստուած ողորմին լի բերանով ասասցէք տէր Խաչատրոյ՝ ստացողի գրոցս, և ծնողաց իւրոց, և մեզ՝ անարժան ծառայիցս ձեր։

Յանուն աստուծոյ ամենակալին՝ հօր և որդւոյ և հոգոյն սրբոյ, ես՝ Խաչատուր քահանայս ստացայ զսուրբ աստուածաշունչ[ս] ի հալալ արդեանց իմոց, յիշատակ ինձ և ծնողաց իմոց՝ հօր իմոյ Նէքռուզին, և մօր իմոյ Շնոհվորին, և եղբարցն իմոց, որք ի Քրիստոս փոխեցան՝ Սկանդարին և Ամիրշային, և այլ ամենայն արեան մերձաւորաց իմոց...։

Բ

44 ա Փառք... որ ետ կարողութիւն տկարութեանս իմո հասանել յայսմ նվագ ի փառս Քրիստոսի, ի թվականիս հայկազեանս տոմարիս ՊԽԹ. (1400), և ի թվին մարդեղութեան տեառն մերո և փրկչին Յիսուսի Քրիստոսի ՌԴՃ. (1400), և ի թագաւորութեանն Թամուրին և որդո նորա Միրանշաին:

Յայսմ ամի շարժեցան զօրքն Շամա, որդի Իլդրումին, ի վերայ Թամուրին:

Գ

121 ա Զնուաստ և զապիկար գրիչս՝ զֆրա Յոհաննէս Ապարաներեցի, յիշեա Քրիստոս աստուած ի քո սուրբ արքայութիւնդ։

Դ

126 բ Զնուաստ և զտառապեալ ոգի՝ զֆրա Յոհաննէս ի կարգէ սրբոյն Դոմինիկոսի, որո առաջնորդ և հոգեբարձու եղև մեզ պատուական վարդապետն տէր Ֆրանցիսկոս, յիշեցէք ի Քրիստոս...։

Ե

206 ա Յիշեա Քրիստոս աստուած զՄարթա խաթունի հոգին։

Զ

267 ա Զանպատս ի բարեաց և զլծեալս ի կառս մեղաց, զտկարս մարմնով և զմեռեալս հոգով, զնուաստ և զանարհեստ գրիչ զֆրա Յոհաննէս ի կարգէ սրբոյն Դոմինիկոսի, զառաջինս ի մեղաւորոն և զյետինս ի կարգաւորսն, աղաչեմ յիշել ի սուրբ և ի մաքրափայլ յաղօթս ձեր։ Թվիս ՊԾ. (1401) գրեցաւ։**

* Մի տողի չափ ջնջված է. ամենայն հավանականությամբ գրված է եղել՝ «ի կարգէ սրբոյն Դոմինիկոսի»։

** Յոհան գրիչը շատ լավ տիրապետել է պարսկերենին։ 296 ա էջի վրա նա հայերեն տառերով մի սյունակից ավելի պարսկերեն բան է գրել։ Ունեցել է նաև նկարչական շնորհք, 216 ա էջի վրա նկարել է մի հետաքրքիր կրկնային տեսարան։

## 10

## ՀԱՄԱՌՕՏ ՀԱՒԱՔՈՒՄՆ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆՈՒԹԵԱՆ, ԱԼԲԵՐԹՈՍԻ

*Երևան 69*

*Գրիչ՝* Յոհան Քռնեցի*
*վայր՝* Ճահուկ

ա

245 ա *Զստորասականս ի բնաւ բարիս,*
*Զբացասականս ի բնաւ չարիս,*
*Ես՝ ֆրա* Յոհան Քռնայեցիս,
*Զեզ աղօթից եմ ի կարիս։*

բ

45 բ *Ցաղագս դառն ժամտնակիս,*
*Որ էր ի* Ճահկո *Փասըլիո,*
*Ցորժամ ՊԾ. էր Հայոց Թվիս (1401),*
*Ի յօգոստոս՝ փոխման տօնիս։*

## 11

## ՃԱՇՈՑ

*«Նօտարք Հայոց» 18, Վան*

*Գրիչ՝* Աստուածատուր
*վայր՝* Շատվան

*Եւ արդ, ես՝ անպիտանս ի բարեաց...* Աստուածատուր *քահանայ, տեսի զփափաք* Յոհաննէս *աստուածասէր տանտիրոջ, և իմ տկար անձամբս յանձն առի, և ամենակարող զօրութեամբն աստուծոյ կատարեցի զսուրբ գիրքս զայս ի դառնացեալ և ի վշտաբեր ժամանակիս, յորում էր Թիւս Հայոց ՊԾ. (1401), ի հայրապետութեան տէր* Դաւթի: *Եւ արդ, գրեցաւ ի գիւղս* Շատվան, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Ստեփաննոսիս, և սուրբ Գէորգայ զօրավարին, և սուրբ Ոսկեանցս։*

## 12

## ԳԱՆՁԱՐԱՆ

*ԼՑՎ. անտիպ 543 (Հայկ. ՍՍՌ Պատմ. Թնգ.),*

Գրիչ
*վայր՝* Ռշտունիք, Նկար վանք

*...Ցանկացող եղեալ այսմ աստուածային և պայծառ վայելուչ բուրաստանիս աստուածասէր և իմաստուն միայնակեացս, նայ՝ որ մականունն անուն կոչի (˝)... ստացաւ ըզսայ ի հալալ արդեանց իւրոց, յիշատակ իւրն և ծնաւղացն՝* Սիմէոնի *և* Քընքըշոյ, *և եղբաւրն* Յովհաննիսայ, *և այլ ամենայն արեան մերձաւորացն։*

---

* *Չպետք է շփոթել Քռնայի ունիթոռների ղեկավար Յովհանի հետ, որն ապրել է ԺԴ. դարի առաջին կեսին։*

Արդ, գրեցօ ցանկալի մատեանս այս յերկիրս Ըռըշ[ա]ունեաց, և ի հրեշտակայընակ յարկիս, որ կոչի Նկար, ընդ հովանեաւ Սրբութեանս, և սուրբ Աստուածածնին, և սուրբ Ստեփաննոսին, ի հայրապետութեան տեառն Դաւթի. և յաշխարհակալութեան Թամուր–ղանի, և ի տեղայպահութիւն սուրբ ուխտիս՝ իմաստուն և հեզահոգի տէր Յոհաննիսի, որ կամակից եղև գրելոյ սորայ մարմնաւոր պիտոյիւք և այլ ամենայն սպասաւորութեամբ. և կան բնակեալ յայսմ անապատիս բազում կրաւնաւորք։ Այլ և Ստեփանոս և Թումայ սպասաւորեցին մեզ ի պէտս կերակրոյ, այլ և զմեծ հռետոր զԳրիգոր վարդապետ՝ զուսուցիչն մեր, որ զուռնականն սկսաւ ի գրել, և ես զգանձարանս, ի մարգաց ամիս, ի միշաբաթ եղև սկսումն գրոյս։ Ո՜վ սուրբ մանկունք եկեղեցոյ, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զվերնոցն յիշեցեալսն, ուղիղ սրտիւ և լի բերանով ողորմի ասացէք և դուք ողորմութիւն գտջիք.*

## 13
## ՄԱՇՏՈՑ

Երևան 898

Գրիչ՝ Յոհանէս
վայր՝ Ի գաւառիս Խիզան քաղաքի

162 ա Զստացօղ և զվայելօղ մատենիս զտէր Գրիգոր եպիսկոպոս Մոկաց՝ զգերապատիւ և զերանաշնորհ, զառաքելաշնորհն և զճշմարիտ պատկերն Քրիստոսի՝ ըստ ներքին մարդոյն, հայրն երկնաւոր անփորձ և անվրդով պահեսցէ յամենայն վտանգից հոգւոյ և մարմնոյ։ Ընդ սմին և զհարազատ եղբայրն իւր զԹումայ կրօնաւոր և առաջնորդ սուրբ
162 բ ուխտին, որ սուրբ Խաչ կոչի և մականուն սուրբ Կանանց վանք. ‖ որ ստացան զգիրքս յիշատակ հոգւոյ իւրեանց, և ծնօղաց իւրեանց, և հանգուցեալ եղբօրն իւրեանց Ղազար սարկաւագի, և ամենայն արեանառւացն։

Գրեցաւ ի սուրբ և ի հռչակաւոր ուխտս սուրբ Խաչ յոբջորջեալ, ի գաւառիս Խիզան քաղաքի, ձեռամբ անարհեստ գրչի Յոհ[աննէս]ի բանի խնդրողի, ի Թվ. ՊԾ. (1401), յամի ձեռնադրութեան տէր Գրիգ[որի]։ Աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմայ ինչ կերպիւ և իցէ, յիշեսջիք զամենայն վերոյգրեալքս ի սմայ և զԲ. (2) հարազատ եղբարքն իմ՝ զՅակոբ և զՊետրոս կրօնաւորք՝ հանգուցեալք ի դուռն սուրբ Խաչիս, և զՄկրտիչ կրօնաւոր և առաջնորդ սուրբ ուխտիս՝
163 ա զկազմօղ տառիս և ‖ զպատճառ կենաց իմոց, և զծնօղսն իւր։ Նայ և զուսուցիչքն մեր՝ զՅոհ[աննէս] և զԿիր[ակոս] վարդապետք, որ էին առաջնորդք սուրբ ուխտիս...։

Տէ՛ր Գրիգ[որ], բազմաւեր հոգիս իմ քեզ յաղօթից ժամն յանձ եղիցի։

Ցայսմ ամի եկն Թանձր մարախ և աւերեաց զբազում տեղիս և զգաւառս։

* Թվականի մասին տվյալ է հաղորդում Ղ. Փիրղալեմյանը «Նոտարք»-ում (էջ 14)։

## 14

## ՃԱՇՈՑ

Երևան 8904

Գրիչ՝ Յոհ[աննէս]
վայր՝ Խիզա՞ն

46 ա Քրիստոս աստուած, քո անոխակալ քաղցրութեամբդ և բարերար ողորմութեամբդ յարութեան և անմահական կենացն արժանի արայ զստացաւղ սուրբ գրոցս զՅով[անէս] պատուական քահանայ, որ ստացաւ զսայ յարդար վաստակոց իւրոց, յիշատակ իւրն և ծնաւղացն իւրոց՝ Յակոբին և Ղիաթին, և եղբաւրն՝ Ամիր-Բէկին, և հարազատ զաւակացն՝ Կարապետին և Վարդանին, և կողակցին իւրոյ Աննայի, և ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեաց և հանգուցելոց մեղաց թողութիւն շնորհեայ, և արքայութեանդ արժանացոյ, և քեզ փառք յա[ւիտեան]։ Ընդ նոսին և ինձ՝ մեղապարտ գրչի Յոհ[աննէս]ի դերանուն խնդրողի բանի և ծնաւղաց և եղբարց։ Նայ և վարդապետացն մերոց Յոհ[աննէս]ի և Կիր[ակոսի]՝ հոգևոր ծնօղաց մեր և վարժողաց՝ ողորմեայ տէր և տուր զբարի պարգևաց քոց հատուցումն։ Եւ դուք՝ բարեմիտ ընթերցողք և լսողք, յիշեցէք զամենայն վերոյգրեալքս ի սմայ, և միով բերանով աստուած-ողորմի ասացէք և աստուած ձեզ և մեզ ողորմեսցի յիւր միւսանգամ գալուստն, ամէն։

Թվ. ՊԾ. (1401)։

## 15

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 732

Հետ. ստացող՝ Յովանէս Համշինցի

211 բ Ջսակաւ գիրս գրեցի
Եպիսկոպոսըս Համշինցի,
Այս անպիտանս յամենայնի,
Որ Յովանէս անունս կոչի։
Ցաւաւք նեղեալ յայս աշխարհի,
Դառն և գժնայ և անբարի,
Միտքս փութով ի չար գիմի,
Եւ ի բարոյն յոյժ հեռասցի,
Ու ահեղ աւուրն այն ատենի
[Ի՞նչ] գործ գործեցի ինձ հատուսցի
Ողորմելիս յամենայնի,
Ըստ իմ գործոյս ինձ պատրաստի։
Այլ դու՝ տէր[դ] յամենայնի,
Քաղցր ե բարի անքննելի,
Ջ՚ոգիս իմ քեզ յանձին արի,
Բարեաց աղքատս յամենայնի.

Եւ քեզ փառք վեր առաքի
Ցարարածոցս անլռելի, ամէն.
Թվ. ՊԾ. (1401),

16

## ԱԲԲԱ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՍԱՆԴՈՒԽՏ ԱՍՏՈՒԱԾԱՑԻՆ ԵԼԻՑ

Երևան 1925

Գրիչ՝ Մարկոս
վայր՝ Ղրիմ, Տաշքաւրըու դղեակ

220 ա …Կատարեցաւ երկրորդ Կլիմաքս, այսինքն որ է Սանդուխտ գիրք, ձեռամբ մեղապարտ անձին Մարկոս գրչի, ի Տաշքաւրըու դղեակս, առ ոտս սրբոյն Ստեփաննոսի, ի յաշխարհս Հոնաց, ի յաշխարհի բառ՝ Սուրխաթ և Ղրիմ կոչեցեալ, ի Թուականս մեծ յԱդամայ՝ վեցհազարերորդի ութհարիւրերորդի քսաներորդի Զ.-երորդի (6826), ի ծննդենէն Քրիստոսի՝ հազարերորդի չորսհարիւրերորդի երորդի (1403)՝ Հայոց հաշուի, և ըստ Յունաց հաշուի՝ Ռ.-երորդի երեքհարիւրերորդի Ըընների երորդի (1393), և ըստ Ֆըռանգաց՝ հազարերորդի [երեք հարիւրերորդի*] Ըըններորդի մին Թ.-եըորդի (1399), և ըստ ասորւոց՝ Ռ.-երորդի [երեքհարիւրերսրդի*] Ըռներորդի ութերորդի (1398), և ըստ պատճէն յարեթական տումարիս Հայոց ՊԾ. (1401), Տանուտէր տարոյն՝ Առեւծն, ի մայիս ամսոյ ԻԱ., ի կաթողիկոսութիւն Հայոց Կարապետի, և յեպիսկոպոսութիւն մերոյ Նահանգիս ամենայն հիւսիսական կողմանց՝ տէր Սաեփաեոսի, և ի վարդապետութեանն տէր Խաչատրի, և յանբարի ժամանակս, որ սղութիւն էր, հացն կապիճն Լ. (30) դրամ եղև։

Այս Սանդուխտ գիրքս, որ Կլիմաքս կոչի վաղընջուց թարգմանեալ է յուժեմ՝է ի յԱեդիոք, ի սուրբ Սիմեոն, զառաջքն Ի. (20)
220 բ ճառ ի յոյն լեզուէն, և ոչ ժամա[ն]նեաց կատարեալ, քան զի վախճանեցաւ, իսկ այլ ոմն յեղբարց մերոց՝ անուն Սիմէոն կոչեցեալ, ի քսան ճառէն ի վեր թարգմանեաց ի Վրաց լեզուէ, գլուխք երկոտասան և մեկնութիւնս ՇԼԵ-Զ։ Արդ, որք ընթեռնոյք կամ աւրինակէք յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացող գրոցս զՀայրապետ կուսակրաւն նորընծայ աբեղայ և զամենայն արեան մերձաւոր ազգականս իւր։

Եւ կրկին յիշմամբ յիշեցէք ի տէր զՅոհանէս կուսակրաւն վճիտամիտ աբեղայ՝ զհայր վանացն սուրբ ուխտի Աւքսէնդիոսի, ամենայն ազգականաւքն իւր։

Եւ յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր ի բարի մասին՝ զթարմատար և զկարգընկեց զՄարկոս գրիչս, և սխալանաց և խոշրուտ գրիս մի մեղադրէք, զի քարտէզս փառանգի էր, և աւրինակն դժար, և այդքան էր կար մեր և պէտս մեր։ Կորկոտ և թան և փորս մեզ գուսան, որ է ծաղրական։ Այլ ըստ շնորհաց ձեր ընթերցջիք ի փառս աստուծոյ

## 17

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

**Երևան 8863**

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Ղրիմ, Կաֆա

307 բ ... Որում ցանկացաւղ եղեալ քահանայս աստուածամերձ Աբրա-
համ անուն կոչեցեալ, տիաւք մանկագոյն, բայց իմաստութեամբ զար-
գարեալ ետ գրել զսա մեկոաներկ և աղկաղկ անձին Ստեփանոս փըց-
նագրի, որ տեսի զանհամար ազգս տնաւրէնութեանց և ախտից, զորս
սա թուէ առ իս բազմապատկաբար կատարեալ, այլ և անդարձ ի նոյնն,
և առ ստացաւղ սորա՝ յԱբրահամ քահանայ՝ մասնաւոր երևեալ։ Եւ
եդաք զսա յիշատակ մեզ հրապարակիչ, դսրովիչ և կառափիչ ի կեն-
դանութեան մերում։ Եւ զկնի մահուն մերոյ որչափ մնասցէ սա կա-
մաւք տեառն ի ձեռս այլոց, պարսաւելով զխայտառակութեան ար-
ժանիս միայն զգըչակս, զի թերևս և ողոքանացն, որ աստ լուիցէ
վասն մեր տէր մեր։ Արդ, աղաչեմ զդասս մաքրապարիցդ, յիշել ի
312 ա պատկանաւոր աղաւթս ձեր զյիշատակեալքս || ի սմա զԱբրահամ աս-
տուածարեալ քահանայ Մելտենցի, և զծնաւղսն իւր՝ զԱրքայուն հայրն
և զԱսան-Մելիք մայրն, և զեղբայրն իւր զՔուրդամիրն, և զերիցակին
բամբիշն իւր, և զամենայն արեան մերձաւորս իւր՝ զկենդանիս և
զփոխեալսն առ Քրիստոս...։

Եւ ըզզառածեալս մեղաւք զորդիս տնաւրէնութեան՝ զգրաւղ սո-
րա՝ զՍտեփանոս սուտանուն քահանայ, և զիմսն մի մոռանայք յիշել,
և զՅոհաննէս քահանայն՝ զորդեակն իմ, որ ոսկով զարդարեաց ծաղ-
կելով յիշեցէք ի տէր։

Արդ, յամի թուաբերութեանս Հայոց ՊԾ. (1401) աւարտեցաւ
մատեանս յաշխարհս Կազարիոյ, յաստուածապահ քաղաքս Կաֆա, առ
տան ամէնաւրհնեալ սուրբ Աստուածածնին։

## 18

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 9222, Ե**

Նորոգող՝ Թումա

Արդ, վերստին նորոգեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ յոգնա-
մեղ և անարժան վարդապետի Թումայի, ի թվականիս Հայոց ՊԾ. (1401),
ի վաելումն սրբասէր քահանայի Կարապետի, որ ստացաւ զսայ ի հա-
լալ վաստակոց իւրոց յիշատակ իւր, և ծնողաց իւրոց Դանիէլի, և մօր
իւրո, և եղբարց իւրոց՝ Թումաշահի և Սիմէոնի, և քեոց իւրոց, և
ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝ կենդանեաց և հանգուցելոց։

Արդ, որք հանդի || պիք սմա ընթռնելով կամ աւրինակելով յի-
շեցէք ի մաքրափայլ և յերկնագնաց յաղաւթս ձեր զյառաջ յիշեցեալ
քահանայն Կարապետ, և զծնաւղսն, և զհարազատ եղբարսն իւր զԹու-

մաշաճ, և զՍիմէոն, և զՄարտիրոսն, և զԹումայն, որ դիւրաւ վաճառեցին փոքր գնով զաւետարանն, ընդ նոսին և զանպիտան ոգիս. և որք յիշէք զմեզ սրտի մտաւք՝ յիշեալ լիջիք յառատ ողորմութիւնն աստուծոյ, որ է օրհնեալ, ամէն։*

* Հիշատակարանն այժմ պահվում է պատառիկ հիշատակարաններից կազմված № 9222 ժողովածու-տուփի մեջ, Ն. համարի տակ։ Հանված է Անթամարի № 225 ձեռագրից, որ նկարագրված է Ն. Ղալայանի Ցուցակի մեջ՝ № 67-ի տակ (սյունակ 126)։





## 19

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5562*

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Հիզան

ա

309 բ *... Այլ և գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ* Յովանիսի *անի-մաստ և տխմար գրչի, անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պար-գևեաց մեզ մարդասէր հոգին, բազում աշխատասիրեալ իմ ի սմա, գրեցի անարժան ձեռուք իմովք յընտիր և ի ստոյգ աւրինակէ, կենուք տառապանօք և բազում պանդխտութեամբ ե անհանգիստ և գժուարին և տրտամելի աւուրբք, ի մեծ թուականիս Հայոց* ՊԾԱ. *(1402), ի կա-թողիկոսութեանս հայկազեան սեռի տեառն* Դաւթի Աղթամարեցւոյ, *որ ե եղբայր տեառն* Զաքարիայի *հայրապետի՝ վկայեցելոյն ի Քրիստոս մարտիրոսական արեամբ յամիրայէն Ոստանոյ։ Եւ ի թագաւորու-թեանն այլասեռից* Թամուր-Լանկի, *որ է յաղթող՝ւ անպարտելի, և յայսմ ամի եմուտ ի տունն* Հոռոմոց, *ե նուաճեաց զամենեսեան ընդ ձեռամբ իւրով, և զամիրապետն աշխարհին՝* Իլդրում *անուն ըմբռնեաց և կա-պեաց՝ հանդերձ որդւովն։ Զոր տէր աստուածն Իսրայէղի պահեսցէ անսասան զաթոռ հայրապետական և թագաւորական, ամէն։*

*Եւ արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի քաղաքիս, որ* Հիզան *անուն կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Սարգսի զօրավարին, և սուրբ Գէորգեայ, ի վայելումն* Յոհանէս *քահանային և* Սուքիաս *քահանային՝ քեռորդւոյն իւրոյ, և ի յիշատակ հոգւոց իւրեանց և հոգւոյ* Թումայ *քահանային որդո* Յոհաննէս *քահանային, որ մատաղ հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս**։ *Եւ կացցէ սայ ընդ իշ-խանութեամբ* Սուքիաս *քահանայի, քեռորդւոյն* Յոհաննէս *քահանայի, և այլ մարդոյ գաւէ ի հետ չկա, և ոչ իշխօղ, բայց միայն ի* Սուքիաս *քահանայէ...։*

310 ա *... Այլ ե զիս՝ զանարժան գրչակս* զՅովանէս *յիշեցէք ի Քրիս-տոս և զհայրն իմ* զՄկրտիչ *քահանայ, և զհօրեղբայրն* զԳրիգոր *քա-հանայ, և* զՍտեփաննոս *քահանայ՝ զորդի նորա, և զմայրն իմ, և զեղ-բարսն իմ՝* զՁաքարայ *քահանայ և* զՆէրսէս Նորաքողրոջ *սարկաւագ,*

** Հիշատակարանից հետո՝ 310ա—311ա էջերի վրա, վաղամեռիկ Թումայի անունից գրված է բավականին հաջող մի ողբ («Ի Թումայ քահանայէ, որդւոյ Յովհաննէս քահա-նայի, ողբ»), իսկ 10ա էջի վրա, Քրիստոսի պատկերից ներքև նկարված է Թումայ քահանան իր ծնողների հետ։ Նրան կից գրված է. «Ես Յոհանէս քահանայի որդի եմ՝ Թումայ քա-հանայն, որ տարաժամ փոխեցայ ի Քրիստոս, ոհ, ոհ, ոհ» (տես նկ. 2)։*

և զբարի կինն զՆախաթուն, որ մայրագութ սիրով աշխատեցաւ ընդ մեր, և զամենայն երախտաւորսն մեր ուղիղ սրտիւ և կատարեալ հաւատով յիշեսջիք ի Քրիստոս։ Եւ խոշորութեան և սխալանաց գրիս անմեղադիր լերուք, զի այդ էր կարն մեր։

Բ

ծ ր Զսուտանուն ծաղկողս և զանարժան քահանայս զՅովաննէս յիշեցէք ի Քրիստոս և զծնողսն իմ ըստ մարմնոյ՝ զհայրն իմ զՄկրտիչ քահանայ, որ տարաժամ փոխեցաւ ի Քրիստոս և սուգ անմխիթար եթող ինձ։ Աղաչեմ զձեզ կողկողագին պաղատանաւք, զի յիշէք զմեզ բոլորով սրտիւ և աստուած ողորմի ասէք, զի շատ աշխատեցաւ վասն իմ յուսով, և ես չեղէ պտուղ բարի հատուցանել նմա փոխարէն, վասն որոյ զձեզ աղաչեմ, որք հանդիպիք տեսլեան սուրբ աւետարանիս անմոռաց յիշեսջիք զմեզ և աստուած զձեզ յիշեսցէ։*



Նկ. 2. Ձեռագրի պատվիրատու Յոհաննէսը, իր կնոջ և վաղամեռիկ որդու՝ Թումայ քահանայի հետ։

20

## ԱԳԱԹԱՆԳԵՂԵԱՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

Փիրղ. Նոտ. 17—18

Գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Հիզան, Ս. Խաչ վանք

Փառք... որ ետ կարողութիւն տկար անձին իմոյ գրել զպատմութիւն երից երանեալ և երջանիկ հօրն մերոյ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, ի սուրբ ուխտս, որ սուրբ Խաչ յորջորջի, յերկիրս Հիզան քաղաքի, ի թուին ՊԾԱ. (1402)։ Ես Յովհաննէս գծագրեցի ձեռամբ իմով, որ յետինս եմ ի շարս բանասիրաց՝ անուամբ հռետոր կոչեցեալ և հանճարով և վարուք վերջնոտնեալ, յիշել... և զծնողս իմ

* Յովհանեսը Խիզանի դպրոցի հաջողակ նկարիչներից է։

զԱլեքսանճ քահանայն...։ Եւս առաւել զբազմերջանիկ հարքն մեր զՅովնաննէս և զԿիրակոս վարդապետք, որ էին առաջնորդք սուրբ ուխտիս և մեզ տածողք հոգւոյ և մարմնոյ... և միեղէն եղբարքս մեր, որ ի սուրբ Խոչի դուռս հաւաքեալ կան՝ զՄկրտիչ հայրպետ, և ինձ արեանառու. զհօրեղբարսն՝ զՊետրոս և զՍտեփաննոս կրօնաւորք, և զայլ եղբարք՝ զԲարսեղ, զԱւետիս, զՆերսէս և զԿիրակոս վախճանեալ, զՊետրոս, զՅոհաննէս, զՍտեփաննոս, զՄարտիրոս, զԳրիգոր սարկաւագ, որ զԹուղթ խազէր, և զՅակոբ դպիր և աշակերտ, և զայլ ամենայն միաբան եղբարքս, որ մեզ կամարար են և ձեռնատու ի գործս բարիս։

Բ

Ես Յոհաննէս վարդապետս... գրեցի զպատմութիւն սուրբ կաթողիկոսացն և թագաւորացն...։

[Յիշեցէք] զեպիսկոպոսն Տարօնոյ՝ զտէր Աստուածատուրն, որ օգնական եղև ի նիւթ տառիս, պատահողք մատենիս յիշեսջիք զնա։

21

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՄԱՏԹԷՈՍԻ, ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

Երևան 3578

Գրիչ՝ Թումայ Սիւնեցի
վայր՝ Ի ճռչակավոր Երկիրս Ծար,
ի գեւղս Քարավանառ

293 բ ... Գրեցաւ գիրքս այս աստուածաշունչ, որ ունի ամբարեալ առ ինքն զմեկնութիւն բանից սուրբ աւետարանին և կոչի քաղուածու գլխոյն Մատթէոսի սուրբ աւետարանչի, նաև ունի ընդ ինքեան զլուծումն չորից գլխոցն, զոր բազում աշխատութեամբ ժողովեալ է մեծ րաբունոյ և տիեզերալոյս հեռետորի Գրիգորի՝ աշակերտի եռամեծին Յովհաննու Որոտնեցոյ:

Եւ կատարեցաւ սայ ի թուականութեանս հայկազեան տաւմարի՝ ութհարիւրերորդի յիսներորդի առաջներորդի ամի (1402), ի հայրապետութեանն Հայոց և Աղուանից երկուցունց տէրանց Կարապետք կոչեցելոց, զոր այսպէս պատահեցան ի մերումս ժամանակի՝ անուանակիցք գոլ միմեանց, և յարհեպիսկոսութեան այսմ նահանգիս տէր Զաքարիայի Դադի Վանուց վերատեսչի, ի հռչակաւոր երկիրս Ծար, ի գեւղս Քարավանառ, ընդ հովանեաւ սրբոցս որ ի սմայ, ձեռամբ մեղսամակտրթ և անտրհեստ գրչի՝ Թումայի Սիւնեցոյ, ի խնդրոյ պատուական և սրբասնեալ և կուսակրաւն քահանայի Յունանու։ Ցայսմ ժամանակի, յորում փայլէր ի մէջ եկեղեցոյ պայծառ ջահն անշիջանելի և երկրորդ լուսաւորիչս հայկազեան սեռի, մեծ վարդապետն Գրիգոր, որ ոչ միայն հոմանուն գոլ սուրբ Լուսաւորչին, այլ բանիւք և արդեամբք, դաստիարակելով զմանկունս սրբոյ կաթուղիկէ, դիացուցանելով զշնորհս հոգոյն սրբոյ, զանձն ապացոյց տալով և քըրտ-

նաջան վաստակաւք յորդորելով զամենեսեան, զոմանս ի սէր աստուածային առաքինութեան և զոմանս ի ճաշակս աստուածաշունչ վար-
294 ա դապետութեան, տիրապէս || մատակարարելով, հանելով ի գանձուց իմաստուն տնտեսան զհին և զնոր կտակս և տալով ծառայակցաց ի ժամու զկերակուր բանին, ունելով որդի հարազատ և ժառանգ վարդապետութեան իւրոյ՝ զծաղկեալն ամենայն բարութեամբ և զարդարեալն ամենալի շնորհիւ վարդապետական խոհեմութեամբ և փիլիսոփէական արհեստիւ՝ զախոյանն ընդդէմ հերձուածողաց զվարդապետն Մատթէոս, զոր յայսմ ամի, կամակցութեամբ սուրբ հոգոյն, և ջանիւ մեծ վարդապետին Գրիգորի, և աղաչանաւք գրոց աշկերտեալ անձանց նստաւ յաթոռ տէլէաութեան, զոր տէր աստուած վայելել տացէ և պահեսցէ զսոսայ՝ հայր որդով բերկրեալ, պսակ պարծանաց կաթուղիկէ եկեղեցոյ, ամէն։

Զոր և ես, մեռեալս հոգով և թաղեալս ի բազմաբեղուն ախտս չարի՝ Թովմայ անարհեստ գրիչ, զգլուխ ի գետին գնելով և զգարշապարս ոտից համբուրելով, նայ և զաչս յաղքերս արտասուաց առնելով, հայցեմք հառաչալից պաղատանաւք ի ձէնջ, ով մանկունք սուրբ Սիոնի և դասք լուսերամից, որք ծըծէք սպունգաւ հոգոյն զհոսանս շնորհաց, յորժամ հանդիպիք այսմ աստուածային գանձարանի կարդալով, կամ աւրինակելով, կամ միայն տեսանելով, յիշել ի մաքրափայլ յաղաւթս ձեր զվերոյ ասացեալ կրաւնաւորն Յունան, և զծնողս իւր՝ Առաքեալ և Մինախաթուն, և զհարազատ եղբայրն իւր Խոցադեղ, և զայլ ամենայն արեան մերձաւորս իւր, և ասել բոլոր սրտիւ, թէ Քրիստոս աստուած... ողորմեայ վերագրելոյս ի սմայ Յունանին և իւրոցն...։

Խոշորութեան և սխալանացն անմեղադիր լինել աղաչեմք, զի կար մեր այս էր, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

22

ԱՒԵՏԱՐԱՆ

Բրիտ. Թանգ. Or. 5761, հծ 21, էջ 38

Գրիչ՝ Յով[հաննէս]

ա

252 ա ... Ոճ. Ղազար անուն երէց եռափափ[ագ] սրտիւ ցանկացեալ այսմ... ստանայ զսա ի հալալ և յարդար գոյից իւրոց՝ յիշատակ իւր, և ծնողաց իւրոց Ստեփաննոս քահանայի, և մաւրն նորա Անիֆի, և ամենայն արեան մերձաւորաց, և ի վայելումն նորաբողբոջ պատանեկին Սահակա, որո չորս ամ էր, զոր կոչեցեալ էր ի կարգ քահանայութեան...։ Յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր... և զիս՝ զանարժան գրիչ Յով[հաննէս]...։ Ի մարդեղութենէն Քրիստոսի Յիսուսի տեառն մերո ի ՌՆԲ. (1402) ամն, և ի թուականութեան Մեծ Հայոց ՊԾԱ. (1402). յայս դառնացեալ ժամանակիս, նեղութիւն ազգի ազգիս, որ պահանջեն զգին հաւատիս, գոլով անտէր ազգս Հայոց, զոր խնամքն աստուծոյ և տեառն մերո Յիսուսի Քրիստոսի պահեսցէ զազգս մեր մինչև ի գալուստն իւր միւսանգամ ա[ն]սասան։ Կաթողիկոս Հայոց տէր Կարապետ:

Բ

254ա *Արդ աղաչեմ... արժանի յիշման արարէք զնկարագրիչ* Յով[հաննէս], *և զհայրն իմ* Զաքարիա, *և զմայրն իմ* Եղիսա, *և զհարազատ եղբարսն իմ զ*Պօղոս *և զ*Յովհաննէս *և զ*Պետրոս, *և զամենայն արեան մերձաւորսն իմ ի* Տարաւն, *քաղաքէ* Մշո:

## 23

## ԱՒԵՏԱՐԱՆ

*ՀԱ, 1917/18, էջ 59*

*Գրիչ՝* Գրիգոր խլաթեցի

*վայր՝* Մատնեվան, մերձ ի խլաթ

*... Ձեռնտրկեալ գրեցի զսուրբ աւետարանս* [*ի խնդրոյ* Կարապետ *քահանայի*], *ընդ հովանեաւ ամենամաքուր սուրբ Աստուածածնի, ի վանս* Մատնեվանի, *մերձ* խլաթայ՝ *մայրաքաղաք*[*ի*] Բզնունեաց *գաւառի, ի հայրապետութեան տեառն* Կարապետի *ընդհանուր կաթողիկոսի, և մերոյս նահանգի տէր* Դաւթի՝ Աղթամարայ *կաթողիկոսի, իսկ յաշխարհակալութեան նեռողաց ազգին* Միր-Թամուրին *և զարմից և զաւակաց նորին: Եւ գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ի ՊԾԱ. (1402) ամին:*

## 24

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՄԱՏԹԷՈՍԻ, ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

*Ն. Ջուղա 188, Մ. Տ—Ա, էջ 1242*

*Գրիչ՝* Ֆռանգ

*վայր՝* Սինէական վանք

274ա *Փառք... որ արժանի արար զանարժան զփր*[*այ*] Ֆռանգս *հասանել ի վերջին գիծ գրոյս...: Ցամի մարդեղութեան տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի ՌՆԲ. թվին և ի թվիս Հայոց ՊԾԱ. (1402) գրեցաւ աստուածարուխ մեկնիչս աւետարանին Մատթէոսի ի խնդրոյ պատուական վարդապետին փր.* Մխիթարչի Ապարանեցոյ. *ընդ ամենայն բարութեանցն և բազում գրենացն ստացաւ զսա յիշատակ իւր ի սուրբ կարգս միաբանողաց: Արդ, աղաչեմ յիշել ի սուրբ մաղթանս ձեր զամենայն կարգաւորք վանից* Ապարանեբոյ՝ *զկենդանիքն և զննջեցեալսն, նաև զամենայն գեղեցիկ հաւատով ժողովուրդքն որ ի նմա: Նաև աղաչեմ յիշել զբարի մեծ րաբունապետն, ուսման պատճառ սուրբ կարգիս՝ զ*Կարապետ *վարդապետն, այլ և զբարեաց պատճառն կարգիս՝ զ*Սամուէլ *վերախնամողն, որ բազում աշխատեցաւ վասն կարգիս մերոյ, և զ*Մարկոս *ուշիմ վարդապետն, և զամենայն ննջեցեալքն յիշել աղաչեմ: Նաև յայսմու ժամանակի վերախնամող փր.* Ղուկաս, *որ բազում աշխատեցաւ վասն օգնութեան կարգիս՝ գնալով առ սուրբ պապն* Բօնօֆացիուս, *և բազում շնորհք և ազատութիւն երեր կարգիս՝ նմանելով առաջին*

նախնեացն, և աւելի վաստակեալ քան զամենեսեան՝ յիշխսջիք ի տէր։ Դարձեալ ծանիք, զի գրեցաւ սուրբ տառս ի վանս Սինէտկան, ընդ հովանեաւ սուրբ Յովհաննէս Մկրտչիս, ի նեղութեան և յաղքատութեան։

Աղաչեմ յիշել Սինէականի փրաթենիս՝ զննջեցեալսն և զկենդանիք երախտաւորք մեր, այլ և աստուած ե ամենայն սուրբք, ե ձեր սուրբ աղօթք օրհնէ զՄուրատՆ և զիւր որդիքն, որ օգնական է իմ ծերութեանս՝ ի գրել բազում աշխատանօք և օտար աչօք*, այլև առաջՆ<աջ>որդ, միաբանքն յիշեալ լիցի ի ձէնջ...։

Նաև աղաչեմ յիշել զբարի ծերունին զՓրա Աստուածատուր վարդապետ՝ մեր ուսուցիչ, և Փր. Գալուստն և զՓր. Տիրատուրն՝ մեր երախտաւորքն, և զծնողս մեր յիշել աղաչեմ. և ամենայն սխալանաց և խոշորութեան գրոցս անմեղադիր լերուք, զի կերակուրն ճաթրուր էր և ջուրս ցուրտ...։

Բ

48 ա Զվեհիմաց բաբունապետն զՓր. Մխիթարիչ ԱպարանՑերեցի՝ ստացող գրոյս յիշեսջիք՝ նաև զնուաստ գծողս՝ զՓր. Յոանէս։

Գ

228բ Ա՛խ, վա՜յ, մեղաւոր Սարգիս, կարդայ և միտ առ, և դատաստանին ահէն սարսիայ, զի մի Յնաս | | | ուսանքն։

## 25

## ԱԻԵՏԱՐԱՆ

**Երևան 3033**

Վաճառման գիր

411 բ Ես Լիպիկ որդի Ասկանտարայ, իմ կամաւ և իմ սրտի յաւժարութեամբ, ծախեցի զսուրբ աւետարանս Աւագտիրին ե առի զգինն ի լման

* «Օտար աչօք» գրել նշանակում է օգտագործել ակնոց։ Որքան մեզ հայտնի է հայ գրիչներից առաջին անգամ ակնոց է գործածել 1317 թ. Կիպրոսի Կանչուտ վանքում «Մեկնութիւն պատարագի» աշխատությունը ընդօրինակած Յովհաննէս գրիչը։ Իր հիշատակարանում նա հայտնում է հետևյալը. «Եւ զի յաչաց լուսոյ նուազել էի ըստ մարմնոյ, որպէս և ըստ հոգւոյ. և գտի հայթայթել աչք ապակի, որ աւգնական եղև բնական վառելոյն, զոր հիացման արժանի է գտողացն, որ են փռանկք. և այնիւ աւարտեցի զգիրս։ Եւ ամենայն ոք որ ի լուսոյ պակասել է և պատահէ ապակւոյն՝ յոյժ ձեռնտու լինի նմա ի կարդալ և ի գրել, զոր տեսաք յայտնի ի բազումս և փորձիւ և անձամբ կատարեցաք» (Ձեռագիր Երուսաղեմի № 1141, Մ.Տ-Մ)։

Ակնոցից օգտվել է նաև 1353 թվականին ընդօրինակված, այժմ պրոֆ. Լ. Ա. Հովհաննիսյանի անձնական գրադարանում պահվող ավետարանի 69-ամյա գրիչ Յակոբը։ Նա հայտնում է, որ «Վատեալ էր աչքս, եղի աչք, և բազում աշխատանաւք գրեցի վասն փափաքանաց սրտիս»։ (Ձեռագրի նկարագրությունը և հիշատակարանը տես ԱՑԹ, էջ 135։ Այստեղ, սակայն, տարեթիվը սխալ է հաշված, և ձեռագիրը համարված է 1453 թվականի ընդօրինակություն)։

անպակաս, ու այլ մարդոյ խաւսք ու դաւի չկա ի յայս մէջս, ոչ իմ, ոչ իմ որդւոյ ու ոչ այլ մարդոյ։ Ծախեցաւ գիրքս և գրեցաւ սակաւ գիրս ի թվ. ՊԾԱ. (1402)։

Հաստատ է գիրս կամաւն աստուծոյ։

Ես Յովանէս վարդապետս, որ զգիրս գրեցի, վկայ եմ։ Ես Կոստանդ արեղէս վկայ եմ։

Զինչ վարդապետ* գրեց իմ՝ Լիպիկիս խրերով է։**

## 26

## ԳԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔ

Ն. Ջուղա 106, Մ. Տ-Մ, Ս. Տ-Ա

ա

205ա Զմեղաւոր տէր Թումայ-Մինաս*** արքեպիսկոպոսի Մաւսլայ, Դիարբաք և զտէր դատաստանայգրոց յիշեցէք ի յաղաւթս, ի թվ. ՊԾԱ. (1402), որ եղաւ ձեռնայ[գր]ութեան տէր Թումա արքեպիսկոպոսի։

բ

35 բ Եւ զտէր գրոցս զտէր Մինաս արքեպիսկոպոսի Մաւսլայ յիշեայ։

գ

38 բ Զտէր Թումայ-Մինաս արքեպիսկոպոսի Մաւսլայ-Դիարբաքի՝ զտէր գրոցս, որ բերի ի Սիս, յիշէ յաղաւթս։

## 27

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան. 4185

Կազմող՝ Սարգիս

1 ա Զստացող սուրբ աւ[ետարա]նիս զՍարգիս մական[ուն | | | յաղաւթս յիշեցէք ի Քրիստոս | | | ծնողաւք և ազգակ[անաւք և] արեան մերձաւորաւք, աղաչ[եմ յիշել] ի տէր։ Ընդ նմին զհոգևոր եղբայրն իմ զտէր Ալէքսանոս աղաչեմ յիշել ի տէր, և դարձեալ աղաչեմ, որ զՅովանէս քահանայն, որ տղայ հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս, աղաչեմ յիշել։ Ըստ նոցին(՞) յիշմամբ արժանի առնէք զՅովաննէս կրաւնաւորն, որ բազում աշխատեալ է վասն պատճառի սուրբ | | |

Կազմեցաւ ձեռամբ | | | յիշել ի տէր։ Թվիս ՊԾԱ. (1402) էր որ կազմեցաւ, [ա՞ր]անց Իէ. (25)-ն, և Քրիստոսի փառք...։

---

* Ձեռագրում հապավված է այսպես՝ «վդ.»։

** Արաբերեն՝ «ղարար»—«հաստատել» բառից, այսինքն՝ հաստատութեամբ, համաձայնութեամբ է։

*** Պետք է ենթադրել, որ առաջին անունը (Մինաս) Թումայ աքեպիսկոպոսի անունն է՝ մինչև ձեռնադրությունը։

## 28

### ՃԱՌԸՆՏԻՐ

ՄՑՎ 206 (822), հտ. Բ. 166

Հետ. ստացող՝ Ստեփանոս

8բ Արդ, ի վերջին ժամանակիս,
Ի ՊԾԱ. Թուականիս (1402),
Զեռ[ն] ի գրելոյ յիշատակիս,
Զեռամբ անարուեստ գրչիս
Ախմար և ծոյլ Ստեփանոսիս
Եւ սուտանուն աբեղայիս։
Որ կարդալ սմա հանդիպիս
Զիս յաղաւթ քո յիշեսցես,
Քրիստոս աստուած զքեզ յիշէ, ամէն։

## 29

### ԱՒԵՏԱՐԱՆ

«Բագրեւանդ», էջ 229—30

Գրիչ՝ Գրիգոր

Գովեստ տացուք հօրն անեղին
և միածին Նորին բանին.
Բամից համայն արարողին,
հոգւոյն սրբոյ զարդարողին
Ի յախտաժէտ անձէ յետին,
որ սպասաւոր կոչիմ բանին.
Գրիգորէ անվարժ անձին,
Թմբեալ մտօք յաղտս կրկին,
Որ ետ ինձ կար տկար անձին
ու զԳիմ ու զՆուն հասոյց ի մին,
Բամեալ զբոլոր, որ ի միջին,
Գիմ առաջին և Նուն յետին.
Ինձ երանի հազար ընդ Նմին,
որ և տեսի զաւարտ սորին։
Էն է գիտակ՝ տէրն ամէնին,
որ այն գրիչն է առաջին
Որ Բէնն ե՞ան Աբրահամին
էհաս աւարտն, որ գրեալ էին,
Քառասուն և՛ երկու աւրն ամենի
տառս գրեցաւ աստուածային։*

* Աւետարանի վերջը,—գրում է հրատարակիչը,—ընդարձակ մի յիշատակարան կայ, զոր ժամանակ չեմ ունեցած օրինակել, այդ յիշատակարանին մէջ «ՊԾԱ» Թուական մը կայ։

## 30

## ԱԻԵՏԱՐԱՆ

Փիրգ. Նոտ. 18. Մուշ. Ղըզլաղաճ գիւղ

Գրիչ

Ի մեծ թուականութեան Հայոց ՊԾԱ. (1402), յայս դառնացեալ ժամանակի, ներութիւն ազգի ազգիս...։ Ո՜նամքն աստուծոյ և տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի պահեսցէ զազգս մեր, մինչև ի գալուստն միւսանգամ անսասան։ Ի կաթողիկոսութեան Հայոց տէր Կարապետի։



ՊԾԲ 1403

## 31

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆՔ ՆԻ ՔԱՐՈԶՔ ՄԱՏԹԷՈՍԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ, ԱՇԱԿԵՐՏԻ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

*Երևան 5232*

*Գրիչ՝* Թումայ Թավրիզեցի
*վայր՝* Շրվանայ երկիր, գիւղ Մատրասայ

ա

248 բ *Արդ, ես՝ վերջինս ի բնաւից և ղտրուպս ի համայնից, զԹափուրս ի բարեաց և լիացեալս ի չարեաց, ցանգացող եղէ այսմ աստուածային քառարուխ քառավըտակ սուրբ աւետարանիս, և գծագրեցի զսա մեծ երկամ[բ]ք և աշխատանօք, ի յերկիրս* Շրվանայ, *ի գեղջս որ յորջորջի վերաձայնելով* Մատրասայ, *ընդ հովանեաւ մօր լուսոյ սուրբ Աստուածածնիս, ի նեղ և ի դառն և ի յանձկացեալ ժամանակիս, զի հէնք և երկեւղ և սասանումն և դողումն Թշուառականին և նեռին կարապետին՝* Թամուրին, *որ Թարքմանի* դա մուր, *զի ուր և հասանէ մԹնատեսակ և մրրատեսակ առնէ, զոմն կողոպտելով, զոմն չարչարելով, զոմն սպանելով, զոմն գելելով, զհայր ի յորդւոյ բաժանելով և զորդի ի հօրէ, և այլն։ Եւ ոմանք պազապուրծ լինելով ի յայրս և ի ծերպս և յամրոցս և ի դղեակս, և ոչ լինէին ազատեալք, զի ոմանք ի սովոյ մեռանէին և այլք ի ցրտոյ և ի ծարաւոյ, կէսք ի յահէ և յերկեւղէ զինքեանս քարավէժ առնէին, և այլ բազում չարիս, զոր դանդաղիմ ասել առ ի չձանձրանալոյ ընԹերցողացդ։*

249 ա *Արդ, եղև գրաւ սուրբ աւետարանիս* ի Թւ. Հա[յ]ոց կրկին չորից հարիւրից և տասանց հնգից և երկուց Թուոց (1403)։ Արդ, աղաչեմ զդասքդ աշակերտելոց բանին, որք հանդիպիք այսմ աստուածային սուրբ կտակիս ընԹեռնելով կամ գաղափարելով կամ տեսանելով, յիշեսջիք ի մեղսաքօղիչ յաղօԹս ձեր զմեղուցեալ գրիչ զ*Թումայ Թավրիզեցիս, *և զհայրն իմ զ*Կոստանդ *քահանայ, և զմայրն իմ զ*Աւլու-Մէլիքն, *և զսնուցիչն իմ՝ զ*Էլմելիքն, *և զորդին իմ զ*Թէոդոս, *և զայլ ամենայն արեան մերձակայս իմ, և Քրիստոս առհասարակ զձեզ յիշեսցէ յիւրում արքայուԹիւնն, յանզրաւ կեանքն և յաներեկ աւուրն. ամ ենեցո՞ւն]ց կրկին աղաչեմ, զի խոշորուԹեան և սխալանաց անմեղադիր լինիք և ընկալջիք իբր զկրկին լումայս այրոյն առ ձերում մեծանձն[ուԹեանդ]։*

* *Գետք է գրեր «ՄեկնուԹեան սուրբ աւետարանիս»։*

Նկ. 3. Թումայ Թաւրիզեցու ինքնագիրը։

Բ

Ստացող՝ Ստեփաննոս եպիսկոպոս
վայր՝ Շամախի

56 ա Ո՛վ դասք լուսերամք... յիշեցէք յամենառատ և հոգիաբուղխ գթասիրեալ ողորմութեանդ ձերոյ զստացաւղ սուրբ գրոյս աստուածաւանդ բանիս ի տիեզերալոյս բաբունաց պետի Գրիգորի վարդապետի Մեկնութիւն սուրբ աւետարանչացս՝ զՍտեփաննոս վարդապետ զմայրաքաղաքին Թավրիզու, և զփոխեցեալն ի Քրիստոս զհայրն իմ զԲէհնամշանն, և զմայրն իմ զԱզիզ-Մալիքն, և զշնորհալի զեղբայրն իմ զՅով[հաննէս]՝ փոխեցեալն ի Քրիստոս, և զփոխեցեալն ի Քրիստոս զքորքն իմ՝ զԴունիա-Մալիքն և զԱխիրաք-Մալիքն և զայլ փոխեցեալսն ի Քրիստոս։ Զոր մերոյ հասեալ ի քարոզութիւն ի մայրաքաղաքս ի Սամախի և գտաք զտեառն մեծարեալ ոգւոյ զանկողոպտելի զգանձս և գնեցաք զսուրբ գիրքս զայս ի Շ. (500) դ[ահեկան], ի վարժումն մեզ և բազմաց լուսերամից, քանզի Գլխաւորքս իմաստասէրն հրամայէ յիւրում բանին, եթէ՝ Ճանապարհորդ ի տունս և ի հայրենիս իւրեանց փութան, իսկ իմաստունք՝ [ի] հանճար և ի իմաստութիւն, և այլ եթէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն և ընտանի յԵրուսա-

56 բ ղէմ։ Աղաչեմ և դարձեալ, կրկին, աղաչեմ զձերոյ || հեզութիւնդ, զի ի մաքրամատոյց աղաւթիւքդ ձերոյ անմոռաց յիշման արժանի առնէք զմեզ, և աստուած զձեր միոյ յիշմանն հազարապատիկ հատուսցէ աստ և ի հանդերձեալն, ամմէն։

Գրեցաւ ՊԾԴ. (1404), տրէ Ե. [5], և մարտ ԺԴ. (14)։ Եւ զիս՝ զկշտամբող դպ[իր] Թ[ու]մ[ա]՝ զծրաւղ բանիս յիշեա ի տէր։

## 32

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՄՑՎ 152 (600), հտ. Ա., 637

Ոմն հետ. ստացող

200 բ Թամուրն* որ երեկ յա[յ]ս աչեարս**, և գերեց, և բազում հարվածք արար, և գերեց և կոտորեց զհռոմաց թագաւորն, և շատք մեռ[ան] և կորան, և յանկան յա[յ]լ աշխար[հ], և մեռան։ Թվական Հայոց ՊԾԲ. (1403)։

## 33

## ՀԱՄԱՌՕՏ ՀԱՒԱՔՈՒՄՆ ՎԵՐԼՈՒԾՈՒԹԵԱՆ ՎԵՑԻՑ ՍԿԶԲԱՆՑ ԳՐՈՑ

Երևան 2382

Գրիչ՝ Գրիգոր Տաթևացի
վայր՝ Տաթև

454 ա Զստացող սորին, զտիեզերալոյս մեծ վարդապետն Հայոց Յովհաննէ[ս] Որոտնեցի, և զիս՝ սակաւ աշխատողս Գրիգոր սպասաւոր նմին, աղաչեմ զձեզ, յիշել ի տէր, ամէն։***

Թվ. ՊԾԲ. (1403) գրեցաւ վերջին գիծս, ընդ հովանեաւ սուրբ առաքելոյս միաբանից ուխտիս Տաթևոյ:

## 34

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երևան 3955

Գրիչք՝ Սիմէոն և Գալուստ
վայր՝ Տաթև

212 բ ... Գրեցաւ տառս աստուածային, որ կոչի Հարցմունք և է նոր հատորն, ի թվաբերութեան Հայոց Մեծաց ՊԾԲ. (1403) տումարի, ի

* Ձեռագրում՝ «Թամարն»։

** Իմա «աշխարհս»։

*** Հիշատակարանի այս մասը ընդօրինակված է նախագաղափար օրինակից, որը գրված պետք է լինի մինչև Որոտնեցու մահը՝ այն է 1386 թվականը։

վանս հռչակաւոր՝ յԵւստաթէի սուրբ առաքելոյս, առ ոտս քաջ հռետորի և բանիբուն վարդապետի Գրիգոր անուն հսկողի, նոտր տառիս վերծանողի։ Ի խնդրոյ սրբազան և հեզահոգի, կուսակրօն և ճշմարիտ քահանայի և խարազանազգեաց ճգնաւորի, որ է ամենայնիւ օրինակ բարեաց՝ ի պահս, յաղօթս և յարտասուս յորդահոսս, այլ և ի տուրս աղքատաց ոչ ունելով և ոչ խնայելով, զոր տէր հատուսցէ։

Արդ, սրբասէր քահանայս այս Երեմիա ցանկացաւ սմա և ետ գրել ի վայելումն անձին իւրոյ և ծնողաց իւրոց։ Եւ մեք՝ աշակերտք բանի՝ Սիմէոն սպասաւոր և Գալուստ պիտակ վարդապետ, գրեցաք զսա ի վայելումն վերոյ ասացեալ կրօնաւորի, և աղաչեմք զամենեսեան զհանդիպողսդ՝ զստացող սորա և զանպիտան գծագրողքս յիշեցէք ի յերկնաթռիչ և ի լուսաբորբոք աղաւթս ձեր և մեղաց թողութիւն հայցեցէք, և որպէս յիշէք՝ յիշեալ լինիք յամենեցունց արարչէն, ամէն։

Բ

220 ա Զմեղապարտ Վարդանս յաղաւթս յիշեա։

## 35

## ԱԴԱՄԳԻՐՔ ԱՌԱՔԵԼԻ ՍԻՒՆԵՑՒՈՅ (Ա.)

«Ադամգիրք», էջ 229—232*

Հեղինակ՝ Առաքել Սիւնեցի

Ի յութ հարիւր Հայոց թուական
Յիսուն 'ւ երկու մըտեալ նոր ամ (1403)
Խորհըրդաւոր բանըս գրեցան
Ի խրախութիւն սըրտից մարդկան։
Զձեզ աղաչեմ սուրբ ընթերցողք
Եւ աննախանձ օրինակողք,
Հայրն իմ Դաւիթ յիշէք մըտօք,
Ի սուրբ յաղօթս ձեր արտասուօք։
Այլ և ըզմայրն իմ ըզՄելիք
Եւ զՄարիամ հանն** իմ բարիք,
Ըզննջեցեալսն և զկենդանիք
Յիշէք յաղօթս ձեր նազելիք։
Այլ և զեղբայրն իմ ըզԲարսեղ՝

* Առ. Սյունեցու «Ադամգրքի» բոլոր երեք վարիանտները՝ իրենց հիշատակարաններով հանդերձ, պահպանվել են նաև Պետական Մատենադարանի ձեռագրերում (օր. №№ 1, 83, 8689 և այլն)։ Հիշատակարանները մեջ ենք բերում Մ. Պոտուրյանի հրատարակած բնագրից, նկատի ունենալով, որ այն կազմված է 10 ձեռագրերի համեմատությամբ։ Երբեմն միայն օգտագործում ենք նաև Երևանի № 1 և, հատկապես, № 83 ձեռագրերի ընթերցվածքները։ Տարընթերցվածքներից ցույց ենք տալիս միայն նրանք, որոնք իմաստային նոր երանգ են տալիս բնագրին։

** Որոշ ձեռագրերում՝ «հարսն»։

Սուրբ քահանայ և հանճարեղ,
Զի վաղճանեալ էր նա անմեղ,
Ցիշէք յաղօթս ձեր արտասուեղ։*
Զմեծ վարդապետն իմ դասասաց՝
Գրիգոր անուն՝ պատճառ բարեաց
Ցիշէք յաղօթս ձեր առ աստուած
Ազգօք 'ւ արեամբ մերձաւորաց,
Պայծառամիտ և հանճարեղ,
Պահող, հըսկող և արտասուեղ,
Հոգով մաքուր, բնութեամբ անմեղ,
Մեծ հռետորըն բանիւ համեղ։
Իանս յարմարեաց հանճարագոյնս
Քըննեալ զբոլոր էից մասունս
Գիրք քսանուվեց** որպէս ծաղկունս,
Եկեղեցւոյ եդեալ ակունս։
Զկաթողիկոս Հայոց ազգիս՝
Զտէր Կարապետ օրհնող հողիս,
Ցիշէք յաղօթըս ձեր բարիս
Եւ ընդ նըմին զԹըշուառ հոգի[ս]։
Այլ և իշխանըն մեծ՝ Սըմբատ,
ԶԲիւրթէլ՝ եղբայրըն իւր հարազատ,
Զաւակք նոցա ծնընդեամբ արատ,***
Ցազգէս Հայոց լինել անհատ։
Զոր յիշեդաք առհասարակ
Ցիշէք և դուք մտօք յըստակ
Պահել զնոսա հոգով սպիտակ
Կալ**** զանԹառամ փառաց պըսակ...։
Ի ղանութեանըս***** Թամուրի,
Որ նա տիրէր****** շատ աշխարհի
Տեառն ձեռին բաժակ ոսկի,*******
Սըբուցանէ ում և կամի։********
Անդամլուծ էր և տկար,
Զօրք ունէր ութ հարիւր հազար,
Զաշխարհս էառ հզօրաբար,
Ոչ ոք նըմա ընդդիմայր։

---

* Այս քառյակը տպագրված է Նախորդ (մոր մասին) քառյակից առաջ։ Դասավորությունը փոխում ենք Երևանի № 1 ձեռագրի հիման վրա։

** Որոշ ձեռագրերում՝ «քսանուչորս»։

*** Տպված է՝ «արագ»։

**** №№ 1 և 83 ձեռագրերում՝ «Տալ»։

***** Որոշ ձեռագրերում՝ «Իշխանութեանս»։

****** Որոշ ձեռագրերում՝ «աիրեաց»։

******* Ըստ երևույթին վրիպակով տպված է «իսկի», ուղղում ենք № 1 ձեռագրի հի-ման վրա։

******** Շարունակությունը բերվում է հիմնականում ըստ № 83 ձեռագրի։

Բազում երկիր առ յաւարի
Ու ի Սըմբըղանտ տարաւ գերի,
Ցոլովք մընացին յաշխարհ հեռի
Եւ ոչ տեսին տուն հայրենի։
Ոստնաւորքս այս մին մին տուն*
Հազար ու երկու հարիւր է նոյն,**
Որ ընթեռնուն մըտօք ըզսոյն
Գտանէ շատ բանս պիտանագոյն։
Օրհնեմք հոգով զաստուած հոգին,
Գովեմք մըտօք զհայրն անքըննին,
Բարեբանեմք մարմնով զորդին,
Որ ազատեաց ազգօք զնախնին։
Ունի խորհուրդ սա զանազան,
Որ ի գըրոց սըրբոց առան,
Զընթերցողին միտքըն բանան,
Տալ իմանալ զոր ի սմա կան։
Բայց ըստ ճառից է սա նոր բան,
Որ յայլ ուրեք չերևենան.
Սա կերակուր մըտաց մարդկան,
Ծաշակողաց ըզհամըն տան։***
Որք բաղձանօք ըզսա կարդան
Ըզլըսելիս հոգոյն բանան,
Այլ և մըտաց ըզլոյսըն տան,
Քըննել զխորինս որ ի սմա կան։
Բայց թէ լցէ ոք ձանձրամիտ,
Պարսաւադէտ բանից անկիրթ,
Նա ոչ առնու զճաշակ բանիդ,
Այլ մեղադրէ բանից կարգիդ։
Բայց որ կարդայ զսա աննախանձ,
Գըտցէ իմաստք պայծառասքանչ,
Փայլմունքս, որ կայ ի սմա թափած,****
Ոչ է յինէն, այլ ի բարձանց։
Ես որդն և հող եմ և փոշի,
՚Ի արհամարհանք***** ամենայնի.
Բայց օրհնութիւն տեառըն շնորհի,
Որ ի տըկարըս ներգործի։
Թէ ոք ունի բան ինչ ոսկի
Ոչ անարգէ զնիւթն արծաթի,
Զի երկոքեանն են պիտանի,

* Կա վարիանտ՝ «միագոյն»։

** № 83 ունի՝ «Առաջին հատորս առ մէն մին տուն, հազար ու երեք հարիւր ութսուն»։ Այլ ձեռագրեր ունեն՝ «Հազար հարիւր է և ութսուն», իսկ մի ձեռագիր՝ «1203»։

*** № 83— «Ճաշակողացն քաղցր համըս տան»։

**** № 83 —«թափանց»։

***** Մի ձեռագրում՝ «Նախատինք»։

Առ իւրաքանչիւր պատշաճի։
Ոտանաւորքս վասն այն գրեցի,
Զի դիւրահաճ մարդկան լիցի,
Թէպէտ շատ բան կան աշխարհի,
Այս հաճելի ըստ Ներսէսի։
Դիրս այս գրեցաւ ի վեհից խնդրոյ
Յանարժանէս Առաքելոյ,
Ընտրեալ սուրբ ուխտըս Տաթևոյ,
Յաթոռ Սիւնեաց հռչակելոյ։
Որ ախորժակ ունի ի բաց
Առցէ զբանըս նորիմաց,
Որոճասցէ ծասկմամբ մտաց,
Ունի ճաշակ հոգոց բազմաց։
Միտքն․էը որպէս ըզճանճ մեղվի,
Որ ի ծաղկունս շըրջագայի,
Առնուլ ըզնիւթըս հնարի
Նըրբատեսակ հիանալի։
Զի ի ծաղկանց ըրղխին բարի
Գոյնք և բուրմունքըն ցանկալի,
Դեղք հիւանդաց ու խարխախ մեղուի
Ներկ և անգոց ազդմունք յայտնի։

36

### ԱԴԱՄԳԻՐՔ ԱՌԱՔԵԼԻ ՍԻՒՆԵՑԻՈՅ (Բ.)

«Ադամգիրք», էջ 270—272

Հեղինակ՝ Առաքել Սիւնեցի

Վասն յիշատակարանի գրոցս[*]

Հասեալ յաւարտ բանիս օրհնեսցուք ըզտէր,
Ուստի բանքս ըսկըսաւ՝ անդ և աւարտէր.
Պատմի Ադամ 'ւ Եւա և որ ինչ անցքն էր,[**]
Եւ այլ ծածկեալ խորհուրդ, որ հանդերձեալն էր։
Առէք զխորհուրդս ի միտ, եզբայրք բանասէր,
Իմաստք որ է ի սմա յայլ ուրէք ոչ կէր.
Բանքս այս ոչ է[***] յինէն, այլ ի բաղձմանց էր,
Զի սէր տնաւրէնութեանն զմիտըս վառեալ էր.
Բայց ոչ յերկարեցի զի[****] ձանձրանալ տէր,[*****]

[*] Հրատարակված է 3 ձեռագրերի բաղդատությամբ, օգտագործել ենք նաև Երևանի №№ 1 և 83 ձեռագրերի ընագրերը։
[**] № 83—«[յ]անցանքն էր»։
[***] Երեք ձեռագրերում—«Թէ»։
[****] № 83—«զի մի»։
[*****] Այսինքն՝ «տայր»։

Այսքան բանասիրացըդ բաւական էր։
Գրեցի զոտանաւորքս ոչ գինչ պատճաշն էր,
Զի ես՝ տէր Առաքեալ միտըս ցընդեալ էր.*
Ի յայս ժամանակիս սուլթան Թամուրն էր.
Թվականս մեր ութհարիւր ՚ւ յիսուն երկու էր.**
Բարեմիտ ընթերցողք յիշեցէք առ տէր
Զեղբայրն իմ ըզԽաչատուր՝ սուրբ քահանայ էր.
Ըզհայրն իմ ըզԴաւիթ, և զՄելիք՝ իմ մէր.
Արեամբ մերձաւորաւք յիշեցէք առ տէր,
Զիմ մեծ բարունապետն՝ յոյժ իմաստասէր,
ԶԳրիգոր մեծ ճըգնազգեաց աղերսէք առ տէր։
Զդիտող Հայաստանեայց, հոգւով սըրբասէր,
Զընտրեալ տէր Կարապետ շնորհազարդէ տէր.
Զմանկունս եկեղեցոյ, որ ի ներկայս էր,
Զանցեալն և զապառնիսն միշտ յիշեսցէ տէր։
Ով ընտրեալ քահանայք՝ մաօք բանասէր,
Զնուաստ տէր Առաքեալ դուք յիշէք առ տէր.
Զյիշողդ մեր առ աստուած գըթով սըրբասէր
Ցաւուրն այցելութեան պըսակեսցէ տէր։
Զծաղկունս պէս պէս լուսոյ, որ աստ յիշած էր՝
Նոցին պըճնեալ գունով զձեզ ծաղկեսցէ տէր,
Զիշխանըն մեծ Սըմբատ և զպարոն Բուրթէլ,
Ազգաւք և զաւակաւք ծաղկեցուսցէ տէր։***
Զհերձուածք չարին, որ յայս ժամանակիս էր****
Ի Սիւնեաց վիճակէս փարատեսցէ տէր...։
Երեք հարիւր ու քսան***** տունքս, որ ի սմա կէր,
Այս ձեզ ի յընթերցումն և ինձ յիշման մ'էլ,
Հանուըց զմէր նընջեցեալսն և զյիշողացդ էլ,
Մեծի հարսնարանին ծաղկազարդէ տէր,
Փառաց և յարութեան և պըսակաց մ'էլ

* Այս երկու տողը № 83 ձեռագրում փոխված է այսպես.
«Գրեցի զոտանաւորքս որ գինչ պատշաճն էր
Զի բանքս հոգով լցեալ ընտրեալ աբանցն էր»։
** № 83—«Երեք էր»։
*** № 83 ձեռագրում կա նաև հետևյալ երկտողը.
«Նընջեաց իւր զաւակօք և պարոնն Բիւրթէլ.
Զպարոն Սըմբատ՝ որդովքն պահպանեսցէ տէր»։
**** Երկու ձեռագիր ունեն «կէր» փխ. «էր»։ № 83 ձեռագրում տողն այսպես է.
«Զհերձուած Ֆըռանգաց, որ այսմ ժամանակիս էր»։
***** № 83-ում «ութսուն»։

## 37

## ԱՒԵՏԱՐԱՆ

«Թորոս Աղբար», Ա. էջ 65—67, Ամասիոյ ս. Աստուածածին եկեղեցի

Կազմող՝ Սէթ
վայր՝ Խայիք

ա

Յիշեցէք զՍէթ սուտանուն աբեղայս, որ զսուրբ աւետարանս կազմեցի, Յիշեցէք զՀնազանդ անուն հաւատարիմ կին, որ գնեց և կապել երետ...։ ՊԾԲ. (1403) քակեցին զեկեղեցիքն յՏգՏկանՏ և ի Խայիքն: Հազար վայ մեղաւորիս։

բ

... Որոց փափագող եղեալ յուսոյ գալստեան աստուածորդւոյն կին ոՊն աստուածասէր՝ անուն նորա Հնազանդ, և որդւոյն իւրոյ Տիրտուր, և գնեաց զսուրբ աւետարանս զայս յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց, հաւրն իւրոյ Սէթին, և մաւր իւրոյ Գուհար-խաթունին, և քուրոջն իւր Մարիամթագին, և հաւրեղբաւր իւրոյ Զաքարին, և խազարին: Ի թվին Հայոց ՊԾԳ. (1404) գնեաց և ետ յիշատակ ի Խայիքն:

գ

Ես՝ Հնազանդս գնեցի զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց իմոց և տուի Գրիգոր երիցու՝ որդւոյ Խաղաղութեայ, որ այլ մարդ իշխանութիւն չունենայ ի վերայ սուրբ աւետարանիս, ոչ ազգ, ոչ որդի և ոչ գեղխտիքս, թէ կենայ, թէ գնայ՝ և Գրիգոր երէց ինքն պահէ. ոչ ծախէ, ոչ պտհէ, այլ կարդայ հանապազ։ Եւ ով առնու և կարդայ՝ խնամով պահէ, և զՍէթ աբեղան յիշէ՝ զկազմողս։

## 38

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3985

Գերութիւնից ազատող՝ Գրիգոր
վայր՝ Ղրիմ

291 ա Ես Գրիգոր երէցս շնորհեցի վասն սուրբ աւետարանիս ոսկի մատանի մի՝ փերուժա ակամբ, և դաստըռճա մի՝ Նիկօղոսին, վասն զի ինքն ստացեալ էր զսա յայլազգեաց ի Խ. (40) դր[ամ]. և կառուցի ի վերայ սուրբ աւետարանիս արծաթի խաչ, և նոր զարդարեցի և եդի ի վանքն սուրբ Լուսաւորչին ի բարեխօսութիւն և ի յիշատակ մեզ և ամենայն երախտաւորաց մերոց և ամենայն զարմից։ Եւ մի ոք հանցէ զսա ի վանիցս, իբրև տիրելով ի խաղաղութեան ժամանակի, զի մի պատժեսցի յաստուծոյ։

Տէր աստուած... ողորմեա վերջին ստացողաց սորա Գրիգորի

անարժանի, և Թորոսանց քահանայիցն, և Նիկօղոսին, և ծնաւղացն իւրոց՝ պարոն Յովանէսին, և պարկեշտ ամուսնոյն իւրոյ փոխեցելոցն ի Քրիստոս, և Հազարշին, և ծնողացն իւրոց, և ամենայն զարմից իւրոց, որք ստացան զսա ի հալալ վաստակոց իւրեանց, զի անկեալ էր ի ձեռս այլազգեաց, զի գերել էին զվանքերն ի ժամանակս Ջեկիրին: .

Եւ դուք մանկունք սուրբ եկեղեցւոյ, յորժամ ընթեռնոյք զսուրբ աւետարանս և զյիշատակարանս՝ թողութիւն խնդրեցէք յաստուծոյ ստացողաց սոցա, զի և ձեզ պարգևեսցէ մարդասէրն աստուած թողութիւն մեղաց, վասն զի առատ է ի տուրս պարգևաց, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Ի թվ. Հայոց ՊԾԱ. (1402), ի մայիս ԺԹ. (19) եղև գալ Ջեկիրին ի Ղրիմն:

Գիրս գրեցաւ ի թվ. ՊԾԲ. (1403), յունիս Լ. (30),

39

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4923

Գրիչ՝ Դանիէլ
վայր՝ Աղթամար

261 ա Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս յաստուածաբնակ կղզիս Աղթամար,
ընդ հովանեաւ սուրբ Խաչիս, ի հայրապետութեան տէր Դաւթի, ի
թուականիս Հայոց ՊԾԲ. (1403), ձեռամբ Դանիէլի առաջին Բ. գլուխն
գրեցաւ և Բ. գլուխս ձեռամբ հաւրն իմում Կարապետ քահանայի. և
իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բազում մեղաց ցնո-
րիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մար-
261 բ դասէր հոգին || բազում աշխատանաւք գրեցաք զսա անարժան ձեռաւք
մերովք ի ստոյգ և յընտիր աւրինակէ, կենաւք տառապանաւք և բա-
զում պանդխտութեամբ։

Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենա-
լի սեղանոյս, որք պատահիք սմա տեսանելով, կամ կարդալով,
կամ աւրինակելով, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացող
սուրբ աւետարանիս զՄխիթար քահանա, և զծնաւղքն՝ զՆանապետն և
զՋօշտիկինն, և զեղբայրն զԱմենատէն, զհաւրեղբարքն զՂազար և
զԿարապետ, և զքոյրքն իւր զՇայմէլիք և զԱյմէլիք, և զհաւրքոյրն
Սիրայ, և զՂիմաթ, և զորդին զՅովանէս, և զվայելող սուրբ աւետարա-
նիս զԿարապետ սարկաւագ, և զազգն ամենայն առհասարակ՝ զկեն-
դանիս և զհանգուցեալս, և լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած-
ողորմի ասացէք և աստուած զձեզ յիշէ յորքայութեան իւրում։ Ընդ
նոսին և զիս՝ զԴանիէլ գրիչս, և զհայրն իմ զԿարապետ քահանայ, և
զմայրն իմ զԴուռմէլիք, և զեղբայրն իմ զԹումա սարկաւագ, որ աշ-
262 ա խատեցաւ ի կոկել թղթիս, և զքոյրքն իմ, և զամենայն արեան ||
մերձաւորսն՝ զկենդանիս և զհանգուցեալսն։ Դարձեալ, զվարդապետն

իմ և զհոգևոր հայրն և ըստ մարմնոյ հաւրեղբայրն զՋաքարայ փիլիսոփայն, որ բազում աշխատեցաւ ի ծաղկել զսուրբ աւետարանս, և զամենայն ազգակիցս մեր, և զայնոսիկ, որ աշխատել են ի վերայ մեզ խրատ տալով և այլ ամենայն բանիւ։ Բայց խոշորութեան և սզալանաց գրիս անմեղադիր լերուք, զի կար մեր այս է, և տեառն փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## 40

### ՈՍԿԵՓՈՐԻԿ

Հ. Ոսկեան, Մայր Ցուցակ Վիեննայի Մխիթ. մատ. Բ հտ. (անտիպ), էջ 247, ՀԱ, 1939, սյուն. 161

Գրիչ՝ Աստուածատրիկ
վայր՝ Անձնապատի վանք

Ծծագրեցաւ սուրբ մատեանս ի թվականութեանս հայոց ՊԾԲ. (1403), ի ցանկալի յանապատիս [Անձնապատիս],* որ ի յըռամկաց բառից | | | ընդ հովանեաւ աստուածընկալ սուրբ Նշանիս, ի դուռն սուրբ մաւրն լուսոյ և այլ սուրբ եկեղեցեաց, ի հայրապետութեան Կիրակոսի....

Յորժամ կարդայք զՈսկեփորիկս,
Դուք յիշեցէք զԱստուածատրիկս,
Որ գրեցի զսուրբ գանձիկս
Հրամանաւ իմ վարդապետիս,
Ի տղայութեան ժամտնակիս,
Ի դուռն սուրբ Աստուածածնիս,
Ի վանքս մեծ Անձնապատիս,
Ընդ հովանեաւ սուրբ Նշանիս....

## 41

### ԱՒԵՏԱՐԱՆ

Ալիշան, Հայկարան

Գրիչ
վայր՝ Մգունք գիւղ

Ի թվ. ՊԾԲ. (1403), ի պարոնութեան Ամիր-Աբդալին, և ի հայրապետութեան Կոստանդնուպօլսոյ արհիեպիսկոպոսի տէր Զաքարիայի, ի գիւղն Մգունք, ընդ հովանեաւ սուրբ Առաքելոցն, առ ոտս սուրբ Ստեփանոսի։

* Ջնջված է։



**ՊԾԳ** **1404**

## 42

### Ք Ա Ր Ո Զ Գ Ի Ր Ք

*Գ. Հովսեփյան, «Գաւիթ փիլիսոփայ», «Արարատ», 1916 թ. էջ 906*

Հեղինակ՝ Յակոբ Ղրիմեցի

*Զմեղուցեալ գրիչս զՅակոբ մեղուցեալ միայնակեացս Ղրիմեցի՝ զսիրողս միայն բանի և յիրէնմին հեռի, աղաչեմ յիշել ի տէր աստուած՝ ողորմի ասելով մեղուցեալ հոգոյս, և տէր զձեզ յիշեսցէ յողորմութիւնն իւր, ամէն։ Ի թվիս ՊԾԳ. (1404) գրեցի զայս սակաւ հարցմունքս՝ յետոյ քան զգրել գրոցս։*

## 43

### ՏԱՂ ՏԷՐ ԱՌԱՔԵԼՈՑ ՈՐՈՏՆԵՑՈՑ ՎԱՍՆ ԱՒԵՏԵԱՑ

*Երևան 5951**

Հեղինակ՝ Առաքել

56 բ ... *ԸԶձեզ աղաչեմ սիրով*
*Ես՝ տէր* Առաքելս *յուսով,*
*Յիշէք զիս յաղաւթս հոգով,*
*Ո՛վ սուրբ ընթերցողք յոլով։*
*Ի թվական Հայոց ազգիս*
*Ութ հարիւր հիսուն 'ւ երիս (1404)*
*Բանս այս կարգեցաւ ի գրի*
*Ի յաւուր* Թամուր *զանիս։*

## 44

### Տ Օ Ն Ա Կ Ա Ն

*Փիրզ. նոտ. 21—22*

Գրիչ՝ Ստեփաննոս
Վայր՝ Տշող գիւղ

... *Տեսեալ զայս ամենայն վայելչութիւն հրաշից երիցս երանեալ հարազատ եղբարքն* Յովհաննէս *կրօնաւորն և* Եզեկիէլ *և* Սիոն *քա-*

** Ձեռագիրը Գանձարան է, հիշատակագրությունը վերաբերում է միայն Առաքելի տաղերին։*

*հանայ, և բորբոքեալ ի սէրն աստուծոյ ցանկացան այսմ աստուածային գրոցս, որ կոչի Տօնական....*

*Եւ արդ, ես ամենամեղ և անարժան ծառայ ծառայիցն աստուծոյ* Ստեփաննոս *անարհեստ գրիչ, որպէս ծառայ հրաման առեալ ի տեառնէ, զի յայսմ ամս, յորում զսա գրէաք՝ հայրն մեր փոխեցաւ առ Քրիստոս աստուած, քանզի եղև մահտարաժամ սաստիկ ի վերայ երկրի, և ոչ աւարտեցաւ սուրբ գիրքս։ Եւ ես յանձն առի տկար անձամբ... բազում և մեծ աշխատանօք հասուցաք զսա յաւարտումն ի նոյն գեաւղս որ* Տշող *կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Ստեփաննոսի նախավկայիս, և սուրբ Սիոնիս, և սուրբ Կիրակոսիս, ի թուականիս Հայոց ՊԾԳ. (1404), ի հայրապետութեան տէր* Դաւթի *և ի բռնակալութեան աշխարհիս* Թամուր *ղանի...։ Նաև զանարժան գրիչս զ*Ստեփաննոս, *և զծնողքն մեր զ*Գրիգոր *քահանայ, որ տարաժամ փոխեցաւ առ Քրիստոս, և սուգ անմխիթար եթող ի վերայ մեր... և զեղբարքս մեր զ*Քոչբէկ *և զ*Առաքել՝ *պատուական սարկաւագունքս, որ աշխատեցան ի կոկել թղթիս, տացէ սոցա տէր վարձս ըստ վաստակոց, և զհօրեղբայրն մեր զ*Մարտիրոս *կրօնաւորն, որ ... մարտիրոսացաւ**

## 45

## ՃԱՌԸՆՏԻՐ

*Երևան 5334*

Գրիչ՝ Ստեփանոս

ա

117 բ ....*Ողորմեսցի սորին ստացողի* Թումաշան *դարբնի, և իւր ծնողի՝* Աստուածատրոյ *և* Շամշա-խաթունին, *և կենակցին* Թագուհուն, *և զաւակաց նոցին* Առաքելին *և* Մկըր[ա]չին, *և* Առաքել *վանից հաւրն,* [*և զհայր նորա զ*խաչատուրն]**, *և միւս* Առաքելին, *որ յայս ամս առ աստուած փոխեցաւ, և* Սիմէոնին, *և կենակցին* Ազըզին, *և տղային իւրեանց* Աստուածատրուն, *և ամենայն ազգայնոցն։ Ընդ նոսին և զ*Ստեփանոս *մեղաւոր գրչի,**** *և իմոցն ամենայնի՝ կարդացողաց և լսողաց։*

բ

186 ա ... *Ողորմի Քրիստոս աստուած ստացողի գրոցս* Թումա՛շան *դարբնին, և ծնողացն՝* Աստուածատրուն *և* Շամշա-խաթունին, *և կողակցին* Թագուհուն, *և զաւակացն* Առաքելին *և* Մկր[տ]չին, *և փոխեցելոցն*

* *Ամենայն հավանականությամբ այս Մարտիրոս կրոնավորի մասին է Երևանի № 5597 ձեռագրի 258բ էջի հիշատակագրությունը. «Յայսմ [տե՞ղ]ոյս Մարտիրոս կր[աւ-նաւորն] բազում չարչարանօք մարտիրոս եղև ի ՊԵ. (1356) թվականին»։*

** *Ուղղագիծ փակագծերի մեջ բերված է 179ա էջի հիշատակագրության տվյալը։*

*** *Հավանաբար նախորդ հիշատակարանի գրիչ Ստեփաննոսն է։ Այս ընդունելի ենթադրությամբ էլ անթվական այս հիշատակարանը տեղադրում ենք նրան առընթեր՝ 1407-ի թվաշարքում։*

տռ Քրիստոս, և Դեղկանց Ստեփաննոսին, և Շնոռհորին, և մեղաւոր Ստեփաննոս գրչի, և հոգևոր հարցն իմոց Յոհաննէս ճգնաւորին, [և Կարապետ կրօնաւորին],* և Յակոբ կրօնաւորին, և կարդացողաց և լսողաց, ամէն։

Գ

396 բ ...Ընդ նոսին և ինձ՝ մեղաւոր Ստեփաննոս գրչի, և իմ ծնողացն՝ Գրիգոր քահանայի և Խութլու-Մելիքի, և հայրազատ եղբարցն Յոհաննէս քահանայի և Առաքել քահանայի և Թումա քահանայի, որ տղա հասակաւ յաստուած փոխեցան, և ամենայն ազգայնոցն, կարդացողաց և լսողաց, ամէն։**

46

ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 4802

Գրիչ՝ Ստեփաննոս
ա
Վայր՝ Տշող գիւղ

572 բ ...Ինքն Քրիստոս աստուած, որ տէրն է փառաց և տուող ողորմութեան, շնորհեսցէ զխաղաղութիւն և զողորմութիւն իւր ամենայն աշխարհի, տացէ աշխարհակալաց սէրտ քաղցրութեան ի վերա ամենայն քրիստոնէից, եկեղեցեաց զանշարժ հաստատութիւն, այլև հայրապետաց ընդ ամենայն տիեզերս ուղղափառ վերադիտողութիւն, վարդապետաց՝ արիութիւն, կրօնաւորաց՝ վորս առաքինութեան, քահանայից՝ սրբութիւն, թագաւորաց հաւատացելոց՝ յաղթութիւն ընդդէմ թշնամեաց խաչին Քրիստոսի, իշխանաց՝ հանդարտութիւն, տանց՝ շինութիւն, տղայոց՝ պահպանութիւն, արանց և կանանց՝ աւրինապահութիւն, ճանապարհորդելոց, որք ի ծովու և ի ցամաքի՝ դարձ խաղաղութեամբ, բուսոց և տնկոց և սերմանց՝ անփաս աճումն շայեկանութեամբ, աւգոց՝ քաղցրութիւն, անձրևաց՝ առատութիւն, անասնոց՝ աճումն, մեղաւորաց՝ դարձ յապաշխարութիւն։

Այլ և բարէխաւսութեամբ ամենայն սրբոց, մարգարէից, մարտիրոսաց և բարէխաւսութեամբ սուրբ Աստուածածնին՝ մեղաց թողութիւն խնդրեցէք յաստուծոյ ստացողաց գրոցս՝ Ղազար քահանային և Ստեփաննոս կրօնաւորին, որ ետուն զսա գրել ի հալալ վաստակոց իւ-

* Ուղղագիծ փակագծերի մեջ բերված հատվածը քաղել ենք 162բ էջի հիշատակագրությունից։

** Համանման և ավելի համառոտ հիշատակագրություններ կան համարյա բոլոր ճառերի վերջում։ Գլխավոր հիշատակարանից պահպանվել է միայն սկզբի մեկ էջը, ուր մանրամասնորեն խոսվում է ձեռագրի բովանդակության մասին («Որ է վորք և պատմութիւն աստուածազանից և հոգիընկալ արանց...» և այլն, և այլն), և ապա հայտնվում է, որ ձեռագիրն ընդօրինակվել է «ի խնդրոյ աստուածասէր և հաւատարիմ տանուտէրոջն Թումասաճին»։

րեանց, յիշատակ բարի հոգոց իւրեանց և ծնաւղաց նոցին՝ հաւրն Յովանիսին, և մաւրն Սարաւթաին, և եղբաւրն իւրոյ Խնգուբէկին՝ փոխեցելոյն. ի Քրիստոս, և դեռաբոյս զաւակացն Յովանիսի և Կարապետի, և կենակցին իւրոյ Իմշա-Խաթունի, և Թումայ սարկաւագին, և եղբաւրն իւրոյ Վէգէնին: Ընդ նոսին և Ստեփանոս քահանային, և ծնաւղաց նորին Թումային և Շնունորին, և Մկրտիչ կրաւնաւորին, և կենակցին իւրոյ Ազիզ-Մէլէքին, և ամենայն ազգականացն՝ կենդանեացն և հանգուցելոցն, ամէն։ Եւ ինձ՝ մեղաւոր գրչի Ստեփանոս սարկաւագի, և իմ ծնողացն Գրիգոր քահանայի, և կարդացողաց և լսողաց, և Քրիստոսի փառք յաւ[իտեան]։

Բ

Ստացողք սուրբ գրոյս զպատուական քահանայք զՂազար և զՍտեփաննոս կրօնաւորն և զծնողսն նոցա...։ Ընդ նոսին և զիս՝ զմեղաւոր Ստեփաննոս գրիչս, և զծնողսն մեր զԳրիգոր քահանայ, որ տղայ հասակաւ առ աստուած փոխեցաւ և մեզ սուգ և կսկիծ եթող,* քանզի մահ սաստիկ էր ի վերայ երկրի, որ կոտորէր զամենայն առ հասարակ և զաղխս ծնողացն գալարեցուցանէր, և զաւակացն՝ ի վերայ հարցն և մարցն խարշէր առաւել, այլ Աստուածածին մխիթար և բարեխօս լիցի ամենայն սգաւորաց և ննջեցելոց...։

Եւ ինձ՝ մեղապարտ Ստեփաննոս գրչի, և իմ ծնողացն Գրիգոր քահանային, որ առ աստուած փոխեցաւ, և Խաթուն-Մէլէքի՝ մօրն իմոյ, և եղբօրն իմոյ Առաքելի, որ աշխատեցաւ ի կոկել թղթիս, և երկուց վկայիցն, որք մարտիրոսացան ... Մելքիսեդի և Կարապետի** ... և քեզ փառք յաւիտեանս։

## 47

## ԱԽԵՏԱՐԱՆ

Երևան 5727

Գրիչ՝ Ստեփաննոս.
Վայր՝ Հիզան.

ա

298բ ...Ուստի և տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ, բարի արմատոց շառաւիղն, ողջախոհ և կուսակրաւն քահանայն Մովսէս, և հայր վանիցն, որ կոչի Խնձուրուտի վանք, զոր ի վաղուց հետէ ցանկայր այսմ աստուածախաւս սուրբ աւետարանիս, և ետ գրել զսա յիշատակ... հոգւոյ իւրոյ և ծնողացն իւրոց...։

* Ստեփաննոս գրչի հայր Գրիգոր քահանան մեռել է 1404 թվականի մահտարաժամի ժամանակ (տես նախորդ հիշատակարանը). ուստի այս ձեռագիրը գրված պետք է լինի նույն 1404 թ. կամ հաջորդ մի քանի տարիների ընթացքում։

Այս մասին ձեռագրի լուսանցքներում և 345 դատարկ թերթի վրա նշումներ է արել Ղ. Փիրղալեմյանը 1883 թվականին։ Այդ ժամանակ ձեռագիրը գտնվել է Վանում։

** Փիրղալեմյանի ծանոթագրության համաձայն սրանց նահատակությունը եղել է. ՊԾԲ. (1403) ամի, ի Ժ.(10) յուլիսի։

297ա ... Այլ և գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Ստեփաննոս սուտա-
նուն քահանայի՝ անիմաստ և տխմար գրչի։ Եւ իմ՝ անընդունակ գո-
լով յարուեստ գրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ,
297բ այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէրն Ո || գին, բա-
զում աշխատասիրեալ իմ ի սմա գրեցի անարժան ձեռաւք իմովք՝
յընտիր և ի ստոյգ աւրինակէ, կենաւք տառապանաւք և բազում պան-
դըխտութեամբ, ի մեծ Թուրս, ի յեղանակոն շրջագայութեան արե-
գական ստորիջիւք երկնաչու ճանապարհաւ յերկնից յերկիր հայելով,
ըստ արքրչութեանցն չափեալ՝ յելանելոյն Ադամայ ի դրախտէն ՋՌ.
և ՋԾ. և Է. (6607) ամ, ըստ եւթանասնիցն, որում մեք վարիմք։ Եւ
է ի մարդեղութենէ բանին աստուծոյ; անժամանակ էին և փրկչին
Յիսուսի Քրիստոսի | | | ՌՅԼԵ (1335°), իսկ ըստ Թուի խոսրովային
Յաբեթեանս տումարի՝ ՊԾԳ.(1404), ի կաթողիկոսութեանն հայկազանց
սեռի՝ տեառն Կարապետի Կիլիկեցոյ, և ի մերոյ հայրապետութեանս
տեառն Դաւթի Ախթամարեցոյ, զոր տէր աստուած պահեսցէ անսասա-
նելի զաթոռ հայրապետական և զթագաւորական, զի յիշել զանուանս
նոցա սասանել սաքրին և ոչ ևս երբէն Թշնամիք ճշմարտութեանն։
Եւ գրեցաւ սուրբ աւետարանս ի քաղաքիս Հիզանն, ընդ հովա[նեաւ]
| | | և սուրբ զաւրա[վոր]ացս Սարգսի և Գէորգեայ, ի վայելու[մն]
298ա հաւատարիմ և պա[տու]էլի քահանային Մովսէսի | | | եցեալ։
Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի
սեղանոյս յիշեսջիք ի Քրիստոս զՄովսէս քահանայ և | | | իւր զՍտե-
փաննոս | | |
... Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ աստուա-
ծախաւս տառիս, յիշեսջիք ի սուրբ յաղօթս ձեր զիս՝ զանարժան դրի-
չըս՝ զՍտեփաննոս, և զհայրն իմ զՄելքեսէթ, որ յայսմ ամի փոխեցաւ
առ Քրիստոս և սուգ անմխիթար տուաւ ինձ, և զմայրն իմ զՏիրանց,
և զամենայն արեան մերձաւորսն մեր, աղաչեմ կողկողագին պաղա-
տանօք յիշման արժանի առնել...։

Բ

Ծաղկող՝ Յովանէս

2ա Զանպիտան ծաղկող և զսուտանուն զՅովանէս յիշեցէք ի Քրիստոս
| | | սրտիք և աստուած-ողորմի ասացէք, զի յոյժ տրտում եմ վ[ասն]
մեղաց իմոց և դառն ժամանակի և ձմերանի [կատարե]ցաւ սայ և
անկիրթ էի մագաղաթի | | | ը]նդ սմայ, որ իբրև զըպարկ կու | | |
զմազկտուցն խանգարէ, անմեղադիր [լերուք | | | աղաչեմ և յիշեցէք
ի սուրբ [աղաւթս ձեր] զիս՝ զանարժանս և զծնողս [իմ]։

## 48

## ՄԱՇՏՈՑ

*Երևան 4787, «Թորոս Աղբար», Բ, էջ 276—277*

Գրիչ՝ Դանիէլ
վայր՝ Աղթամար

ա

... *Աւարտեցաւ սուրբ գիրքս այս մաշտոց յընտիր աւրինակէ, ի կղզիս* Աղթամար, *ընդ հովանեաւ սուրբ Խաչիս, ի հայրապետութեան տեառն* Դաւթի, *և ի թուականիս Հայոց* ՊԾԳ. *(1404), ի դառն ժամանակիս։ Արդ, ցանկացող եղեալ սմա պատուական քահանայն* Կիրակոս, *և ետ զսա յաստուածապաշտ գիւղն* Գանձակ, *ի դուռն սուրբ եկեղեցեաց՝ տիրամաւր Աստուածածնի, և սուրբ Ստեփաննոսի նախավկային, և սուրբ Սարգսի զօրավարին, յիշատակ հոգւոյ իւրոյ, և* ... Էլխաթունին, ... *և* Ստեփաննոս *կրօնաւորին,* ... *և դստերցն* Շնոհվորի, Խոնդ-Խաթունի *և* Խաթուն-Մէլիքի, *և պապերցն* Թադէոսի *և* Յովնանէսի... *և* Թաթուլի, *և* Դաւիթ *քահանայի*...։ *Յիշեցէք գրիչս* զԴանիէլ *սարկաւագն և զծնողսն իմ* զԿարապետ *քահանայն և* զԴուռմէլիք, *և զեղբայրն իմ* զԹումայ *սարկաւագն* ... *և զվարդապետն իմ* Զաքարայ *փիլիսոփայն*...։ *Դարձեալ, յիշեցէք զտանուտէրքն* զԳրիգոր, *և* զՍարգիսն, *և* զԹումաշահն, *և զոէս* Տիրացուն, *և զեղբայր նորին զտէր* Աւագն...։*

Բ

118ա *Քրիստոս աստուած, քո սուրբ խոնարհութեամբդ ողորմեա ստացողի սորա* Կիրակոս *քահանայի, և եղբաւրն՝* Ստեփաննոս *կրաւնաւորի, և ծնողացն՝* Յակոբին *և* Էլխաթունին, *և ազգականացն՝ կենդանեաց և հանգուցելոցն, և ինձ՝* Դանիէլ *անարժան դրչիս, և իմ ծնողացն, և քեզ փառք։*

Գ

*Ես* Կիրակոս *քահանայս ստացայ զսուրբ գիրքս ի հալալ արդեանց իմոց և ետու զսա նուէր ի դուռն սուրբ եկեղեցւոյս, և մի ոք իշխեսցէ զսա հեռացուցանել կամ ծախելով, կամ գրաւելով, կամ իւր սեպհականելով. և ով որ յանդգնի* ...*մասն զՅուդային առցէ, և զխաչահանուացն, և զհերձուածողացն* զԱրիոսին *և* զՆեստորին, *և նմա թողութիւն մի լիցի կամ փրկութիւն, ոչ ի յայս կեանքս և ոչ ի հանդերձեալն, ամէն, եղիցի։*

---

* *Ղ. Փիրղալեմյանը, 1888 թվականին ծանոթանալով ձեռագրի հետ, հիշատակարանները գտել է հույժ քայքայված վիճակում, նա գրել է. «Այս մաշտոցս* ՊԾԳ. (1404) *թվին գրեալ է* Դանիէլ *սարկաւագն յԱղթամար կղզին, յիշատակարան մաշուելուն սակս գրեցի»։ Այժմ ձեռագրում չի գտնվում այդ մաշված հիշատակությունը, ուստի մեջ ենք բերում Գ. Սրուանձտեանի «Թորոս Աղբարից»։*

## 49

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Վրացական ՍՍՌ, կենտրոնական Պատմական Արխիվ, ֆոնդ 233, № 584*

*Հետ. ստացող՝* Ղազար

[*Ցիշեցէք*] *զվերջին ստացող սուրբ աւետարանիս* զՂազար *քահանայս, որ գնեաց զսա ի հալալ ընչից իւրոց՝ ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ ծնողաց իւրոց՝ հաւրն* Առաքելին, *և մաւրն իմ* Ուալուին, *և ամենայն զարմից իմոց՝ կենդանեաց և հանգուցելոց...։*

## 50

## ՃԱՌԸՆՏԻՐ

*Երևան 1521*

*Գրիչ՝* Գրիգոր

*ՊԾԳ. (1404) Թըւին։**

62ա *Ողորմի ստացողաց գրոցս տէր* Յոհանէս *եպիսկոպոսին,* Ստեփանոսին, *և* Թումային, *և քըւերն* Շնոնւորին, *հաւրեղբաւրն՝* Զաքարին, *և քեռոյն* Գրիգորին, Աւետիս *կոկաւղին, և* Գրիգոր *գըծողին։***

** Թվականի մասին հիշատակագրությունը գրված է այս (№ 1521) ձեռագրի սկզբի մասը հանդիսացող № 1520 ձեռագրի 293ա էջի ներքին լուսանցքում։*

*** Նմանօրինակ հիշատակագրություններ կան նաև ձեռագրի այլ էջերի վրա։*





## 51

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4060*

Գրիչ՝ Մանուէլ եպիսկոպոս
վայր՝ Երևան

ա

243 ա ...Արդ, ես անարժանս և անպիտանս ի յոքունց և ի նմանեաց իմոց Յակովբ կոչեցեալ, որդի Վիշապին, ի գեղաքաղաքէս Էրևանոյ... զմտաւ ածեալ իմ յիշեցի զառաքելական հրամանս, որ ասէ՝ Երանի, որ ունիցի զաւակ ի Սիոն և ընդանի յԵրուսաղէմ, և սակս այս պատճառի աւրըստաւրէ ըղձայի մնալ հասանիլ բաղձանաց սըրտիս։ Որոյ ողորմածն և բարէգութն աստուած, [որ կաս]արիչն է խնդրու[ածաց և] լսաւղն է աղաւթից՝ ընդունելի արար զաղաչանս մեր և բերեալ հանդիպեցոյց պատահմամբ ի դրունս մեր զաստուածախաւս ըզքրիստոսայպըաք սուրբ աւետարանս ի ձեռն վաճառողաց անգին մարգարտիս։ Որոյ ականատես եղեալ իմ աչօք՝ յարեա, կանգնեցա, կացի և կառուցա, ցնծացա և զուարճացա, բերկրեցա և բոլորեցա և յոյժ գոհացա զամենառատ պարգևողէն, որ արժանի արար կատարել զխնդրուածս իմ և հաճոյացոյց զբաղձանս իմ։ Վասն
243 բ որոյ և ես կամաւք արարչին ըս ‥ տացայ զհոգէփրկանք սուրբ աւետարանս ի հալալ արդեանց իմոց, յիշատակ ինձ և ծնողաց իմոց և ամենայն արեան մերձաւորաց, առ ի Քրիստոս ննջեցեալ հաւրն իմոյ Ուշապին, և մաւր իմոյ Ջանանին, և կենակցին իմո Մամա-Խաթունին, և ի Քրիստոս փոխեցեալ եղբարց իմոց Գրիգորին և Անտիպէկին, և որդւոյ իմոյ Ղրաբշին։ Եւ վասն արևշատութեան Թագեաց որդոց իմոց Աղուպշին և Ջանանշին, [և որդոյ իւրոյ Դովլաթ-Խաւշին, և զաւակաց Նորին Սմբատին և Զաքարին]*, նաև ծերացեալ զոքանչին իմո Էսուգանին, որ աւգնական եղև ի գին սուրբ աւետարանիս։

Եւ արդ, ես Յակոբս զաստուածախաւս սուրբ աւետարանս և մէկ ձեռն սգեստ և ոկին արծաթի, որ ստացա ի հալալ արդեանց իմոց՝ ընձայեցի Էրևանո հրաշալի և յորդոր ժամատեղացս, որ յամենայն ամի յայտնութեանն և զատկին և հոգւոյ գալստեանն պատարագաւ և Քրիստոս-որդի ասելով յիշատակեն զմեզ, և զվերասացեալ ծնողքն մեր, և զայլ արեան մերձաւորս, որք կան շարագրեալ ի կարգ յիշատակարանիս։

* Փակագծի մեջ տալիս ենք լուսանցքի վրա, այլ ձեռագրով կատարված լրացումը

Եւ արդ, աղաչեմ զձեզ, ով սուրբ պատարագողք և ընթերցողք
քրիստոսապսակ սուրբ աւետարանիս, յիշեսջիք լիաբերան բոլորով
սրտիւ ի մաքրափայլ յաղաւթս ձեր զիս՝ զմեղաւոր և զանարժան սգի
Յակոբս, և զհայրն իմ զՎիշապն, և զմայրն իմ զՋընանն, և զկող-
244 ա կիցն իմ զՄամա-խաթունն, և զոքանչն | | | Է՞ս]ուկանն, և զհարազատ
եղբարք | | | Գրիգորն և զԱտիպէկն, և զորդիքն իմ՝ զՂարշահն՝ զփոխե-
ցեալն առ Քրիստոս, և զնորաբողբոջ դեռաբոյս որդիքս իմ զԱղուպշէն
[և զԳովլաթ-Խաւշէն, Սմբատն և Ջաքարէն] և զՋանանշէն. և զայլ
ամենայն ազգայինս իմ՝ զառաջինս, զմիջինս և զվերջինս։ Որով յի-
շողքդ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերո՝ աւրհնելոյն յա-
ւիտեանս, ամէն։

Ցաստուածարար սքանչելեացն տեառն բազում ինչ է, զոր տե-
սանեմք աչաւք և իմանալ ոնկարանամք մտաւք։ Եւ բազում ինչ է,
զոր իմանամք մտաւք և զչափն պատմել անգիտանամք բանիւ։ Զի
ահա տեսանեմք զարեգակն, զի գեղեցիկ է և հրաշալի, և զորպիսութիւն
գեղոյն իմանալ ոնկարանամք մտաւք. եւ դարձեալ զծով իմանամք
թէ մեծ է ու անբաւ, բայց զչափ երկայնութեան և զլայնութեան
և զխորութեան պատմել անգիտոնամք բանիւ։ Այսպէս և գութ
ողորմութեանցն և խնամքն աստուծոյ անթիւ, անպատում և
անչափ են առ ամենայն ազգս մարդկան, և զամենեսեան ըստ
իւրաքանչիւր յաւժարութեան յորդորեալ յառաջացուցանէ ի բարիս,
և պարգևս ողորմութեան իւրոյ բաժանէ առատապէս յամենե-
սեան, և կամի զի ամենեքեան ի գիտութիւն ճշմարտութեան
եկեսցեն։ Ըստ որում եղբայր այս Յակոբ ի յէրևան գեղաքաղաքէ,
ի մանկական տիոց հետէ փութացեալ միշտ ի բարիս և յար-
244 բ դիւնս | | | վերստին ստացաւ ի հալալ ընչից իւրոց զաստուածա-
խաւս սուրբ աւետարանս և սկիհ արծաթի և ձեռն մի [սգես]տ ի
գառն և ի նուրբ ժամանակս, ի բռնակալութեան բազում աշխար-
հաց և տանս Արևելեան՝ Հայոց և Պարսկաց, աստուածասաստ Թէմուր-
Լանկին և որդոյ նորին Միրզայ-Միրանշին, որ յարևելից կուսէ ի
Սմբրղան քաղքէ բազում և անթիւ հեծելօք վասն մեղաց մեր պա-
տուհաս սպառնացաւ յաստուծոյ, և ազգի ազգի մոգութեամբ խա-
ւար գործեաց բազում աշխարհաց և տանս Հայոց, զոր ոչ կարեմք
զամենայն արկանել ընդ գրով, այլ քաջահաւատ այրս այս Յակոբ,
յայս նեղ ի նուրբ ժամանակի ստացաւ զհոգէփրկանք ընձայքս և ըն-
ծաեաց ի դուռն սրբոյ Երկու-Երեսնիս, յիշատակ իւր և ամենայն
ազգայնոց իւր։ Եւ մեր տեսեալ զքաջ հաւատս սորա և զբարէգործու-
թիւնս ընդ ամենեսեան՝ առ քահանայս, և յեկեղեցիս, և յաղքատս, և
ի կարօտեալս, և առ ամենայն ոք։ Վասն որոյ և կա | | | ստիպեալ
յօժարեցուցին զմեզ գրել զինքն և զիւրսն ամենայն յիբու[Թն՞] ստա-
ցուածիս, զի ամենեցուն տեսեալ զայս յորդորեսցին ի բարի[ն]։

Եւ արդ, աւրհնութիւն ամենակալին աստուծոյ եկեսցէ, հան-
կիցէ ի վերա նորա և ի ծնընդոց նորա, և զցաւղն ողորմութեանց
ցաւղեսցէ յոսկերս ննջեցելոց նորա, և գրեսցէ զանուանս նոցա ի

դպրութիւն կենաց, և աւրհնեսցէ այն աւրհնութեամբն, որ ոչ անցանէ աստ և ի հանդերձեալն, ամէն։

Զտէր Մանուէլ՝ համբակ վերջին,
Ցաջորդ Բրջնոյ ու Այրարադին,
Որ ծըրեցի ծայրոք մատին
Զյիշատակաց գիծս վերջին,
Միշտ յիշեսջիք առ ի բարին
Զմեզ և զնախնիքն մեր բնաւին.
Եւ զձեզ յիշէ տէր ի բարին
Աստ և ի յօրն ապագային, ամէն։*

Բ

Նորոգող՝ Ներսէս Մոկացի
վայր՝ Երևան

242 ա ...Արդ և ես յետնեալ և զառածեալ Ներսէս անուն, որ եմ յերկրէն Մոզաց, ի բնիկ գեղջէն Սուրայ, ի տիս տղաութեան իմոյ ելեալ յերկրէ իմ[մ]է՝ հասի ի մայրայքաղաքն Երևան, և բնակեցա ի սուրբ եկեղեցին, որ է մականուն Երկու-Երեսին, և եղէ սպասաւոր և յաւելածու ի տանս աստուծոյ. ժամանակ ինչ ժամհար եղէ և տեսի զօրութիւն սուրբ աւետարանիս, որ բազմաց ականատես իսկ են եղեալ բժշկութիւն սորա, որ կոչի Վիշա[պ]կենց աւետարան։ Վաղուց ժամանակաց էր սա քայքայեալ և խաղտեալ էր. եւ ես՝ նուաստ Ներսէս՝ ետու հալալ վաստակոց իմոյ վերըստին նորոգել և կազմել, յիշատակ հոգոյ իմոյ և ծնօղաց իմոց, և որ ընթեռնու յիշէ ի սուրբ յաղօթս իւր, և յինքն յիշեալ լինի ի Քրիստոսէ աստուծոյ մերմէ։
Սուտանուն Զաքարայ երէց կաղմօղ ծառայ ձեր [յիշեցէք]։**

52

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 1958

Հեղինակ՝ Գրիգոր Տաթևացի

265 բ Ընդ որոց վերջինս բանասիրաց և տրուպ խնդրողաց բանին պիտակ անուն կոչեցեալ Գրիգոր, մեղսաներկ անձամբ և տխեղծ մա-

* Այս հիշատակարանի գրության ժամանակ Լանկ-Թամուրը դեռ կենդանի էր (մահացել է 1405 թ. փետրվարի 18-ին), ուստի գրված պետք է լինի մինչև 1405 թվականը (Թամուրի մահվան մասին տես հաջորդ հիշատակարանում)։

** Նորոգողի այս հիշատակարանը գրված է նախորդից տասնամյակներ հետո, հավանաբար ԺԵ․ դարի վերջերին։

տամբ վերստին հաւաքեցի զքաղուածոյս մեկնութեան սաղմոսացն Դաւթի, նեղ և ի ստորասուզեալ ժամանակիս, յորում բռնակալն Թամուր, թոյլտըւութեամբ վերին խնամոցն, տիրեալ էր բազում աշխարհի և աւերեալ. և կործանեցաւ յայսմ ամի՝ ՊԾԴ. (1405) թուի.*

Եւ պատճառ շարժողութեան վերստին քաղուածոյս. նախ՝ Մեծին Վարդանայ համառաւտ և խորին տեսութիւնն, որ անյայտ մնայր միշտ, հողացայ յայտնի և ընդարձակ ցուցանել, երկրորդ՝ զի առաջին քաղուածոյն կարի կարճ և պակաս թուէր, և երրորդ՝ ի թախանձանաց ոմանց հարկեցեալ, մանաւանդ որ տայ ամենայնի և յայտնէ ում և կամի։ Եւ է պիտանութիւն սորայ, նախ՝ ի մեկնիչն Վարդանայ դասիւ ընթերցմանց, պայծառ տեսութեանց, այլ և ի բանս խրատու և քարոզութեանց և լուծումն խնդրոյ հարցողաց, նայ և ի վարժումն իմաստից մտաւոր սաղմոսողաց....։

Արդ, եթէ գտցի ինչ ի սմայ արժանի տեսութեան ձեր՝ տեառն շնորհք և վարժասիրացն նախնի, և պակասն՝ տկարութեան մերում ներեսցի։ Այլև վարդապետին իմոյ Յոհաննու Որոտնեցոյ յիշատակ բարի ի տէր արձանասցի։ Ընդ որում քաւութիւն բազմազան մեղաց մերոց և ծնողացն կրկին, արեան մերձաւորաց և աշակերտաց, յեղբայրասէր կամաց ձերոց մաղթեսցի։ Որ և դրել աղաչեմ զիմաստուն գաղափարտաւղս սակաւս յիշատակի, որպէս և դուք գրեալ լիջիք ի դիրն անջնջելի, և ձեզ՝ յիշողացդ ի բարի և մեզ՝ յուսողացս ի հողի տոհասաբակ տէրն ողորմեսցի, ամէն, եղիցի։

* Լանկ-Թամուրի արշավանքների, նվաճումների և վախճանի մասին արժեքավոր տվյալներ են պահպանվել Երուսաղեմի Մատենադարանի № 1801 ձեռագիր ժողովածուի մեջ։ Ստորև ընդօրինակում ենք ձեռագրի այդ հատվածը՝ քաղելով Մ. Տեր-Մովսիսյանի ձեռագիր ցուցակից։ «Ի թվին հայոց ՊԼԵ. (1386) Լանկ-Թամուր եկն ի Թավրէզ և ի Նախիջաւան, և անտի ի միում աւուր կալօ մինչև ի Կարբի և ի Բենի, ի Գառնի և ի Սուրմարի, ի Կողբ: Եւ անտի գնաց ի Վրացտուն և արար զաղայ զՏփխիս քաղաք։ Եւ կալեալ զթագաւորն Բագրատ՝ տաճկացոյց, և գնացեալ ձմերեաց ի Մուղան։ Եւ ի գալ տարոյն, յօուր աւագ զատկին եկ ի Սիւնիս, և սփռեալ տարածեցաւ։ Եւ գնաց հետ Թուրքմանին՝ մինչև ի Համբայ ջուրն։ Եւ դարձեալ եկն ի վերայ Վանայ, և խսարեաց զնա զօուրս քսան և հինգ, և առեալ զնա յօուր ԻԶ. (26)-ոջ, ի տօնի (°) սուրբ խաչին, և զամենայն ի բերդն ի վայր ելից ԷՌ. (7000) մարդ, և անց գնաց ի Սմրղանդ: Եւ յետ Զ. (6) տարու դարձեալ եկն ի դուրս Թամուրն, և էջ ի Գաղտաս, և անդ կոտորեաց բազում մարդիկ, և մարդու գլխով Ա. մինարէ շինեաց։ Եւ գնաց ի Միջագէտս Ասորւոց, և անդ կոտորեաց բազում մարդիկ։

Եւ էր որդի սուլթան Ահմատին ի բերդն Երնջակոյ։ Եւ եկեալ Վրացիքն տարան։ Եւ լսեց Թամուրն և բարկացեալ եկն ի դուրս մեծ բարկութեամբ և գնաց ի Վրացտունն, շատ օեր և վնաս արար սրով և գերութեամբ, քակեաց զմեծամեծ եկեղեցիս ի Տփխիս: Եւ անտի էջ ի Շամա տուն, և գնաց մտեցաւ Երուսաղէմայ, բայց անդ ոչ եմուտ, և դարձաւ բազում աւարաւ, և գնաց ի Թախտն։

Եկն ի Սեբաստիա և բազում կենդանիս թաղեաց, աւելի քան ԲՌ. (2000), և դարձաւ տեղի իւր։ Եւ ի միւսում տարին գնաց ի Հոռմանց տունն, և էառ զԿամախ և այլ բազում տեղիս։ Եւ ի միւս այլ տարին դարձաւ ի Հոռոմս և զԷլդրումն խանն կալաւ, որ ունէր անթիւ հեծեալս և անհամար զաւրս. ցրուեաց և գերեաց զամենեսեան։ Թուին ՊԾԲ. (1403) դարձաւ յարեւելս յԱղուանից և շինեաց քաղաք մի Բաղաղայ անուն. և օուր տօնի հրեշտակապետիցն եկն ձիւն սաստիկ ի նոր քաղաքն, և եսպան ի շինողացն ԴՌ. (4000) հոգի և ամենայն ի զինուորացն էին։ Եւ ապա չուեալ գնաց յերկիրն իւր ի Սամարղանն, և անդ սատակեցաւ Թիւ Թամուրին որ եկաց ի | | | յաշխարհս ԺԸ. (18) ամի»։

## 53

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՑ

Երևան 5597

259 բ Ես՝ Յովանէս կր[աւնաւոր], Թումաս, Մկրտիչ, Կիրակոս կր[աւնաւոր]քս վերստին թափեցաք զսուրբ նշանն Գետարգել, բերաք ի սուրբ Եղիշէի ուխտն՝ ի Վարդպատրկէ վանքն, առ երջանկաշնորհ կրաւնաւոր առաջնորդն սուրբ վանիցն, և ետուք յիշատակ սուրբ Գէորգայ և սուրբ Եղիշէին, ի կործանման պիղծ Թամուրին՝ ՊԾ[Դ]. (1405) թվին, և սպասաւ կացաք մեք սուրբ սքանչելագործ նշանին, մինչև ի մահ, ով ոք հանցէ կամ գողասցէ զսուրբ կենս[ունա՞կ] խաչն՝ մասն և պատիժ Կայենին և Յուդային առցէ, ամէն։

Ցայսմ [տար]ոյս Մարտիրոս կր[աւնաւոր] բազում չարչարանօք մարտիրոս եղև, ի Պ[Ծ]Ե. թվն.։

## 54

## ՑԱՑԱՄԱՒՈՒՐՔ

«Թորոս Աղբար», Բ, 391։

Վայր՝ Անձղնապատ

Գրեալ ի թվին Հայոց ՊԾԴ. (1405), յանապատիս Անձղնապատ, ի հայրապետութեան տեառն Դաւթայ, և ի թագաւորութեան ազգին Մարաց Եզդինշերի։ Ցայսմ ամի մեռաւ Թամուր Ղանն, որ Ի. մի (21) ամ իբրև զրաժակ բարկութեան առեալ էր զնա աստուած ի ձեռն, և ում կամէր արբուցանէր, զի յարևելից մինչև ի մուտս արևու զամենեսին հասարակ գերեաց՝ զհաւատացեալսն և զանհաւատսն, զամենեսեան սրախողխող արար, և զԴըմխշ այնպէս արար, որպէս Ներսէս հայրապետն էր ասացեալ ի յՈղբն Ուռհայոյ։

Ցայսմ ամի շորժն Ժ. (10) գիւղ ի Հէշտառայ երկիր յիբար խառնեաց։ Ցայսմ ամի ջուրքն յէնց պակասեցան, որ բազում գետաղաց ջաղացք խափանեցան։

## 55

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 753

Գրիչ՝ Ռըստակէս
վայր՝ Ավագ վանք

197 ա ...Գրեցաւ եղանակաւոր տառս, որ կոչի Մանրուսումն, ի լաւ և յընտիր աւրինակէ, որ է յարմարած առաջին երաժըշտապետացն սուրբ ուխտին Արքակաղնոյն*. ձեռամբ անիմաստ գրչի և յոյժ մե-

* Այս տեղեկությյան համաձայն լավագույն և ամենատարածված Մանրուսմունքի խմբագրությունը ստեղծվել է Արքակաղնի վանքի (Կիլիկիա) երաժշտական դպրոցում, հավանաբար ԺԴ. դարի կեսերին։

զապարտս [Ոըստակիսի]*, ի թվ. ՊԾԴ. (1405), ի մեծափառ անապատիս
197 բ որ կոչի Ավագ վանք, ընդ հովանեաւ սրբուհոյ Աստուածածընին, և
սրբոյ Կարապետին, և սրբոց Առաքելոցն, և ի յառաջնորդութեան
սուրբ ուխտիս քաջ հռետորին և տիեզերալոյս վարդապետին մեծին
Գէորգեա, բազմերախտին իմոյ և ուսուցչին։
199 ա Աղաչեմ զամենեսեան, ոյք հանդիպիք սմա տեսանելով կամ ‖
ուսանելով, յիշեսջիք զվերոյգրեալս, նա և զիս ես և զծընաւղսն իմ
աղաչեմ յիշել ի տէր, և անմեղադիր լինել մեզ, զի այդ չափ էր կար
մեր. և թէ լինի պակաս կամ աւելի՝ զպակասն դուք լցէք և զաւելորդն՝
ի բաց հանէք, և թողէք զմեզ առանց բամբասանաց։ Այլ և յիշեսջիք
199 բ զհոգևոր ծնաւղն մեր՝ զսրբասնեալ կրաւնաւորն, որ է ‖ սպասաւոր
բանի՝ զԳրիգոր աբեղայն, որ զաւրինակն շնորհեաց, և դուք յիշեալ
լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ՝ աւրհնելոյն յաւիտեանս, ամէն։

## 56

## ՄԱՇՏՈՑ

Սեբաստիա, ս. Նշան 83, ՀԱ, 1926 թ., էջ 337

Կազմող՝ Յովհաննէս
վայր՝ Կոնկըռկայ գիւղ

499 ա ...Արդ, զվերջին կազմողս և զաւկաւ գրչակս զՅովհաննէս սուտանուն քահանայն, զի յոյժ անպիտան եմ ի գործս բարիս, և թափուր և ունայն ի յայսմ աշխարհիս, զի չեմ կոցեալ ի պատուիրանս աստուածայինս, և չյիշեմ զտանջանս անսպառ գեհենիս, որ կամ տարակոյս և գեգերեալ ի յայսմ աշխարհիս, որ կարդայք և լուսաւորէք ի յայսմ բանիս՝ թողութիւն խնդրեցէք ինձ մեղապարտիս, և որք յիշէք զմեզ ի յայսմ տեղիս՝ նա յիշեալ լիջիք ի Քրիստոսի միւսանգամ գալուստն ատենին, ամէն։

Կազմեցաւ Մաշթոցս ձեռամբ Յովհաննէս անարժան քահանայիս, ի գեղս Կոնկըռկայս, ընդ հովանեաւ սուրբ Թէոդորոսի, ի թվ. ՊԾԴ. (1405), ի փառս Քրիստոսի աստուծոյ մերում։

## 57

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՐԴԱՐԷՈՒԹԵԱՆՆ ԵԶԵԿԻԷԼԻ ԿԻՒՐՂԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՑ

Օքսֆորդ Ms. Arm. E. 35

Զի հրաման է արարչի՝
Ամենայն ոք ի հող հանգչի,

* Գրչի անունը քերված է, վերականգնում ենք համաձայն 198բ էջի ծածկագիր հիշատակագրության, որ բերում ենք ստորև.

«Զանխմաստ գրչակս Դ—Դ, ՆՃ—ՆՃ, Դ—Դ, Ռ—Ռ, Ս—Ս, Օ—Օ, ԱՕ—ԱՕ, Դ—Դ, Ռ—Ռ յիշեցէք, ով եղբայրք»։

Դումարագիր ծածկագրով գրված է գրչի անունը՝ «զՌըստակէս»։

Եկն էհաս օր վաղճանի
Մինաս մեծի քահանայի.
Վաղճան սորին եղև բարի,
Օրինական և ընդ կանոնի.
Որք հանդիպիք՝ տուք ողորմի,
Աստուած և զձեզ ողորմեսցի։*
Զորս և երկ հարիւրի**
Միակ յորելին և քառեակ, Թուի (1405),
Փետրվարի ամսոյ Է. (7)-ին։

## 58
## ԾԱՂԿԱՔԱՂ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԳՐՈՑ ԾՆՆԴՈՑ, ԳՐԻԳՈՐԻ ԽԼԱԹԵՑՒՈՑ

Երուսաղէմ 1273

Ձեռագրի երկրորդ մասն ընդօրինակված է ՊԾԴ. (1405) Թվականին։ Ցիշատակարանում յիշվում է «Մեծազարմ իշխանաց իշխան պարոն Վասիլ՝ հանդերձ աստուածապարգև զաւակաւք իւրովք»։***

* Բնագրում՝ «ողորմեսցէ»։
** Բնագրում՝ «Դևերկճի»։
*** Հիշատակարանից արված քաղվածքը վերցրել ենք Մ. Տեր-Մովսիսյանի ձեռագիր ցուցակից։

ՊԾԵ 1406

## 59

## ԼՈՒԾՄՈՒՆՔ ԱՐՏԱՔԻՆ ԳՐՈՑ, ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

*«Սիսական», էջ 239, 240 (տպված է նմանահանությունը)*

*Գրիչ՝* Թովմայ Մեծոփեցի
*վայր՝* Տաթև

ա

*...Աստանաւր յանկ ելեալ կատարեցաւ տառս այս իմաստապատում, որ կոչի Լուծմունք արտաքնոց, բացայայտեալ զսա մեծ վարդապետին Հայոց* Գրիգորի*, *ի սուրբ ուխտս* Տաթևի *սուրբ առաքելոյս, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Գրիգորիս, առ ոտս մեծ հռետորիս՝ արարողի այսմ գրոցս։ Ի թվիս Հայոց ՊԾԵ. (1406), ձեռամբ* Թովմայի *սուտանուն քահանայի, ի վայելումն մանկանց եկեղեցւոյ և յիշատակ հոգւոյ իմոյ, զի աշխատութեամբ և չարչարանօք գրեցի յառաջին աւրինակէն, զի ի Դ. (4) կողմանց նիւսխայ էր արարեալ։***

*Արդ, որ հանդիպիք սմա ուսմամբ կամ օրինակաւ, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զ*Թովմայ *անիմաստ գրիչ, և զծնօղսն իմ՝* զՍտեփանոս՝ *զհայրն իմ, որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս, և զմայրն իմ* զՇամշա, *և զհոգևոր հայրն իմ և զուսուցիչ* զՄաթէոս *քահանայ, և զհօրեղբայրն իմ* զՄկրտիչ *քահանայ, և* զՄկրտիչ *միայնակեաց՝ քեռին իմ, և զեւթներորդ հարազատքն իմ։ Նաև զերախտաւոր հարքն մեր* զՍարգիս *րաբուն[ապետ], և զ[յ]աջորդն իւր՝* զՎարդան *վարդապետն՝ զհոգևոր հայրն մեր, որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս, և մեք Թափառական գոլով յերկրէ* Քաջբերունեոյ *եկեալ բնակեցաք աստ՝ երկոտասան եղբարբք հանդերձ։ Նաև* զՄարգարէ *վարդապետ յիշեսջ[իք] ի Քրիստոս, որ աշխատեցաւ ի կոկել Թղթիս։*

---

* *Գրիգոր Տաթևացու այս աշխատության (Մեկնութիւն Ստորոգութեանց, Պերի Արմենիասի, Պորփիւրի են) ինքնագիրը պահվում է, ըստ երևույթին, Վենետիկի Մխիթարյանների մոտ։ Ալիշանը «Սիսականում» (էջ 236) հրատարակել է Գրիգորի ինքնագիր հիշատակարանի նմանահանությունը, որտեղ գրված է.*

*«Արդ, ես Թմբրամածս* Գրիգոր, *վերջինս ի ծնունդս եկեղեցւոյ և տրուպս բանին սպասաւորաց՝ սիրով միայն զանունն ստացայ, ջանիւ ի գործն ոչ մխեցայ։ Ցերեսս անկեալ աղաչեմ զպատահաւղսդ այսմ գծից յիշել բարի յիշմամբ զմեղ առաջի Քրիստոսի, զի որպէս և որչափ յիշէքդ՝ բազմապատիկ և ձեզ շնորհեսցի, ամէն»։*

** *Այսինքն լրացումներ ու մեկնություններ էր ավելացրել լուսանցքների վրա։*

Բ

Փառք ողորմութեան քում և գթութեան՝ տէր իմ Յիսուս, որ յայսմ շարժմանէ զերծուցէր զմեզ, զի շարժի տունս իբրև զտերև։

Գ

Ո՜ զարմանալի շարժմանս, զի շարժի սուրբ Առաքելոց Տաթևու, և զանկակատունս և գաւազանս, որ է Նոյեմբեր ԻԹ. (29)։*

## 60

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀՆԳԵՄԱՏԵՆԻՆ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑԻՈՅ

**Երևան 1004**

Գրիչ՝ Թովմա Մեծոբեցի

400 ...Արդ յերեսս անկեալ պաղատանաւք աղաչեմ զմանկունսդ եկեղեցւոյ, որք հանդիպիք արարչապատում սուրբ կտակիս, յիշեսջիք զմեղապարտս ի մանկանց եկեղեցւոյ՝ զպիտականուն վարդապետս Թովմա** ի բուն բարի բնութիւնն աստուծոյ։ Եւ զուսուցիչն իմ՝ զհոգևոր հայրն իմ զՄատթէոս կրօնաւորն, նաև զաստուածապարփակ և զերանաշնորհ բաբունապետքն մեր՝ զմեծ Սարգիս և զՎարդան յիշեսջիք ի Քրիստոս, աղաչեմ, որ զայս գիր աւանդեցին մեզ, և աստուած զձեզ յիշէ, ամէն, եղիցի, եղիցի։

## 61

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

**Երևան 4072**

Գրիչ՝ Գրիգոր Գօրեցի
վայր՝ Տաթև

448 բ ...Արդ, գրեցաւ սուրբ գանձարանս աստուածային, որ կոչի Հարցմունք Գրիգորի՝ քաջ ախոյանի և արի հռետորի ընդդէմ հերձուածողացն դասուց, ի սուրբ և ի գերահռչակ ուխտս Եւստաթէի առաքելոյս, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Լուսաւորչիս, և այլ բազմաժողով սրբոց աստ գումարելոց, առ ոտս երջանիկ րաբունապետիս Գրիգորի վերոյգրելոյս, և իշխանութեամբ տեղիս բարեպաշտ իշխանացն Սմբատի և Բուրթելի, ի թվականիս Հայոց ՊԾԵ. (1406), ի ժամանակս յետին և անբարի՝ ըստ հոգոյ և մարմնոյ, յորում միշտ սուրն և գերութիւն էր զաւրացել քրիստոնէից ասեմ և այլազ-

---

* Բ և Գ հիշատակագրությունները գրված են ձեռագրի ստորին լուսանցքների վրա, մանր տառերով։

** Հիշատակարանն անթվական է։ Տեղագրում ենք Թովմա Մեծոփեցու 1406 թվականի հիշատակարանին առընթեր։

*գեաց։ Ձեռամբ բազմամեղ և յանյարմար գրչի* Գրիգոր *աբեղայի* Վրացտանեցի, *որ է գեղաքաղաք* Գօրի, *ի վայելումն իմոյ և յիշատակ ծնողաց իմոց։*

*Արդ, յերես անկեալ աղաչեմ զամենեսեան՝ զհանդիպողսդ [ա]յսմ կտ[ակ]իս կարդալով կամ յօրինակելով, յիշեսջիք ի սուրբ և ի մաք-*
440 ա *րափայլ աղօթս ձեր միով տէր-ողորմայիւ զիս՝* Գրիգոր *գրող և* ‖ *ստացող սմին, և զծնօղսն իմ, որ ըստ հոգւոյ և որ ըստ մարմնոյ, զհաւրեղբայրն իմ զ*Մկրտիչ *կրօնաւորն, և զհայրն իմ* Հուսաբերն, *և զեղբայրն* Սարգիս, *և զմայրն իմ* Թամթա-խաթուն, *որ դառն կսկծանաւք փոխեցաւ ի Քրիստոս, և զեղբայրն իմ զ*Մկրտիչն, *որ չաղաթէն գերեաց ու դառն տրտմութիւն կսկիծ էթող, և զքուրն իմ* Դեստ-խաթուն, *և զամենայն արեանառու մերձաւորն իմ և զազգայիննանս։ Եւ աստուած, որ առատ է ի տուրս պարգևաց առ հասարակ ողորմեսցի յիշողացդ և յիշեցելոցս։ Եւ* Սիմէոն *վարդապետն և* զՅովանան *աշակերտն, որ զօրինակն մեզ շնորհեցին, Քրիստոս ի գիրն կենաց գրեսցէ և զերկնից արքայութիւնն պարգևեսցէ նոցա և մեզ ի յիւր փառաւոր գալստեանն, ամէն, եղիցի։*

## 62

## *ԺՈՂՈՎԱԾՈՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆՑ*

*Երևան 1264*

*Բ. մասի գրիչ՝* Մովսէս
*վայր՝* Տաթև

ա

457 բ *Փառք ...որ ետ կարողութիւն մատնադեղև փցուն գրչի՝* Մովսէս *հիւանդ և ծոյլ աբեղայի հասանել ի վերջին գիծ լուսաւոր լուծմանցս այս։ Արդ, գծեցաւ սա ի թուիս Հայոց Պ[Ծ]Ե. (1406)*, յիշխանութեան պարոն* Սմբատին *և որդոց նորին* Բէշքէնին *և* Իւանէին, *ի հրեշտակաբնակ ուխտս* Եւստաթէի *սուրբ առաքելոյս, առ ոտս վարդապետին* Մխիթարայ, *որ մխիթարիչ է հոգւոց ծարաւելոց, որ ծարաւի են բանին շնորհաց, յընտիր և ի ստոյգ աւրինակէ լուսաւոր վարդապետին* Գրիգորի, *զոր ի մեծ վարդապետին* Վարդանա *և այլոց սրբոց հաւաքեալ և կոչի լուծմունք Սողոմոնի, և շնորհեաց մանկանց Սիոնի, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի, ի վայելումն փակակալի սուրբ ուխտիս* Յովանէսի *կուսակրաւն աբեղայի, ձեռամբ մեռեալ ոգւոյ* Մովսէսի, *ի դառն և ի նեղ ժամանակիս։*

*Արդ, աղաչեմ զմանկունսդ նորոյ Սիոնի, որք պատահէք ուսմամբ կամ գաղափարելով, յիշեսջիք ի բոլոր սրտէ* զՅովանէս *ստա-*

** Թվականի տասնավորը պատռված է, կարծում ենք եղած պետք է լինի «Ծ» (50), որովհետև Մխիթար Տաթևացի վարդապետը հիշվում է 1406-ից («Սիսական», էջ 238), իսկ 1407 թ. մի հիշատակարանում նրա հետ մեկտեղ հիշվում է նաև սույն ձեռագրի ստացող «Յովհաննէս կուսակրօն աբեղան»։*

ցուղ գրոյս և զծնողսն իւր, ընդ նմին և զփծուն գրիչս, և զՄարգա-
րոս աբեղայ՝ եղբայրն իմ, և զամենայն արեանառու մերձաւորսն իմ՝
զհոգևորս և զմարմնաւորս, զկենդանիս և զհանգուցեալս, առհասարակ
զամենեսեան։ Եւ նայ, որ առատն է ի տուրս, առհասարակ ողոր-
մեսցի ձեզ յիշողացդ, և մեզ յիշեցելոցս, աղաւթիւք և խնդրուածովք
ձերովք, ամէն, ամէն և եղիցի։

Ա. մասի գրիչ՝ Յունան

Բ

62 բ Զբազմամեղ գրիչս զՅունան, անբան ի մեջ բանաւորացս աղա-
չեմ յիշել ի տէր Յիսուս...։

Գ

274 բ ...Եւ զեղկելի գծողս արժանի առնէք յիշել ի տէր, աղաչեմ։ Եւ
զՅակոբ քահանայն՝ զխորասանունդ եղբայրն մեր, հանդերձ ծնողօքն
իւր և ամենայն ընգաններւք, որ կէսօրեայ ժամանակաւ ի Քրիստոս՝
յաւսն ամենեցուն փոխեցաւ, յիշեսջիք միշտ ի տէր...։

## 63

## ՔԱՂՈՒԱԾՈՑ ԼՈՒԾՄՈՒՆՔ ՍԱՂՄՈՍԱՑ, ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՑ

Երևան 4411

Գրիչ՝ Սիմէոն
վայր՝ Տաթև

ա

382 ա Փառք... որ ետ կարողութիւն ակարիս ժամա[նել յաւարտ]։
Արդ, գրեցաւ սա ի թվիս Հայոց ՊԾԵ. (1406) ի ս[ուրբ աթոռս Եւս]–
տաթէի սուրբ առաքելոյս, ձեռամբ բազմամեղ և ս[ուտանուն] Սիմէոնի
պիտակ բանասիրի, աշակերտի նորին Գ[րիգորի վեհա]փառի՝ առնողի
գրոյս։ Արդ, յերեսս անկեալ [աղաչեմ զամենե]սեան, որք հանդիպիք
սմա ուսմամբ կամ կա[րդալով], յիշեսջիք ի մաքրափայլ աղօթս
ձեր | | | և զծնօղն իմ, և զամենայն արեան մերձա[ւորսն իմ, և յիշէ°]
աստուած զձեզ յիւր] միւսանգամ գալստեանն | | |*

Բ

218 բ Քրիստոս աստուած... ողորմեա ստացողի և գրողի սորին Սիմէոն
բազմամեղ վարդապետի, և ծնողաց իմոց, և ամենայն համաւրէն
հաւատացելոց, և որք զամէն ասեն, ամէն։

Գ

166 ա Ո՛վ սուրբ մանկունք առագաստի,
Նորաբողբոջք տնկեալք | | |
[Եւ] ուռճացեալք միշտ ի յոգի,

* Թերթի ձախ եզրը պատռված է և շատ բառեր կիսատ են պահպանվել։ Փակագծե-
րում ավել ենք ըստ իմաստի ամենահավանական ընթերցումները։

Եւ մշակեալք տեառն Յիսուսի
Ժառտն | | | տին ամենալի,
Դուք վայելողք և անծկալիք
Ջձեզ ա[ղաչեմ տ]ղերսալի
Եւ արտասուօք գոչմամբ ի լի
Յորժամ զսոյն | | |
Դուք հանդիպիք մեծահոգի
Ջիս յիշեցէք ջերմամբ սրտ[ի]....

Դ

330 բ Ջբազմամեղ և զանարժան, զապիկար և զտրուպ գծողս զՍիմէոն մեռեալ ոգի վարդապետ յիշեցէք ի Քրիստոս աստուած, և աստուած զձեզ յիշէ, ամէն.

## 64

## ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 2418

Գրիչ՝ Գալուստ
վայր՝ Տաթև՞

301 բ ...Արդ, գրեցաւ եղանակաւոր տառս և լուսազարդ երգարանս ի Թուակա[նին] Հայոց ՊԾԵ.(1406), ի տանս Սիսական, յերկիր | | |,* ի մեծ և ի հռչակաւ[որ] սուրբ ուխտս | | |;** Առ ոտս մեծ և ամենեբջանիկ դիտապետիս Հայոց, որ է անուանակիր աբփիաւորչին [Գրիգորի], այլ և գործոց նորին, նա և պսակացն սսեմ մեծին. ի խնդրոյ սրբասնունդ և երանաշնորհ եղբաւր մեր և անընդմիջաբար սիրելոյ Գրիգորի սիրողի բանի, ի վայելումն անձին իւրոյ սրբազանի, յիշատակ հոգոյ իւրոյ և ծնօղաց իւրոց, և ի վարժումն դեռաբոյս պատանեկին | | |, որ է որդի | | | ***ին իւրոյ, զոր տէր վայելել տացէ ընդ երկայն աւուրս, ձեռամբ յոգնամեղ և ապիկար գրչի Գալուստ պիտակ սպասաւորի, ի լաւ և յընտիր աւրինակէ Մըսցոյ, որ էր գրեալ ձեռամբ բազմարուեստ գրչի Գրիգոր դպրի, մականուն Խուլ կոչեցեալ։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ կամ գաղա-
302 ա փարէք, զվերոյասացեալ ստացաւղ սորա և զբազմամեղ || գրչաւոր մի մոռանայք, այլ մաղթեմ յիշել ի սուրբ և յերկ[ն]աթռիչ պտղատանս ձեր առաջի անարատ գառինն և անարիւն զենմանն Քրիստոսի, ե նա, որ առատն է ի տուրս բարեաց և աննախանձ ի պարգևս շնորհաց մեզ՝ յուսողացս և ձեզ՝ խնդրողացդ առհասարակ շնորհեսցէ, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

---

* Քերված է, հավանաբար եղել է «Սիւնեաց»։

** Քերված է, եղած պետք է լինի «Տաթեւու»։

*** Ստացողի անունը և հայրանունը քերված է, այլ ձեռագրով քերվածի վրա գրված է «Սարգիսին, որ է որդի Ստեփանոսին»։

## 65

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԻ ՎԱՐԴԱՆԱՑ ԱՐԵՒԵԼՑՒՈՑ

Վենետիկ 147

Գրիչ՝ Մխիթարիչ
վայր՝ Մակու

...*Զգծողս* Մխիթարիչ [*յիշեցէք*]։ *Զմեռն էր և մեր առաջի գիրն այս է, որ գրեցի. ի գաւառս* Արտազու, *ի գիւղս որ կոչի* Մակու, *առ պարոնութեան պարոն* Նուրադնի *և րաբունապետիս* Մխիթարիչ *վերակոչեցեալ։**

*Ի թուի հայկազեանս սեռի ՊԾԵ. (1406) ամի, յամսեանս յունվարի ի Ե. (5) օրն։***

## 66

### ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 354

Գրիչ՝ Գրիգոր Ապարանեցի

ա

501 ա *Զաշխատող սորին զփցուն գրչակս զ*Գրիգոր *մանուկ* Ապարանեցի *յիշեսջիք ի տէր Յիսուս, ամենայն ազգականաք և երախտաւորաք, ով պատահողք այսմ նշանախեծի, և որ առատն է ի տուրս բարեաց պարգևեսցէ մեզ՝ յիշելոցս և ձեզ՝ յիշողացդ առհասարակ զիւր երկնից արքայութիւնն, ամէն։*

բ

252 բ *Զգծաւղ սուրբ և աստուածեղէն տառիս՝ զ*Գրիգոր *դպիր* Գաւռեցիս *յիշեսջիք ի տէրունիս, զի և դուք յիշեալ լիջիք ընդ տեառն սիրելիս։****

գ

189 բ *Զնուաստ ստացող սմին զՖրա* Մխիթարիչ**** *վարդապետ յիշես–*

* *Ակնարկում է Մխիթար Ապարանեցուն, որն իր մի գրության մեջ հայտնում է, թե Սիս քաղաքից, 1410 թվականին Մակու է բերված 50 լիտր ձեռագիր («Հայապատում», Ա, էջ 123)։*

** *Ձեռագրի ընդօրինակությունը Մխիթարիչն սկսել է տարիներ առաջ։ Մի այլ հիշատակագրության մեջ նա գրում է «Յիշեսջիք և զանարհեստ և զփցուն գծողս զՖրա* Մխիթարիչ *սոսկ անուամբ քահանայ...։ Շտապով գրեցի զսա ի գաւառս* Արտազու, *ի գեօղս որ կոչի* Մակու, *առ պարոնութեամբ տէր* Զաքարիայի *մեծ կրաւնաւորի և րաբունապետիս* Մատթէոս *վերակոչեցեալ, ի թուականութեան մարդեղութեան տեառն ՌՅՂԲ. (1392)»։*

*** *Նման հիշատակագրություններ գրիչն ունի նաև 62 բ, 101 ա էջերում։*

**** *Ֆրա Մխիթարիչը կամ Մխիթար Ապարանեցին գործել է 1360—1410 թթ. ընթացքում։ Նրա կողմից գրված կամ նրա անվան հիշատակությամբ այս և մյուս հիշատակագրությունները տեղադրում ենք Մխիթարիչ գրչի կողմից 1406 թվականին Մակվում գրված հիշատակարանին առընթեր, նկատի ունենալով, որ նրա մեջ Մխիթարիչը հիշատակվում է որպես գրչի ուսուցիչ—«րաբունապետ»։*

Չիք ի տէր կրկին ծնօղօք և համայն զարմիւք, ով պատահողք սմին, և աստուած զձեզ յիշէ առհասարակ։

Ընդ նմին և զփծուն գրչիկս՝ զԳրիգոր սարկաւագ յիշել աղաչեմ ի տէր, հանդերձ ամենայն ազգականօք և երախտաւորօք, նաև զՅո-ճանէս պատանեակս մեր, որ կու սպասաւորէ մեզ։

Դ

205 բ Զգծողս յիշեա և անմեղադիր լեր, զի թանաքս վատ էր և կու սփռեր, ոհ։

Ե

Ստացող՝ ֆրա Մխիթարիչ

589 ա Զստացօղ սորին զտառապեալ և զնուաստ ոգիս զֆրա Մխիթարիչ սպասաւոր բանի յիշեցէք առ Քրիստոս բարի մտօք։

## 67

## ՀԱՄԱՌՕՏ ՏԵՍՈՒԹԻՒՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ, ՏԷՐ ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ՍԻՒՆԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

Երևան 2529

Հետ. ստացող՝ Մխիթարիչ

344 բ Օ՜վ, վեհանձինք և պանծալի,
Միշտ ձեռնարկօղք գործոյ բարի,
Յորժամ հանդիպիք այսմ տառի,
Յիշման արարէք զիս արժանի...
Զֆրա Մխիթարիչս՝ խնդրող բանի,
Զվերջին ստացօղս գրոցս հրաշալի...։

## 68

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6792

Գրիչ՝ Գրիգոր Վարդապետ

247 բ Գոհութիւն հաւր անեղին
և միածին նորա բանին,
Բամից գոյից արարողին,
հոգոյն սրբոյ զարդարողին,
Ի յախտաժետ անձնէ կըրկին
աւետարանիս գրողին,
Գրեալ էր նախ սա Օրպէլին
Սիւնեաց արհի մետրապօլտին,
Որ էր իշխան նա վիճակին
Տանըն Սիւնեաց մեծ նահանգին,
Բաբուն արի քարտուղարին
և քաջաբան վարդապետին,

*Վասն խնդրոյ* Ստեփաննոսին՝
*իւր հօրեղբաւրն, և* Բիւքթելին,
*Արի և քաջ վարդապետին*
*և Սունեաց եպիսկոպոսին.*
*Ռամեալ և իմ գիրս ընդ նըմին*
Գըրիգորիս՝ *տէր* Աւրպէլին,
*Դասակից լինել նըմին*
*աղքատս յետին՝ այն փարթամին,*
*Աստուածաբան վարդապետին*
*և քաջիմաստ հըռետորին,*
*Պետ և արհի հայրապետին՝*
*Սիւնեաց աթոռոյ* Տաթեւին.
*Ես անպիտան յամենայնի*
Գրիգոր *գըծող այսըմ տառի,*
*Տեսի զկըտակըս ցանկալի՝*
*զաւետարանըս Քրիստոսի,*
*Ի թըւականիս ութհարիւրի*
*՚ւ յիսուն ու հինգ ամ աւելի (1406),*
*Էտու քաջալերս իմ սըրտի*
248 ա *՚ւ աշխատութեամբ գը || ծագրեցի.*
*Աւետաբանս էր այս թերի*
*Միայն Յոհան էր ի կարգի,*
*Ցերից գըլխոց սակաւ ունի**
*զսկիզըն և զաւարտն ի պատշաճի,*
*Սակս որոյ հոգս ինձ արարի*
*՚ւ յաւժար կամաւք զթերին լըցի։***

## 69

## *ԺՈՂՈՎԱԾՈՒ*

*Երևան 2152*

*Գրիչ՝* Թումայ
*վայր՝* Բաղէշ

ա

177 բ *Փառք անեղին աստուծոյ, անմահին և ամենազօրին և անճառ բանին, որ ետ կարողութիւն* Թումայի *բանի խնդրողի հասանել յաւարտ ծաղկաքաղ օրինացս և արարածապատում գրոցս, զոր մեծաւ տաժանմամբ և երկօք աշխատութեամբ հասի յաւարտ սորին և խիստ նեղացա, յաւուրս Նաւասարդի, յոդոյ ձմերայնոյ խստութենէ, և ի*

* *Հովհ. Օրբելու կողմից գրված ավետարանը մագաղաթյա է, նրանից պահպանվել են բարձրորակ լուսանցազարդերով, նկարներով ու խորաններով զարդարված 158 թերթեր։ Գրիգոր վարդապետը պակասները լրացրել է թղթյա թերթերով. ընդամենը գրել է 144 թերթ։*

** *Սկզբնատառերով հողվում է՝ «Գրիգոր վարդապետի է այս»։*

մթութենէ տունջեանն, և ի ճրագէ գիշերի, և վասն փութոյ օրինակին նօտրեցաք փութով, վասն զի սէր փափագանացս սաիպեաց զիս առ ի գրել զլուսաւոր և զուրախարար բանքս, որ ի սմա ամբարեալ կան ի ոփոփանս մտաց իմոց և ամենայն բանասիրաց։ Որք հանդիպիք սմա տեսութեամբ և կամ օգտութեամբ ինչ իւիք յիշեցէք զմեզ ի միտս բարիս և սխալանացս, [ա] անյարմար գրոյս մի մեղադրէք, զի կար մեր այս էր, և տեղիս՝ մութն և ձմեռն, և յաղթեաց բաղձանս կարողութեանս։ Գրեցաւ յանապատս Բաղիշոյ, որ կոչի Վերի վանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և սուրբ Գէորգեա զօրավարի, յամի ՊԾԵ. (1406) թուականիս, յաhկի ամիս...։*

Բ

Մի մասի գրիչ՝ Ստեփանոս

84 բ Ո՛վ ընթերցողք, յորժամ կարդայք կամ օրինակէք, յիշեցէք ի Քրիստոս զանարժանս՝ զՍտեփանոս վարդապետս և զծնօղսն իմ, և աստուած-ողորմի ասացէք, և խոշորութեանս անմեղադիր լերուք, զի գիր չեմ գրել, այլ նօտրել եմ | | | փօտ, զի այս քարոզերս ի յիմ գրիանքըն չկայր և հանկարծ հանդիպեցաւ, ըշտապեցայ ու նօտր գրեցի։**

## 70

## ԱՒԵՏԱՐԱՆ

«Հայք ի Զմիւռնիա», էջ 21—23

Հետ. ստացող՝ Թուրվանդայ

ա

...Ես նուաստս և անպիտան ծառայս աստուծոյ Թուրվանդայս, դուստր պարոն Մարգարին, ստացայ զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց իմոց՝ յիշատակ ինձ, և ծնողաց իմոց պարոն Մարգարին, և մօրն իմոյ պարոն Գոնար-Մէլիքին, և եղբօրն իմ պարոն Բեկլարին, և առն իմոյ պարոն Յովանեսին, և տոււ Անդրիաս քահանային և իւր որդւոյն Մխիթարին՝ յիշատակ անջնջելի։

Արդ, որք ընթեռնուք զսուրբ աւետարանս յիշեցէք յաղաւթս ձեր զիս՝ զԹուրվանդէս, և զպարոն Յովանէս, և զվերոյգրեալ ծնողսն իմ, և աստուած զձեզ յիշէ։

Ի թվիս ՊԾԵ. (1406) գրեցաւ։

Բ

Ո՛վ դասք լուսերամից, որք հան[դիպիք]*** քառարուխ վտակիս զվերջի [ստացող] զՅովանէսս աբեղայ բիւրակն | | | անուն Աբիթարենց յաղաւթ[ս յիշեցէք], որ ստացաւ զաւետարանս յիշատ[ակ իւր և] ծնո-

* Ձեռագրի ընդօրինակությունը, ինչպես պարզվում է 162 ա էջի ծանոթագրությունից սկսված է եղել արդեն 1402 թվականին։ Այդ էջի ծանոթագրության մեջ ասված է. «Զթում[այ] խնդրող բանի աղաչեմ յիշել ի տէր, թվ. ՊԾԱ. (1402) գրեցաւ»։

** Ստեփանոս վարդապետն ընդօրինակել է միայն ձեռագրի 74—84 թերթերը։

*** Ուղղագիծ փակագծերի մեջ առաջարկված հավանական լրացումների փոխարեն հրատարակության մեջ դրված են բազմակետեր։

դաց իւրոց, և ի վայելումն ձե[ռնասն]ունդ զաւակին իւրոյ Տիրատ[րոյ]: Տէր աստուած վայելել տացէ, ամէն։ Ի թվ. ՊԾԸ. (1409°)։ Եւ զեղկելի կազմողակս մի մոռան[այք], ով դասք լուսերամից, որք [հանդիպ]իք այսմ քառաբուխ վտակիս, [զստ]ացող սորայ զպարոն Թուրվանդէն՝ զդ[ուստր] պարոն Մարգարին յաղաւթս յիշեցէք, որ առ զաւետարանս ի հալալ արդեան[ց իւրոց] յիշատակ իւր, և ծնողաց իւրոց պարոն Մուրադի [և] Գոհար*-Մէլիքին, և իւր եղբաւրն պարոն Բե[կլարին | | | եւ զսայ ի յԱնդրիաս երէցն և իւր ո[րդի Միխիթա]րին, աստուած վայելել տացէ, ամէն։

## 71

### ՑԱՑՍՄԱՒՈՒՐՔ

Վենետիկ 189

Վայր՝ Կոնթեր գիւղ

Ի թվ. ՊԾԵ. (1406), ի մայիս ԻԲ. (22), ընդ հովանեաւ Գորոփոսիսի(°) սուրբ Թէոդորոսի մեծափառ բարձրապատիւ ուխտի, ի դուռն սուրբ Սարգսի զաւրավարի և որդւոյ նորա Մարտիրոսի, ի յաստուածապահ գեղն Կոնթէր կոչեցեալ, յիշատակ Շանմէլիքին և Խօնախ մղտսուն | | | և զհայրն [Խունախին]՝ զՄղպէլն, և զմայրն իւր զՏիկնացն, և զեղբայր իւր զՊուտախն, և զՄոմեղէնն, և զզաւակսն իւր զՀայրապետն, և զԿարապետն, և զՍադիկն, և զզաւակն իւր, և զկողակիցն իւր զԹամրան, զՇանմէլիքն, և զմայրն իւր զՇնօֆոր պարոնն, և զՍառան, և զՀռիփսիմէն, և զՅոնոդիայն(°), և զեղբարսն իւր զՆերսէս երէցն, և զիւր որդին զԱբգար սարկաւագն, և զՅովնաննէս երէցն, և զՇահպարոնն, և զՄերունն, և զԿարապետն, և զփոխեցեալ առ Քրիստոս զՄեծպարոնն, և զքոյրն իւր զՄաթախն, և զԳշխոյն... և զգրող սորա զՅովնաննէս աբեղայս, և զծնաւղսն իւր՝ զտէր Պապն և զՍիբայն... զսպասաւոր սուրբ ուխտիս, միաբանքն՝ զՅովսէփն, և զԿիրակոսն, և զՄարդան, և զՊետրոսն, և զԱստուածատուրն՝ զսրբասնունդ աբեղայքն, և զՄկրտիչ երէցն, և զԽաչատուր սարկաւագն... և զգործաւոր վանացս՝ Մկրտիչ, և զՅակոբ, և զԳրիգոր, ...և զՅակոբ միայնակեցն և զՄղրոնին...։

* Տպված է «Հոնար» փխ. «Գոհար»։





## 72

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Երևան 4684*

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Խիզան

ա

529 ա ... Պօղոս *աբեղայ և կրօնաւոր։ Ծանգացո՛ղ եղեալ աստուածա-*
*յին տառիս այս։ և ի բարեխօսութիւն սրբոցս՝ որ հաւաքեալ կան*
*ի սմայ։ ի միտ առեալ զբանն Իսայայ որ ասէ։ երանի՛ որ ունիցի*
*զաւա՛կ ի Սիովն՝ և ընդանեակ յԵրուսաղէմ։ ե՛տ գրել զպատմու-*
*թիւն սրբոցս, յիշատակ հոգւոյ իւրոյ՝ և ամենայն արեան առուացն։*
529 բ *Այգ՝ աղաչեմք զամենեսեան որք* || *հանդիպիք սմա՝ զինչ կերպիւ և*
*իցէ։ Յիշեցէ՛ք պաղատանօք յաղօթս ձեր՝ զպատուական կրօնաւորն,*
*զ*Պօղոս *աբեղայն։ և զհայրն իւր զՔօչբէկ՝ և զմայրն իւր* զՋօհար։ *և*
*զքուերսն իւր. և զամենայն ազգակիցսն, և զամենայն արեան մերձա-*
*ւորսն. և զերախտաւորսն։ Դարձեալ՝ յերեսս անգեալ աղաչեմ։ յի-*
*շեցէք ի Քրիստոս զանպիտան գրիչս* զՅովանէս *քահանայ։ և զ*Մկըր-
տիչ *քահանայ, զհա՛յրն իմ ըստ մարմնոյ։ և զծնօղն իմ որ է մայրն։*
*և աստուած որ առատն է ի տուրս բարեաց. ձեզ և մեզ ողորմեսցի*
*առհասարակ, ամէն։*

*Արդ՝ գրեցա՛ւ տառս այս ձեռամբ յոքնամեղ և անարհեստ գրչի* Յովանէ՛ս *սուտանուն քահանայի։ ի* Խիզան *քաղաքի, ընդ հովանեաւ սրբուհւոյ Աստուածածնիս։ և քա՜ջ զօրավարացս, Սարգսի՛ և Գէորգեայ։ ի Թուականիս Հայոց՝* ՊԾԶ.*(1407)։ ի հայրապետութեան, տեա՛ռն* Դաւթի Աղթամարեցւոյ: *եւ ի խանութիւնն* Ղարա Յուսուֆի *Թուրքի։*

*Արդ՝ աղաչե՜մ զամենեսեան որք հանդիպիք սմայ։ Թողութեան գրոյս և սխալանացս անմեղադի՛ր լերուք՝ զի կա՛ր մեր՝ այսչափ էր։ Ես* Պօղոս *կրօնաւոր, որդի՛* Քօչբէկի։ *ետու զՅայսմաւուրքս,*

ի սուրբ ուխտս, որ Գամաղիէլ կոչի։ Որ է ի գաւառիս Հիզանայ,
և ի վիճակ սորայ։ յորում և բնակութիւն իմ, ա՛ստ է։ Ցառաջնորդութի՛ւն սուրբ ուխտիս, Ներսէս վարդապետի՝ և Ստեփաննոս եպիսկոպոսի, և Դաւթի։ Եւ ի հայրապետութեան, Նորի՛ն Ստեփաննոս
եպիսկոպոսի, որ և զառա՛ջ գրոցս՝ նա՛յ գրեաց մինչ Ժ. (10) տետրն։
Ցիշատա՛կ մեզ, և ծնողաց մերոց՝ և ամենայն արեանառուաց։ Վկայութեամբ սիրելի հօրս՝ մեր ծերունի վարդապետիս Ներսէսի։ և առաջի՛ն պատճառի բարեացս այս հոգևորի՝ Ստեփաննոս եպիսկոպոսի։ և
Դաւթի եպիսկոպոսի։ Որ կարդա՛ն և յիշատակեն զմեզ, և զմերսն՝ ի
գո՛ւոն սուրբ եկեղեցւոյս Գամաղիէլի։ զի ո՛վ ոք որ յիշէ զմեզ. յիշեա՛լ լիցի յանմոռաց գո՛ւթն Քրիստոսի։ զի որո՛վ չափով չափէք՝ ձե՛զ չափեսցի յարդարամէտ կշռիւն Քրիստոսի։ Իսկ ի փոփոխմա՛ն ժամանակի։
մի՛ ոք իշխեսցէ զսայ յետ իմ. ի՛ւր սեփհականել։ ծախել, կամ հանել ի
դրանէ սուրբ ուխտիս։ Բայց եթէ ի խռովութեան ժամանակի, խնա՛մ
530 ա տանի սմայ՝ և | | | և ի խաղաղութեան ժամանակին, դարձեա՛լ
դարձուսցէ ի սուրբ եկեղեցիս։ ա՛յնպիսին. ի Քրիստոսի բերանոյն.
զերանաւէ՛տ ձայնն լսէ որ ասէ։ եկա՛յք աւրհնեալք հօր իմոյ։

Այլ ե՛ս անարժան գրիչս Յովանէ՛ս սուտանուն քահանայ։ աղաչեմ զձեզ՝ զի իմաստութեա՛մբ ընթեռնուք զյիշատակարանս սուրբ
վկայիցն Քրիստոսի։ Զի և ես՝ ո՛չ անփոյթ արարի վասն սակաւ՝ ի
պարգևատուէ՛ն աստուծոյ։ Զի թէպէտ վասն ա՛յլ բանից աստուածայայտնութեաց որ ի սմա՝ անհա՛ս գտայ։ այլ վասն կետից՝ սակա՛ւ ինչ
իմացեալ ուղղեցի։ Զի է՛ բան՝ որ մի՛ով կետիւ կատարի։ Եւ է՝ որ
երկո՛ւք։ Է. որ երի՛ւք և չորիւք։ Արդ՝ ե՛ս զգուշացա՛յ։ զի եդի՛ զկիսակէտն։ և զմիջնակէտն, և զհետի՛ն կէտն։ որ է՝ երկո՛ւ կէտ։ Ո՞վ եղբայր իմ և լո՛յս աչաց։ դու ա՛յսպէս իմացիր։ զի յորժամ զմի՛ բանն
սկսանիս՝ մինչ յա՛յն որ Բ. կետէ ի մի՛ն տեղի. մի՛ հանգիր։ քե՛զ
օրինակ առ։ զի յորժամ ոք՝ ի հեռաւո՛ր տեղւոյ գնայ ի տեղի՛ իւր և ի
տուն, և ունի զինքեամբ շալա՛կ կամ պաշար։ Թէպէտ հանգիստ
առնու ի ճանապարհին։ ո՛չ է կատարեալ հանգիստ՝ մինչև ի տո՛ւն
իւր հասանէ։ Սո՛պէս և դու մինչ՝ ո՛չ կատարի բանն. մի՛ հանգչիցիս ի կետն։ այլ ի կէտն, և ի կիսակէտն՝ ի կա՛խ կալ զբանն. մինչև հասանիցես ի տո՛ւնն։ Եւ տունն՝ Բ. կէտն է։ Իսկ գլխագիրն. ա՛յն

է, որ զբանն ի բանէն բաժանէ՛ ։ որ ի կարգ բանին չերթայ բանն որ ի գիրս՝ այլ նո՛ր բանն որ ի գիրս՝ այլ նո՛ր բան ցուցանի որ չէ ըստ կարգի այնմ բանի։ Եւ ես անարժանս յամենայնի Յովանէս՝ իմացայ զայս և այնպէս արարի. Նախ, կէ՛տ եդի ի մէջ բանին։ և ապա կիսակէտ և ապա կատարեալ կէտ։ որ է, Բ. կէտն։

Արդ, ո՛վ եղբայր։ Թէ դու այնպէս աշխատիս և ուսանիս։ լուսաւորի՛ս մտօք շնորհօքն աստուծոյ և լուսաւորե՛ս զլսօղսն։ Վասն որոյ՝ մի՛ անմտաբար համարիր զկէտն որ ի գիրս յայս։ Զի խանգարի՞չ է այնպիսին սուրբ գրոց՝ որ ոչ գիտէ դնել զկէտն, և զկիսակէտն, և զմիջակէտն, և զտո՛ւնն։

Եւ ես, այնպէս արարի աստ։

530 Եւ թէ սխալ գտանես՝ եղբայրաբա՛ր ուղղեա։ Զի և ես զորս գտի սխալ ի կէտսն՝ քերեցի՛։

Իսկ արդ, ո՛վ հոգի իմ և քաղցրիկ եղբայր. իմացի՛ր և զայս։ զի զխո՛ւնջն որ եդի ի սմայ զխոնա՛րհ և զքա՛ղցր բանն ցուցանէ։ Եւ բե՛րն որ ի սմայ և դի՛.ր ի միջին՝ զլալական և զողբումն բանից ցուցանէ։ և զա՞րկն. զդիմադարձից և զո՞չ լինելոյ բանից. Եւ այսպիսի՛ զա՛յն ցուցանէ։ որպէս ասէ ոք թէ ո՞չ լսես ինձ՛ ես տաց զքո ջազայն։ Եւ զա՛յն ամենայն իմացիր, և լուսաւորի՛ս հոգւովս սրբով։*

Պարտ է պատմել զբան աղետիս,
  զդառնութիւն ժամանակիս,
  որ գործեցաւ յետին դարիս,
  որ և գրեցաւ բան սուրբ տառիս։
Ահա եղև խաւար երկրիս,
  Ղարա-Յուսուֆի չար համբաւիս,
  որ է պարոն Թուրքըստանիս,
  Խրոխտ և անյաղթ յայս աշխարհիս։
՚Ի իւծեալ բեկէ զմէջս ամենից,
  ի Մէրդընայ սկսեալ բերդիս,
  մինչ ի քաղաք Թավրէժ տեղիս.
Ղեղի արբոյց դառն վշտիս,
  գնալով ի տուն Վըրաց ազգիս,
  լըցաւ Թունօք նըման իժից,

* Յովանեսի գրչի օգտագործած կետադրական նշանները նույնությամբ վերարտադրելու հնարավորություն չունենք, ուստի հրատարակում ենք հիշատակարանի մի հատվածի լուսանկարը, որտեղ օգտագործված են նրա կողմից կիրառվող համարյա բոլոր նշանները (տես նկ. 4)։

Նկ. 4. Մի հատված Յովանէս գրչի հիշատակարանից

մահացոյց զա[զգս՞] քրիստոնէից։
Ուստի առեալ բազում գերիս՝
հնգետասան հազար ի Թիւս,
և հինգ հազար սպաննեալ յանգիս,
չարչարանօք ազգի-ազգիս։
Սուր մերկացաւ վաղակաւոր,
խոցեաց զսիրտս մեր բոլոր,
քանզի հեղին արիւն յորդոր
ըզսուրբ մանկանց Սիոնի Նոր։
Ի հարկի տեառն փառաւոր,
յեկեղեցի խորհրդաւոր,
բորբոքեցին հուր զօրաւոր,
որք այրեցան կըտոր-կըտոր։

Ամուր բերդեր արձանուոր,
  և քրիստոնեայք անգ փառաւոր
  ի միասին բոցով յորդոր
  այրեալ եղեն որպէս փայտ չոր.
Ղամբարապէս նմանապէս
  լուցաւ հըրով երկիրն բոլոր,
  Որպէս գառինք եղեն մոլոր
  ի մէջ գայլոցն պատառող,
Ելեալ հրաման Նեռինըն նոր,
  բղխեաց ըղըրանն որպէս ըղըրոր,
  Թէ որ սպանանէ՝ բան է շնոհւոր,
  Երթա առ հաղըն փառաւոր։
Բամք հաւատով սուրբ միաւոր
  բազումք բարի գործովք աղւոր
  ըսփոեալ եղեն յաշխարհ մոլոր,
  Խնդրել զգերիոն, որք խոցեալ խոր։
Սիրտ չիմանայ դիբաց այս որ
  զինչ գործեցաւ բան ահաւոր,
  չկարէ պատմել ճառըս բոլոր,
  զխիղճ և զաղէտ կըսկըծաւոր։
Իսկ ի յերկիրըս Խիզանայ
531 ա  Նոր հը | | | ձայն գուժոյ գոյ,
  որ ի [յձզ]գէն իսմայելայ
  արիւնախանձ | | | զօրանոյ։
Ցարիւն չխնայեն | | | ոյ զինչ կայ,
  չասեն թէ կին և [թէ ա]ղոյ,
  զամէն խոցեն ի յանխը[նոյ],
  որ ցաւ վիրին չառողջանայ
[Վայ և] եղուկըն շատանայ
  քրիստո[նէից ազ]գի, որ կայ,
  հացըն մոխրի. համ [ունե]նայ
  զջուրն արտասուօք ըմբեն | | |
Արդ, ի յաւուրքս չար, որ տե[սայ]
  յետինս Գօղոս աբեղայ,
  յայնժամ [բ]անս այս խորհեցայ,
  կազմել սեղան [սուր]բ, որ Ցեայ։
Նոր Սիոնի մանկունք զինչ կայ,
  ի գիրքս ես շատ աշխատեցայ,
  զի սուրբ զաւակ լիցի ինձ սա,
  և յիշատակ անջինջ մընայ։
Ի յաշխարհի տուն ոչ ստացայ,
  արծաթ ՚ւ ոսկւոյ ոչ ցանկացայ,
  ոչ մարմնաւոր ինձ ժառանկ կայ,
  և զմարմնոյս փառք չկամեցայ։

Սիրտիւ ի յայս յօժարեցայ,
զտառս ի Սիոն զաւակ ուսայ,
և լի սեղան որ չԹերանայ,
յուսով զայս տալ ձեզ ցանկացայ.
Է աչքս յասսուած 'ւ ի ձեզ անա,
ասել սրտիւ տէր-ողորմեա,
ինձ և ծնողացն, որ գրեալ ի սմա,
և զինչ արեան մերձաւոր կայ...։*

Բ

250 ա Որ հեռաւորդ անչափելի,
Մօտեորեալ անմեկնելի,
Եւ Թագաւորդ ամենայնի
Առէր ըզկերպըս ծառայի,
Այժմ Նայես յաղերս բանի
Լեր ունգնգիր խոնարհելի,
Եւ տուաջնորդս այս սուրբ ուխտի
Կցորդ փառացդ արա մեծի,
Զվարդապետս մեր բարի,
Որ և Ներսէս անուն կոչի։
ԸզՍտեփաննոս ընդ տէր Դաւթի՝
Զեպիսկոպոսքս նազելի,
Եւս և զստացող այս սուրբ տառի,
Որ և Պօղոս անուն կոչի,
Եւ զիւր ծնողսն որ ըստ մարմնի,
Զհայրն Քօչիկ՝ ընդ Գօճարի,
Իսկ և զգծողս այս եղկելի,
Որ չեմ յիշման իսկ արժանի,
Եւ զՄկրտիչ հայրն իմ բարի,
Եւ զմայրն յիշման տուք արժանի...։

Գ

533 ա Տւել է ինձ գրելէ գրոցս ՍՃԾ. (2150) դր[ամ] և Զ. (6) կապիճ հաց, որ | | | էր կապիճն, Ա. (1) լիտր եղ, Բ. (2) մեղր։ Զորս ՆԾ. (450) իւր ասելովն եպիսկոպոսին է տւել, այդ ՉԾ. (600)՝ իմ տվածովն դր[ամ] ընդտ[մէնն]. ԲԾ. (200)կոկելէն, ԲԾ. (200) էլ ցորենն՝ ԳՌ. (3000) գայ ընդամէնն։**

* Տների սկզբնատառերով հոդվում է հետևյալը՝ «Պաւղոսի աղերս ի Ց[ո]վանիսէ»։
** Հիշատակարանը դիտավորությամբ ջնջված է, երկար աշխատանքից հետո միայն հնարավոր եղավ վերծանել ամբողջը (բացի երկրորդ տողից մի քանի տառ)։ Վերծանության ճշտությունը ստուգվում է այսպես. պատվիրատուն ձեռագրի համար վճարել է 2150 դրամ ընդօրինակողին, 450 դրամ եպիսկոպոսին, 200 դրամ կոկելու վարձ և 200 դրամի արժողությամբ ցորեն, ընդամենը 3000 դրամ, այսինքն ճիշտ այնքան, ինչքան ասում է ինքը գրիչը՝ «ԳՌ. (3000) գայ ընդամէնն»։

## 73

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երևան ․072 և 5740

Հեղինակ՝ Գրիգոր Տաթևացի

231 ա ...Արդ, ես՝ թաղծեալս մտաւք և ցաւագին անձամբ, վերջինս ի ծնունդս եկեղեցւոյ և տրուպս բանասիրաց փութոյ Գրիգոր պիտակ անուն խնդրող բանի հաւաքեցի ձեռամբ իմով զգիրքս քարոզողաց ի ստորասուզեալ ժամանակի թուաբերութեանս մեծի ութհարիւրի յի- սուն և վեցերորդի ամի (1407), ընդ հովանեաւ դրան սուրբ առաքե- լոյս Եւստաթէի։

Եւ եղև պատճառ սորա յերից։ Նախ՝ հարկեցեալ յեղբարց հա- մաշունչ աշակերտաց. երկրորդ՝ զի ոչ գոյր գիրք քարոզաց* մերո վարդապետաց, բայց միայն խորին ասացուածք. և երրորդ պատճառ, զի ես տարտամ հոգւով և ծոյլ մարմնով ոչ կարացի բազմաց քարոզել, վասնորոյ հնաբեցայ զգիրս քարոզաց*, զի և ինձ մասն լիցի ընդ ձեզ բարեաց։ Զի նախ քան զայս լինէր յերից միոյն՝ կամ ոչ քարոզել, կամ դժուարութեամբ աշխատել, կամ զայլոցն առեալ՝ անպարկեշտ քարո- զել։ Որ և յերկուս հատորս արարի վասն դիւրութեան՝ զմինն ձմե- րան և զմիւսն յամարան, որպէս և տեսանէք։ Առաջինն ի ծննդե- նէն սկսեալ և կարգաւ ի յարութիւն տեառն կատարեալ, երկրորդն ի համբարձմանէն**սկսեալ և յերկրորդ գալուստն*** աւարտեալ։ Այսպիսի իմն կարգաւ. Նախ՝ յաւբինացն հին և ապա ի նորս շնորհաց, ուխտանց առաքինութեանց, և խորհրդոց եկեղեցւոյ, և ամենայն մեղաց, և հա- սարակ բոլոր և մասնաւոր ապաշխարութեանց, և ապա ի կարգս տաւնացուցից յարմարեալ։ Որոց առաջին հատորն ունի քարոզս ՃԿ. (160) թուով, և երկրորդն՝ նոյն չափով՝ սակաւ ինչ յաւելեալ։ Է և այլ ուրէք՝ ի Բաղուածոյս սաղմոսացն, և յԵսայայն, յԱռակացն և յԵրգոցն Աւետարանն, և յԱռաքելական քարոզն և բանք գլխա- 231 բ ւորք։ ‖ Իսկ այն որ Յօբին և յայլմէ վերագրեալն է, զի հատկացին ի միմեանց և մի դողացեալ թուեսցին ախմարաց մտաց։ Եւ յայլմէն ես պիտանին և բարին ընտրեալ և զաւելորդն խոտեալ։

Արդ, աղաչեմ ի խորոց սրտից առ համշփրակ դասդ սրբազանից, որ բազում մաշխատութեամբ դիւրացուցաք ձեզ զբանս քարոզութեան, և զուք խնդրեցէք դիւրութիւն մեզ յիշմամբ ձեր ի տէր, զի յուսով հաւատամ ի մարդասէրն կամաց, ի ձեռն խնդրոյ ձերոյ մաղթանաց, ներումն շնորհել բազմաթիւ մերոց յանցանաց։

Այլ և վեհին իմոյ պետի՝
Ազգիս հայոց մեծ հռետորի
Յովհաննու մակ Որոտնէի՝
Կանխեալ ի սէրն սիրելի,
Բարեաց ի սմա յիշեալ լիցի,

* № 5740 ձեռագրում «քարոզողաց»։
** № 5740 «ի հոգոյն սրբոյ գալստենէն» փխ. «ի համբարձմանէն»։
*** № 5740 «Գալուստն Քրիստոսի և յաւագ տաւներն»։

Ցանդերձ ծնօղօք իւր կրկնակի.
Այլ և զծնօղսն վիժածիս
Եւ համաւրէն ազգատոհմից,
Որ ըստ հոգւոյ եղեն վարժիչ
Կամ ըստ արեան կցորդակից։
Նախ՝ քեռորդւոյն իմ ըստ մարմնի,
Ծնրնդամիա երգարանի՝
Առաքելոյ առաքինի,
Եւ Սիւնական գլուխ արհի,
Եւ նորաբոյս քահանայի՝
Նախ ի Քրիստոս կոչեալ լինի՝
Նորին եղբաւրն՝ Բաքսղի՝
Բարեաց մասին յիշեալ լիցի.
Այլ և գրոյս այս խնդրողի՝
Յակոբ բաբուն համշիրակի,
Ի տանէ Գողթնեայ, ի Բուստ բնակողի,
Որոյ յիշատակն աւրհնութեամբ լիցի.
Եւ զՀերապետ միայնական,
Որ նա եղև մեզ աւգնական,
Հոգալ զպէտս մարմնական
Աշտկերտաց մերոց լըման,
Ցիշման ի տէր լիցի արժան
Մասին բարեաց ողորմութեան։
Եւ համօրէն վաստակողաց,
Ի սրբագիրս աշխատողաց
Որք առաջին և ի վերջին
Ի կենաց գիրն արձանասցին։
Աշխոյժ մտօք ընթերցողաց
Եւ բարեսէր ունկնդրօղաց
Եւ զօրինակն շնորհողաց
Եւ ուղղիչն սխալանաց,
Ընդ քանքարին շահեցողաց
Ժառանգեսցեն պարգևք բարեաց.
Որ և մաղթեմ յամենայնի
Զգաղափարօղդ տւրինակի
Գրել զգիրս յիշատակի
Ձեռամբ ձերով ի քարտիսի,
Եւ դուք ի գիրն կենդանի
Լիջիք գրեալ անջնջելի.
Եւ յուսողացս և յիշողացդ
Այլ և զամէնն ասացողաց
Առհասարակ տեառնէն բարեաց
Հազորգեսցուք մասին շնորհաց,
Որում պատիւ և սրբասաց

Ի յերկնայնոց ու յերկրաւորաց՝
Հանուրց գոյից և ի մասանց,
Այժմ և յանկէտ ժամանակաց,
Ամէն, եղիցի։

## 74

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

**Երևան 3104**

Գրիչ՝ Թումայ
վայր՝ Տաթև

358 բ . . . Ի թվաբերութեան Հայկազեան տոմարի Պ.-երորդի Ծ.-երրորդի Զ.-երորդի (1407) գրեցաւ և յանկ ելեալ աւարտեցաւ մատեանս աստուածային, որ կոչի Հարցմունք, ի նահանգիս Սիւնեաց, ի յիշխանութեան տանս մեր պարոն Սմբատայ և հարազատի իւրոյ պարոն Բիւրթէլի; որդիք Իւանէի, որդոյ մեծին Բուրթէլի, որ յՕրպէլեանցն, բնիկ հայկազնիք. ի մեծ և ի գերահռչակ ուխտիս և հրեշտակաբնակ սուրբ մեծաստանիս ի վանս Ետաթէի սուրբ առաքելոյս, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Լուսաւորչիս, և աստուածային արեամբ ներկեալ սուրբ Նշանացս, և այլ բազում նշխարաց սրբոց, զոր աստ կան ժողովեալ։ Առ ոտս երջանիկ և երից երանեալ բազմերախտ հօրս մեր և երկրորդ արփիաւորչի հայկազեանս սեռի Գրիգոր քաջ հռետորի և աստուածաբան վարդապետի, զոր յայս դառն և խաւար ժամանակիս իբրև զարեգակ ի մէջօրէի պայծառացեալ լուսաւորէ զեկեղեցի, ոչ ունելով հանգիստ մտաց և ոչ մարմնոյ, քանզի
359 ա հանէ զգիշերն ի գլուխ յաղօթս աստուծոյ ի յարտ || ասուս բազմահոսս և լնու զկարօտութիւն բազմութեան եղբարցս, որ առ ոտս սորա են ժողովեալ, այլ և զբոլոր ազգիս, միշտ գնալով ի մէջ այլազգեաց մեծամեծաց և փոքունց, զի ոչ գոյ իշխան և առաջնորդ բաց ի սմանէ, զոր տէր տացէ զհաստուցումն բարի։ Եւ լուսաւոր մտօք շրջելով ի բուրաստանս հոգեբուխ և ի մատեանս աստուածայինս, քաղելով ի յայտ զծածուկս խորինս ըստ տուեցելոյ շնորհացն նորա։ Եւ ոչ միայն այս, այլ և նման անարիւն թռչ[ն]ոյ, որ շրջելով ի տեղիս զանազանս և ի ծաղիկս ազգի ազգի, բերէ մեզ ճաշակս քաղցրահամս և գեղս բժշկաբարս, նմանապէս և մեծս այս, մտօքն երկնաճեմ շրջելով ի հինս և ի նորս, այլ և յարտաքին գիտութիւնս և ժողովելով զօգտակարն՝ կազմէ պսակս լուսաւորս ի գլուխս մտնկանց եկեղեցոյ և վահան ամրութեան ընդդէմ այլադաւանն տոհմի, և զայս միշտ առնելով և անդադար ուսուցանելով լուսաւորէ զեկեղեցի, զոր և կացցէ, մնասցէ սա իբրև զջահ լուսատու ի մէջ եկեղեցւոյ և արժանի լինիցի լսել, եթէ՝ Ազնիւ ծառայ, որովհետև ի փոքուս հաւատարիմ ես՝ ի վերայ բազմաց կացուց[ից], մո՛ւտ յուրախութիւն տեառն քո։

Եւ ի բազում վաստակոց սորա մինն գիրքս այս, որ է Հարցմունք անուանեալ, զոր ցանկացա սմա յետնեալս յամենայն եղբարցս մեզօքս մեռեալ Թումայ անուանեալ, զոր յոյժ ծարաւեալ, առ ի զովացումն անձին իմոյ և ի լուսաւորութիւն մտաց իմոց։

Արդ, ես Թումայ՝ տկարս և անվարժս, ոչ գոլով հմուտ արուեստիս, պիտակ աշակերտ, ապաւինեալ յայն որ զտկարս զօրացուցանէ, տկար մարմնով և դողդոջ ձեռօք սկսեալ, աղօթիւք սրբոց և ողորմութեամբն աստուծոյ աւարտեցաւ, ոչ հարեանցի ե կամ վեր ի վերոյ, այլ յոյժ փափաքմամբ և մեծաւ ջանիւ, օգնականութեամբ և կամակցութեամբ մեծիս իմոյ և կրկին ստացողիս Գրիգոր աստուածունակ պւէտի, ի լաւ և յընտիր օրինակէ։

Եւ այսմ ամի, վասն բազմացեալ մեղաց մերոց, եղև աստուածասաստ խռովութիւն, թէպէտ պատիժ, սակայն վասն սիրոյ, զի զոր սիրէ տէր՝ խրատէ։ Զի եղև կրկին պատուհաս. առաջին՝ շարժ ահագին, զի շարժեցէ զչարս ի բարի, որ և խնայեաց ի մեզ, թէպէտ ոչ բստ արժանեաց, սակայն յաղթեալ ի սիրոյն. երկրորդն՝ մահ տարաժամ, որ յոյժ տրտմեցաք, զի իշխան մեր Բիւրքէլ կոչեցեալ՝ ի Քրիստոս փոխեալ, մանկտմ[բ]քն ծաղկեալ։

359 բ Արդ, աղաչեմ զամենեսեան սիրովն Քրիստոսի, որք հանդիպիք սմայ կարդալով կամ գաղափարելով, յիշեցէք ի յերկնաթռիչ յաղօթս ձեր զգծօղ սորա զԹումայ՝ հանդերձ ծնօղօք և ամենայն արեան մերձաւորօք։ Եւ զիս՝ զանարժանս յամենայնի, մի՛ մոռանայք, այլ պաղատանօք հայցեմ, զի խնդրեցէք թողութիւն բազում յանցանաց իմոց, և ծնօղաց մերոց, և ուսուցչաց, սխալանացն ներեցէք, զի կար մեր այս էր, և նա, որ առատն է ի տուրս բարիս ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յուսողացս, առհասարակ, ողորմեսցի յօրն աներեկ և յանաչառ դատաստանն, ուր բանք սպառին և գործք միայն թագաւորեն, ամէն, ամէն և եղիցի։

Բ

251 բ Զաւարտումս ի բարեաց գործոց, զվաքանեալս ի յամէն կողմանց, զմեղուցեալ գծողս զԹումայ Թափառականս, ո՜վ սուրբ եղբարք, յիշեցէք ի զենեալ գառն, և զծնօղսն իմ՝ զՄարգիրոսն ի Քրիստոս հանգուցեալ, և զԱրև-Տիկին՝ բազմերախտ մայրն իմ, աստուած զձեզ յիշէ, ամէն, եղիցի, եղիցի։

75

ԱԻԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 24

Գրիչ՝ Մաթէոս վարդապետ
վայր՝ Տաթև

266 բ . . . Արդ, գրեցաւ աստուածաշունչ սուրբ աւետարանս ի լաւ և ընտիր աւրինակէ, ի գերահռչակ սուրբ մենաստանս ի վանս Եւստա-

թէի սուրբ առաքելոյս, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Լուսաւորչիս, և այլ բազմագումար աստ ժողովելոց սրբոց, ի յառաջնորդութեան և տեղակալութեան սուրբ աթոռոյս Գրիգորի քաջ հռետորի՝ արթուն բաբունապետի և անյաղթ փիլիսոփայի, տրի ախոյանի ընդդէմ չարափառ և քրիստոսամարտից դասուց և յորդորիչ և հաստատիչ և յաւրինիչ ուղղադաւանիցն խմբից...։ Ձեռամբ նուաստ և անարհեստ գրչի՝ Մատթէոս պիտակ անուն վարդապետի, և Գրիգոր վարդապետի, և Եղիա վարդապետի։ Եւ ըստ իշխանութեան տեղոյս ի բարի զարմից ծագելոց ի վաղընջուց իշխանացն պարոն Սմբատ, ամենաւրհնեալ զաւակօք, զօրօք և ամենայն հնազանդ[ելովք]։ Եւ ոմն ցանկացեալ խնդրեաց զաստուածագիծ տառս . . . յիշատակ անջինջ իւր՝, Մըմբարաէշահին, և ծնօղաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց, և երախտաւոր հոգևոր հօրն՝ Քրմանշահին, և մօրն | | | ...։ Եւ եղ գրել՝ ի թուականութեանն Հայոց ութհարիւրերորդի յիսներորդի և վեցեակ թուի (1407), ի դառն և ի նեղ ժամանակիս, որում ազգն նետողաց անջինջ կորաւ և փոխանորդ նորին իշխեց աթոռոյս Ատրպատականի թորգոմածին Ղարա-Իւսուֆ անուամբ, որ և մարտեաւ երկու անգամ և յաղթահարեաց զոմն ի թոռանց չար գազանին Թամուրին, չարաբարոււ, ահեղատեսիլ և չարասիրտ, անուամբ Աբ[ու-Բ]աքր. եւ այն ևս ի վերին խնամոցն ամենակարողին աստուծոյ, որ ազատեաց աշխարհս ի յայն անիրաւ խնդրողացն, որ և զամենայն ազգ և զամենայն լեզու ի ներքոյ նոցա հնազանդ և գերի կային,· որում ազատեաց զմեզ փրկիչն Յիսուս Քրիստոս, որում փառք յաւիտեանս, ամէն։

Արդ, յերեսս անկեալ աղաչեմ զամենեսեան՝ զհանդիպողսդ տեսութեամբ և զղձալի ընթերցողսդ և զգաղափարողսդ աստուածային կտակիս այս՝ յիշել եռափափագ ջերմեռանդ սիրով և սրտի մտաւք ի մաքրափայլ յաղօթս ձեր զվերոյասացեալ ստացօղս սորա՝ զՄըմբարաքշահն և զամենայն երախտաւորքն իւր՝ զհոգևոր և զմարմնաւոր։ Այլ և զամենայն աշխատողք սուրբ աւետարանիս, որ շատ [և որ սակ]աւ, ի գրե[լն | | | և ի կազմել յիշեսջիք միով տէր-ողորմիայիւ ի Քրիստոս Յիսուս, և յիշողացդ և կարդողացդ և լսողացդ և աշխատողացդ, առհասարակ, ողորմեսցի Քրիստոս յոյսն ամենեցուն, և որ զամէնն ասէ, ամէն, եղիցի։

76

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9223, թ

Գրիչ՝ Մատթէոս վարդապետ
վայր՝ Տաթև

ա

. . . Արդ, եղև զբաւ սորայ գծագրութեան յամի ութհարիւրերորդի
2ա յիսներորդի վեցերորդի հայկազեան տումարի (1407) ‖ [և յիշխանու-

թեան] մերումն նա[հանգի Ամբատի և° | | | Բու[րթէլի°]։ Յառաջնորդութեան վիճակիս մերոյ տանս Սիւնեաց և տեսչութեան բարունակ գործոյ Գրիգորի՝ առն սքանչելոյ, որ է լցեալ և յղփացեալ իմաստիւքն ճոխութեամբ. յորոյ և բազում թելադրութենէ եղև զրաւ այսմ աւետարանի. և եպիսկոպոսութեան տէր Առաքելոյ քեռորդոյ նորա, և իմոյ անձին տկար Մաթէոսի սուտանուն կեղծաւորի և Գրիգորի պիտակ աշակերտի, որ և ստոյգ գլուխ եմ մեղաւորաց, որ ի չար ժամու եղէ քաղաքապետ եկեալ ի սուրբ ուխտս Եւստաթէի։ Ընդ հովանեաւ երից ընտրեալ եկեղեցեացս՝ սուրբ Առաքելոյս, և սուրբ Աստուածածնիս, [և սուրբ Գր]իգորի, յորոց թևուք [ձեռն]արկեցի և էածի կատար | | | իմ։ Եւ ոչ տրար զիս | | | կոբեալ և զաշխատա | | | եալ։ Եւ խոշորութեան [գրիս] անմեղադիր լինել աղաչ[եմ, զի այս չ]ափ էր կար մեր։ [Եւ աղա]չեմ զամենեսեան | | | պաղատիմ արտասուալից գիմաւք | | | զընթերձողդ այսմ աստուածային տառիս, յիշեսջիք ի բոլոր սրտէ զՅովէլ քահանայ՝ ստացաւղ սուրբ գրոցս, և զհանգուցեալն ի Քրիստոս Մխիթար քահանայ, և զԲարսեղ քահանայ՝ պապ և հայր գոլով սորա, և հարազատ եղբայրն սորա զԴանիէլ՝ փոխեցեալն առ Քրիստոս, և զՍիմէոն եղբաւրորդի սորա, որ բազում աշխատեցաւ յառաջին գլուխ գրոցս, և զմայր սորա Քնար կոչեցեալ, և ամուսնոյն իւրոյ Խուլուբի, և դստերն իւրոյ Մինա-Խաթունայ, և զամենայն արեան մերձաւորսն....

Բ

Ստացող՝ Յովանէս

Եւ ես մեղաւոր և անարժան սուտանուն քահանայս Յովանէս
2բ ստացայ | | | աւ]ետարանս յիշատակ ինձ, քանզի անզաւակ գոլով իմ հասա ի ծերութիւն, յուսացայ ի Քրիստոս և ի հրամանքն որ ասէ, թէ՝ Երանի որ ունի զաւակ ի Սիոն և ընտանի յԵրուսաղէմ։ Եւ արարի զսուրբ աւետարանս յիշատակ ինձ և ծնողաց իմոց՝ մեծ աստուածաշնորհ վարդապետին Գոշին, որ եմք յազ[գ]է նորա, և պապին իմ Մխիթար քահանայի, և հաւր իմոյ Բարսեղ քահանայի, և մաւր իմոյ Քնարին, և ամուսնոյն իմոյ Խուլուբի, և դստեր իմոյ Մինախաթունին, և եղբաւր իմ Դանիէլի և Մուսիէլի, և եղբաւրորդոյ իմ Սիմէոն քահանայի, որ զՄաթէոս գլուխն գրեաց, և հաւրեղբաւր իմ Սարգսի, և Ստեփանոս սարկաւագի, և քուերաց իմոց Եղիսաբեթի և Տիրամաւր, և համաւրէն ամենայն ազգականաց իմոց, և Մաթէոսի գրոց աշակերտի, որ բազում աշխատութեամբ գրեաց զսայ, և հոգեհեզ և հաւատարիմ նաղաշին՝ Հայրապետին, որ բազում աշխատանաւք նաղաշեաց զաւետար[անս | | |

Եւ եթէ յետ վախճանի իմոյ ով ոք հանել ջանա և ա | | | նով ի թոռանց իմոց, կամ յիմոց, կամ յաւտարաց, կամ եպիսկոպոս, կամ վարդապետ, կամ երէց, կամ աշխարհական՝ մասն և բաժին զՅուդային առցէ և զԿայենին և զխաչահանուացն՝ յահաւոր ատենին Քրիստոսի, որում բանք սպառին և գործք մարդոյ միայն թագաւորեն, և Քրիստոսի փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## 77

### ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

*Երևան 9247*

Գրիչ՝ Թովմայ Մեծոփեցի
Վայր՝ Տաթև-Մեծոփայ վանք

ա

401 ա *...Արդ, գրեցաւ աստուածային այս մատեան ի յաւարտումն*
*կատարման եւթն և տասներեակ յոբելինին, ի սկիզբն պսակելոյ մտի*
*վեցերորդ ամաց յաբեթական տումարի, որ է ՊԾԶ. (1407), ընդ հո-*
*վանեաւ երկնահանգէտ մեծարգոյ ուխտի* Սիւնեաց *նահանգի առաքե-*
*լական աթոռոյ՝ սուրբ Առաքելոյս, և մօրս լուսոյ Աստուածածնի, և*
*սուրբ Գրիգորի. առ ոտս մեծ վարժապետի, քաջ հռետորի և անյաղթ*
*փիլիսոփայի արթուն անուն* Գրիգորի՝ *արարողի այսմ սուրբ արգա-*
*սաւորի, որ իբր զարեգակն պայծառ փայլէ ի մէջ Հայաստանեայց*
*եկեղեցւոյ և լուսաւորէ իմաստութեամբ և գիտութեամբ առհասարակ*
*զամենեսեան՝ զմերձաւորս և զհեռաւորս, և կարկէ զբերանս երկա-*
*բնակ հերձուածողաց. զոր և տացէ զսա տէր աստուած եկեղեցւոյ*
*իւրում երկայն աւուրբք մինչ ի խորին ծերութիւն։ Եւ ի յիշխանու-*
*թեան տեղւոյս աստուածասէր և բարեպաշտ իշխանիս* Սմբատայ, *որդ-*
*ւոյ* Իւանէի, *թոռին* Բուրթէլի, *զոր պահեսցէ զսա տէր աստուած ան-*
*ալէկոծ կենօք յամենայն փորձութեանց՝ ծաղկեալ զաւակօք իւրովք։*
*Ձեռամբ անարհեստ և անիմաստ սխալագիր գրչի՝ ամենավերջ և*
*նուաստ ոգի անձին* Թովմայի, *ըստ յօժարութեան կամաց և ոչ ըստ*
*գործոց գրոց աշակերտի, զոր ես ինձէն ստացայ զսա դատախազ*
*տարտամ առողս տաղանդին, ի յիշատակ բարի իմում անձին հիքա-*
*կանի և որոց գթացին ի կեանս մեր, մանաւանդ հոգևոր հօր իմոյ և*
*ուսուցչի* Մատթէոս *կրօնաւորի, և ծնողաց իմոց հանգուցելոցն ի Քրիս-*
*տոս՝ հօր իմոյ* Ստեփանոսի, *և մօր իմոյ* Շամշի, *և հօրեղբօր իմոյ*
Մկրտիչ *կրօնաւորի, և եղբարց իմոց հարազատաց՝* Յովհաննէս *քահա-*
*նայի, և* Յովանիսի, Ռըստակիսի, *և* Գօրգի-Մելիքի, Ամիր-Մելիքի, *և*
401 բ Սօլթանշի, *և* Մկրտիչ *միայնակեցի, և քեռն իմոյ* Սուրաթ-Մելիքի, ‖
*նաև արժանեացն աւրհնութեան աստուածաշնորհ և երախտաւոր վար-*
*ժապետացն մերոց՝* Սարգիս *վարդապետի և* Վարդան *վարդապետի՝*
*հանգուցելոցն ի Քրիստոս։ Այլև համշիրակ եղբարցս իմոց ուսումնա-*
*սիրեալ անձանցս՝* Մարգարէ *վարդապետի, և* Յակոբ *վարդապետի, և*
Յովանէս *վարդապետի, և սիրասնունդ եղբօրս իմոյ* Մկրտչի, *աշա-*
*կերտեալ աստուածային բանին, որ բազում աշխատութեամբ և չար-*
*չարանօք նեղացաւ ի կոկել թղթիս, և այլ վեցեքեան եղբարցս, որք*
*եկեալ եմք տարաշխարհիկ ի գաւառէ* Քաջբերունոյ *վասն ուսման օգ-*
*տի. և ոչ դիպեցաւ մեզ որպէս կամք մեր էր, այլ պանդխտութեամբ*
*կացաք ի միասին ժամանակս ինչ։*

*Արդ, հայցեմք ի ճաշակողացդ յայսմ սեղանոյ յոգնօրէն և ախոր-*

ժահամ հանդերձելոյ, և աղաչանս բազմապիսիս մատուցանեմ՝ յիշատակել զմեզ և զվերոյ ծանուցեալքդ, հանդերձ ծնօղօք մերովք և հարազատօք, ի մաղթանս ուղիղս և ի պատկանաւոր խնդրուածս և սեռն սիրով՝ ի միտս բարիս. որք հանդիպիք սըմա կարդալով կամ օրինակելով և կամ սակս մասին ինչ տեսանելով՝ ներումն և թողութիւն խնդրեցէք բազում յանցանաց իմոց, աղաչեմ զձեզ, զի կար մեր այս էր։ Որով և դուք եղիջիք դրեալ ի մատեանս կենաց վերին դպրութեանն, ամէն, եղիցի, եղիցի։

Դարձեալ, յերեսս անկեալ աղաչեմք զմանկունս սուրբ եկեղեցւոյ, որք ուսանիք կամ գաղափարէք և կամ մասին սակս սմա պատահիք, վասն սիրոյն Քրիստոսի յիշեսջիք ի բարին Քրիստոս զհոգևոր զհայրն իմ և զուսուցիչ զՄատթէոս քահանայ, որ բազում աշխատութեամբ և չարչարանօք կոկեաց զթուղթս և խազեաց և զնիւթն պատրաստեաց, զի և դուք անմոռաց դրիք ի դպրութիւնն կենաց, ամէն։

Բ

344 ր Արդ, յանկ ելեալ աւարտեցաւ աստուածային կտակս, որ կոչի Հարցմունք, զի ւեթներորդ հատորն ի Տաթև գրեցաւ և Գ. (3)-ն՝ յերկրիս Քաջբերունեօյ, յանապատիս Մեծոփոյ, առ ոտս բազմերջանիկ և երանաշնորհ վարդապետի և վերադիտողի երկրիս Քաջբերունի՝ Յովհաննէս կոչեցելոյ, և երախտաւոր հօրս մերոյ, որ տածեալ խնամէ զմեզ հոգևորական սիրով և մարմնական պիտոյիւք։

Յայսմ ամի յորում աւարտեաց օգնականութեամբ աստուծոյ հզօրին զսուրբ խորանս լուսոյ Տիրամօր աստուածածնին, և կարկեալ եղեն անօրէն և չարահնար ազանդն այլազգեաց զարշելի, որ ոչ կամէին զշինութիւն սրբոյ տաճարիս։ Զոր և պահեսցէ զսա տէր աստուած երկայն աւուրբք մինչ ի խորին ծերութիւն անալէկոծ կենօք, և զյիշատակ սորա Քրիստոս աստուած պահեսցէ հաստատուն և անշարժ մինչև ի կէտ պայմանի այսմ կենցաղի, եղիցի, եղիցի, ամէն։

Թվականին ՊԾԷ. (1408)։

Գ

280 ա Զտարտամս ի բարեաց գործոց և զվարանեալս ի յամէն կողմանց, զմեղուցեալ գծողս զԹումայ Թափառականս, ո՛վ սուրբ եղբարք, յիշեցէք..., և զծնօղսն մեր՝ զհանգուցեալսն ի Քրիստոս։ Այլ և զհոգևոր հայրն իմ և զուսուցիչ զՄատթէոս քահանայ, հանդերձ ծնօղօք և ամենայն մերձաւորօք արեան յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ ամէն, եղիցի։

[Այլև զհարազատ եղբայրն իմ զՅովաննէս քահանայ յիշեցէք ի Քրիստոս, որ ի ՊՀԹ. (1430) թվականիս փոխեցաւ ի Քրիստոս և բազում երախտիս ունի ի վերայ մեր, և տէր Յիսուս զձեզ յիշէ, ամէն, եղիցի]։*

---

* Փակագծերի մեջ առնված վերջին պարբերությունը ավելացված է Թովմայի կողմից, ավելի մանր տառերով, ձեռագրի գրչությունից և Գ. հիշատակագրությունից տարիներ հետո՝ 1430 թվականին։



*Նկ. 5. Թովմա Մեծոփեցու ինքնագիրը։*

Դ

275 բ *Յայսմ վայրի հանդիպելով մեզ ի սուրբ ուխտս* Վաղաճդնու, *գոլով մեզ ի սուրբ ուխտէն* Եւստաթէի, *և տեսաք զկսկիծ և զաղէտ փոքր․երիցուս* Ներսիսի Որոտճեցոյ, *հանդոյ տէր աստուած զնա ի դասս սրրոցն։*

Ե

292 բ *Աւաղ աղետիս և դառն կսկծիս, զի ի սոյն օր հանգեաւ ի Քրիստոս* Օզբէկճ *ի ճանապարհին, և Թաղեցաւ ի սուրբ ուխտս* Վաղաճդնու, *և յեռանդեան օր երկոքին որդիք պարոն* Բուրթելիճ, *և տեսաք սուգ, զոր ոչ է իմ տեսեալ, և աղէկիզիմ յամենայն օր վասն մեծ պատուհասիս, որ ի ներս կամք։*

*Տէր իմ Յիսուս, վասն անյիշաչար գթութեան քո բարձո զպատուհասս։*

Զ

299 ա *Արդ, պատմեմ յայսմ վայրի զաղէտ տարակուսանաց և կսկծի։ Զի վասն բազմութեան մեղաց մերոց եղև շարժ ի վերայ երկրի, զի հաստատութիւնք երկրի դղրդեցան, և կարծր բնութիւնք վիմաց պատառեցան, և բազում դիակունք մեռեալ գտան, և ամ մի ի լման երկիրս շարժեալ։ Եւ մինչ ի յայս տագնապի կայաք՝ եկն մահ տարաժամ ի վերայ երկրիս [ի* Ջուղայ *և ի* ՇամբՃ],* *և այսօր եղբայր* ՍմբատիՃ *պարոն* Բուրթէլ՝ *հանդերձ որդւովք իւրովք՝ հանգեաւ ի Քրիստոս, և որդի* ՍմբատիՃ, *և այլքս՝ անթուելիք են։ Եւ ով կարէ պատմել զճայն կանացեաց՝ կականալիր և աղիողորմ, զի ամենեքեան որդեկորոյս եղեն՝ որբ և այրի, զի նախախնամութիւնն աստուծոյ ծաղկաքաղ առնէ զընտիրս ի մանկանց հաճելոց։*

* *Փակագծի մեջ բերված բառերը գրված են լուսանցքում։*

Եւ վասն այն զքօղս մերկանան,
299 բ Պատռեն զծածկ || ոյթս զարդի,
Փետտեն զհերսն և խզեն զվարսն անխնայելի,
Նստին ի սուգ ի տան մթի,
Որպէս օրէն է սգաւորի,
Եւ փոխանակ յորդան սգեստի՝
Սեաւ զգենուն՝ գոյն տխրալի,
Կարտմրք ծեծեն զկուրծս սրտի
Բախեն զերեսս ի յապտակի,
Հեղուն արտոսր անչափելի,
Յորդ և առատ նման գետի.
Եւ ոչ կարեմ պատմել ստի
Զաղետ, զկսկիծ, զվայ և զրճչիւն այս գաւառի,
Զոր ես ինքնին աչօք տեսնում
Ու ի միջի կամ յամէն ժամի,
Եղբարբք իմովք՝ Մարգարէ վարդապետի,
Եւ այլոցեօքն, որ են ի վանքն Ստաթէի.
Եւ վասն այս տարակուսի
Եւ զշիւարանաց թուղթս մնաց ի միջոցի.
Բարերար տէր և աստուած՝ խնայեա ի գինս արեան քո միածնի
Եւ թողութիւն արա սոցա,
Որք եկին և այժմ գան ի յառագաստ քում հարսնարանի։

78

## ՔԱՂՈՒԱԾՈՑ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՄԱՏԹԷՈՍԻ, ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

Երևան 3930

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Տաթև

360 բ ...Արդ գրեցաւ սուրբ և գերամբարձ աւետարանի քաղուածոյս ի լուսաւոր բանից Մատթէոս գլխոյ, յարմարեալ և աշխատասիրեալ Գրիգորի տրի վարդապետի, ի սուրբ և ի գերահռչակ ուխտս և յտկանաւոր աթոռս Եւստաթէի սուրբ առաքելոյս, ընդ հովանեաւ սուրբ Նշանիս, Աստուածածնիս, և սուրբ Լուսաւորչիս, և այլ բազմահանդէս սբբոցս աստ գումարելոց, ի տեղապահութեան աթոռոյս վերոյասացելոյ վարժապետին Գրիգորի, և իշխանութեան տեղոյս մեծատոհմի Սմպ.ստի. հարազատով Բուրդելիւ՝ ի տէր փոխեցելոյ, ձեռամբ ապիկար և թարմատար գրչի Յովանիսի, զոր գրեցի և ստացայ գոյիւք և աշխատութեամբ անձին իմոյ, յիշատակ ինձ և ծնողաց իմոց, ի թվիս Հայոց եւթն և տասն յոբե[լե]նի և վեցից թուի ($17\times50+6+551=1407$), ի գառն և յետին ժամանակի...։*

* Շարունակության (11 տող) ձախ եզրը պատռված է, պահպանված մասից պարզ երևում է, որ հետաքրքրական ոչ մի նորույթ գրիչը չի հաղորդում։

## 79

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

**Երեւան 3023**

Գրիչ՝ Յոհանէս
վայր՝ Սիւնիք

440 ա ...Արդ, գրեցաւ գիրքս քարոզից ի վա[նս | | | ոյ, ընդ հովանեաւ սուրբ եկեղեցեացս՝ սուրբ Կարապետիս, և սուրբ Սաե[փանոսիս, և՞] Գրիգորի Օձահալած, ձեռամբ Յոհանիսի վարդապետի և հեռ | | | վասն անձին իւրոյ և յիշատակի[չ], որ բազում աշխատութեամբ կոր | | | և վշտաւք, և իմ յոյժ ց[անկացայ սմ՞]այ և առեալ զխնդի[ր | | | ք գրոցս անմխիթարելի սգի հնտ. (հանդիպեցմեք) ի պ | | | անիրաւութեամբ հեծել տարեալ տէր երկրիս Սմ[բ]ատ անուն | | | ունգացեալ, և մեր ակն ունելով գալոյ խաղաղութեամբ ի մէջ գ | | |, զոր զլտց և զաղաղակ իմ և զազգականաց իմոց միայն տէրն գ[իտէ՞ | | | ութիւն մեր և զկսկիծ, զոր տէր Յիսուս գրեսցէ զնա ի գիրն կենաց և արքա[յութեանն արժա՞ն]իս արասցէ, և զձեզ աղաչեմ յիշել ի տէր բոլորիւ սրտիւ։

440 բ Այլ և ծնողաց իմոց և ազգականաց թողութիւն շնորհեսցէ տէր սխալանաց նոցա։ Այլ և զձեզ աղաչեմ, յիշման արժանի առնէք զհայրն իմ զԽորիշխաՆ, և զմայրն մի զՀաճաթ, և զհօրեղբայրն իմ զԹորիս, և զմիւս հօրեղբայրն իմ զՀզարպէկ՝ փոխեցեալսն ի Քրիստոս, այլ և փոխեցեալ ի սմին ամսի Բ.* (2) հօրեղբաւրորդիք իմ ի Քրիստոս՝ Թուխթամիշ և Բախշաիշ անուամբ, և այլ բազում, զի Բ. (2) քոյրք իմ ամսով մի յառաջ՝ Է. (7) տղեցով և գստերով մեռան, զի այսմ ամի մահ տարաժամ շարժեցաւ ի վերայ աշխարհի, զողայոց վերջք արար, որ բերանով չէ պատմելի, ի քսանէ, ի երեսնէ, ի յոնէ թէ մին տղ[այ] մնաց՝ ԺԵ. (15) տարոյ ի վեր, պակաս՝ մեռաւ, զոր աղաչեմ յիշման արժանի առնէք զննջեցեալսն մեր և աստուած զձեզ յիշէ։

Այլ և զիս Յոհանէս գրիչս և զեղբայրն իմ ի վաղուց հանգուցեալ Վելի անուամբ յիշման արժանի առնէք։

Արդ, վարդապետն մեր Գրիգոր բայբունապետ, որ հսկի յաթոռ վարդապետու[թեան] և աթոռակալութեան Սիւնեաց վիճակիս և բան իմաստութեան և քարոզութեան | | | ամենայ]ն աշխարհս Հայոց տարածեալ և բազում աշխատութեամբ և ջանիւք Հայոց ազգին լոյս բանից | | | և լինել, զի մինչ ի յոյս ժամանակս ոչ կայր Քարոզագիրք մեզ, և սորա Բ. հատոր [Քարոզագ]իրք շինեալ, որ զտարին կատարէ և այլ տօնից կրկին և երեքկին և այլ [ևս] առաւել, զոր տէր Յիսուս ըստ աշխատանաց նորա և ըստ յուսոյն հատուցէ, ամէն։

| | | տիրէր աշխարհիս մեր Յուսուփ անուն թուրքման և այսմ ամէ | | | յաղթահարե՞աց] ճաղաթին, որ եկեալ ի վերայ սորա՝

---

* Բ.-ից հետո նկատվում է նաև մի այլ տառի հետք, որը նմանվում է Ե.-ի. դըժվարանում ենք որոշել թի՞վ է այդ, թե ինչ որ բառի մաս։

թոռն Թամուրին կոչեցեալ | | | Աբու-Բաքր], և Յուսուփս տիրէ թագաւորութեան | | | ի թվականիս Հայոց ՊԾԶ. (1407)-ի, մարերի ամսոյն ի ԻԵ. (25), մայիսի ամսոյն Թ. (9).*

## 80

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4818

Հետ. ստացող՝ Դաւիթ

282 ա ...Արդ, ես Դաւիթս գնեցի զսուրբ աւետարանս ի հազար և ի հարիւր դրամ, ի հալալ արդեանց մերոց, ի թվ. ՊԾԶ. (1407)։ Թումէն և իւր եղբայրն՝ զաւետարանս ծախեցին Դաւթին՝ Գորգոյ որդոյն։ Բահատինն, և Բրեհիմն, Հանաւն, Ումարն, և Թագիկն, և Սահակն, և Յոհանէս երէց վկա են։

## 81

### ԱՒԵՏԱՐԱՆ

«Թորոս Աղբար», Բ, էջ 303—304, Կամախ, Թադէոս առաքեալի վանք

Նվիրաբերող՝ Մովսէս երէց
վայր՝ Աւագ վանք

Առաջնորդութեամբն աստուծոյ ես՝ Մովսէս երէցս, եդի զսուրբ աւետարանս յԱւագ վանքն, ի յիշատակ ինձ և հաւրն իմոյ մղտեսի Ամիրպէկին, և ծնողին իմոյ Ասլան-Մելիքին, և երէցկնոջն Ուստիանէ, և որդւոյ իմոյ Անանիա դպրին, և ամենայն արեան մերձաւորաց իմոց անջնջելի յիշատակ...։ Ի թվ. ՊԾԶ. (1407) ...,

## 82

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՑՆ, ՎԱՐԴԱՆԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ

Երևան 1181

Գրիչ՝ Յովանէս

77 բ Ի թուականիս Հայոց ՊԾԶ. (1407) գրեցաւ գանձս աստուածային, որ կոչի Երգ երգոց, որ է սուրբ սրբոց.

Ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի
Յովանիսի մտաց յոռի,
Ի խնդրոյ եղբօր մեր սիրելի,
Որ Խաչատուր անուն կոչի,

---

* Ողջ հիշատակարանը մաշված է, 440 թերթի աջ եզրը ներքևից՝ 5—6 տառի չափով պատռված է, որի պատճառով անընթեռնելի են մնում մի շարք բառեր։ Թվականի հիշատակությամբ տողը, որն անչափ եղծված է, էջի ցածում ընդօրինակել է ձեռագրի նորոգող Աղուլեցի Գոզոսը, 1780 թվականին։

*Որ և խնդրող եղեր բանի,*
*Գանձի և անգին մարգարտի,*
*Քեզ ի տեառնէ հոգի շնորհի,*
*Գիտութեան և երկիւղի,*
*Տալով քեզ զգոյստ յամենայնի*
*Գնել ըստ բանին տէրունի,*
*Բայց դու յիշեա զբանն Յիսուսի,*
*Զոր է գրեալ յիւր մատենի*
*Իւր սիրելի աշակերտի՝*
*Գլուխ ամենայն պատուիրանի*
*Զսէրն դրել սերտ ի սրտի,*
*Եւ զայն անկեղծ, անխզելի,*
*Գու ընթերցիր զինքն ի յոճի*
*Եւ կատարեա գործով բարի,*
*Եւ զիս յիշեա ի սուրբ սեղանի,*
*Յորժամ լինիս տեառն առաջի,*
*Եւ քեզ նոյնն հատուսցի*
*Այժմ և յաւուրն ապագայի.*
*Եւ նմա փառք յամենայնի,*
*Անցեալն, յաժմուս և յապառնի։*

Բ

*Գրիչ՝* Յովսէփ

...*Արժանաւորեաց տէր աստուած մեր զքահանայս զխաչատուր աստուածարուխ շնորհաց ... և ախմար գրչիս՝ սուտանուն քահանայիս* Յովսէփի, *որ միայն զանունս ունիմ և զգործս ոչ, որ ի յաչս մարդկան երևիմ գեղեցիկ, բայց յետոյ՝ գայլ եմ յափշտակող։*

## 83

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

*Երևան 918*

*Գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Երուսաղէմ

351 բ *Կատարեցաւ Գիրք Հարցմանցս եռայմեծին* Գրիգորի *բաբունեացն պետի, Հայոց մեծ հռետորի... ձեռամբ յոգնայմեղ և անպիտան* Կարապետ *սուտանուն աբեղայի, ի յաստուածայկոխ և յերկնահանգէտ մայրաքաղաքս* Երուսաղէմ, *ընդ հովանեաւ սուրբ Գողգոթայիս և աստուածընկալ սուրբ գերեզմանի, յորում ամի կացի անարժանս սպասաւոր և լուսարար այսմ երկրորդ երկնի, ըստ ներող և երկայնամիտ մարդասիրութեանն աստուծոյ ձեռնարկեցի այսմ համառաւտեալ աստուածայշունչ գտակի, նոր պարգեաց հոգոյն շնորհողի հայկազեանս տոհմի, ոչ թէ հմուտ գոլով գրչութեան արուեստի և կամ ուսեալ բնաւ, որպէս և յայտ է ի գործս, այլ տեսեալ իմ զհոգերուխ վտակս զայս յոյժ փափաքեցի սմայ և հայեցեալ տեսի, զի ոչ ուստէք գոյր հնար*

ստանալ զսա, և կամ առն ճարտարի վասն իմ փոխարկել զսայ։ Ապայ,
հայցեալ իմ ի սուրբ և յաստուածընկալ գերեզմանէս, և ես ինձէն
ձեռնարկեալ գրեցի տխեղծ և դողդոջ մատամբս։ Արդ, յերես անգեալ
մոխրայթաւալ դիմօք աղաչեմ զդասս լուսերամ կրօնաւորաց և աշ-
352ա խատասէր բանասիրաց, որք օգտիք ի սմանէ ‖ կամ օրինակէք յիշե-
ցէք զտարայկուսեալս մեղօք և մոլորեալս մտօք զԿարապետ աբե-
ղայս Վրացտանեցի, և զծնողս իմ՝ զհայրն իմ զՍտեփաննոս քահա-
նայ, և զմայր իմ զԽրմզ-խաթուն, և զխակայկոտոր եղբայրն իմ զԴաւիթ
դպիր՝ զվերայփոխեալսն առ Քրիստոս, և զքոյրսն իմ զԱմեն-Տիկին և
զՔնքուշն, և զայլ ամենայն արեան մերձաւորսն և զերախտաւորս՝ զկեն-
դանիս և զհանգուցեալսն։ Եւ որք սրտի մտօք յիշէք զմեզ և դուք
յիշեսջիք ողորմութեամբ ի պարգեատուէն բաբեա[ց, զի մե՞]ծ ջան
մեր և յոյս այս էր, [այ]լ յիշատակ չունիմ յաշխարհի քան զայս
գիրքս, որ ձեր միջնորդութեամբ կու հայցէ ողորմութիւն յառատ
պարգեողէն։ Եւ թէպէտ գիրս և արուեստս անհաւանելի է, բայց բանքն
յոյժ պիտանի է, և ի մէջ սուրբ Յարութեանս, ի դրան աստուածըն-
կալ սուրբ գերե[զ]մանիս գրեալ է։

Կատարեցաւ ի թվ. ՊԾԶ. (1407), ի փառս Քրիստոսի աստուծոյ
մերոյ, որ է օրհնեալ յաւիտեանս, ամէն։





**84**

## *ԼՈՒԾՄՈՒՆՔ ԴԺՈՒԱՐԻՄԱՑ ԲԱՆԻՑ Ի ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԳՐՈՑՆ ՑՈՐԲԱՑ, ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ*

*Երևան 1115*

*Հեղինակ՝* Գրիգոր Տաթևացի

*Եւ ժողովողն մեկնութեանս է* Վանական *վարդապետն՝ աշակերտ*
Մխիթար *վարդապետի, որ* Գոշ *անուանի, և է սա վարդապետ* Վարդա-
123 բ նայ, *և* Վարդանն՝ || Ներսէսի, *և նա* Եսայեայ *վարժապետին, որ և*
Յոհաննու Որոտնեցւոյ՝ *լուսաւորչին մերոյ, որոց յիշատակն աւրհնու-
թեամբ եղիցի, ամէն։*

*Արդ, ես վերջինս ի ծնունդս եկեղեցւոյ,* Գրիգոր *մականուն խնդրող բանի, որ ի վաղուց հետէ փափագէի բոլոր մեկնութեանս Ցորայ։ Եւ ի թուականութեանս Հայոց ՊԾԷ. (1408) ամի եկեալ մեր յերկիրս* Քաջբերունի, *և ձմերեալ ի հրեշտակարնակ վանքս* Մեծոփոյ, *ի սպասու դամբարանաց վարժապետացն սրբոց։ Եւ ընթերցմամբ հաւաքեցի զդժուարալոյծ բանս Ցորայ և զմեկնչաց նորա, այլ և սակաւ ինչ լուծումն* Առիստակիսի *և* Գէորգեայ *ի խրատս գրչութեան, ընդ նմին և զքաղուածոյ մեկնութեանն Յովհաննու աւետարանչի, և ընծայեցի ի պատիւ սուրբ տեղւոյս ուսումնասէր անձանց՝ ուղղադաւան մտաց, և ի գլուխս բաժանելով վասն մտաւոր տեսութեան և ի զարդ ուսման ի պէտս բեմասացութեան և ի խրատս զրուցատրութեան։*

*Այդ, եթէ գտցի ինչ ի սմա ըստ հաճոյից խնդրողաց՝ տեառն շնորհք, և թէ ոչ՝ և այնպէս շնորհք, և պակասն փոքրընկալ անաւթոյս մերոյ ներեսցի։*

*Որ և լուսաւոր վարժապետին մերոյ* Յովհաննու Որոտնեցւոյ *ի սմա մասն բարեաց յիշեալ եղիցի, և մեզ աշխատողաց բազում և անթիւ սխալանաց թողութիւն յեղբայրասէր կամաց ձերոց հայցեսցի։ Որ և մեզ յուսողաց և ձեզ յիշողաց ողորմութիւն տեառն հասարակեսցի, ամէն։*

*Այլ և աղաչեմ զմտերիմ գաղափարաւղս գրել զսակաւ յիշատակս մեր, և դուք գրեալ լիջիք ի գիրն կենացն յաւիտենից, ամէն, եղիցի։**

---

** Ձեռագիրը եթե ինքնագիր չէ, ապա ընդօրինակված է անմիջապես հեղինակի օրինակից, աշխատության գրության կամ հաջորդ՝ 1409 թվականին։*

*172 բ էջում պահպանվել է մի հիշատակագրություն՝ «Գրեցաւ ի թվին ՊԾԸ. (1409), Յունիս ԺԴ. (14)», որը սակայն վերաբերում է ձեռագրի Բ. մասին, ուր գտնվում են քերականագիտական մի քանի երկեր։*

## 85

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

*Երևան 7592*

*Գրիչ՝* Յակոբ Ասպիսրեկցի
*վայր՝* Տաթև

ա

115 բ *Եւ ես* Յակոբ *անուամբ պետի,*
*Օրինաւոր գործով թերի,*
*Մականունս* Ասպիսրեկցի,
*Այրի հոգի ու ողորմելի,*
*Ի դամբարանէ գառագեղի,*
*Նսեմացեալ երեկոի,*
*Բախեմ զդուռն ողորմածին*
*Միջնորդութեամբ ընթերցողիդ,*
*Եւ հանդիպող այս կտակի,*
*Ներածութեամբ սոյն սուրբերի,*
*Զի տացես զտէր ողորմին*
*Զնկանակ երիս հացին,*
*Խոստովանել երիս անձինս*
*Անցեալ մեղացն և ներկայիս,*
*Որպէս զցաւզ առաւօտին,*
*Ի յհոգիս իմ ծարաւի,*
*Կամ զսառն ամարայնի*
*Ձայն աւետեաց ինձ լսելի,*
*Որք պաղատիք վասն իմ առ տէր*
*Ի թողութիւն մեղաւորիս,*
*Ըստ իս և ձեզ մասն լիցի*
*Մաղթողական բան նուիրիս։*

*Եւ զայլ ամենայն արեանառու մերձաւորսն և զերախտաւորսն առհասարակ, որք ձեռնատուք եղեն ի հոգևորս և ի մարմնաւորս, աստուած ողորմի նոցայ, ամէն, և որոց զամէն ասեն։*

*Գրեցաւ ի վանքս* զՏաթև, *յերկրիս* Սւնեաց, *առ ոտս հանճարեղ և բանիբուն վարդապետի* Գրիգորի, *և յիշխանութեան պարոն* Սըմբատի *որդոյ* Իւանէիկի, *որոց յիշատակն օրհնութեամբ եղիցի, ամէն։*

*Թիւն* ՊԾԷ. *(1408), յայս ամի* Ղարա-Յուսուֆ *էառ* զԱտրպաինան՝ Թավրէզ:

բ

28 ր *Աղաչեմ զհանդիպողդ յիշեա առ* Քրիստոս զՅակոբ *գծողս և անմեղադիր լեր, զի անհմուտ էի գործոյս, վասն սիրոյ արարի։*

գ

128 ա *Ով զմեզ անհտնգիստ արար* Քրիստոս *յիւր միւսանգամ գալուստն անհանգիստ առնէ զինքն։**

* *Այսպիսի մանր հիշատակագրություններ կան նաև 58ա, 59բ և այլ էջերում։*

# 86

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

*Երևան 763*

Գրիչ՝ Արիստակէս
Վայր՝ Աւագ վանք

315 ա ... *Գրեցաւ եղանակաւոր տառս, որ կոչի Մանրուսումն ի լաւ*
*և յընտիր աւրինակէ, որ էր հարմարած առաջին երաժըշտապետացն*
*սուրբ ուխտին Արքակաղնոյն, զոր էր բազում տքնութեամբ աւր-*
*ըստաւրէ աւուրն դասն գրած, լի ամենայն արհեստիւ, զոր առեալ*
315 բ *զնոյն աւրինա ‖ կեցի ձեռամբ իմոյ՝ անիմաստ գրչի և յոյժ մե-*
*ղապարտի* Աբիստակիսի, *ի մեծախառ և ի հռչակաւոր անապատիս,*
*որ կոչի* Ավագ վանք, *ընդ հովանեաւ սրբուհոյ Աստուածածնին, և*
*սրբոյ Կարապետին, և սրբոց Առաքելոցն, և ի յառաջնորդութեան*
*սուրբ ուխտիս գերիմաստ քաջ հռետորին և տիեզերալոյս վարդա-*
316 ա *պետին մեծին* Գէորգեա, *բազմ ‖ երախտ սուրբ հաւրն իմոյ և վար-*
*ժապետին։*

*Զոր ի յայժմուս սա ընդրեցաւ,*
*Որ յընթանուրբս ծանուցաւ,*
*Ծադաց ի ծագս երևեցաւ,*
*Պարծանք Հայոց ազգիս եղաւ,*
*Շնորհաւք փըրկչին սոյն յարգեցաւ,*
*Որ և հոգւոյն աման գտաւ։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, ոյք հանդիպիք սմա ուսանելով և*
316 բ *կամ աւրինակելով, յիշեսջիք զվերոգրեալս, նա ‖ և զիս ես, և*
*զծնաւղսն իմ, և զեղբայրսն, և զամենայն արեան մերձաւորսն՝ զկեն-*
*դանիս և զհանգուցեալսն ի Քրիստոս, զոր և աղաչեմ զձեզ, զի հայ-*
*ցեսցջիք ի Քրիստոսէ կենդանեացն զբարիոք կենցաղավարութիւն՝*
*ի կամս տեառն գնալ, և ննջեցելոցն խնդրելով զթողութիւն յանցա-*
*նաց։ Եւ անմեղադիր լինել մեզ, զի այսքան էր կար մեր, և թէ լի-*
317 ա *նի պակաս կամ աւելի, զպակ ‖ սսն դուք լցէք և զաւելորդն ի բաց*
*հանէք և թողէք զմեզ առանց բամբասանաց, զի ոչ եթէ ըստ հմտու-*
*թեան արհեստիս փութացա զսա <ո> քերդել, ոչ, այլ ի կարեկցու-*
*թիւն հոգևոր և համշիրակ եղբաւրն մերոյ, նորընծա և շնորհազարդ*
*ծաղկին և սպասաւորաւղ զանգին մարգարտին, սրբասնեալ կրաւնաւո-*
317 բ *րին* Աւետիքին, *զոր տէր աստուած վայել ‖ եալ տացէ զսա նմայ՝*
*խաղաղական կենաւք և յամերամ ժամանակաւ, խորին ծերութեամբ։*
*Այլ և յիշեսջիք զբազմերախտ և զհոգևոր ծնաւղն սորին՝ զերաժըշտա-*
*պետն մեր, զպատուելի և զհեզահոգի զսրբասնեալ կրաւնաւորն՝ զտէր*
Սաճակ *սպասաւոր բանի, իւրայաւքն հանդերձ, որ զաւրինակն պար-*
318 ա *գևեաց մեզ երկրորդ անգամ, և այս երրորդ, զոր շնորհ ‖ եաց յա-*
*ղագս հոգևոր զաւակին իւրոյ* Աւետիքին՝ *շնորհազարդ կրաւնաւորին,*
*և ետ զսա մեզ գրել առ ի վայելումն անձանց իւրեանց և ամենայն*
*արեան մերձաւորաց։*

Այլ և աղաչեմ զիս յիշեաջիք, զամենայն երախտաւորսն իմ՝ զհոգևորսն և զմարմնաւորսն, ընդ դրելոցս նաև զիս ես՝ ղանիմաստ ԼՇԿՋՄԿՃՔՄՆԺՋՀՄՄ,* զհայր մեր, որ յերկինս ասելով վասն ինձ՝ րա[ղ]մամեղիս։

318 բ Բայց եղև զրաւ սորա ի յութհարիւր թվականի և յիսուն և ութն յաւելորդի (1408), ի յամսեանն մայիսի, յաւր համբարձման Քրիստոսի, զոր և մեք [և] դուք լինիմք արժանի տեսանել զպայծառութիւն այն հրաշալի, ամէն, ամէն և եղիցի։

Ո՜հ, ո՜հ դառն ժամանակիս, դարձեալ աղաչեմ, զի անմեղադիր լինիցիք, զի շաղգամով մալէզն** և կորեկէ ճաթն օգնական եղև մեզ
319 ա ի գրելն։ || Է՜, վա՜յ ու եղուկ ասեմ հազար բերան, երկոյտասանցս և Ե. աւելորդօքս կամ ի դեգերման և խիստ փոշիման, վա՜յ, չիք ունամ յառաջիկան մինչ ի հասանելն իմ կէտ կոչման, | | | | |...... | | | |.. | | | |... |. | |...... |....... | | | |.. | | | |..***

Բ

141 բ ... Նայ և ղծաղկողս զՎարդանս յիշեա։

## 87

## ԱԻԵՏԱՐԱՆ

«Արարատ», 1905 թ. էջ 716, Մշոյ ս. Կարապետ

Գերութիւնից ազատող՝ Դաւիթ Մշեցի
վայր՝ Մուշ

... Ես նուաստ Մշեցի Դաւիթ երէցս ի դառն ժամանակին, որ այլազգիքն նեղէին զազգս քրիստոնէից, ես առաւել զհոչակաւոր ուխտն զսուրբ Կարապետ Տարօնոյ. և նոքա ի չքաւորութենէ՝ բերեալ գրաւէին այլազգեաց։ Եւ յիշեցի թէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն, և ընտանեաց նորա յԵրուսաղէմ, և իմ ի հալալ արդեանց տվի Մ. (200) դեկան, և թափեցի զսուրբ աւետարանս, և վերստին գարձուցի ի ս. Կարապետ յիշատակ ինձ, և նախնեաց իմոց, և զաւակին իմոյ Յովանէսին, և կողակցի, և այլ ամենայն արեան մերձաւորաց։ Որք ընթեռնոյք զԴաւիթ քահանայս յիշեցէք ի Քրիստոս, և որ յիշէ՝ ինքն յիշեալ լիջի առ Քրիստոս, ամէն։ Ի թվ. Հայոց ՊԾԷ. (1408), որ թափեցի։

---

* Փոխաբինադիր ծածկագրով կարդացվում է «գրողս գԹըստակէսս», այսպես՝ Լ→Գ (տասնավորի փոխարեն՝ միավոր), Շ→Ր (հարյուրավորի փոխարեն՝ հազարավոր), Կ→Ո (տասնավորի փխ. հարյուրավոր), Ջ→Ղ (հարյուր. փխ. տասն.) Մ→Ս, Կ→Զ, Ճ→Թ, Ք→Ը, Մ→Ս, Ն→Տ, Ժ→Ա, Ջ→Կ, Հ→Է, Մ→Ս, Մ→Ս։

** Այլուրով պատրաստված կերակուր։

*** Գծակետային ծածկագրով կարդացվում է «Թըստակէսս»։

## 88

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 5328

*Ծմբագրող՝* Գրիգոր Ծերենց Խլաթեցի*
*վայր՝* Ցիպնայ վանք

[Այդ, որք և կամիցին ի խնդիր գիտի իմաստից ընթա-
նալ մարմնական և կամ հոգեկան մասանց՝ յանձին բարձեալ կրիցեն
զամենայն տաժանմունս, զի թերևս հասանիցեն ի տենչանս փափա-
քանացն որում բաղձանայցեն, որպէս և է տեսանել յաստուածային
անձիս մերոց առաջնորդացն, որ զամենայն կիրս մարմնական գնա-
289 ա ցից ի բաց ընկեցին առ նըպատակ վերին կոչմանն ընթանալով] հա-
սանել առ որ ցանկային ի բազում ժամանակաց, և զամենայն ժամա-
նակս կենաց իւրեանց առ նա համբարձեալ զուշ մտաց՝ բեւեռեալք ի սէր
նորա և կարգեալ հաստատեցին առ ի պայծառութիւն նոր Սիոնի տաւնս
և կանոնադրութիւնս ժամուց և տօթից՝ առ ի ձգել զամենեսեան ի սէր
աստուածային պաշտաման՝ է զի ներբողական գովասանութեամբ զար-
դարեցին զմայր մեր զսուրբ եկեղեցի, և երբեմն ի ձայն սրկեալ երգէին
զերգս աստուածային և ուսուցանէին հարք որդւոց և վարդապետք
աշակերտաց, զի մի մոռացունք լինիցին երախտեաց աստուածատուր
պարգևաց արարչին մերոյ աստուծոյ։ Ցայս փափագ և ես՝ տրուպս ի
կարգաւորաց և յետինս ի բանասիրաց՝ անուամբս Գրիգոր պիտակաբար, և
թըմբրեալս ծուլութեամբ ի տիղմս մեղաց և անընդոստ մըրափած, մեծաւ
տաժանմամբ ի հոգս անկեալ ժողովեցի զպիտանի գանձերս և եդի կար-

---

* Գժվար է հաստատապես որոշել, թե որ թվականին է ավարտել Գրիգոր Խլաթեցին ԺԵ—ԺԷ դարերում այնքան տարածված «Գանձարան» կոչվող ժողովածուի հավաքման, խմբագրման ու լրացման աշխատանքները։

Սույն հիշատակարանում մանրամասնորեն խոսվում է ժողովածուի նպատակների ու կազմության պարագաների մասին։ Ուստի հնարավոր է ենթադրել, որ այս հիշատակարանը հենց Գրիգոր Խլաթեցու «Գանձարանի» ինքնագիր օրինակի հիշատակարանն է, և որ այդ ժողովածուն պատրաստվել է Թովմա Մեծոփեցու և նրա աշակերտների՝ Մաթէոսի, Պետրոսի և Սահակաոսի խնդրանքով։ Սակայն կարելի է կարծել նաև, որ վերոհիշյալ անձինք խնդրել են Գր. Խլաթեցուն ընդօրինակել արդեն գոյություն ունեցող ու ճանաչված ժողովածուն, նրա խմբագրումից տարիներ հետո։ Անկասկած է սակայն, որ այս հիշատակարանը գրվել է Ղարա-Յուսուֆի և նրա որդիների իշխանության ժամանակ («յամս թագաւորութեան նետողաց Ղարա-Ուսուֆին և որդոց նորին»), ուրեմն 1408—1420 թթ. միջոցին։

Հիշատակարանը տեղադրում ենք 1408-ի թվաշարքում նկատի ունենալով նաև հետևյալը։ Նույն այս թվականին, Ցիպնայի վանքում, «առ ոտս գերիմաստ և երանաշնորհ և արդիւնական հռետորի Գրիգոր վարդապետի [Խլաթեցւոյ]», Յովանէս անունով մի գրիչ ընդօրինակել է Խլաթեցու խմբագրած նույն այս «Գանձարանը», և իր հիշատակարանի սկզբի մասը բառացիորեն արտագրել է այս հիշատակարանից (տես հաջորդ հիշատակարանը)։ Պետք է ենթադրել, ուստի, որ «Գանձարան» ժողովածուն իր այս հիշատակարանով արդեն գոյություն ուներ 1408 թվականին։

Յովանէսի հիշատակարանի համապատասխան տողերը հնարավորություն են տալիս նաև վերականգնելու այս հիշատակարանի սկզբի մասը, որն այժմ բացակայում է ձեռագրից։

*գաւ ի միում տըփի զասացեալս ի հոգեկիր արանց յառաջնոցն և յետնոցս, որք արժանի եղեն պարգեւաց հոգոյն սրբոյ և ասացին զանազան ոճով ի կերպ և ի գոյնս ձայնի, ի կարգ և ի շարս բանի՝ զանազան եղանակաւ, ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ և ի զըւարճութիւն մանկանց Նոր Սիովնի, որ աւըըստաւըէ գեղգեղեալ փոփոխին ի փառս աստուծոյ և ի պատիւ սըրոց նորա։*

*Արդ, այսոցիկ ցանկացող եղեալ բարեմիտ և սրբասէր վարդապետն* Թու[մա] *և իւր մտերիմ և համակամ աշակերտքն՝* Մաթեոս, Պետրոս *և* Ստեփանոսն, *և եաուն գրել զսա եռափափագ և սիրատարփ ոգով։*

*Եւ ես՝ անարգս* Գր[իգոր]*, զտկարութիւն անձին մոռացեալ, սկըսայ և յաւարտ հանի նոցին աղօթիւք և բարի կամաւք ստացողաց սոր[ա]։*

289 բ *Եւ արդ, գրեցաւ սա ի վա* ‼ *նս* Ցիպնայ, *ընդ հովանեաւ ամենազաւր սուրբ Նշանի և կաթուղիկեայ սուրբ Ստեփանոսի, հանդէպ սըրբարար ծովուն, ուր մանր ձկունքն ելանեն, յամս թագաւորութեան ազգին նետողաց* Ղարա-Իւսուֆին *և որդոց նորին։*

*Արդ, որք հանդիպիք սմա տեսութեամբ և կամ աւգտութեամբ ինչ իւիք, յիշեցէք ի միտս բարիս և ի պատկանաւոր խընդրւածս զվարդապետն* Թումա, *և զմտերիմ եղբարս նորա՝ զսրբակրաւն աբեղայսն՝* զՄաթէոսն, զՊետրոսն *և* զՍտեփանոս՝ *քըւեբորդի վարդապետին։ Նաև զթարմատար մեղսամած գրիչս* Գրիգոր, *և զծնողսն իմ, և զուսուցիչսըն։ Եւ որք յիշէք զմեզ յիշեալ լիջիք և դուք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ։*

## 89

## ԳԱՆՁԱՐԱՆ

**Երևան 3540**

*Գրիչ՝* Յովանէս
*վայր՝* Ցիպնայ վանք

ա

257 ա *Փառք ...որ ետ կարողութիւն տկար ոգոյ* Յովանիսի *սուտանուն կրաւնաւորի, որ անուամբս միայն եմ ձեւացեալ և ոչ գործովս, ըստ այնմ, որ ասէ՝ Մարմնովս արտաքուստ պճնիմ և անձամբս երփնիւ ճային ճանաչիմ, հասանել յաւարտ լուսայիզձ տառիս, յամի ՊԾԷ. (1408) թըւականիս մերում։*

*Արդ, որք և կամիցին ի խընդիր գիւտի իմաստից ընթանալ մարմնական և կամ հոգեկան մասանց, յանձին բարձեալ կրիցեն զամենայն տաժանմունս, զի թերևս հասանիցեն ի տենչանս փափա-*
257 բ *քանացն, որում բաղձանայցեն...։ Ցայս փափագ և ես տըուպս ի կարգաւորաց և անարժանս յարժանաւորաց* Յովանէս *ազազուն և փցուն գրիչ՝ մեծաւ տաժանմամբ և եռատարփ յաւժարմամբ գրեցի զմարգարտաշար բանս իմաստուն և հոգեկիր արանց ի վարժումն կրըթութեան և ի խրատ ուսման մանկանց Սիոնի, ի սփ[ոփ]անս մըտաց բա-*

նասիլյաց և տաւնասիրաց անձանց, մանաւանդ ի սէր սիրելեաց աստուծոյ և ի պայծառութիւն սուրբ եկեղեցւոյ։

Եւ արդ, գրեցաւ սա ի գաւառիս ի վանք Ցիպնայ, ընդ հովանեաւ ամենազաւր սուրբ Նշանիս, և սուրբ Ստեփանոսի Նախավըկայիս, և այլ բազմագումար սրբոցս, որ աստ կան հաւաքեալ, և առ ոտս գերիմաստ և երանաշնորհ և արդի ւնական հեռետորիս Գրիգոր վարդապետիս, ի փառս Քրիստոսի աստուծոյ։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպէք այսմ գանձարանիս, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթըս ձեր զվերոյասացեալ վարդապետն Գրիգոր և զամենայն արեան մերձաւորսն իւր, ամէն։ Դարձեալ
258 ա աղաչեմ զլուսափայլ սրբոյ Սիոնի մանկունքդ, || որք հանդիպիք այսմ աստուածային առոիս յիշեցէք ի միտս բարիս զհարազատ եղբայրս իմ զՎարդան զ[խաչ]ընդուս կրաւնաւորս, որ բազում փափաքանաւք և ըղձմամբ սրտիւ ետ գրել զսա ի վայելումն անձ[ին] իւրոյ և յիշատակ բարի ծնաւղաց մերոց Պաւղոսի և Խութլի, և հօրեղբօրն մեր Մաթէոսի, և ամենայն արեան մերձաւորաց մերոց, ամէն։

Այլ և զորովայնէ ընտրեալն և նախ քան զարտաքսողութիւնն զսրբեալն և զմաքրեալն՝ զԳութ սրբասէր կրաւնաւորն, և զծնաւղսն իւր զԹումայ քահանայն, և զմայրն, և զամենայն արեան մերձաւորսն յիշեցէք...։

Բ

34 ա Արդ, ես վերջինս ի մանկունս եկեղեցւոյ Յովանէս կրօնաւոր, որ անուամբս միայն եմ ձեացեալ և ոչ գործով, բստ այնմ որ ասէ՝ Մարմնովս արտաքուստ պճնիմ և անձամբս երփիւ ճային ճանաչիմ։ Արդ, ստացա զլուսայիղձ տառս յիշատակ բարի հոգւոյ իմոյ, և ծնողաց իմոց Ամիրին, և հոգևոր հաւրն Մարտիրոսին, և մաւր իմոյ Մամխաթունին, և եղբարց իմոց Յառուխշին և Խդրշին, և քերց իմոց Ատամելիքին, Նաղմաթին, Ըռաղնին, և Ստեփանոսին՝ փեսային, և այլ ամենայն արեան մերձաւորաց մերոց։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ գանձարանիս եղանակելով կամ աւրինակելով յիշեցէք ի մաքրափայլ և յերկնաբացիկ յաղաւթս ձեր զվերոյգրեալքս ի սմա...։

## 90

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՐԱՐԱԾՈՑ ՎԱՐԴԱՆԱՑ ԱՐԵՒԵԼՑՒՈՑ

Երևան 6399

Գրավական վերցնող՝ Խաչատուր

1 բ Զսյս Արարածոց մեկնիչս ես՝ Խաչատուր ս[արկաւա]գ գրօկան առի սուրբ Երրորդութեան [եկեղեցւոյ] Աստուածատուր իրիցվէն։
ՊԾԷ. (1408) տէր, Օգսէնտս վկայ, տէր Եսային [վկայ]։





91

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

*Երևան 921*

Գրիչ՝ Սարգիս։
վայր՝ Մեծոփայ վանք։

ա

367բ ...*Արդ, գրեցաւ աստուածային այս մատեան ի յաւարտումն կատարման եւթնևտասներրեակ յոբելենին և յաւելեալ ութերորդ ամի յաբեթական տոմարի, որ է ՊԾԸ. (1409)։ Եւ արդ, փոքր մի համառաւտեցից զսկիզբն գրոցս, թէ ուր գրեցաւ և զիարդ։ Վասն զի գնացաք մեք ի ծառայութիւն և յաշակերտութիւն մեծ և յազթող եւ քաջ ախոյանին հաւատոյ սուրբ րաբունապետին Գրիգորի՝ անձինք ԺԲ. (12). և ոչ հանդիպեցաւ մեզ ըստ կամաց մեր, վասն ոչ դիպելոյ ժամանակին. և ոմանք ի մեծագոյն եղբարց իմոց անդ ստացան զսուրբ գիրս զայս։ Եւ արդ, անտ եղև սկիզբն գրոցս, և գրեցաւ Գ. հատորն ի վանք* Ստաթէի. *եւ անտի քա[յ]քայեալ ցրուեցաք, և եկեալ յերկիրս* Քաջբերունոյ, *որ կոչի* Արճէշ, *ի վանքս* Սուհար, *որ կոչի* խառաբասա. *եւ աստ գրեցաւ Բ. հատոր գրոցս, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ շիրմի բազմերախտ հօրս մերո և մեծ հռետորին* Սարգսի: *Եւ յազդմանէ հոգւոյն սրբոյ վասն իւիք ինչ պատճառի եկն մեծ վարդապետն և երկրորդ լուսաւորիչն յերկիրս* Քաջբերունի, *ի սուրբ վանս* Մեծոփոյ, *և վասն աղաչանաց մերոց, զի ժողովեցան առ նա ամենեքեան՝ քահանայք և տանուտէրք, և լալով և աղաչելով արգելեցին, և ասաց գաս՝ զմեծ Նահատակն Յոբ, և զԾրատն գրչութեան, և զաստուածաբան աւետարանն Յոհաննու, և արար այլ ևս լուսաւոր բացայայտութիւն սոցա։ Եւ են ժողովեալ առ ոտս սորա անձինք ՃԿ. (160) աբեղայ և Ը. (8) վարդապետ և այլ միակեցունք։ Եւ տրտմութիւն մեր զոր յառաջուստ ունէաք՝ յուրախութիւն եղև, և զոր յայնժամ ցրուեցաք՝ այժմ ժողովեցաք, և այլ ևս աւելի։ Եւ աստ եղև կատարումն՝ ընդ հովանեաւ երկնահանգէտ և Նորաշէն, մեծարգոյ ուխտիս* Մեծոփոյ *սուրբ Աստուածածնիս, և սուրբ Յակոբիս, և սուրբ վարդապետի գերեզմանացս, առ ոտս մեծ վարժապետի, քաջ հռետորի և անյաղթ փիլիսոփայի՝ արթուն անուն* Գրիգորի, *արարողի այսմ սոփերի արգասաւորի, որ իբր զարեգակն պայծառ փայլէ ի մէջ Հայաստանեայց եկեղեցոյ, և լուսաւորէ իմաստութեամբ և գիտութեամբ առհասարակ զամենեսեան՝ զմերձաւորս և զհեռաւորս, և կարկէ զբերանս երկաբնակ։*

*հերձուածողաց։ Զոր և տացէ զսա տէր աստուած եկեղեցոյ իւրում եր-*
368ա *կայն աւուրբք՝ մինչ ի խորին ծերութիւն, ամէն։ Եւ ի խան || ութեան պարոն* Ուսֆին: *Ձեռամբ անարհեստ և անիմաստ, սխալագիր գրչի, ամենավերջ և նուաստ ոգի անձին* Սարգսի, *ըստ յօժարութեան կամաց և ոչ ըստ գործոց հոմանուն անուամբ և ոչ փաղանուն գրոց աշակերտի, զոր ես ինձէն ստաց[այ] զսա դատախազ՝ տարտամ առողս տաղանդին, ի յիշատակ բարի իմում անձին հիքականի, զի եմ լըցեալ բազմազան մեղօք, և որոց գթասցին ի կեանս մեր։ Այլ և հօրն իմ* Մարտիրոսի, *և հօրեղբօրն իմ* Կիրակոսի, *և մօր իմոյ* Թամքաի, *և հոգևոր մօր իմոյ* Զըմրութի, *նաև քեռոյն իմոյ* Բախշաիշի, *որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս, և հօրաքեռց իմ* Խաթունի *և* Զուխարի, *և մօրքվեր իմոյ* Մարթի, *և հօրքվերորդոյ իմոյ* Յովանիսի, *և ամենայն արեան մերձաւորի իմոյ, ամէն։ Նա և հաւատարիմ և երկիւղած աստուծոյ պարոն* Գորգի *և ամուսնոյ իւրոյ* Խաթունի, *որ սակաւ աւուրս հանգաք առ նոսա, նաև արժանեացն աւրհնութեան աստուածաշնորհ և երախտաւոր վարժապետացն մերոց՝* Սարգսի *և* Վարդանի, *այլև զիս՝ զախմարս և զյետինս, որ ոչ եմ ի կարգի եղբարց իմոց, այլ անհամեմատ նոցա և համեմատեմ զիս ընդ սոսա, այլ թէպէտ ոչ եմ ի կարգի նոցա, այլ յիշեմ զիս ընդ նոսա, որ են աւագ և երէց ամենայն իրօք ուսումնասիրեալ անձանցս՝* Թումայի, Մկրտչի,* *և* Ղազարի, *և* Մելքիսէթի, *և երկու* Մկրտչի, *և միւս* Թումայի...:

*Եւ սխալանացն և անարուեստ գրոյս մի մեղադրէք, զի կտր մեր այս էր, մանաւանդ յիշել աղաչեմ զվերոյասացեալ և զսիրելի եղբայրս իմ զՂազար՝ գողջամիտ և զուշիմ աշակերտեալ բանին կենաց, որ գեղեցիկ կազմեաց զգիրքս զայս։*

Բ

259ա *Զտարտամս ի բարեաց գործոց և զվարանեալս ի յամէն կողմանց՝ զմեղուցեալ գծողս զՍարգիս Թափառնականս, ո՜վ սուրբ եղբարք, յիշեցէք ի զենել գառն և ի յօրհնեալ բաժակն։ Եւ զծնօղսն մեր՝ զհանգուցեալսն ի Քրիստոս։ Այլ և զհայրն զՄարտիրոս, և զհօրեղբայրն իմ զԿիրակոս, որ պատուհասամահ եղև, և զմայրն իմ զԹամքա, ընդ նոսին և զհոգևոր մայրն իմ* Զմրութ, *որ յայսմ ամի արեգի ԺԴ. (14) փոխեցաւ ի Քրիստոս, և զայլ արեան մերձաւորսն իմ առհասարակ յիշեցէք ի Քրիստոս...։*

---

* *Հավանաբար այս Մկրտիչի գրչին է պատկանում Բաքվի Վ. Ի. Լենինի անվան Կենտրոնական Գրադարանի հայկական բաժնի № 1 ձեռագրի միջին մասը, որի բովանդակությունն է Գր. Տաթևացու Քարոզգիրքը։ Քարոզներից մեկի վերջում Մկրտիչը թողել է հետևյալ անթվական հիշատակագրությունը. «ի Մեհեկի ԺԵ. զմեծ բարունապետն (խոսքը, անշուշտ, Տաթևացու մասին է) ի սուրբ ուխտէս* Մեծոփու *կու տանէին ի* Տաթև, *և մեծ տրտմութիւնք եհաս մեծի և փոքու, այլ ողորմութիւնն աստուծոյ եհաս յօգնութիւն,* Յոհանէս *վարդապետն երեր գրերթաւաղն և դքրիստոնեայ տանուտեարքն ամենայն և արգելեց, և եղև ուրախութիւն մեծ վարդապետաց և աշակերտացս ամենեցուն։ Յիշման արժանի առնէք զսուտանունս* Մկրտիչս»։

*Ամենայն հավանականությամբ այդ հիշատակագրությունը նույնպես 1409 թվականից է։*

## 92

## ՄԱՇՏՈՑ

Երևան 962

381բ Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զվերջին ստացող սուրբ մաշթոցիս զԹումայ ըրաբունայպետ վարդապետն, որ առեալ ի հալալ ինչից իւրոց եդ ի դուռն Մեծոբայ սուրբ Աստուածածնին. լաւ պահողն աւրհնին ի յաստուծոյ և ամենայն սրբոց։ Թվին ՊԾԸ. (1409)։

## 93

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 7629

39բ Ո՜հ, ո՜հ, ո՜հ, ձայն լալոյ առի և ձայն սգոյ և ողբալոյ. ի դեկտեմբեր ամսոյ ԺԱ. (11) զտէր Աւետիքն նահատակեցին. մեր ազգիս արեգակն էր և խաւարեցաւ այսօր։ Եւ այս բանս եղև ի թվիս ՊԾԸ. (1409), պատկեր աւրն չորեքշաբաթի։ Զապիրատ գրչակս յիշեսջիք, որ զգիրքս գրեցի ի վայելումն զաւակին իմոյ՝ Յոհանիսին։

## 94

## ԱՒԵՏԱՐԱՆ

ԼՑՎ 137. պյուն, 293—295, Մոկսի քաղաքի թաղի Երից Խորան եկ. 15

Գրիչ՝ Յոհանէս

վայր՝ Մոկս, ի գիւղն Կագքանց

...Զոր և փափաքեաց մեծահաւատն և սիրողն սրբութեանց Թադէոս քահանայն՝ առաքինութեան սրբոց և փառաց նոցա. այլ և տեսեալ զգառն ժամանակս, զի պահանջումն անաւրինաց խստանայ ի վերայ քրիստոնէից, և միշտ և հանապազ ի հոսման և ի ծորման է աշխարհ ամենայն, և ոչ երբեք հանդիպի դադարման. և ետես զի ինչք պակասեն, ստացուածք յափշտակին՝ ստացաւ զաստուածունակ աւետարանս յիշատակ հոգոյ իւրոյ և ծնողաց իւրոց՝ հօրն որ Վարդան կոչի, և մօրն իւրոյ Թամարա, այլև որդոց իւրոց Աստուածատրոյ, որ տարաժամ հասակաւ փոխեցաւ առ Քրիստոս, և Յոհաննէս սարկաւագին, որ ժառանգելոց է զսա, զո՛ր և վայել[ել] տացէ սմա Քրիստոս, և քերցն իւրոց՝ Մինասին և Նազխաթունին, և եղբարցն իւրոց՝ փոխեցելոց առ Քրիստոս աստուած՝ Ղուկասին և Հէրապեաին, և ամենայն արեան մերձաւորացն։

Արդ, որք հանդիպիք այսմ աստուածախումբ տառիս, յիշեցէք ի Քրիսաոս զԹադէոս քահանայն և զկենակիցն իւր...։

Եւ արդ, գրեցաւ սա ձեռամբ մեղապարտ գրչի Յոհանիսի, ի գաւառ Թրակս, որ Մոկս կոչի, ի գեղն Կագքանց, ընդ հովանեաւ սրբոյն

Թումայի առաքելոյն։ Աջն անեղական պահապան լինի նոցա և ողորմեսցի ամենայն ննջեցելոցն նոցա, ամէն, զի յայս դառն և ի նեղ տարիս զմեզ կերակրեցին։ Քրիստոս աստուած զնոսա կերակրէ իւր անմահական հացիւն։

Այլ յիշեցէք ի Քրիստոս զանպիտան գրիչս Յոհանէս սուտանուն քահանայ, և ծնողն իմ՝ զՅակոբ և զՄինա, և զեղբարսն իմ զՍարգիս և զՄարտիրոս քահանայ, և զհաւրեղբօրորդին իմ զՊետրոս քահանայ, և ծնաւղսն իւր զԹումա և զԳոհար, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

Դարձեալ, կրկին մաղթանաւք աղաչեմ զոփրողքըդ աստուածային տառիս յիշել յերկնարացիկ յաղաւթս ձեր զԹադէոս քահանայ, զի որպէս զաղքատ շրջի ի դրունս ողորմածացդ, զի դուք յարարչէն խնդրէք զթողութիւն մեղաց մերոց, և ծնողաց իւրոց Վարդան և Թամարա, և ամենայն արեան մերձաւորացն, և որ սրտի մտօք և անբեկ բառով աստուած-ողորմի տաէ՝ աստուած նմա ողորմեսցի, ամէն։

Գրեցաւ ի թւականիս Հայոց ՊԾԸ. (1409), ի ընտիր և ի ստոյգ օրինակէ կիլիկեցւոց, զի թէպէտ և գիրս խոշոր է, բայց բանիւ ճոխ է, և դուք անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր...։

## 95

## ԱՒԵՏԱՐԱՆ

ԼՑՎ 235, սյուն. 559–500, Մոկսի Անճըղանց թաղի ս. Աստուածածնի եկ. 2

Գրիչ՝ Յոհանէս
վայր՝ Մոկք

...Արդ, կատարեցաւ աստուածախօս և տիեզերաքարոզ աւետարանս ի յերկիր որ Մոգս կոչի, ընդ հովանեաւ եկեղեցւոյ սուրբ Վարդան զօրավարի, ի խնդրոյ պատուական և աստուածասէր քահանայի Թումայի, որ ստացաւ զաստուածային գանձս ի յարդար վաստակոց իւրոց և [ի] վայելումն մանկան[ց] սուրբ եկեղեցոյ։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա, թէ օրինակէք ի լաւ և ընտիր օրինակէ, և թէ կարդայք, յիշեցէք յերկնարացիկ յաղաւթս ձեր զերջանիկ և հռաշալի մշակն եկեղեցւոյ զԹոմայ քահանայն, և զեղբայրն իւր Ստեփաննոս, և զծնաւղսն իւր զՎարդան և զՄարեմ, և այլ ամենայն [հ]անգուցեալսն իւրեանց...։

Դարձեալ, յերեսս անկեալ աղաչեմ զձեզ սուրբ դասք քահանայից յիշել Բարսեղս (*) անարժանս Յոհաննէս գըրիչ, որ ձեռնամուխ եղա ի սա, և զծնօղսն իմ զՅակովբ և զՄինա։ Այլ սխալանաց և խոշորութեան, աղաչեմ, անմեղաւոր անել, զի կար մեր այս էր...։*

* Հիշատակարանն անթվական է. տեղադրում ենք նույն Յոհանէս գրչի 1409 թ. գրած հիշատակարանին կից։

## 96

## ՏՕՆԱԿԱՆ

Երևան 994

Գրիչ՝ Դանիէլ
վայր՝ Աղթամար

484 ա ...Զօր յայսմ ժամանակիս, որ բռնացեալ ունի զաշխարհս ազգն Իսմայէլեան և նեղեն զազգս քրիստոնէից անիրաւութեամբ և ոչ իրաւամբ։ Արդ, ի յայսմ դառն և վշտաբեր ժամանակիս երևեալ աստուածասէր և բարեպաշտ տանուտէրն Յովաննէս, և ելեալ ի խնդիր այսմ աստուածային անկողոպտելի տէրունական գանձուցս, և ետ գրել զսուրբ գիրքս զայս, որ անուանի Տաւնական, ի հալալ և յարդար վաստակոց իւրոց, վասն զի կայ ի սմա գրեալ տօնքն տէրունականաց, ընդ նմին և պատմութիւնք և վարք և չարչարանք և ճգնութիւնք սրբազան առաքելոցն, և հոգիացեալ հայրապետաց, և վսեմակտն վարդապետաց, և բարեպաշտ ուղղափառ թագաւորաց, և ամենայն տաւնախմբութիւնք, զոր տաւնեն ընթանրտկան ուղղադաւան եկ[եղեցի]ք | | | գրեալ | | | վարդապետութիւնք | | | ընթեռնուն յուսուրս [ազ]ուհացիցն և յարութիւն փրկչին, զոր մեծ փափաքանաւք ետ գրել զսա Յովաննէս տանուտէրն յիշատակ անջինջ հոգոյ իւրոյ, և ծնողացն Աւրանին և Թանխաթունին, և կենակցին Մարգարտին, և հանգուցեալ տղայոցն Կիրակոսին և Ստեփանոսին և Թադէոսին, և կենակցին Շամշային, և որդոյն Աստուածատրին, և Թանկխաթունին, և քվերն Գուլմելիքին, և ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեաց և հանգուցելոց։ Եւ ետուն զսա նուէր և ընծայ ի գուռն Հաւրգոմու սուրբ Աստուածածնին, որ հանապազ հրճուին սովաւ սպասաւորք սորա՝ ընտրեալ քահանայքն, և անմոռաց յիշմամբ յիշեսցեն | | | * զՅովան[նէսն], և զծնաւղքն, և զկե[նակի]ցն, և զորդիքն, և զեղբարքն, և զազգըն ամենայն։

488 բ Եւ արդ, ես՝ ամենամեղ և անարժան ծառայ ծառայիցն աստուծոյ Դանիէլ անարհեստ գրիչ, յանձն առի տկար անձամբ և ծանրաբեռն մեղաւք, տգէտ գիտութեամբ և անիմաստ մտաւք, անհմուտ դպրոց գիտութեան և անվարժ արուեստիւք, յանդգնութեամբ ձեռնարկելով ի մեծ գործս յայս, ոչ ըստ իմում արժանաւորութեանս, այլ ապաւինելով յամենակարող զաւրութիւն պարգևատուին, որ տայ առատապէս և ոչ նախատէ, բազում և մեծ աշխատանաւք հասուցի զսա յաւարտումն յաստուածաբնակ կղզոջս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Նշանիս, ի թուականութեանս Հայոց ՊԾԸ. (1409), ի հայրապետութեան տէր Դաւթի...։

## Բ

200 բ ...Ընդ նոսին և ինձ ողորմեա՝ բազմամեղ Դանիէլ գրչի, և իմ ծնաւղացն՝ Կարապետ քահանայի, և եղբաւր նորին Զաքարիայ փիլիսոփայի, և ամենայն ազգականաց իմոց...։

* Երկու տող պատռված է։

## 97

## ՄԱՇՏՈՑ

*ՄՑՀ, հա. Ա. 79, էջ 101.*

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Ջեթուն

279 ...*Արդ, գրեցաւ զսուրբ տառս Մաշթոցի*
*Ի քաղաքի* Ջեթո՞ւն *կոչի,*
*Ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի*
*Եւ սուրբ Սարգսի զօրավարին,*
*Ի թվին ՊԾԸ. (1409).*
*Ձեռամբ* Սարգսի *մեղաւք լցեալ և անբարի.*
*Ես մեղաւորս ամենայնի,*
*Երես դնեմ ձեզ ի գետնի,*
*Ցիշել զգծողս այս տառի՝*
*Զ*Սարգիս *անուն մեղաւք ի լի,*
*Եւ զծնողսն իմ ըստ մարմնի.*

## 98

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երուսաղէմ 1105, Մ.Տ.Մ.*

Գրիչ՝ Ղազար
վայր՝ Աւագ վանք

*Ձեռագիրս գրվել է «յառաջնորդութեան սուրբ ուխտիս մեծ վարժապետիս մերոյ* Գէորգեայ, *ի գաւառէն* Դարանաղեաց, *որ և առաջնորդ է սա վանից* Աւագ *կոչեցեալ, ընդ շքով տիրամայր սուրբ Աստուածածնին և սուրբ Առաքելոցս և սուրբ Կարապետիս»: Գրիչն է* Ղազար *կրօնաւոր:*

## 99

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ՃԱՌԻՑ

*Երևան 039*

Գրիչ՝ Յոհանէս
վայր՝ Սամսոն *(՞)*

408 բ *Թվ. ՊԾԸ. (1409):*

...*Շնորհաւք ամենակալին աստուծոյ սկսա և ողորմութեամբ և աւգնականութեամբ նորին յանգ ելեալ կատարեցաւ յոյժ պիտանի և աւկտակար գիրքս այս, որ է բուրաստան ծաղկաւետ, և դրախտ*
409 ա *ամ[ենա]լի պտղովք, ի յիշատակ ||* Գրիգոր *իրեցուն, և դեռաբոյս զաւակին իւրոյ* Մինաս *սարկաւագին, և* Մելիք-Թամուրին, *և* Եոթիարին, *և* Աւագ-Պարոնին, *և քուերցն իւրեանց* Մարիանէին, *և զծնողսն իւրեանց, որ ի Քրիստոս հանգուցեալ են* զխուրմա-խաթուն, *և զաւակսն իւր* զՊաիանէն, *յորժամ կարդայք և լուսաւորիք յիշեցէք և թողութիւն*

խնդրեցէք ամենեցուն...տէր Պետրոս վարդապետի, որ է գաւառապետ Սամիսոնի և սրբոյ՚ոյ Աստուածածնի || և Գէորգի զաւրավարի, 
409 բ
արագահաս յաւր ատենի, յորոց հերձուածք խլին արմատաքի... և զգրողս իմ արժանի՝ մեղապարտ և անպիտան Յոհանէս սուտանուն քահանայի... և ով որ զմեզ յիշման առնէ արժանի, և իւր մեղացն թողութիւն լինի...:

## 100

## ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 2783

Ծմբագիր՝ Գրիգոր Վարդապետ

ա

32 ա | | | զաստուածային ուրհնութեանց արժանաւորսն՝ զԹադէոսն և զՄաթէոսն, և զքոյր նոցին զայրի Թագուհին արժանիս արասցէ Քրիստոս սրբոց պսակին, ամէն, և զԳրիգոր գրծող՝ պիտակ անուն վարդապետ, որ ժողովեալ է զգիրս ուբինացն աստուծոյ և համառաւտել ի մի զլինելութիւն արարածոցս և զծընընդոցն ի փառս արարչին արարածոց՝ հաւր և որդոյ և հոգոյն սրբոյ։ Ցելից Ադամայ ի դրախտէն մինչ ի վախճանն Մօսէսի ԳՌ. և ԷՃ. ու ԻԶ. (3726) ամ է. եւ ի մահուանէն Մովսէսի մինչ ի Քրիստոս Ռ. ու ԳՃԿԸ. (1468) ամ է. եւ ի Քրիստոսէ մինչ յայս, որ գիրքս գրեցաւ Ռ. ու ԳՃ. և ԺԱ. (1411) ամ է, զի ՊԾԸ. (1409) ամին գրեցաւ։

բ

34 ա Ողորմի ստացողի գրոցս՝ համեստ և հարկեւոր տիկնոջն Աննային, և իւր ծնողացն Ադուր տիկնայ և Թօղանին, և զաւակաց նոցին՝ Փօլատին և Մուրատին:

## 101

## ՏՕՆԱՑՈՅՑ

Առ կ. Եղեան, Մ.Տ.Մ.

Գրիչ՝ Ալէքսիանոս
վայր՝ Երուսաղէմ

124 բ Փառք... գրեցաւ տաւնացուցս ի սուրբ Երուսաղէմ... ի թվականիս մերո[Պ]ԾԸ.* (1409"), ձեռամբ անմիտ Ալէքսիանոս անուամբ աբեղայի...: Ո՛վ եղբարք, ժամանակս էր վերջի ու տեղս էր խիստ դժար, մահգասիս, որ ինձ ընկեր էր, խիստ կաչկաչան էր,** անմեղադիր լերուք սղալութեան։

* Հարյուրավոր թվանշանը դիտավորյալ քերած է եղել։ Մ. Տեր-Մովսիսյանը, հնագրական տվյալների հիման վրա, ձեռագիրը համարել է ԺԵ. դարի ընդօրինակություն, դրանից պետք է եզրակացնել, որ ջնջված թվականը եղել է «Պ» (800), և ձեռագիրն ընդօրինակվել է 1400 թվականին։

** Իմա «հռհռացող», «ծիծաղող» էր։ Մեքենագրված է այսպես՝ «խիստ կաչ կաչ անէր(՞)»։



ՊԾԹ 1410

## 102

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆՑ

Երևան 2690

Գրիչ՝ Ղազար

94 ա Արդ, ես կորուսեալ եղկելիս և Թշուառականս Ղազարս անպիտան, որ փոյթ յաւժար եմ ի զանազան չարիսն և ծոյլ ի բարիս, յերեսս անգէտ աղաչեմ զբարունգ բարի, և երանելի վարդապետ ճըշմարտութեան, և քանոն ուղղութեան, քաջ պըւէտիկոս և իմաստուն սոփեստես տէր Գրիգոր* արթուն անուն՝ զքեզ, քո սրբազան դասուց աշակերտաւքդ, պաղատիմ և խնդրեմ, որ կտղտեղացեալ և զտգիտացեալ տիղմս տաղտկալի ոչ անտես առնես, այլ միոյ ողորմոյ արժանի առնես զխոր խոցեալս, և սղալանացս և անարհեստ և խոշոր գրիս անմեղադիր առնես, քանզի կար տկարիս այս էր։**

## 103

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

Երևան 2035

Գրիչ՝ Թովմայ Մեծոփեցի
վայր՝ Մեծոփայ վանք

390 բ ... Արդ, ի յամի ծննդեան փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի հազարերորդի չորսհարիւրերորդի և երեքտասան թիւ յաւելեալ ընդ նմին, և ի թվականիս Հայկազեան տոհմիս տումարի ըստ հոլովման ամաց ՊԾԹ. (1410), գրեցաւ գիրք Քարոզութեանս առաջին հատորի, հաւաքեալ ձեռամբ սուրբ հաւրն մերոյ՝ երկրորդ լուսաւորչի, մեծ վարժապետի, քաջ հռետորի և անյաղթ փիլիսոփայի, արթուն անուն գերապատիւ սուրբ րաբունապետի Գրիգորի՝ աշակերտի Յովհաննու Որոտնեցւոյ, որ էր աշխարհաւ Քաջբերունի, ի կարգէ աստուածաբան վարդապետաց սրբոց՝ երանելոյն Գրիգորի Աստուածաբանի, Կիւրղի

---

* Ամենայն հավանականությամբ ուղերձը հասցեագրված է Գրիգոր Տաթևացուն, ուստի և գրված պետք է լինի մինչև նրա մահվան թվականը, այն է՝ մինչև 1410 թ., կամ ավելի ճիշտ՝ մինչև 1409 թ. դեկտեմբերի 27-ը (տես հաջորդ հիշատակարանի ընդարձակ ծանոթագրությունը)։

** Ձեռագրի 2-րդ մասի վերջում կա մի հիշատակարան գրված Սրապիոն րաբունապետի ժամանակ, ուստի 1586—1603 թթ. ընթացքում (վարդապետական գավազան ստանալուց մինչև կաթողիկոսանալը)։ Այդ հիշատակարանի տարեթիվը կեղծված է և ինչ-ինչ նկատառումներով (թերևս ձեռագրի արժեքը բարձրացնելու համար) դարձված է ՊԿԷ. (1418)։

և Աթանասի. միաբանութիւն ղաւանողաց՝ զբանն աստուած միաց-
եալ ի մարմնի, ձեռամբ անարհեստ և անիմաստ, մեղսամած և մառա-
նադեդեւ, սխալագիր գրչաց Թովմայի պիտակ անուն վարդապետի,
[և ս]րբասէր կրօնաւորի Յովանիսի, և ամենաւրհնեալ աստուածասէր
մանկանն Յակոբայ դպրի, ի յիշատակ բարի իմում անձին հիքա-
կանի՝ Թովմայի, և ի յօգուտ խոնարհ և հեզ գրոց աշակերտեալ ան-
ձանց և որոց գթացին ի կեանս մեր, մանաւանդ հոգևոր հաւր իմոյ
և ուսուցչի՝ Մատթէոս կրաւնաւորի բազմաչարչար և աշխատողի ի
վերայ իմ անարժանի, որ պատրաստեաց զնիւթս քարտիսի, և եղ-
բաւր իմոյ Յովհաննէս քահանայի, որ բազում աշխատութեամբ, երթե-
ւեկութեամբ եգիտ զթուղթս այսմ աստուածային սոփերի և քրտնա-
ջան աշխատութեամբ կոկեաց զսա, և հօրեղբարց իմոց՝ Մկրտիչ քա-
հանայի և Մկրտիչ միայնակեցի։ Այլև յիշատակ անջինջ եղիցի սա
սուրբ հարցն մերոց երախտաւորաց, մանաւանդ եռամեծին Գրիգորի,
արարողի այսմ սոփերի, որ ի սոյն և ի սմին ժամանակի փայլէր
ջահն լուսոյ և արուսեակն մեծապայծառ ի Նսեմ և ի մութն գիշե-
րիս, և կամ թէ իբր ճիւռ ի մէջ ողկուզաց ի գաւառին Սիւնեաց, ուս-
տի և համբաւ սորա տարածեալ առ ամենեքում[ր]ք։ Ընթանային
ամինեքեան և գային, լուսաւորէին հոգով և մտաւք ի քաղցրաբան
վարդապետութեանց սորա, զի առաքելանման բղխէր ղշնորհս հոգոյն
աստուծոյ, և նա թեքեալ շարժէր զլեզու նորա առ ի վարդապետել
զբանն ճշմարտութեան։ Ընդ որս և ես տկար հոգով և ցականեալս
գնացաք ի լուր նորա՝ հանդերձ երկոտասան եղբարբք, և կացաք առ
ոտս նմա ամս Բ. (2)՝ խնամածութեամբ և սիրով նորին։ Եւ յեր-
[րոր]դ ամին, շարժեալ ի հոգոյն ազդմանէ, եկեալ ընակեցաւ յեր-
կիրս Քաջբերունեաց, ի սուրբ ուխտս Մեծոփայ։ Եւ ժողովեաց բազում
վարդապետս և կրօնաւորս, աւելի քան զութսուն ոգիս։ Եւ զամ մի
լըման դասիւ վարդապետութեան զամենեսեան լուսաւորեաց։ Երիս
գիրս բացայայտեաց՝ զՀամրերութիւն քաջ Նահատակին Ցորայ, և
զԳիրս գրչութեան Առիստակիսի և Մեծին Գէորգեայ, և զսուրբ աւե-
տարանն Յովհաննու։ Եւ եհաս մինչ ի յայն տեղի, որ ասէ՝ Ցառա-
ջագոյն քան զտօն զատկին։ Եւ եկեալ սիրելի աշակերտք նորա՝ գո-
391 ա զազան զնա ի գիշերի։ Եւ մեք ելեալ գնա ‖ ցաք զկնի նորա՝ հան-
դերձ վարդապետաւք և եպիսկոպոսաւք և գրոց աշակերտաւք, և հա-
սաք նմա յերկիրն Արայրատեան, լալով, ողբով, արտասուօք, աղիո-
ղորմ կսկծանօք, և ոչ կարացաք դարձուցանել զնա։ Եւ անդ ետ մեզ
հրաման վարդապետութեան։ Եւ մինչ դեռ յառագաստի պարէաք և
հոգով և մարմնով ուրախ էաք, իսկոյն համբաւ մահու նորա խռովե-
ցոյց զմեզ, զի յետ բաժանելոյն մեր ի նմանէ ԼԶ. (36) օր միայն
եկաց ի մարմնի, այսինքն՝ վերջին աւրհասն եհաս նմա, որ որջաց-
եալ է ի սկզբանէ ի բնութիւնս մեր։* Աւաղ մեծի տարակուսանացս

* Գրիգոր Տաթևացու մահը տեղի է ունեցել 1409 թվականի դեկտեմբերի 27-ին։
Ժամանակակիցներից շատերը, սակայն, հայտնում են, որ նա վախճանվել է Հայոց
ՊԾԹ. այսինքն 1410 թվականին։ Այստեղ, ըստ էության, հակասություն չկա, որովհետև



*Նկ. 6. Գրիգոր Տաթևացու դիմանկարը*
*(Հանված է Երևանի № 1203 ձեռագրից, մեծացված է մոտ 2 անգամ)*

և հանկարծահաս Թշուառութեանցս, զի մինչև ցայսօր ժամանակի յայտնի գիտէաք, Թէ ողորմած է աստուած տառապեալ ազգիս մեր Հայկազնի, բայց այժմ երևեցաւ, Թէ բարկացեալ է աստուած ազգիս Հայոց, զի զնա ունէաք հոգևոր և մարՄնաւոր Թագաւոր աստուածապարգև, և զնա երարձ ի մեզանէ։ Որոյ յիշատակն աւրհնուԹեամբ եղիցի ի վերայ երկրի և աղաւԹք նորա ի վերայ ամենայն աշխարհի։ Եւ մեք Մնացաք անգլուխ անձն և մարմին առանց հոգոյ, զի աստանդեալ, քոյքայեալ ցրուեցան գրոց աշակերտեալ մանկունք, ոչ ունելով տեղիք ապաստանի և հոգևոր հանգստեան, բայց միայն զՔրիստոս՝ զյոյսն ամենեցուն։

Դարձեալ, աղաչեմ զամենեսեան սիրովն Քրիստոսի, որք հանդիպիք այսմ հոգիարուղխ պատգամացս, յիշել զիմս աղկաղկուԹիւնս ի տէր սրտի մտաւք, ընդ ինև և զհանգուցեալ բաբունապետքն մեր՝ զերախտաւոր հարքն մեր ի Քրիստոս Յիսուս՝ զՍարգիս վարդապետ, զՎարդան վարդապետ և զՅովհաննէս վարդապետ՝ զհանգուցեալքն ի Քրիստոս։ Այլև զմարՄնաւոր ծնողքն մեր, զվաղ ննջեցեալքն ի Քրիստոս՝ զՍտեփանոս և զՇամշա մաղԹեմ հոգելից արանցդ խնդրել ի Քրիստոսէ Թողութիւն մեղաց սոցա։ Նաև զհարազատք իմ զՅոհաննէս քահանայ, զՅովաննէս, զԱռիստակէս, զԳորգի, զԱմիր-Մէլիք, զՍոլթանշա, և զքեռն իմ, որք օգնական եղեն ի նիւԹ սորա, աղաչեմ յիշել ի տէր, առ ի պահել զսոսա ըստ կամաց իւրոց և Թողութիւն մեղաց գտանել ի Քրիստոսէ աստ և ի հանդերձեալն։

Արդ, գրեցաւ սա յերկիրս Քաջբերունեաց, ի սուրբ ուխտս Մեծոփայ, ի հրեշտակաբնակ կայարանս սրբոց վարդապետաց և ճգնաւորացն առաջնոց, ի դրունս տիրամօր Աստուածածնի և սուրբ Յակոբայ հայրապետի, ի դառն և յանբարի ժամանակիս, յորմէ սաստկաց-

---

դեկտեմբերի 27-ը, տարին հունվարի 1-ից սկսելու դեպքում՝ 1409 Թվականի վերջին օրերից է, իսկ տարին, ըստ հայկական տոմարի, օգոստոսի 11-ից սկսելու դեպքում՝ ընկնում է արդեն 1410 Թվականի տակ։

Գր. Տաթևացու մահվան Թվականի ու ամսաԹվի, ինչպես նաև նրա կյանքի և գործունեության առանձին դրվագների ուսումնասիրման համար մեծ արժեք է ներկայացնում նրա վարքը, գրված հավանաբար Մատթեոս Ջուղայեցու կողմից, որ պահպանվել է Երևանի № 6607 ձեռագրի Ծա—Ծա էջերում։ Ստորև տալիս ենք այդ կարևոր վարքաբանական գրվածքն ամբողջությամբ։

«Ի սմին աւուր՝ ի դեկտեմբերի Իէ. (27). ննջումն և հանգիստ երիցս երանեալ քաջ բաբունապետին Գրիգորի, աշակերտի Յովհաննու Որոտնեցւոյ։

[Մ]եծանչելի այրս աստուծոյ էր ազգաւ Հայկազնի, աշխարհաւ կրկնակի՝ ի հայրենական տոհմէ Քաջբերունի և մայրենական ցեղն յԱյրարատ գաւառէ, ի դեզաւանէն Փարպոյ։ Ծնեալ յաշխարհին Վրաց, ի յամուրն Թմոք. և սնեալ ի ձեռն հարազատ եղբօրն՝ ի տան Թագաւորին Գաւթի։ Եւ էր մանուկ գեղեցկատիպ, և ուշիմ, և լի հոգոյն պարգևօք։ Եւ յորժամ կամեցաւ մեծ փիլիսոփայն Հայոց Յոհաննէս Որոտնեցին գնալ յԵրուսաղէմ՝ յերկրպագութիւն սուրբ տեղեացն, ետես զմանուկն Գրիգոր յառաջադէմ յամենայն ուսմունս, էառ առ ինքն, և արար ըստ հոգոյ որդի, և սնոյց ի բարին, և ուսոյց զամենայն իմաստս աստուածային գրոց և արտաքին սոփեստից։ Եւ տարեալ ի հանգիստ դամբարանի սուրբ Լուսաւորչին, ի Սեպուհ լեռան, և ետ ձեռնադրել սարկաւագ, և յանուն Լուսաւորչին կոչեցաւ Գրիգոր (Նրա մկրտության անունը եղել է՝ Խութլուշահ Լ. Խ.), և անուամբ

եալ է սուրն խմայելացոց ի վերայ մեր հալածանօք, ըստ հառաջաւես տեսլեան սրբոյն Սահակայ։ Որ և տատանեալ ծփիմք ամենաներհակ արկածիւք ի ներքուստ և արտաքուստ, որ ափշութիւն գործէր տեսականի և ի միջումն գործոյս։ Ի ձեռնտուութենէ հոգոյն աստուծոյ գրեցի և գրել ետու մեծաւ տաժանմամբ և եռափափագ ըղձմամբ զտենչալիս ոգւոյ իմոյ և յոգունց զգերահրաշ իմաստութիւն և զոգեշահ, լուսաւոր վարդապետութիւն մեծ հռետորին Գրիգորի հօր մերոյ, ամենավերջ վիժեալս ի ծննդոց նորին։ Եւ ընկալայ զսա սըրտալիր ուրախութեամբ, իբրև զտախտակսն Նախամարգարէին մեծի։ Եւ հայցեմ յամենայնէ ներումն գտանել սխալանացս, որ աստ գտանի, որք օրինակաւ և որք պատահմամբ հանդիպեցաւ։ Զի թէ օգուտ ումեք լիցի՝ շնորհակալութիւն հոգոյն շնորհաց եղիցի, ե[ւ կա]թ աղաւթից ձերոց ցաւղեսցի ի տապան իմ գերեզմանի և սուրբ հօր մերոյ և ճգնաւորի Յովաննէս վարդապետի, որ սաղմոսերգութեամբ և աղօթիւք լնոյր զպակասութիւն մեր, և Մխիթար վարդապետի, և Յովաննէս գրագրի՝ գրոց աշակերտի, հոգևոր հարազատի եղբօր մերոյ, և հարազատի իւրոյ՝ Վարդան աբեղայի, նա և Ղազար կրօնաւորի, և սիրելի եղբօր Յոհաննիսի, և այլոց կրօնաւորացս՝ բազմութիւն եղբարցս
391ա ի Քրիստոս, և եղկելի մատանցս այս վաստակ մտերիմ || և խոհեմ քննողացդ ի վայելս մեծ և օգտութիւն եղիցի։ Զի մի լիցիք բազմիս առաւել և սակաւին ոչ տուօղ, որով աւրհնեալ փառաւորեսցի ամենասուրբ երրորդութիւնն անբաժանելի ի ներկայս և յապառնին և յանսպառ յաւիտենին, ամէն։

Այլ և զվարդապետն Գալուստ՝ զսիրելի աշակերտ սուրբ հօրն մերոյ մեծին Գրիգորի, որ պատճառ եղև մեզ բաղում բարութեան և զօրինակն շնորհեաց մեզ յերկրէ հեռաստանէ, աղաչեմ սիրովս Յիսուսի յիշել զնա մաքուր աղօթիւք... հանդերձ կրկին ծնողօք հարազատօք և ամենայն մերձաւորաւք իւրովք, ամէն։

ա Իբրօք ելից զտեղի նորա՝ լուսաւորելով իմաստութեան լուսովն զազգս Հայոց։ Եւ տարեալ յԵրուսաղէմ արար քահանայ, և դարձեալ բերեալ առ դերեզմանն սուրբ Լուսաւորչին՝ արար վարդապետ՝ աղ համեմիչ և լոյս լուսաւորիչ տանն աստուածոյ, և բերեալ յաշխարհն Սիւնեաց, և զկնի մահուանն իւր ետ հրաման նստել յաթոռ մեծ համալսարանին Եսայեայ և րաբունապետ Հայոց Մեծաց։

Եւ մեծարեցաւ և պատուեցաւ ի մեծ աշխարհակալէն Թամուրէն, և յորդոյ նորին Միրանշայէն. և պատուեցաւ ազգս Հայոց յայլասեռիցն վասն սորա և իմաստայեղծ բանից վեհին Գրիգորի։ Այլ և արար գիրս յոգնիմաստս ընդդէմ ամենայն ազգաց, ճշմարիտ ցուցանելով զհայք. և արար բանս խրատականս, և իմաստ և հանճարս, և իմաստնացոյց զազգս Հայոց քան զամենայն ազգս, և ուղղեաց զկարգս և զսահմանս եկեղեցւոյ։ Եւ էր անդադար յընթերցումն և ի գրել աստուածային իմաստից, և անձանձիր ի յաղօթս, և անպարապ ի ծնրադրութիւնս. աղքատասէր և օտարասէր. առատ ի տուրս աղքատաց, խարազանազգեստ մարմնով և խոնարհ հոգւով և ծննդական մտօքն. հասակաւ երկայն, դիմօք պայծառ, տեսակ արժանի զոռոզութեանն, հերօք խարտեաշ, մուրուօք առատ, միշտ պահեցող, յոյժ արտասուեօղ, պատուող տօնից, սիրող սրբոցն և բանից [նոցա]։ Հանգեաւ երանելի մահուամբ ի վանքն Տաթևոյ ի դեկտեմբերի Իէ. (27), և թաղեցաւ ի տօնի մեծ առաքելոյն Պետրոսի և Պօղոսի, և եղև դասակից և պատուակից նոցին, ի թվին ՊԾԸ. (1409). ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ, օրհնելոյն յաւիտեանս, ամէն. որոյ յիշատակն .օրհնութեամբ եղիցի, ամէն»։

*Այլ և զվերոյասացեալ րաբունապետն* Գրիգորիսս, *որ եղև պատճառ բազում բարութեան, զի ժողովեաց բազում վարդապետք և քահանայք, տածելով զամենեսեան ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ, և Թարգմանեաց գիրս ոդեշահս և լուսաւորիչս, և ոչ այսչափ միայն, այլ եղև իբրև զհաւատարիմ լրտեսն Յեսու Նաւեայ, մտանելով յերկիրն պարգևաց, այսինքն արձակեաց զմեզ ի բանադրութենէ անիծից սուտ և ապստամբ կաթողիկոսացն Աղթամարայ, և երեր ազգիս Հայոց զփրկական համբաւն և առաջնորդեաց արժանաւորացն մտանել ի միաբանութիւն և ի հնազանդութիւն գերադրական և սուրբ աթոռոյն Գրիգորի լուսաւորչին մերոյ, որ է դուռն և մուտ երկնից արքայութեանն, յայտնութեամբ հոգոյն ի տեսելեան դիշերոյ, որ է գրեալ յերկրորդ թուղթն Աղթամար[եցւոց]*, *անդ գտանես, և զեղկելիս յիշեսցես, ամէն, եղիցի։*

*Այլ և զաշակերտակից հարքն մեր և եղբարք՝* զՄարգարէ *վարդապետ,* զՅակոբ *վարդապետ,* զՅովանէս *վարդապետ, զմիւս* Յովանէս *վարդապետ,* զԿարապետ *վարդապետ,* զՄկրտիչ Նահապետենց, զՄկրտիչ Օրբէլենց, զՄկրտիչ Հողձեցի, զՂազար Մահդասենց, զԹովմա, զՂազար Աղթամարցի, *և* զՄելքիսէդեկ Բերկրցի, *և* զՍարգիս *աղաչեմ յիշել ի տէր սրտի մտաւք, նա և* Յակոբ *դպիր և* զՅովաննէս *կրօնաւոր, որ բազում աշխատութեամբ և չարչարանաւք օգնական եղեն ինձ ի գրելս, տացէ նոցա Քրիստոս աստուած վարձս ողորմութեան և պահեսցէ ի կամս իւր, ամէն, եղիցի։*

Բ

*Գրիչ՝* Յակոբ

353 ա *Քրիստոս աստուած, բարեխօսութեամբ սրբոց առաքելոց, որ այսօր ակն ունին առ քեզ, զի դտրձեալ գաս՝ մխիթարեսցես զնոսա, մխիթարեայ, Քրիստոս աստուած,* զՇաքարբէկ *մահդասու հոգին ի դասս սուրբ առաքելոցդ, որ այսօր մեզ լօ*** *ծիրան և խնձոր երեր, և զիս՝ զանպիտան* զՅակոբ *դպիրս։*

## 104

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

***Երևան 6405*****

*Գրիչ և ստացող՝* Թովմայ Մեծոփեցի
*վայր՝* Երևան

ա

429 ա *... Շնորհօք բարերարին աստուծոյ ես մեղապարտս ի մանկունս եկեղեցւոյ պիտակ անուն վարդապետս* Թովմա *ստացայ զերկրորդ*

---

* *Այս մասին տես Գր. Տաթևացու «Բանք գեղեցիկ և յոյժ պիտանի վասն աթոռոյն Աղթամարայ, որ է ի ներքոյ բանադրանաց» աշխատության մեջ (Երևան, № 4669 ձեռագիր)։*

** *Կարդա՝ «լաւ»։*

*** *Ա. հիշատակարանը հասել է մեզ պատառոտված ու մաշված վիճակում։ Անընթեռ-*

հատոր Քարոզգրոցս աստուածապատիւ և երանաշնորհ քաջ հռետորին և անյաղթ փիլիսոփային՝ սուրբ հօրն մերոյ մեծին Գրիգորի, յամի թվականութեան մերս տումարի ՊԾԹ. (1410)-երորդի՝ բազում աշխատութեամբ և չարչարանաւք, ի դառն և ի չար ժամանակի, ի գաւառիս Այրարատեան, յանապատիս Երևանոյ, առ դրան սուրբ տաճարիս Անանիայ առաքելոյ, ձեռամբ երախտաւորի և մեր ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ բարեկամի՝ քրիստոսակիր առն աստուծոյ Գալուստ վարդապետի, և հոգևոր եղբաւր մերոյ և ընկերակցի Սիմէոն կրօնաւորի։ Եւ մասն ինչ ես՝ տրկտրս հոգով և մարմնով գծագրեցի ի յուսումն վարդապետաց եկեղեցւոյ և ի գիտութիւն մանկանց Սիոնի, մանաւանդ յիշատակ հոգւոյ իմոյ, և հոգևոր ծնողաց իմոց և ուսուցչաց՝ Մաքէոս կրօնաւորի, և վարժապետացն մերոց՝ երկրորդ լուսաւորչի մեծին Գրիգորի՝ հաւաքողի և արարողի այսմ սոփերի, որ ի սոյն ամի փոխեցաւ ի Քրիստոս և եթող մեզ սուգ անմխիթարելի, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի, և հեզահոգի բաբունապետացն՝ Սարգիս վարդապետի, և Վարդան վարդապետի, և Յովհաննէս վարդապետի՝ բազմաչարչար նահատակի, որ ի սոյն ամի աւաղտեաց զսուրբ եկեղեցի | | |

Բ

213 բ Զնուաստ և զմեղուցեալ պիտականուն վարդապետս Թովմա աղաչեմ յիշել ի տէր, որ սակաւ ինչ աշխատեցայ և զպակասութիւն քարոզիս լցի ի հոգելից վարդապետաց բանից, որ էր թերի մնացեալ ի սուրբ հօրէն մերմէ։*

Գ

416 ա Այլ և զստացաւղ գրոցս զպիտականուն վարդապետս Թովմա, որ բազում աշխատութեամբ գրել ետու զգիր վարդապետութեան հօր մերոյ մեծ վարժապետին Գրիգորի, ի հալալ արդեանց ծնողաց իմոց, հոգևոր եղբօր իմոյ Սիմէոն կրօնաւորի, որ ի յաւարտ գրոյս վճարեցաւ ի սուտ կենցաղոյս։

Դ

Աւրհնեալ էս Քրիստոս աստուած
  և գովեալ յամէն բերանոյ,
Որ զամենեցուն կարիս
  կատարես առանց հոգալոյ,
Այսաւր զանպիտան գրչիս
  լցուցեր զփղձս տենչալոյ,

Նկլի հատվածները վերականգնում ենք Ս. Տէր-Ավետիսյանի Նախավկայի-վանքի ձեռագրերի անտիպ ցուցակի հիման վրա, որը կազմված է 1904 թվականին, երբ ձեռագիրը (այն ժամանակ № 113 ձեռագիր Նախավկայի վանքի) եղել է համեմատաբար լավ վիճակում։

* Խոսքը Գր. Տաթևացու «Ձմռան կարգաց ագօթից» (սկ. «Զբերան իմ բացի և առի զհոգի...») քարոզի մասին է։

Զի յիս չունէի կասկած
  զայսպիսի գործ վճարելոյ։
Ով հաստատ ի մեզ յուսա
  չըն[կ]անի ի գործ ամօթոյ,
Ինքն դու հնար առնես՝
  դու աւարտես առանց հոգալոյ,
Քեզ փառք և պատիւ տացուք
  գոհութիւն ընդ հօր և հոգւոյ։

Ե

Գրիչ՝ Սիմէոն

225 ա Զստացօղ գրոցս՝ զհոգևոր հայր մեր զվարդապետն Թովմա և զՍիմէոն գրիչս [յիշեցէք], և աստուած զձեզ յիշէ, ամէն։

Զ

Գրիչ՝ Գալուստ

59 բ Ես ես՝ անարհեստ և մեղաւք մածեալ գրչակս Գալուստ սպասաւոր բանի գոչեմ ընդ անառակին խնդրելով յարարչէն ամենից, զի և ինձ շնորհեսցէ զբազմութիւն պարտուց յանցանաց և որք զամէնն ասասցեն։ ՊԾԸ. (1409) գրեցաւ։

Է

81 բ Զբազում մեղաւք զառածեալս և ի հոգոց աշխարհի տատանեալս՝ զԳալուստ անարհեստ գրիչ և զանպիտան սպասաւոր բանի, որ գրեցի զսա ի վայելումն անձին իմոյ տառապելոյ և յիշատակ ոգւոյ իմոյ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա, զի ասիցէք բոլորով սրտիւ ղաստուած-ողորմին, որ և դուք գտանիցէք յանյիշաչարէն տեառնէ։

Ը

318 բ Որք հանդիպիք այսմ վայրի
ԶՈհանէսս* մեղաւք ի լի
Ցիշեցէք դուք ի բարի։

# 105

## ԳՐՈՒԹԻՒՆՔ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 5255

Հետ. ստացող՝ Յովհաննէս
վայր՝ Մեծոփայ վանք

5 բ Զստացաւղ սուրբ կտակիս զերանաշնորհ քարոզն կենաց զՅով–

* Ոհանէսը ձեռագրի մի քանի թերթերի գրիչն է։

Յոհաննէս վարդապետ* աստուածաբնակ ուխտին Մեծոփայ վանաց յիշեսջիք առաջի Քրիստոսի, և զհոգևոր որդեակն իւր զՆերսէս, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

## 106

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

*Երուսաղէմ 2178*

Գրիչ՝ Թումա [Մեծոփեցի՞]

... Յօտար երկիր էի և թանաք չկայր, զվարդապետս Թումա աղաչեմ անպարսաւ թողցես, սուրբ եղբայր. ի սոյն աւուրս փոխեցաւ մեծ վարդապետն Գրիգորիոս ի Քրիստոս, ի թվկ. ՊԾԹ. (1410), և ես անմխիթար կամ յամենայն կողմանց, վա՜յ ինձ։

## 107

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

*Երուսաղէմ 1190*

Գրիչ՝ Թումա

Սկսեալ ձեռամբ մեծին մերոյ արփիաւորչի և հսկողի [Գրիգորի Տաթևացւոյ], որ յայսմ ամի փոխեցաւ առ բարձրեալն իւր մեծ հրաշիւք...։ Եւ աւարտեցաւ յանապատս, որ կոչի սուրբ Նշան, առ ոտս նորաբողբոջ բաբունապետիս, որ կոչի Սիմէոն՝ աշակերտ արարողի գրոցս, որ յայսմ ամի զայս գիրքս դաս ասէր, ձեռամբ Թումայի պիտակ և անարժան և տրուպ փափաքողի կաթի անկախարգի։

## 108

### ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

*Երևան 856*

Գրիչ՝ Սիմէոն
Վայր՝ Ղրիմ

351 ա ... Արդ, եղև կատարումն և գրաւ գրոցս Հարցմանց ի յայսմ տարոջ, որ աքփիածին և երջանիկ մեծ հռետորն Գրիգոր վարդապետն՝ գանձն իմաստիցս, երկրորդ աստուածաբանն, կրկին լուսաւորիչն հասարակեաց զկեանս առօրեայ, հասեալ ի կէտն իմաստու-

---

* Մեծոփայ վանքի նշանավոր առաջնորդ Յովհ. Մեծոփեցին է, որ հիշատակվում է ԺԵ. դարի առաջին տասնամյակներում՝ մի շարք հիշատակագիրների կողմից։ Նախորդ հիշատակարանում Թովմա Մեծոփեցին հայտնում է, որ նա (Յովհաննէսը) «ի սոյն ամի (1410 Թ.) աւարտեաց զսուրբ եկեղեցի[ն]»։ Պայմանականորեն հիշատակարանը տեղադրում ենք 1410-ի թվաշարքում։

թեան և յաղբիւրն գիտութեան։ Եղիցի նմա յիշատակ մաղթանաց մասին աւրհնութեանց սրբոցն ի լոյս, ամէն։ Ի շրջագայութեան Հայ-
351 բ կազեան տումարի ի ՊԾԹ. (1410) գրեց[աւ | | | այսմ մեծարգոյ նահանգիս Ղազրաց աշխարհի Դրըմիս, ի շրջակայ մենաստանս և ի հրեշտակաբնակ անապատս, առ գուրս սուրբ Լուսաւորչին։ Աղաչեմ զամենես[եան], որք հանդիպիք կարդալով կամ օրինակելով, յիշել զՅովանէս աբեղ[այն]՝ զհարազատն իմ, զի սա ծն[աւ] զմեզ ըստ բանի բազմաջան երկաւք՝ կրթեալ ի մամուլս վարժարանի։ Դարձեալ յերեսս անկեալ արտասուալիր դիմաւք հողս և փոշիս սուրբ գարշապարաց ձերոց զՍիմէոն կրօնաւորս յիշել, սխալանաց և անարհեստ և փցուն գրիս չմեղադրել, զի թողծեալ մտաւք և տխեղծ մատամբ գրեցի, բազմահաւաք և ծաղկերանք լուսաւոր բանիցս մոռացումն արար տկարութեանս. և մաղթեմ եղբայրական սիրով յիշել և զծնաւղսն մեր և զՍարգիս եղբայրն մեր հարազ[ա]տ...։

## 109

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 2538

ա

Գրիչ՝ Սիմէոն

231 ա Յիշատակ քո աւրհնութեամբ եղիցի՝ սուրբ Հայր,* որ յայսմ ամի վերափոխեաց զքեզ Քրիստոս ի դասս երջանիկ վարդապետաց ե մեզ՝ ազգիս Հայոց մեծ սուգ եղև, և զեղկելի գծողս յիշեա՝ զՍիմէոն։

բ

Վաճառող՝ Ստեփաննոս Թավրէժեցի

134 ա Նուաստ և ներգևեալ ոգի Ստեփաննոս լալուկ վարդապետս Թավրէժեցիս, տուի զայս աւետարանս Շ. (500) դ[ահե]կ[ա]ն, որ էլ մարդոյ հաղ ու դաւ վասն հետ Աբրահամ աբեղին չկայ, աւետարանս իւրն հաղ ու մուլք է։ Ով որ խօսի կամ դաւէ առնէ՝ դատի յաստուծոյ և ամենայն սրբոց նորայ, ի թվ. ՊԾԹ. (1410), յարաց ԺԹ. (19), մայիս ԻԶ. (26) գրեցաւ հաստատ բանս։

## 110

## ՃԱՇՈՑ

Երևան 9087

Գրիչ՝ Եզեկիէլ Որոտնեցի

ա

106 ա Քրիստոս աստուած իւր սուրբ չարչարանացն բարեխաւսութեամբ ողորմեսցի ստացողի սուրբ գրոցս տէր Աթանասի և ամենայն հարա-

* Գիմում է հեղինակին՝ Գրիգոր Տաթևացուն, լսելով նրա մահվան բոթը։

զատաց նորա, նաև Եզեկիէլի Որոտնեցոյ եզկելի գրչի, և ծնողաց իւրոց...։

Բ

138 ա Զատացաւղ տառիս՝ զամենըրջանիկ և զքաջ դիտապետն զտէր Աթանաս յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր, ով սուրբ ընթերցողք, նաև զեղկելի գրիչս զէզէկիէլ մեռեալ ոգի...։

Գ

237 բ Զատացող սուրբ գրոցս և զաշխատողք և զամենայն արդիւնակատարք, որք շատ և որք սակաւ, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր, ով սուրբ վայելողք, նաև զմեղուցեալ ծրողս զէզէկիէլ...։
Ի թվիս ՊԾԹ. (1410).

Դ

263 ա Այսաւր գլուխս խիստ ցաւէր.
Եւ ով ոք ոչ ինձ ողորմէր
Քրիստոս սոցա չողորմէ։

Ե

292 բ Յորժամ գրէի զմահ Եսայի,
Հասաւ վախճան գրոցս ստացողի
Զհայր[ապետ] տէր ծերունի,
Որ Աթանասն որջորջի,
Փառաւք պատուեալ միշտ ի հոգի,
Եւ փոխեցաւ ի դասս հրեշտակի.
Յոյժ դառնացաք մեք ի հոգի,
Զի բարձին զտէրն ի մարմնոյ աստի,
Եւ հանգեաւ ի գոգն Քրիստոսի։
Անդամալոյծ մի այլազգի
Եկն ի նշխար հայր[ապետի]
Եւ ողջացաւ ի նմին ժամի։
Աղաչեմ զձեզ, եղբարք սիրելի,
Զտէր Աթանաս սուրբ ծերունի
Յիշման առնէք դուք արժանի,
Ընդ նմին և զգրիչս զեղկելի՝
Զեզէկիէլ մեռեալ ոգի
Աղաչեմ յիշել բոլոր սրտի.*

* Գրիչ Եզեկիէլի ընդարձակ հիշատակարանները տես 1441-ի թվաշարքում։

## 111

## ՏՕՆԱՊԱՏՃԱՌ

**Երևան 3082**

Գրիչ՝ Թումա

260 բ ... *Յիշեցէք ի մաքրափայլ և յերկնագնաց յաղաւթս ձեր զտկար ոգի՝ զվերջինս ի պետաց և զյետնեալս ի պարս բանասիրաց զ*Թումա *խնդրող բանի, զուսուցիչն զ*Ալեքսաճ *աբեղա՝ զհոգևոր ծնօղն մեր, և զըստ մարմնոյ ծնաւղսն մեր՝ զքրտնաջան հայրն* Սարգիս, *և զմայրն* Շճոհւոր, *և զբազմերախտ քոյրն իմ* զՂփչախ, *որ զամենայն աւուրս իւր տռ իս անցոյց ծառայութեամբ և բաղում աշխատութեամբ՝ առեալ աշխարհ և սիրել զաստուած՝ հաւատաւոր կոչեցեալ, որ է հաւատացեալ և հաւատով լցեալ, և զքւերորդիսն իմ* զՀայրապետ *դպիր, և* զՏիրատուր, *և* զՆերսէս, զՄելքսեէթ՝ *զհանգուցեալսն ի Քրիստոս, և* զՍտեփաճճոս *կրաւնաւոր, և զամենայն արեան մերձաւորսն մեր՝ զկենդանիս և զհանգուցեալս, ընդ նոցին և զսիրելի աշակերտն իմ* զՊետրոս *աբեղա, և Քրիստոս յիշողացդ և ոչ յիշեցելոցս ողորմեսցի, ամէն:*

*Զի ԺԵ. (15) ամ ի* Բաւղդի *թալանն եկաց, յորժամ եկ* Թամուրի *որդին Ամիրզայն ի վերայ* Բաղիշու, *և տարան ի* Թաւրէժ*։ Եւ ես յամենայն ժամ լալոտ աչաւք կայի և աղեխարշեալ ընդդէմ սմա, ոչ գտանելով հնար ազատել զսա, զի անգեալ էր ի ձեռն անողորմ եկեղեցականաց։ Ապայ յետոյ ուրախարար և մխիթարիչ հոգին աստուած մխիթարեաց և ուրախացոյց զվշտագնեալ անձս և զբեկեալ սիրտս և զտրտմեալ ոգիս. և ինքեանք իւրեանց անձամբ բերին զգիրքս առ իս։ Բայց թուլացեալ և բրդացեալ են կրունկք գրոցս՝ կտրատեալ և խարխարեալ։*

*Աստուծոյ գոհութիւն և փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։ ՊԾԹ. (1410) եկաւ գիրքս։*

*Նկ. 7. Յակոբ Ղրիմեցու ինքնագիրը։*

## 112

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ԳՐՈՑ

**Երևան 1716**

*Պակասները լրացնող և մեկնող՝* Յակոբ Ղրիմեցի

75 բ *Զմեղուցեալ* Յակոբ *վարդապետս* Ղրիմեցի *աղաչեմ յիշել ի տէր. ի թվիս ՊԾԹ. (1410)։**

---

* *Ձեռագիրն ընդօրինակված է 1276 թ., Կիլիկիայում։ Մեկնողական իր դիտողությունները Հ. Ղրիմեցին թողել է լուսանցքների վրա։*

## 113

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՏԹԷԻ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

*Երևան 1295*

*Գրիչ՝* Արէլ
*վայր՝* Սարկաւագանց վանք

679 *... Արդ, գրեցաւ սուրբ և գերամբարձ աւետարանի քաղուածոյս ի լուսաւոր բանից Մաթէոս գլխոյ, յարմարեալ և աշխատասիրեալ* Գրիգորի *արի վարդապետի։*

*Արդ, ես՝ մեղապարտ և անարժանս, տարտամ և ծոյլս ի բարեաց ցանկացող եղէ սմայ, վասն տկարութեան և ծոյլութեանս ոչ կարէի ձեռնարկել, վասն զի անհմուտ էի արուեստիս։ Այլ հրամանաւ և աւգնականութեամբ վարդապետին իմոյ* Յովանիսի *մականուն* Կարմիր *կոչեցելոյ, աշակերտի վերոյասացեալ վարդապետին* Գրիգորի՝ *գրեցի։ Զոր ի միում շարաթոջ շիջան Բ. լուսաւոր ջահքն և զմեզ թողին խաւար, զոր յիշատակ նոցա աւրհնութեամբ եղիցի։ Փանզի ո՞վ կարէ զանչափ դառնութիւնն, որ յետ մահուան նոցա հանդիպեցաւ, պատմել, քանզի եղեն ազգս Հայոց և քահանայքն մոլորեալ իբրև զհաւտ առանց հովվի, և փանաւրէից հասանէին դառնութիւնք արքունուստ և ի սուտ և ռաահակ եղբարց, զոր տէր խաղաղեցուսցէ։*

*Արդ, գրեցաւ աստուածաշունչ տառս ի թուաւ ՊԾԹ. (1410), ձեռամբ մեղապարտ և ախմար դրչի* Արէլ *սուտանուն աբեղայի, ի վանս Սարկաւագանց կոչեցելոյ, ընդ հովանեաւ սուրբ Կարապետիս, առ*
680 *ոտս բազմեր ‖ ախտ հաւր իմոյ և վարժապետին* Յովանէս Կարմրի։

*Արդ, մոխրամած գիմաւք և արտասուալի աչաւք աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք զվերոյասացեալ վարդապետն իմ և զհոգևոր եղբայրն իմ* Զէկիէլ *կուսակրաւն աբեղա, որ զաւրինակն շնորհեաց և* զՄարկոս* *պատուական քահանայ, որ բազում խրատով օգնական եղև, զի անհմուտ էի։ Այլ և զծնաւղքն իմ՝ զհայր իմ* զԻնախ *և զմայրն իմ* զԹամար, *և զեղբայրն իմ փոխեցեալն առ Քրիստոս՝* զԽաշնամ, *այլ և զկենդանիս՝* զԲէնամ *և* զՆէքնամ, *և զամենայն արեան մերձաւորսն իմ յիշել աղաչեմ, և զիս՝ զանարժան գծող սորին մի մոռանայք։ Այլ և խոշորութեան գրոյս անմեղադիր լերուք, զի կար մեր այս է, և սխալանացն ներեցէք, զի վասն կարաւտութեան [յ]անդգնեցա։ Դարձեալ աղաչեմ զհանդիպողք սորին յիշել ի սուրբ և ի հաշտարար աղ[ա]ւթս ձեր զվերոյասացեալքդ, և որք յիշէք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ, ամէն։*

Բ

413 *Ո՞վ պատուական եղբայրք, ընտրեալք ի բուրոց և զատեալք ի [յ]ոգունց, զանարժան ծրաւղս յիշել աղաչեմ, նաև զվարդապետն իմ* զՅովանէս *, որ յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս [յ]ոյսն ամենե-*

** Հապավված է այսպես՝ «զՄկս»։*

ցուն և զմեզ ենթող որբս։ Այլ և զհոգևոր եղբարքս, որ կան ասա ժողովեալ, զմարմնաւոր ծնաւղքն իմ և զեղբարքն, և զանարժանս մի մոռանար յիշել, և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութեանն, ամէն։

## 114

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 8740

Գրիչ՝ Մելքիսէդեկ
վայր՝ Բաղէշ

447 բ Աւրհնութիւն... որ արժանի արար զանարժանս հասանել ի կատարումն գծոյս։

Եւ արդ, ես թաղծեալս մտաւք և ցաւագին անձամբ, վերջինս ի ծնունդս եկեղեցոյ և տրուպս բանասիրաց փութոյ՝ Մելքիսէդեկ պիտակ անուն խնդրող բանի, գծեցի ձեռամբ իմով զգիրքս քարոզողաց, յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց, հաւրն իմոյ Տիրացու քահանայի, և մաւրն իմոյ Մեծ–Տիկնայ, և այլ ամենայն ազգականաց իմոց։ Ի թուաբերութեանս մեծի ութհարիւրի յիսուն և իններորդի ամի (1410), յաստուածապահ գաւառս և ի քրիստոսաշէն քաղաքս Բաղէշ կոչեցեալ, ընդ հովանեաւ ամենազաւր աջոյ ձեռինն աստուծոյ և պահպանութեամբ աստուածընկալ խաչին Քրիստոսի։ Դարձեալ, յերես անկեալ արտասուալիր դիմաւք, ես՝ անարժան հողս և փոշիս սուրբ գարշապարաց ձերոց աղերսեմ ի խորոց սրտէ զհտրազատգութ հարց և եղբարց մեր հոգևորաց, զի կոթ մի արտասուաց ի կաթիլ դուլէ ձերդ մաղթանաց ցաւղեսցէ ի գերեզման հոգոյ իմոյ տապանաց և լուասցէ զբազմաշա՞րաւ զագրացեալ ոսկերս մեղաւք մեռելոյս, զի թերևս վասն ձեր սիրալիր մաղթանացդ | | |

## 115

### ՑԱՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 4737 և Փիրղ., Նոտ. 38

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Տշող

239 բ ... Գրեցաւ սուրբ տառս ի թուականիս Հայոց ՊԾԹ. (1410), ի հայրապետութեան տեառն տէր Դաւթի սուրբ և անբիծ քաւչապետին, [ձեռամբ մեղապարտ Ստեփանոս գրչի]*, ի խնդրոյ աստուածասէր և քաղցրահամ պտղաբեր ծառոյն Յոհանէս քահանայի, որ պտղաբերեաց զսուրբ գիրքս և շնորհեաց Աստուածածնին Ոստանի Նոր քաղաքին ընձա յաւիտենական, յիշատակ և բարեխաւս հոգոյ իւրոյ, և բարի ծնողացն Յովանիսին և Խելաւքին, և հարազատ եղբարցն Սարգըսին և Թումային, և համեստագոյն կենակցին իւրոյ Խնդ–Թագուհոյն, և զաւակի նոցին Փաշաի և այլոցն, որ առ աստուած գնացին, և Սուլտան–Մելէքի և Զըմրութի՝ փոխեցելոցն առ Քրիստոս, և ամենայն ազգայնոցն իւրեանց՝ կենդանեաց և հանգուցելոցն, առհասարակ։ Եւ մի ոք

---

* Այս տեղեկությունը քաղել ենք 1ր և 3ր էջերի վրա գտնվող հիշատակագրություններից։

իշխեսցէ զսա հեռացուցանել ի դրանէ Աստուածածնին, ոչ յիմոց և ոչ յաւտարաց, կամ ծախելով, կամ գրաւելով և կամ այլ ինչ չար առնելով. Եւ որ յանդգնի և առնէ՝ խաչեալն աստուած 'ջնջեսցէ զնա ի դպրութենէ կենաց և զմասն նորա ընդ անհաւատս դիցէ, և որ սրով և դանակով մերձենա ի սուրբ գիրքս և հատանէ ի թխթէս և ի գրոցս՝ սուրն հրեղէն կտրեսցէ զմէջս նորա, այլ հանապազ ի դուռն Աստուածածնին կեն[ա | | |*

| | | գրեցաւ սուրբ տառս ի դառն և ի վշտաբեր ժամանակիս | | | ի բռնակալու[թե՞ան] աշխարհիս Ղարայ-Յուսուֆին, և երկրիս մերում Ամիր-էզտըճի, յանուանի և ի հռչակաւոր գեաւղ որ Տշող կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Ստեփաննոս Նախավկայիս, և սուրբ Կիրակոսիս, և սուրբ Սիոնիս։ Եւ արդ, ես ունայնացեալս ի գործոց բարեաց | | | յիշեցէք զանյիշելիս ի գրչաց զՍտեփաննոս գծողս ի տէր Քրիստոս՝ յոյսն ամենեցուն... և զծնողսն իմ զԳրիգոր քահանայն հռետոր գրիչ... և զհօրեղբայրն իմ զՄարտիրոս կրօնաւորն, որ ... Նահատակեցաւ։

## 116

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4818

Հետ. ստացող՝ Մարտիրոս որդի Գորգոյ

280 բ Արդ, ես Մարտիրոս որդի Գորգոյ, յետ գնեցի զսուրբ աւետարանս ի Դաւթա, ի հալալ վաստակոց իմոց, յիշատակ հոգոյ իմոյ, և ծնաւղաց իմոց, և ամենայն ազգականաց։

Արդ, որք աւկտիք ի սմանէ կարդալով կամ օրինակ դնելով յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զՄարտիրոս Քաճճի, և զամուսինն զԱւագ-Տիկին, և զծնօղսն իւր.... Ընդ նոսին և զԹումա՝ տարաժամ փոխեցեալն առ Քրիստոս, որ յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս և սուք եթող մեզ յաւիտեան, և զամուսին իւր ը[զ]Զարդըրիկ, որ ոչ մխիթարեցաւ և ոչ զաբդըրեցաւ, այլ ի տարո՛ջէ ի սուք մտաւ...։

Ընդ նոսին և զԹումա քահանայ Ոստանցի, որ զսակաւս գրեցի յիշեցէք առ Քրիստոս աստուած, և դուք յիշեալ լիջիք. ամէն։ ՊԾԹ. (1410) Թվ. մեռաւ Թումէճ, և խիստ դառն սուք եթող ծնողացն և քւերցն և ամենայն ազգականաց և եղբարցն, աւա՜ղ, աւա՜ղ։

## 117

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 2076

Գրիչ՝ Մելքիսեդեկ
վայր՝ Հիզան քաղաք

209 բ ... Եւ արդ, ես՝ թաղծեալս մտաւք և ցաւագին անձամբ, վեր-

* Շարունակությունը չի պահպանվել, բերում ենք Ղ. Փիրղալեմյանի «Նոտարք Հայոց»-ից (էջ 38), ուր բերված է հիշատակարանը մեծ հապավումներով։

ջինս ի ծնունդս եկեղեցւոյ և տըուպս բանասիրաց փուԹոյ՝ Մելքիսեդեկ պիտականուն խնդրող բանի, գծեցի ձեռամբ իմով զգիրքս քարոզոզաց յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց՝ հաւրն իմոյ Տիրացու քահանայի, և մաւրն իմոյ Մեծ-Տիկնայ, և այլ ամենայն ազգականաց իմոց։ Ի Թուաբերութեանս մեծի ութհարիւրի յիսուն և իններորդի ամի (1410), յաստուածապահ գաւառս և ի քրիստոսաշէն քաղաքս Հիզան* կոչեցեալ, ընդ հովանեաւ ամենազոր աջոյ ձեռինն աստուծոյ և աստուածընկալ խաչին Քրիստոսի...։**

## 118

## ԱՒԵՏԱՐԱՆ

ԼՑՎ 138, սյուն. 296—298, Աղթամար

Գրիչ՝ Աստուածատուր
վայր՝ յերկիրս Մոկաց, ի վանքս Սուրբ Խաչ

... Ուստի և տեսեալ զայս անճառ փրկագործութեան խորհուրդ ոմանք քահանայք՝ անուն Ղազար և Անառն, հարազատ եղբարք, զոր ի վաղուց հետէ ցանկանային այսմ աստուածախաւս աւետարանիս, և ետուն գրել զսա յիշատակ հոգոց իւրեանց և ծնողացն՝ Յովհաննէս քահանայի, և մաւրն իւրեանց, և եղբաւրն Յովանիսի, դեռաբոյս զաւակին՝ Վարդանայ, և այլ ամենայն արեան մերձաւորացն՝ կենդանեաց և հանգուցելոց, և երախտաւորացն։

Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս այս ի Թուականիս Հայոց ՊԾԹ. (1410), ի յերկիրս Մոկաց, ի վանքս Սուրբ Խաչ և ի սուրբ Կարապետի, ի հայրապետութեան տեառն Դաւթի, ձեռամբ յոգնամեղ և փծուն և անարժան գրչի [Աստուածատուր քահանայի]։***

Ի գործի տեառըն չըկացի,
Եւ պատուիրանն ոչ պահեցի
Եւ | | | ոչ գնացի,
Շատ ի մեղացըն գործեցի։
Պատուհաս եկ ի յաշխարհի

. . . . . . . . . . . . . . .

Բարեխաւսէք առ միածնի,
Զի ջընջեսցէ զմեղս ամենի,
Եւ առաւել զմեր ծընողի,
[Եւ ըստ] մարմնոյ մեր զաւակի՝

* Ղ. Փիրղալեմյանն իր «Նոտարք հայոց»-ում նույնպես մեջ է բերում այս հիշատակարանը (էջ 37), սակայն գրչության վայրը նրա մոտ Հիզանի փոխարեն ցույց է տրրված Բաղէշ։

** Շարունակությամբ երկարորեն խնդրում է հիշել իրեն և իր մեղքերի Թողությունը հայցել։

*** Գրչի անունը քաղում ենք ձեռագրի նկարագրական բաժնից։

*Թումայի և Ատոմի,*
*Տէրն պահեսցէ ողջ յերկրի.*
*Եւ ըստ ատեացս որ ելանեն,*
*Արքայութեան արժանասցեն։*
*Ո՜վ սուրբ մանկունք նոր Սիոնի,*
*Որ կայք հոգով յեկեղեցի,*
*Ձձեզ աղաչեմ ես փանաքի,*
*'Ի առ ոտս անկեալ արտասուալի.*
*Ցորժամ կարդայք յեկեղեցի*
*Կամ աւրին[ակէք] յարկ տեղի՝*
*Աղաչեցէք զաստուած յերկրի,*
*Վասն ստացող այս[մ տառի]՝*
*Ղազար, Անտոն քահանայի,*
*Յովանի և Վարդանի.*
*Եւ ծընողացն Յոհանիսի՝*
*Սուրբ և ընտրեալ քահանայի,*
*Որ զմասնակցեալ մարտիրոսի,*
*Որ և արեամբ շահատակի,*
*Եւ Քրիստոսի արժանասցի*
*Ու արքայութեան ժառանգ լինի։*
*Եւ ազգացըն ամենայնի,*
*Որք ի յերկրի են կենդանի*
*Եւ որք հանգեան ի տապանի։*
*Աղաչեցէք զտէր ամենի,*
*Որ ողորմի ստացող տառի*
*Եւ. ջնջեսցէ զկեղտ ամենի։*

*... Աղաչեմ զձեզ, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս զտեղապահ ուխտիս զտէր Գրիգոր հեզահոգին և զքրտնաջան մշակն տեառն ուխտի, և զՅոհաննէս հայրպետն՝ ամենայն առաքինութեամբ լցեալ, որ և խնամածու և վերակացու եղեն մեզ ամենայն պիտոյի[ւ]ք և հանգուցանեն զմեզ յամենայն վշտաց։ Ինքն որ հանգուցանողն է ամենայն սրբոց՝ հանգուսցէ զնոսա յարքայութեան երկնից, ամենայն ծնաւղաւք և զարմաւք, ձեզ ի մեղաց ձերոց, ամէն։*

*Զստացող աւետարանիս զՂազար քահանայ, և զԱնտոն, և զՅով-հաննէս քահանայ՝ զհայրն յիշեցէք առ աստուած։ Ընդ նմին զտառապեալ գրիչս յիշման արժանի արնէք մին տէր-ողորմիւ։*

## 119

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Փիրզ. Նոտ. 37—38*

*Նորոգող*՝ Աւետիս
*վայր*՝ Կաւալու վանք

*... Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց... Աւետիս աբեղայ... ետարեցի զսուրբ աւետարանս... յաստուածարնակ ուխտ, ի վանքս որ*

*կոչի* Կաւալու, *ընդ հովանեաւ սուրբ տիրածին Աստուածածնի, յանուն սուրբ Կարապետին և սուրբ Խաչին է կառուցեալ, ի յառաջնորդութեան տէր* Սահակ *եպիսկոպոսին, և ինքն բարի և հնազանդ օրինացն աստուծոյ... և վանից միաբան տնտես մահտասի* Աղ | | | *որ է մարագուԹ՝ խնամ տանի ի վերայ մեղաւորիս, հալաւ վլանալ, Թափելով և կերակրելով,* Գրիգոր *ամոլավար, որ աշխատէ բազում ջանիւ ի դուռն Աստուածածնին, և* Դալալին, *որ է աւելածու տան և դռան։ Աստուած-ողորմի ասացէք։ Թուին ՊԾԹ. (1410)։*

## 120

## *ՃԱՇՈՑ*

*ՑԽԴ, Ի, էջ 51, Սալմաստի Հաֆթուան գյուղ*

Գրիչ

*վայր՝* Խորաձորու Ս. Աստուածածին

*...Գրեցի... ի տեղիս որ կոչի* Խորայձորու *սուրբ Աստուածածին, որ է տխում(՞) Ասորոց, ի Թվ. Հայոց ՊԾԹ. (1410), ի հայրապետութեան տէր* Դաւթի...։ *[Յիշեցէք]* զԱտոմ *քահանայ...,* զՀայրապետ *սարկաւագն, և* զՅովանէս *կրաւնաւորն,* զՊետրոս *եղբայրն մեր, և* զԱռաքել *սարկաւագն, զի սա[կ]աւ մի Թղթին աւգնական եղև մեզ և աշխատեցաւ ի ծաղկել սուրբ գրոցս, և* զՇլէմոն *բարեպաշտ տանուտէրն։*





## 121

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԳՈՐԾՈՑ ԱՌԱՔԵԼՈՑ, Ի ՄԱՏԹԷՈՍ ՎԱՐԴԱՊԵՏԷ

*Երևան 1492**

Հեղինակ՝ Մատթէոս վարդապետ

ա

268 բ *Վասն որոյ աղաչեմ զհանդիպող մանկունսդ հայաստանեայց մի ծուլութեամբ ազգիս յամառեալ ցնդիցէք ի պատրանս ծովածուփ կենցաղոյս՝ ուրանալով զուխտն աստուածեղէն, քանզի գիտեմ զպատճառ բերանոյ ձերոյ. Նախ զմեզ նախատելով թէ՝ «Ասեն և ոչ առնեն»։ Եւ այս յիրաւի, զի ոչ եմք գնացիւք ըստ ասացելովքս, այլ գոնեա զաբարեալս ընթերցջիք, զի ահա և այսոքիկ աշխատութիւնք մեր են պարգևեալ ի հոգւոյն. զի որպէս մեք աշխատեցաք և առաք և դուք ընթերցջիք և լուիջիք, զի ոչ յաւելի մեծամեծ բեռինս կոչեմ զձեզ՝ բայց միայն ի յուսումն։ Գարձեալ, աւրինակ դնէք, թէ «Այս անուն ընթերցաւ և զայս ինչ արար», վասն որոյ և դուք ոչ ընթեռնոյք։ Գիտացիր բարեկամ մեր, զի ոչ թէ ընթերցումն արար այն, քաւ լիցի, այլ անուղղայ բարքն. և յայտէ ի յոչ ընթերցողացն, որք ոչ ընթերցան և արարին անուղղայ վատթարութիւնս։ Այլ և պատճառեն ոմանք զհեշտ կեանսն թէ՝ «Այս ամենայն ընթերցումն վասն ընչից է և փառաց, և ահա, առանց ընթերցման գտանեմք զայն»։*

*Իմա, ով եղբայր, զի փառք առանց ընթերցման պատկեր անցաւորիս է, իսկ ընթերցմամբ փառք՝ յայտնութիւն է կենացն յաւիտենից, որոյ կաթիլ է նա ցուցեալ յաստուծոյ ի հոգիս մեր առ ի զովացուցանել զպապաքումն սրտից մերոց։*

269 ա *Արդ, գիտացեալ զայս ամենայն միայն կամաւորութեամբ սիրեսցուք զսա, ընկալցուք զգանձս զայս յամանս խեցեղէնս. քանզի և աղքատացաք յամենայն կողմանց ի մեծամեծաց և ի փոքունց և ունայնութեան աւուրք մեր անցին, միայն մնացեալ այսոքիկ, որ գրեալ են և գրին։ Թէ և փառք մեր ոչ գտանին աստ, սակայն փառքն աստուծոյ սոքաւք յայտնի լինին։ Եւ ահա այսմ պարտական եմք փառաւորել զնա և գոհութիւն տալ, որ զանց արարեալ զմերով անարժանութեամբս, ետ մեզ ըստ չափու մերում զխնդրուածս սրտից մերոց, և հասեալ այս երևելի շնորհացս, սոքօք հետևեսցուք հաղորդել*

* Օգտագործել ենք նաև №№ 2519 և 9402 ձեռագրերը և «Թորոս Աղբար», Բ., էջ 479--483։

մեծի անհասական* ծովուն՝ ընդ ամենայն սիրողս անուան իւրոյ, Թե-
րես լիցի մեզ հասանել մասին սրբոց և փառաց ընտրելոցն, և խոս-
տացեալ բարեացն ժառանգորդ լիցուք ի Քրիստոս Յիսուս...։

Բ

Ի սպառել ազգիս հայկազեան և ի վերջին դարուս սառուցեալ
ոգւոց տարաժամ կորուսելոց՝ մեծի և փոքու, և ի սաորասուզեալ դա-
սուն քահանայական, և ի հարեալ ժանեաց բանսարկուին, յամս
Թուականի ՊԿ. (1411), ի բռնակալութեան ազգին Թորգոմեան, որ
յետին գազան հանդիպեալ դանիէլականն, որ ուտէր և մանրէր զիւրսն
և զօտարսն՝ ոչ յայտնի գոլով առաջնորդին և հնազանդին, այլ հա-
ւասարեալ կորստեամբ և չարեօք առաւելեալ, որ և յիշել եա զառա-
ջին չարիսն Թամուր կոչեցեալ կաղին, և ի նոյն վտանգի գոլով։ Յե-
տոյ ամենայնի հարեալ զՎասնիարեան դաշտն, և զկալաւ տէր նորա,
և սպան զԹագաւորն Վրաց Կոստանդին, և զբազումս գերի վարեալ։
Յայսմ դառնութեան ժամանակիս ես՝ նուաստ և խեղդամտհ ի մեղս
Մաթէոս, յետնեալս յիմաստից և տգէտս ի գիտնականաց և Թնացեալս
որբ ի յիմ հարազատագոյն հարանց՝ հոգեկանաց և մարմնականաց,
որ և յայսմ ամի եղև զրաւ կենաց մեծ բարունոյն իմոյ Գրիգորի**
յիշատակին մեծի հօրն Յոհանու Որոտնեցւոյ, որոյ սուգն պաշարեաց
269 բ զիս և եա մոռանալ ‖ զառօրեայ կենցաղս, վասն որոյ տատանեալ
կենօք ձեռնարկեցի հաւաքել զբանս սուրբ հօրն մերոյ Ոսկեբերանի,
և Եփրեմի, և զոր ինչ պարգևեաց մեզ հոգին սուրբ, ի խնդրոյ հարա-
զատ և սիրեցեալ եղբօր մերոյ Յակոբ վարդապետի, յորոյ սիրոյ
հարկեալ յանձն առեալ մեր զմեծ աշխատանս զայս, որ չէր իմ կա-

* «Թորոս Աղբար»-ի մեջ՝ «անհունական»։

** Գրիգոր Տաթևացու մահվան և Վրաստանի կոտորածի ու գերեվարության առի-
թով՝ Մատթէոս վարդապետը կարդացել է մի դամբանական, որ կրում է հետևյալ ընդար-
ձակ խորագիրը. «Նորին Մաթէոսի վարդապետի ներբողեան ողբերգաբար, ոգեալ ի Թա-
գումն եռջանիկ բաբունապետին Գրիգորի: Ընդ նմին յիշատակեալ զողբս լալեաց կոտորա-
ծին, որ ի Վրացտուն՝ ի Փայտակարան քաղաքի, քանզի պատկեր աւուրց ի մի դիպեցաւ։
Մանաւանդ ի հրաշագեղ Կարապետ՝ եղբայր իւր (Գրիգորի)» (Ձեռագիր № 1402, էջ 270բ—
278ա)։

Դամբանական ճառի մեջ Մատթէոս վարդապետը, դրվատելով իր ուսուցչի բարե-
մասնությունները, հաղորդում է ուշագրավ տվյալներ Գր. Տաթևացու կյանքի ու ժամա-
նակաշրջանի մասին։ Ստորև քաղվածաբար տալիս ենք երկու հատված դամբանականի
կարևոր մասերից։

«Եւ արդ, ուստի ներբողեցից զքեզ ճառս ողբերգականս,—ավաղում է նա դիմելով
իր հանգուցյալ ուսուցչին,—քանզի թէ ընթանամ ի հրապարակս եկեղեցւոյն՝ ոչ գտանեմ
զքեզ. եւ ի ժողովս բարի արանց, ուր հանապազ նստէիր՝ նոյնպէս և անդ ոչ երևիս. իսկ
թէ ի գահոյս Թագաւորական շտապեցայց, ուր հանապազ կանխէիր՝ և անդ ես խնդրեն
զքեզ. իսկ թէ ի բնակութիւն ձեր ընթացայց՝ առ ընտանիս և սիրելիսն՝ և նոքա զեռևս
ողբան զքեզ. իսկ թէ զմայր քո հարցանեմ՝ ի յողբալոյն ոչ կարէ պատասխանել ինձ. եւ
թէ ի զրկեցութեանն քննեցից զքեզ՝ և նոքա յոգւոց հանեն. իսկ թէ յուսումնակիցսն քո
ժպրհիմ՝ և նոքա ի սուգ են աննհարին վասն քոյին տեսութեան զրկելոյն... իսկ թէ
զդասս գրոց աշակերտացն հարցանեմ՝ նոքա իբր զմոլի եղեալ են անտերունջ՝ շրջելով ի

բողութիւն, այլ ի չգոյէ առն և ի հասեալ ժամու անաերունջ գոլով, և ի խնդրոյ սրբազան եղբօրն մերոյ սկսայ շնորհօքն Քրիստոսի աստուծոյ, և ողորմութեամբ նորին կատարեցի։

Արդ, աղաչեմ զհանդիպողսդ սուրբ գանձիս՝ մտադիւրութեամբ ընթեռնուլ, և զաւելորդն կոռել, և պակասութեանն ներել, զի ոչ միայն զիւրն հոգացաք աստուծով, այլ և զնմանակից բանին, որ ի հոմանունութենէ յայլևայլ գրոց առընթեր միմեանց եդի, առ ի դիւրագիւտ լինել աղքատ մանկանց իմոց ի բեմբասացութիւն և ի կարգ զրուցաց հրապարակաց բանին։ Եւ այս գառն ե տաժանելի կրիւք, քանզի ոչ ունէի զարժանաւորութիւն հոգւոյն, որ դիւրաւ մտածէի, այլ ժտելով և չարչարանօք տկար ոգւոյ ի լոյս էած աստուած հոգին առ ի լցուցանել զփափագող սրտին։ Վասն որոյ աղաչեմ խնդրել զթողութիւն բազմավրէպ յանցանաց իմոց, թերևս իջցէ աղօթք մաղթանաց և ողորմութիւն փրկչին ի շարաւալի ոգիս իմ, և լուասցէ զաղտ հնութեան մեղօք մեռելոյս, և արժանացուսցէ ողորմութեան մասին սրբոց, և կարգեսցէ ընդ յետին մշակացն։ Այլ և երջանիկ հօրն մերոյ Սարգիս վարդապետի յիշատակ ի սմա եղիցի, զի պատճառ եղև մերոյս գծագրութեան, քանզի նա կանխաւ համառօտեալ էր զսա, և մեք նորին շաւղացն հետևեցաք։ Այլ և անմեղադիր լինել աղաչեմ, զի դառնութիւն ժամանակիս և աշխատանք* չար խորհրդոց շփոթեալ աղտեղացուցին զհոգի և զմարմին իմ, մանաւանդ ծուլութիւն անգութ և անհնազանդ աշակերտաց վիրաւորեցին զիս, և յա-
270 ա ւէտ վիշտք || ի սուտ եղբարց, որք անհրաժեշտ վատթարութեամբ դառնացուցին զիս. վասն որոյ և ոչ կարացի զբովանդակն մակագրել, այլ զսակաւս ի բազմաց գրեցի առ ի յիշատակ մանկանցդ եկեղեցեացդ Հայաստանեայց։ Վասն որոյ գրեսջիք զյիշատակութիւնս իմ ի վերջք գրոցս որք գաղափարէք, զի և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս յաւիտենական կենօք։ Եւ որ յաչաղենն և հակառակինն՝ առցեն զնոյնն, զոր և արարին, իսկ կատարողք աղաչանաց մերոց՝ օրհնեալ լիջին ի Քրիստոս Յիսուս՝ ի տէր մեր։

Այլ և սովորութիւն է բնական մերոյ ազինս՝ ի յօտար ազգաց իմաստից բանին ցանկալ և որոնել, թէև կարի յետնոց է արարեալ, և զնոյն ընթեռնուլ և զիւրոյ հօր, թէև կարի մեծաց է աշխատեալ՝

---

մացառուտ վայրս փշոց, որք ավելի ինչ ոչ գտանեն, բայց միայն զխոցուածս հոգոց։ Վասն որոյ ի միտ ածեալ ոչ ուրէք երևիք աստ՝ յայսմ աշխարհիս, բայց միայն առ տենչալին ձեր Քրիստոս» (էջ 271 բ—272 ա)։

Մաթէոսի կարծիքով սոցիալական լարված հարաբերությունները, ժողովրդի բողքն ու դժգոհությունը առկա անտանելի պայմաններից ավելի են խորանում ու ակնհայտ բնույթ են ստանում Գր. Տաթևացու մահով։ Հետևյալ խոսքերով է բնութագրում Մաթէոսը իր ժամանակը. «(Ամենեքեան) աքացեն զմիմեանս, խածատեն զմարմինս իրերաց, բամբասեն զառաջնորդս իւրեանց, տրտնջան ի տանուտեարնէ իւրեանց. ի մարմինս մաշին, ի միտս տանջին, ի հարկահանաց ձանձրանան, յանօրինաց տառապին, զտիւ լան, զգիշերն ողբան, բարիքն տրտմին, և չարացեալքն ուրախանան։ Եւ այս ամենայն վասն մեղաց մերոց» (էջ 276 բ—277 ա)։

* № 2519 ձեռագրում՝ «աղճատանք»։

ոչ ընդունել, վասն որոյ աղաչեմ մի զանմտութիւնս զայս ի գործ ածել, այլ ընդ օտարացն և զքոյսս [սիրել և] մեծարել և կամակար մտօք ընթեռնուլ, զի լիցի ձեզ թերևս հասանել յաւիտենական գիտութեանցն՝ մտանել յանղրաւական գիտութիւնն՝ ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որ է աւրհնեալ ընդ հօր իւրում և սուրբ հոգոյն, այժմ և յաւիտենս, ամէն։

Գ

207 ա ...Արդ, եկեալ տեսցուք զհաւատացեալ ազգս Հայկազեան, որ նորագոյն սկսան խաւարանալ՝ բացեալ զբերանս յերկինս և իբր զտիւ և զգիշեր ընթերցման լեալ այնպէս ձանձրութեամբ հայհոյեն զգիրս սուրբս, մանաւանդ զայս, թէ զինչ իցեն դրեալքդ։ Այլ և որք սակաւ ինչ յաճախեալ վասն ագահութեան ի բանս՝ առասպելօքն կամին անուն առնուլ և համաձևանալ փառօքն տեառն։ Որ և յաւելաւ այս սուգ ի վերայ իմ առաւել քան զկորուստ թագաւորացն և իշխանաց։ Եւ սոքօք խոցոտեալ ի յոգի և ի գերեզմանի դրան՝ կամիմ զհնարս իմանալ իրացս և ոչ գտանեմ. Վասն որոյ ողբամ զտիւ և զգիշեր, թողեալ զյիշատակ բանի ողբերգականի զկնի եկելոցս, թերևս հանդիպեսցի բարեխորհ և մտաւոր ընթերցողի յիշել ի ժամ արտասուաց աղօթականի. յորոց հասցէ մասն կաթլաց յոսկերք մեղօք մեռելոցս և արժանի արասցէ խոստացելոց բարեացն տեառն մերոյ....։

## 122

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ

Երևան 5871

Հեղինակ՝ Մաթէոս Ջուղայեցի

57 բ Որ և այս տեսչութեան բանի ընդ նախասացեալ մեկնութեանն որ ըստ Ղուկասու աւետարանին է գիցի և իբր զկրկին լօմայս այրոյն՝ ընծայեսցի ձեր մեծանձնութեանդ։ Արդ, սայ է մասն ինչ յաշխատութենէ վարժապետին իմո Գրիգորի մեծի, և մասն ինչ ի քրտանց հարցն, և բոլորն իսկ յառատաձիրն տեառնէ, զոր և յոյժ աշխատութեամբ հաւաքեցի ի մի վայր առ ի դիւրահասութիւն մանկանց նորածնելոց եկեղեցեաց Հայաստանեայց։ Զոր և հայցեմ երկրամած գիմօք, ով դասք լուսափայլից, որք պատահիք այսմ աստուածաճեմ բուրաստանիս յիշեսջիք զանպիտանս ի բնաւս, զյոգնամեղ անձն զՄաթէոս սպասաւոր բանի, և զվարժապետն իմ զմեծն Գրիգոր, և զմիւս Գրիգոր բաբունի՝ զազգականն իմ՝ զխնդրող այսմ աշխատանաց. և զսակաւ ծրիկս ուղղութեամբ ընթերցջիք և զպակասն ուղղեցէք, և զաւելորդն կշռել պարտիք, և պակասութեանն ներեցէք։ Զի ոչ թէ լիապէս գրեալ է աստ, այլ այս գլխաւոր բանից եզև լուծումն և որք պիտոյ են մեծի աշխատութեանն. իսկ զայլ մասնաւորն, եթէ կամիք, ի մեծ անդր գտջիք, ուր բոլորն է մակագրեալ։

*Դարձեալ, աղաչեմ զսակաւ յիշատակիկս գծել ի վերջքս գրոց, որք գաղափարէք, զի և գուք գրեալ լիջիք ի գիրն կենաց։ Եւ որք բառնան՝ Թողցի նմա ըստ գործոց իւրոց, բայց սխալանաց Թողութիւն հայցեմ, զի այնքան կարացի։**

## 123

## ՄԱՏԹԷՈՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՔԱՐՈԶ Ի ԲԱՆՆ՝ ՑԱՐԻՑԵՆ ՍՈՒՏ ՄԱՐԳԱՐԷՔ

*Երևան 2229*

*Հեղինակ՝* Մատթէոս Ջուղայեցի

*Եւ քանզի ոչ վայել է Թագաւորի ի տառապելէ իր ինչ խնդրել,*
*և այս Թէպէտ գործ սիրոյ է և խոնարհութեան, սակայն մեզ ոչ վա-*
199 բ *յել էր. բայց զի ‖ և Թագաւորք ի չքաւորաց առնուն զնիւթ այրմանն,*
*զոր աշխատանօք ժողովին, այսպէս և հայր մեր, ընկալցիս զպատճառ*
*բանիս և իմաստութեամբ շնորհացդ աստուածային, որ ի քեզ է ամ-*
*բարեալ՝ այրեսցես զանուղղա գործս և զօրէնս նոցա։ Ողջ լեր ի տէր։*

## 124

## ՃԱՇՈՑ

*Փիրդ․ Նոտ. 39-40, Վանի Հայկավանք եկեղեցի*

*Գրիչ՝* Թովմա Սիւնեցի
*վայր՝* յերկիրս Ծար, ի վանս Գետամէջ

*...Գրեցաւ և զրաւ առեալ աւարտեցաւ տօնազարդ և աստուածամեծար սուրբ գիրքս ի Թուաբերութեան հայկազեան տոմարիս ՊԿ. (1411), ի Թագաւորութեան* Յուսուֆին, *ի հայրապետութեան Հայոց տէր* Կարապետի, *և յԱղուանից՝ նորին անուանակցի տէր* Կարապետի, *և յեպիսկոպոսութեան նահանգիս աԹոռոյն Ադդէի՝ տէր* Զաքարիայի, *և յիշխանութեան տեղւոյս պարոն* Վահրամայ, *պարոն* ՏուրսունՑին, *պարոն* ՇրուանՑին, *պարոն* ՍատոյՑին, *պարոն* ՊռօշՑին, *պարոն* Գրիգորին, *յաստուածաշէն երկիրս* Ծար *կոչեցելոյ, ի վանս* Գեստմէջ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և այլ սրբոց նշանացս, զոր սօքօք ամրացեալ փրկեսցին յամենայն որոգայԹից հոգւոյ և մարմնոյ, ամէն։*

*Յիշատակ եղիցի և ի սմա հանգուցեալ իշխանացն այսմ նահանգի ...Նախ մեծաշուք իշխանին* Հասանայ *որդւոյ* Դաւթին, *և ամուսնոյն իւրոյ* ԽոՆձայիՆ, *և զաւակացն իւրոց՝ քաջ և արի պարոնացն* Գրիգորայ, Սարգսի, ՇաՆշի, ՋհաՆշի, Աղբուղին, ՇրվաՆին, *նաև Թագազարմ իշխանին* ՍադուՆին, *զոր տէրն տէրանց և Թագաւորն Թագաւորաց՝ ընդ սրբոց Թագաւորացն և բարեպաշտ իշխանացն գա-*

---

** Մատթէոս Ջուղայեցի վարդապետի այս և հաջորդ անթվական հիշատակարաններըը տեղադրում ենք նույն հեղինակի 1411 թվականին գրած ընդարձակ հիշատակարանին առընթեր։*

ռեսցէ և պսակեսցէ զնոսա, ամէն։ Յիշատակ եղիցի և ի սմա աղատացն տանս Դաւրեան, նախ՝ ամենայն օրհնութեանց արժանաւոր պարոն Աթապակին և այլ ամենայն ազատաց։ Նաև յիշել ի տէր զամենայն տանուտեարսն աստուածաշէն երկրիս Սարայ, նախ Զազիկ | | | *

Գրեցաւ սուրբ տառս ձեռամբ Սիւնեցի Թովմա գրչի, ի խնդրոյ Յովհաննէս քահանայի։

## 125

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ՔԱՐՈԶԻՑ ԵՒ ԳՈՐԾՈՑ ԵՒԱԳՐԱՑ

Երևան 4161

Գրիչ՝ Մովսէս
վայր՝ Տաթև

ա

246 բ … Գրեցաւ սուրբ և ընտիր մարգարիտս լուսափայլ ձեռամբ մեղապարտ Մովսէսի, զոր մեծ փափագանաւք խնդրեցի զգանձս աստուածային, ծաղկաւէտ և սաղարթափթիթ զարդարեալ, ի պէտս հիւանդացեալ հոգոյ իմոյ, և ծնողաց իմոց, և եղբաւրս՝ Մարտիրոս քահանայի, վասն զի գտա զսայ բժիշկ և ողջացուցիչ բազմաց։

Վա ձեռացս, որ մեղաւ[քս] հողանա, երանի հասկացողին, որ հասկանա և ի միտ պահելն խիստ ջանա։

Ո՜վ եղբայրք, որք կարդայք կամ ընթեռնոյք, իմ բազում յան-
247 ա ցանացն թողութիւն խնդրեցէք, աղաչեմ, ‖ և ընդ նմին հատուսցէ ձեզ արար[իչն աստուա]ծ։

Արդ, գրեցաւ սա ի թու[ականիս] Հայոց ՊԿ.** (1411), ընդ հովանեաւ Կաթուղիկէիս, և [Ն.]ստաթէի սուրբ առաքելոյս, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Լուսաւորչիս, և այլ բազմահաւաք սուրբ նշխարացս, որ կան աստ ամփոփեալ, առ ոտս քաղցրուսուց հաւրս մերոյ Յովաննէս փակակալի սուրբ ուխտիս։

Ո՜վ պատուական սուրբ հարք և եղբայրք, աղաչեմ զձեզ և խնդրեմք ի ձէնջ, հայցեցէք յաստուծոյ, որ ողորմեալ և վերստին կանգնեսցէ զանկեալ և զկործանեալքս մեղաւք՝ աղաւթիւք ձերովք, ամէն։

բ

191 բ Տէր աստուած, ողորմեա Մովսէս գրչի և Դեղիկ միակեցի և ծնողաց նոցա…։

---

* Ձեռագրից թերթ է ընկած եղել։

** Պ. (800) թիվը պարզ երևում է, իսկ Կ. (60)-ն պատռված է։ Նորոգողը, ԺԹ. դարի մարդ, թվականը կորուստից փրկելու համար նորից այն գրել է տողամիջին, այդ ընդօրինակության հիման վրա երկրորդ՝ այժմ բացակայող տառնավոր թիվը եղել է Կ. (60)։

Գ

*Ո՛վ, սուրբ միայնակեաց, աղաչեմ վասն Քրիստոսի, յիշեա զմայրն իմ, որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս։**

Դ

*Ո՛վ սուրբ ընթերձող, աղաչեմ, յիշեա զծեր հայրս մեր՝ զՀայրապետ, զի շատ երախտաւոր է մեզ։***

Ե

*Ո՛վ սուրբ ընթերցողք, յիշեցէք զՄովսէս կաղիկս, զի դառն և անբժշկելի ցաւ էհաս ոտվայնիս, և ես ոչ զոքուն ունելով դեղ, բայց միայն զսուրբ աստուածածինն և զսուրբ վարդապետաց աղօթքս, և բժշկեցայ։****

## 126

### ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 225**

Գրիչ՝ Յոհաննէս Սեբաստացի
վայր՝ Բագարան, Աղձաղալայ բերդ

309 բ ...Այլ և գրեցաւ սուրբ աւետարանս այս ձեռամբ մեղապարտ և անիմաստ և տխմար գրչի Յոհաննէս սուտանուն քահանայի, որ կոչի Սեբաստացի, և իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգեեաց մեզ մարդասէր հոգին, գրեցի անարժան ձեռաւք իմով յընդիր և ի ստոյգ աւրինակէ՝ կենաւք, տառապանաւք և բազում պանդխտութեամբ։ Իսկ ի հայկազան թվականիս ՊԿ. (1411), ի գաւառս Բագրաւնա, ի բերդս Տիկրանձ, որ կոչի Աղձաղալայ, ընդ հովանեաւ
310 ա սուրբ Յովհաննիսի և սուրբ Նշխարացս Դաւթի, ի մեծ ‖ հայրապետութիւն տեառն Յակովբայ, և ի կայսերակալ բռնակալութիւն ազգին նետողաց Ուսուփ խանին, և ի պարոնութեանն Փիր-Հուսենին, որ և եդեալ կան հարկ ի վերա քրիստոնէից և կան ի տառապանք յայլասեռից, և է ամենայն ուրէք բարեկարգութիւն նուազեալ և անիրաւութեան յամենայն կողմանց զաւրացեալ. և կատարեցաւ բանն մարգարէական, որ ասէ թէ՝ Գոյ ժամանակ, որ ասեն լերանց, թէ անկերուք ի վերա մեր և բլրոց, թէ ծածկեցէք զմեզ։ Զոր տէր աստուած տյց արասցէ ազգի մերում և փրկեսցէ զմեզ ի ձեռաց նեղչաց մերոց։
Այլ և արդ, սուրբ հարք և եղբայրք և մանկունք եկեղեցւոյ, որք ընթեռնուք զսուրբ աւետարանս զայս և կամ աւգտիք և աւրի-

* Գրված է 224 բ—225 ա էջերի ստորին լուսանցքում։
** Գրված է 232 բ—233 ա էջերի ստորին լուսանցքում։
*** Գրված է 241 բ—242 ա էջերի ստորին լուսանցքում։

նակէք, յիշեսջիք աղաւթիւք ձերովք զստացաւղ սորա՝ զԱբրահամ
կրաւնաւորս, և զծնողսն մեր՝ զհայր մեր զպարոն Սարգիսն, և զմայրն
310 բ մեր ‖ զխութլու-խաթունն, և զհարազատ եղբարն մեր զպարոն Շաքար-
պէկն, և զկենակիցն իւր զԱմեն-Տիկինն, և զհանգուցեալն առ Քրիստոս
զեղբայրսն մեր զԴաւիթն և զԳրիգորն և զՇահին-պէկն, և զամենայն
արեան մերձաւորքս մեր, որ ի վերա մեր երախտիք ունին, և զՅով-
աննէս կրաւնաւորս, որ աստ հանդիպեցաք։ Ընդ նմին և զիս՝ զան-
պիտան գրիչս զՅոհաննէս սուտանուն քահանայս, և զծնողսն մեր
զԱմիրպէկն, և զմայրն մեր զխասխաթունն։ Արդ, յորժամ ընթեռնուք
սուրբ աւետարանս, յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր և աստուածն
ամենայնի յիշեսցէ զձեզ ի յիւր միւսանգամ գալուստն, ամէն։
Եւ զիս զՆերսէսս, որ զթուղթս կոկեց[ի], յիշեցէք ի ձեր սուրբ
աղաւթքդ, ամէն։

## 127

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5240

Հետ. ստացող՝ Ներսէս։

ա

139 ա ...Ես՝ վերջին ստացողս խուսն* Ներսէս ստացայ** զԱւետա-
րանս Քրիստոսի աստուծոյ մերոյ և զՇարակնոց մի՝ ի հալալ և յար-
դար յընչից իմոց և տուի իմ եղբաւրորդւոյն՝ Կարապետ քահանային,
յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց, և եղբարց իմոց՝ Հայրապետ քա-
139 բ հանային և Աւետիս քահանային, և խու ‖ սն Խոցդեղին, և որդոց իմոց
Ռուէսկէն և Աւաք-ՊարոՆին***, և որք կարդայք կամ աւրինակէք յի-
շեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր և աստուած զձեզ յիշէ։****
Յետ ժամանակի փոխեցաւ Կարապետ քահանայն առ աստուած,
և Թնաց երեք որդի՝ Ղազարն, Հերապետ քահանայն և Մկրտիչն աշ-
խարհական։ Եւ անդաւ աղաղակ և աղմունք***** ի մէջս իւրեանց
վասն Աւետարանիս և Շարակնոցին, և երեկ Թումա վարդապետն և
Յովանէս վարդապետն, և բաժանեցին զամենայն ինչս որ կայր՝
երեք բաժին. և Թնաց Աւետարանս և Շարակնոցն։ Հայրապետն ասաց,
թէ Շարակնոցն ինձ տուր. նա Ղազարն չետուրն. էառ Շարակնոցն
Ղազարն և տուին [վարդապետք]****** զաւետարանն Հայրապետ քա-
140 ա հանային, թէ ծախ ‖ է, թէ գրաւէ վարդապետաց վկայութեամբն՝ ինքն
գիտէ.******* Աստուած ետուր իւրն Շարակնոց։ Եւ******** յետոյ

* Իմա՝ «հիւսն»։
** Տողամիջում, «ստացայ» բառի վրա, անվարժ ձեռագրով գրված է՝ «գնեցի»։
*** Տողամիջում գրված է՝ «և ամենայն արեան մերձաւորաց»։
**** Տողամիջում՝ «յիւր արքայութիւնն»։
***** Իմա՝ «աղմուկ»։
****** Գրված է տողամիջում, անվարժ ձեռագրով։
******* Նույն անվարժ ձեռագրով տողամիջում գրված է՝ «ուրն է» (իմա՝ «իւրն է»)։
******** «Եւ»-ից հետո տողամիջում՝ «Բ. որդի»։

ժամանակաց փոխեցան* որդիքն նորա [աէր]** Աստուծն և Թումէն առ աստուած, և Յեաց անյիշատակ: Եւ ես Հայրապետ [քահանայս]*** տուի զԱւետարանս ի դուռն սուրբ Գորգուն և սուրբ Աստուածածնին, յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ Ղազարուն և Մկրտչին, և որդւոց իմոց՝ Աստուծին և Թումային, և կենակցին իմոյ Եղիսաբէթին, և դստերն իմոյ Աննա-Խաթունին, և ամենայն արեան մերձաւորաց իմոց, և թէ քանի կենդանի է**** առ ինք պահէ, և յետ մահուանն իւրոյ՝ կենա ի դուռն եկեղեցեացն: Եւ որք դաւի ենէ, ի յեկեղեցոյ դրանէն <և> հանէ, նա զմասն զՅուդային և զխաչայխանուացն և զԿայենին առցէ, [ամէն],*****

## 128

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 2177******

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Մեծոփայ վանք

360 ա ...Արդ, ի յամի ծննդեան փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ հազարերորդի չորսհարիւրերորդի և չորեքտասան թիւ յաւելեալ ընդ նմին, և ի թուականիս Հայկազեան տոհմիս տումարի՝ ըստ հոլովման ամաց ՊԿ. (1411), գրեցաւ գիրք քարոզութեանս առաջին հատորի, հաւաքեալ ձեռամբ սուրբ հօրն մերոյ երկրորդ լուսաւորչի՝ մեծ վարժապետի, քաջ հռետորի և անյաղթ փիլիսոփայի արթուն անուն գերապատիւ սուրբ րաբունապետի Գրիգորի՝ աշակերտի Յոհանու Որոտնեցւոյ, որ էր յերկրէս Քաջբերունի, ի կարգէ աստուածաբան վարդապետաց սրբոց՝ երանելոյն Գրիգորի աստուածաբանի, Կիւրղի և Աթանասի՝ միաբանութիւն դաւանողաց զբանն աստուած միացեալ

* Ձեռագրում՝ «փոխեցաւ»:

** Գրված է տողամիջում նույն անվարժ ձեռագրով:

*** Ավելացված է տողամիջում նույն անվարժ ձեռագրով:

**** Ում մասին է խոսքը չի ասված. հավանորեն վերը հիշված վարդապետներից մեկի:

***** Ավետարանն ըստ հնագրական տվյալների ԺԳ. դարի կեսի ընդօրինակություն է, հիշատակարանի բուն և հետաքրքրական մասը գրված պետք է լինի մի քանի տասնամյակ ընդօրինակությունից հետո, հավանաբար 1409—1411 թվականների ընթացքում: Թվականի որոշման համար, բացի հնագրական հիմքերից ունենք նաև հետևյալ տվյալները: Հիշատակարանում նշված Թովմա և Յովանէս վարդապետները նույնանուն Մեծոփեցի վարդապետներն են: Թովմա Մեծոփեցին վարդապետական գավազան ստացել է Գր. Տաթևացուց 1409 թվականի նոյեմբեր ամսին, իսկ Յովան Մեծոփեցին վախճանվել է 1411 թվականին, ուստի և նրանք համատեղ կարող էին հանդես գալ որպես Կարապետ քահանայի ժառանգության բաժանորդներ 1400-ից ոչ շուտ, 1411-ից ոչ ուշ, նկատի ունենալով այս տվյալները հիշատակարանը պայմանականորեն տեղադրում ենք 1411-ի թվաշարքում:

****** Այս ձեռագրի միայն 301—303 թերթերն են ընդօրինակված 1411 թվականին, մյուս մասը (թերթք՝ 1—300, 364—455) ԺԷ. դարի ընդօրինակություն է:

ի մարՃնի, որոց յիշատակն աւրհնութեամբ եղիցի և աղօթք սոցա ի
վերայ ամենայն աշխարհի։ Ձեռամբ անարհեստ և անիմաստ, մեղսա-
ման և մատնադեղև սխալագիր գրչի Յովանէս անարժան կրօնաւորի,
որ անուամբս միայն եմ ձևացեալ և ոչ գործովս, ըստ այնմ որ ասէ՝
ՄարՃովս արտաքուստ սքնիմ և անձամբս երփնիւ ճայիմ ճանաչիմ,
ի յիշատակ իմում անձին հիքականի և ի յօգուտս խոնարհ և հեզ
գրոց աշակերտեալ անձանց, մանաւանդ հոգևոր հօր իմոյ և ուսուցչի
Դաւիթ կրօնաւորի և Թումա քահանայի՝ հանգուցելոցն ի Քրիստոս,
մանաւանդ հարազատ եղբօրս իմ՝ Վարդան խաչընդուս կրօնաւորի,
որ բաղում աշխատանաւք, երթևեկութեամբ եգիտ զԹուղԹս այսմ
360 բ աստուածային սոփերի և քրտնաջան աշխատութեամբ կոկեաց։ || Այլ
և հոգևոր հօրս մեր Թումայի՝ և եղբօրս մեր Ղազար սարկաւագի, որ
և սա օգնական եղև տուն տալով և ողորդելով, աղաչեմ յիշել ի տէր,
առ ի սլահել զսա ըստ կամաց իւրոց։ Դարձեալ աղաչեմ զամենեսեան
սիրոՃն Քրիստոսի, որք հանդիպիք այսմ հոգիաբուխ պատգամացս,
յիշել զիմս աղկաղկութիւնս ի տէր սրտի մտօք, և զամենայն աշխա-
տողսն ի սմա։ Նաև զհանգուցեալ րաբունապետքն մեր՝ զՍարգիս
վարդապետ, զՎարդան վարդապետ, և զՅովհանէս և զԿիրակոս աշ-
խարհալոյս վարդապետքն եկեղեցւոյ, որոց յիշատակն աւրհնութեամբ
եղիցի։ Այլ և զմարՃնաւոր ծնօղքն մեր, զվաղ ննջեցեալքն ի Քրիս-
տոս՝ զՊօղոս և զԽութլու, և զմօրաքեռն իմ զՍթլալ, և զհօրեղբայրքն
իմ՝ զՎարդան քահանայ, և զՊեարոս, և զՍաղաթէլ, և զՄաթէոս, և
զկենակիցն իւր զՄարթայ՝ զհանգուցեալքն ի Քրիստոս։ Այլ և զքեռն
իմ զԱննա, և զայր իւր զՄարտիրոս աղաչեմ յիշել ի տէր և մեղաց
Թողութիւն խնդրել։ Եւ որ լի սրտիւ աստուած-ողորմի ասէ, և ինքն
ողորմութիւն գտցէ յողորմածէն աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտ-
եան, ամէն։

Արդ, գրեցաւ սա յերկիրս Քաչբերունւոյ, ի սուրբ ուխտս Մեծո-
փոյ, ի հրեշտակաբնակ կայարանս սրբոց վարդապետաց և ճգնաւո-
րացն առաջնոց, ի դրունս տիրամօր Աստուածածնի և սուրբ Ցակո-
բայ հայրապետի, հրամանաւ գիտնական և արդիւնական հռետորի
Թումա վարդապետի, ի ծնունդ և ի սնունդ մաքրափայլ որդւոց մաւր
մերոյ Սիոնի, որ և զյօժարամիտսն ծնանի երկօք բանիւն ճշմարտու-
Թեան, այլ և յիշատակ իւր և իւրոցն ամենայնի։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ կենսապար-
գև կտակիս յիշեսջիք զվերոյասացեալ վարժապետն Թումա, և զհարա-
զատսն և զծնօղսն իւր, և զհոգևոր հայրն իւր և զուսուցիչն՝ զՄաթէոս
սրբասէր կրօնաւորն, որք օգնական եղեն մեզ յօժար կամօք և անկեղծ
սիրով՝ կերակրով, զգեստիւ; զօրինակն շնորհելով, քաջալերելով և
այլ ամենայն պիտոյիւք, զոր հատուսցէ սոցա տէր միոյն հարիւրա-
պատիկ, հազարապատիկ և բիւրապատիկ, կրկին կենօք, ամէն։ Ի
ձեռնտըւութենէ հոգւոյն աստուծոյ գրեցի մեծաւ տաժանմամբ և
եռափափաք ըղձմամբ զտենչալիս ոգւոյ իմոյ և յոքունց՝ զգերահրաշ
361 ա իմաստութիւն և || զոգեշահ լուսաւոր վարդապետութիւն մեծ հռետո-

րին Գրիգորի, ի դառն և յանբարի ժամանակիս, յորմէ սասակացեալ է սուրն իսմայելացւոց ի վերայ մեր հալածանօք, ըստ յառաջատեսլեան սրբոյն Սահակայ։ Որ և տատանեալ ծփիմք ամենաներհակ արկածիւք ի ներքուստ և արտաքուստ, որ տփշութիւն գործէր տեսականի և միջուցն գործոյս։ Եւ ընկալայ զոա սրտալիր ուրախութեամբ իբրև զտախտակսն նախամարգարէին մեծի։ Եւ հայցեմ յամենայնէ ներաւնս գտանել սխալանացս, որ աստ գտանի, քան զի կար մեր այս էր, զի թէ օգուտ ումէք լիցի՝ շնորհակալութիւն հոգւոյն շնորհաց եղիցի, և կաթիլ աղօթից ձերոց ցօղեսցի ի աապտն իմ գերեզմանի և սուրբ հօր մերոյ Յովաննէս ճգնաւորի, որ էր տեսականաւն և գործնականաւն զարդարեալ, և յետ Քրիստոսի երախտաւորին մեր Մարգարէ* վարդապետին, և ամենայն արեան մերձաւորաց նորին, ամէն։

Դարձեալ աղաչեմ զամենեսեան, որք օգտիք ի սմանէ յիշեցէք յերկնարացիկ և յաստուածամերձ յաղօթս ձեր զհայրապետ սուրբ ուխտիս՝ զՄկրտիչ կրօնաւորն, և զՅովանէս, և զհարազատն իւր զԿարապետ կրօնաւորն, այլև զմիաբան եղբարքս՝ զՂազար խաչընդուս կրօնաւորն, զԿարապետ կրօնաւորն, և զհարազատքն իւր՝ զՍարգիս փիլիսոփա Վարագեցի, և զԹումա Շուշանցին, և զՊ[ե]տր[ոս], և զՍաեփաննոս, և զՄերուն, և զՅովանէս, և զՄկրտիչ Հիւսանորդին, և զԳրիգոր Սալնապատեցին, և զքաջ ամոլքն՝ զՅոհանէս և զՅակոբ, և զմիւս Յոհանէսն, և զՍտեփանոս, զԱբրահամ, զԹումա, զԳրիգոր տնտեսն, և զայլ ամենայն գործաւորքս՝ զմեծ և զփոքր։ Եւ որ սրտի մտօք յիշէ և լի սրտիւ աստուած-ողորմի ասէ վերոյգրելոցս ի սմա, և զի[ն]քն յիշէ յանուանէ Քրիստոս աստուած, թէ՝ Ազնիւ ծառայ բարի և հաւատարիմ, մուտ յուրախութիւն քո, այլև զԱստուածատուր մողդասին, զՄ[ա]ր[գարէ°] հոգևոր եղբայրն, և զծնօղսն իւր, զհարազատ եղբայրն իւր զՅովանէս՝ զհանգուցեալն ի Քրիստոս, որ խիստ լաւ կոկիչ երեր թղթիս և կնկուղ գլխիս և մոմ լուսատու խաւար գիշերիս, փարատեսցէ Քրիստոս աստուած զխաւար մեղաց և անգիտութեան նորին, ամէն։

## 129

## ԱԻԵՏԱՐԱՆ

**Երևան 8810**

Վայր՝ Ոստան քաղաք

274 ա | | | ն]ահատակին սրբոյն Ստեփաննոսի բարե[խաւսութեամբ]** ողորմեա համաւրեն երախտաւորաց սրբոյն [Ստեփան]նոսի Ոստան քաղաքիս, որք զսա են զարդարել [տրօվ]ք՝ Աւետարանաւ, Ճառով, շուրջառով, ծածկո[ցով], շուշփայով և այլ սպասիւք, որ ի պէտք է սուրբ տաճարիս սրբոյն Ստեփաննոսի Նախավկային, ամէն։

* Ձեռագրում գրված է համառոտված, այսպես՝ «Մգէ.»։

** Փակագծերի մեջ առնված տառերը, թղթի ձախ եզրի վերին մասի պատռված լինելով՝ բացակայում են, վերականգնում ենք ըստ իմաստի։

[Ե]ւ են այսոքիկ՝ Դ. (4) Աւետարան տախտակագիր, և Բ. (2) Երկաթագիր, Բ. (2) Տարէգիրք, մեծ Տաւնականն, Ճառընդիրն, Մարգ[ա] գիրքն, Կոչումն [ընծայութեանն]. բիճգիր Ճառն, քահանայաթաղն, փոքր Մաշթոցն, մեծ սուրբ Նշանն, Գ. (3) պղընձէ խաչ, Ա. (1) փայտէ [խաչ], շուրջառ, առաջինն, նախ կանաչն, կարմիր նախն, դեղին շուրջառն, Բ. (2) հասլհասն, կարմիր շուրջառն, ժանկառի շուրջառն, Բ. (2) կանաչ շուրջառ, գուլըստան շուրջառն, Քութի շուրջառն, Բարի-Տիկնոջ շուրջառն, արծաթի սկայն՝ մաղըզմանով, Զ. (6) շապիք, Ը. (8) ջուհտակ ու փրտ մի բազպան, Զ. (6) ո[ւ]րար, Զ. (6) ծածկոց, ԺԲ (12) շուշփայ, ապրիշումէ վարագոյրն, զանկակն, Ցայսմաւուրք Բ.՝ Սարգիս իրիցուն և հովիւ Թումաշահին։ Եւ եղիցին սոքա յիշատակ անջինջ ի սուրբ եկեղեցիս, և ով որ յանգգնի ի սմա գողանալով և հեռացուցանէ ի սմանէ՝ մասն զՅուդային և զխաչահանուացն առցէ, և զասեսցէ ընդ սատանայի և ընդ կամարարս նորա. և ով որ խնամ տանի սոցա՝ լսէ զձայն աւրհնութեան, եթէ՝ Եկայք աւրհնեալք հաւր իմոյ, ժառանգեցէք զարքայութիւնն իմ, ամէն։

Գրեցաւ ի թվ. ՊԿ. (1411)։ Ցայսմ ամի այրեցին զմեր ժամատունս Ղարա-Ուսուֆն, և քրիստոնեայք քաղաքիս նոր շինեցին։ Քրիստոս աստուած զսոցա հոգոյ տունն շինէ՝ զարքայութիւնն, և զաշխատողացն և զգրողիս, ամէն։

## 130

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 6291**

Գրիչ՝ Յոհաննէս
վայր՝ Կասր գիւղ

362 բ ...Արդ, կատարեցաւ աստուածախաւս և տիեզերաքարոզ աւետարանս ի գեաւղս որ կոչի Կասր, ընդ հովանեաւ սուրբ Փրկչիս, ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի Յոհաննէս սուտանուն քահանայի։ Աղաչեմ զձեզ մանկունք սուրբ եկեղեցւոյ, զի սխալանաց և
363 ա խոշորութեան գրիս անմե ‖ ղադիր հայցեմք, զի կար մեր այս է։

Դարձեալ, աղաչեմ զձեզ յիշեցէք յաստուածամերձ յաղութս ձեր զհայրն իմ զՅովհաննէս քահանայ, և զմայրն իմ զՂաղ-Խաթուն* զհանգուցեալն ի Քրիստոս, այլ և զեղբարքն իմ, և զամենայն արեան մերձաւորքն, և զիս՝ զանարժան Յոհաննէսս և լի բերանով աստուածողորմի ասացէք, և որ զմեզ յիշէ և ինքն յիշեալ լիջի ի Քրիստոսէ աստուծոյ մերո։

Գրեցաւ ի թվականիս Հայոց ՊԿ. (1411)։

Արդ, ես յետինս ի կարգաւորաց, անարգս ի պատուականաց, տկարս ի զաւրաւորաց, որ միայն անուամբս երևիմ յաչս մարդկան

* Կարդա՝ «զՂալ-Խաթունն»։

արդար և ոչ գործովք բարեաց, առաջի մարդկան կարգաւոր և առաջի
աստուծոյ անկարգ, առաջի մարդկան քահանայ և ճշմարտագործ և
363 բ առաջի աստուծոյ ոչ ես։ Եւ || ...եստու գրել յարդար վաստակոց
իմոց՝ յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց։ Արդ՝ յերեսս անկեալ երկրա-
մերձ գիմօք և կողկողագին հառաչմամբ հայցեմք ի ձէնջ ...որք
հանդիպիք այսմ աստուածային և առաքելական տառիս, յիշեցէք
ի Քրիստոս աստուած սրտի մտօք և լի բերանով զիս՝ զանարժանս
զԹումայ կրաւնաւորս, և զծնաւղսն իմ՝ զհայրն զտէր Աւագ, որ ծերա-
ցեալ անձամբ առ Քրիստոս փոխեցաւ, և զմայրն իմ զՍիրայ, և զեղ-
364 ա բայրն իմ զՈւմէկն, այլ և || զեղբորորդիքն իմ զՅոհաննէս քահանայ,
զՍարգիսն, զՆերսէսն, զդեռաբուսիկ սարկաւագ Աստուածատուրն, այլ
և զամենայն արեան մերձաւորքն իմ՝ զկենդանիսն և զմեռեալսն։

Գարձեալ, աղաչեմ զձեզ, ով դասք լուսերամից, որք կարդայք կամ օրինակէք, յիշեցէք ի հեշտալուրն Քրիստոս զբարեմիտ տիկինն Մարթայ և զՊետրոս՝ որդի նորին, որ փոխեցաւ առ Քրիստոս, և մայր նորա, վասն հոգւոյ որդւոյ իւրոյ աւգնական եղև ի սուրբ յաւետա[րա]նս, այլև զՆազ-Խաթունն՝ զկենակիցն Պետրոսի, որ և նա կամակից եղև ի յաւետարանս վասն հոգւոյ առն իւրոյ։ Այլ և զամենայն արեան մերձաւորս նոցա՝ զզաւակս, զընդանիսն, զկենդանիքն և զհանգուցեալսն, և որ լի սրտիւ աստուած-ողորմի ասէ, և ինքն ողորմութիւն գտցէ ի Քրիստոսէ, և նմա փառք յաւիտեան։

## 131

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՏՈՒՄԱՐԻ ՅԱԿՈԲԱՑ ՂՐԻՄԵՑՒՈՅ

Երուսաղէմ 1223

Գրիչ՝ Աւետիք
վայր՝ Աւագ վանք

Գրեցաւ ի թվին ՊԿ. (1411), ի սուրբ մենաստանս որ կոչի Աւագ անապատ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և սուրբ Կարապետի, յառաջնորդութեան մեծ րաբունապետի և քաջ փաղերայի և վարժապետի Գէորգ վարդապետի, ձեռամբ աշակերտի սորին Աւետիք կրաւնաւորի։

## 132

### Մ Ա Ն Ր Ո Ւ Ս Մ Ո Ւ Ն Ք

Եվրոպայի մասնավոր հավաքումներ, № 24, էջ 44—45

Գրիչ՝ Յովհաննէս Սանահնեցի
վայր՝ Երուսաղէմ

Արդ, գրեցաւ եղանակաւոր տառս, որ կոչի Մանրուսումն ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ընդ հովանեաւ տիեզերաժողով, խոյակապ, գերահռչակեալ հրաշափառ մեծի Յարութեանս, եւ երկնանման սուրբ

Գողգոթայիս, եւ աստուածընկալ սուրբ գերեզմանիս Քրիստոսի՝ աստուծոյ մերոց. եւ այլ համաւրէն սուրբ տնաւրինականացս, ի սուրբ ուխտս Հայոց սուրբ առաքելոյս Յակոբայ Զեբեթեան. ի թուականութեանս Հայոց ՊԿ. (1411), ի խնդրոյ սիրելի եւ համշիրակ եղբաւր մերոյ սրբասէր եւ պատուական կրաւնաւորի Սարգիս աբեղայի, ձեռամբ ամենամեղ եւ փցուն գրչի Յովհաննէս Սանահնեցւոյ, ի լաւ եւ յընտիր աւրինակէ Կարապետցոյ։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ, յիշեցէք ի Քրիստոս զստացող սորին՝ զցանկալի եղբայրն մեր զՍարգիս, որ յոյժ աշխատեցաւ ի սպասաւորութիւն մեզ։ Նաեւ զվարժիչ նորա՝ զքաջ դիտողապետն՝ զհաւրեղբայրն իւր զտէր Յովհաննէս մականուն կոչեցեալ Հեթում՝ զփոխեցեալն ի Քրիստոս, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի, հանդերձ ծնօղաւք եւ համաւրէն ազգայնաւք՝ կենդանեաւք եւ ննջեցելովք։ Ընդ նմին եւ զերանաշնորհ զզերիցս երանեալ զըստ հոգւոյ հայրն իմ եւ զուսուցիչն զՅովհաննէս փիլիսոփայ աղաչեմ յիշել սրտի մտաւք, հանդերձ միեղէն եղբայրութեամբս՝ տէր Մարկոսիւ եւ տէր Գրիգորիւ, որ ի միասին ժամանեցաք յերկրպագութիւն սուրբ տնաւրինականացս։

Ո՜հ, եւ զանապատս ի բարեաց, զմեղաւոր գրիչս մաղթեմ յիշել եւ սխալանացն անմեղադիր լինել, որով յիշողսդ ողորմեսցի Քրիստոս, եւ նմա փառք յաւիտեան։

133

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4171

Հետ ստացող՝ Սարգիս

3բ [Յիշեցէք] զըստացող սուրբ աւետարան[ի]ս՝ զՍարգիս աբեղայս, որ գնեցի զսուրբ աւետարանս ի հալալ ընչից իմոց, յիշատակ իմ և ծնողաց իմոց։ Առայ զսուրբ աւետարանս Ներսէս իրիցոյ որդի Սարգըսէն* Ճ. (100) թանկայ, վկայութեամբ էծկանց Գրիգորին, Գառնեցի Ներսէսին. Սուտես(՞) վկա է, [Ա՞ն]տոն եպիսկոպոս վկայ եմ, ես՝ Խութլուպուղես վկա եմ։

Հաւրն իմոյ Նահապետին և մաւրն իմոյ Սինքուրին, արդ, որք հանդիպիք սմայ կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր, և զիս՝ զՈվանէս | | | և աստուած զձեզ յիշէ, ամէն։

Ի թվ. ՊԿ. (1411)։

134

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6792

Հետ ստացող՝ Յոհանէս

11ա Կամաւն աստուծոյ ամենակալին, ես Յոհանէս երէց ընդանի, որ եմ Ամիրբէկի թոռն, և սպասաւոր և ծառայ Վտսիլ թագաւորի պա-

* Սրա պապը՝ Էլբեգին, 1382 Ջվականին, տեսնելով ավետարանը «ի ձեռն այլասեռից ի գերութիւն», գնել էր այն՝ վճարելով 100 դահեկան։

տերագմի սուրբ Նշանին, ի յամի ՊԿ. (1411) Թըւականիս Հայոց ստացայ զպատերագմի* սուրբ աւետարանս յիշատակ ծնաւղաց իմոց, խաչպան Թօդանին և Մելիքին, այլև պահապան ինձ, և որդւոյց իմոց աստուածապարգև զաւակացն՝ Կարապետին և Յովանիսին, Մկըրտչին և Մարգարին:

Ես Գրիգոր վարդապետս ծախեցի զաւետարանս Յոհանէս խաչպան երիցուն, որ այլ ումեք դաւի չկայ ի հետ։ Աստուած իւր ստացողին զսա բարով և ողջ անձին վայելել տացէ, ամէն։

* Ավետարանի սույն՝ «Պատերազմի» անունը կրկնվում է նաև ԺԸ. դարի մի հիշատակագրության մեջ, ուր ասված է. «Ես տէր Սարգիս աբեղայս գայս Ի. աւետարանս, որ է սա՝ Պատերազմին և միւսն՝ Աւետաբեր, և Գ. խաչ, որ գողացեալ տարեալ էին ի Բօհտան, գնացեալ գտի բազում աշխատանօք, և բերեալ դարձեալ եդի ի դուռն Մեծոփայ սուրբ Աստուածածնին»... (էջ 12 բ)։





135

## *Շ Ա Ր Ա Կ Ն Ո Ց*

*Երևան 1609*

*Գրիչ՝* Մելքիսեդեկ
*վայր՝* Վրաստան, Աֆլիսցիխէ գիւղաքաղաք

419 ր *Փառք... որ ետ կարողութիւն մատնադէտ և փծուն գրչի* Մելքի-
սեգեկի Եւստաթէի *հասանել ի վերջք երգարանիս։*
*Հզաւրն ի գոյսս և Նախագաղափարն ամենայն բնութեանց եդեալ
սահմանէ ի կերպս և ի ձևս աւրըստաւրէ առաւելուլ քան զոր
420 ա առնու ի Նախասկզբնէ իւրմէ, ուստի յայտնի || լինի արարչական
կամք նորա, թէ եդեալ է զհանճար ի փանաքի մարմինս վերաթռիչ
լինել առ Նա, վասն որոյ և ամենայն ոք ցանկայ բարեաց, թէ և
կարի յետինն իցէ, իսկ կատարեալքն ամենայն հոգւոց բարեաւ ճեալ
ասացեալ միշտ զվերինն խորհին, ուր Քրիստոս Նստի ընդ աջմէ
աստուծոյ, յորոց և մի գոլով* Տէրունական *կուսակրաւն աբեղայ, որ
յոյժ փափագմամբ և բազում կարաւտիւ ստացաւ զՇարակնոցս զայս
ի յարդար ընչից իւրոց, ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ
իւր, և ծնողաց իւրոց, և եղբարց իւրոց, և ամենայն արեան մեր-
ձաւորացն, մանաւանդ առ ի յիշատակ առ յապա յեկելոց մանկանցդ
Հայաստանեաց. ի թուիս ՊԿԱ. (1412), ի հայրապետութեան տեառն*
Յակոբայ:
*Արդ, եղև զրաւ գրչութեան սորա յաշխարհս* Վրաց, *ի թագաւո-
420 բ րութեան* Կոստանդիլի, *ի գեղս || քաղաքս* Աֆլիսցիխէ, *ընդ հովա-
նեաւ սուրբ Աստուածածնիս, և իշխանութեան տեղոյս պարոն* Սմբատի
*և որգւոյ Նորին պարոն* Բէշքենի, *որ ի յասամանէ չարին վտարեցան
ի հայրենեաց իւրեանց, միայն յուսալով ի Քրիստոս աստուած, զի
այց արասցէ։*
*Արդ, որք հանդիպիք սմա յաւրինակելով կամ ընթերցմամբ,
յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացող սորին՝ զ*Տերունական
*սրբասնեալ քահանայ։*
*Արդ, երես անկեալ աղաչեմ զտեսանողքդ կտակիս՝ յիշել զքաջ
րաբունապետն իմ զ*Մաթէոս *վարդապետն, որ սնոյց զմեզ և ուսոյց
մեզ զարուեստ Գրչութեան։ Ընդ Նմին և զիս՝ զանպիտան գծող սոր-
րին զ*Մելք[իսեդեկ], *որ դառն պանդխտութեամբ գրեցի և կատարեցի
շնորհաւք տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, յորում վայել է փառք։*

## 136

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Ն. Ջուղա 531, Մ.Տ.Մ.*

Նորոգող և կազմող
*վայր՝* Կարս

311 բ *...Արդ, ի թուականութեանս հայկազեան տումարի* ՊԿԱ. *(1412) եղև շինութիւն և նորոգութիւն հռչակաւոր քաղաքիս* Կարուց, *ի ձեռն արդարադատ պարոնին պարոն* Փիր-Հիւսէնին:

*Զոր և յառաջնումն աւերման քաղաքիս ի պահեստի կայր սուրբ աւետարանս ի ստորոտ կլայիս, ի մէջ քարանձաւաց վիմաձորիս, որ և իշխանութեանս յայս ումն ի յայլասեռից եդիտ զսա հնացեալ և այլայլեալ, և եկն երեր զսայ՝ ծախեաց ի վերայ քրիստոսայսէր և երկիւղած կրկին հարազատ եղբարցն՝* Յովանէսին *և* Ալթունին, *զոր և ըստ աստուածասէր բարուց իւրեանց ետուն զգին և ազատեցին ի գերութենէ: Եւ դարձեալ ետուն ծախք և ետուն կազմել զսուրբ աւետարանս յիշատակ նախնեաց իւրոց* Մկրտչին *և մօրն իւրեանց* Մարթային:

## 137

### ԳՐՈՒԹԻՒՆՔ ԳԻՈՆԻՍԵԱՑ ԱՐԻՍՊԱԳԱՑԻՈՑ ԵՒ ՊԱՐԱՊՄԱՆՑ ԳԻՐՔ ԿԻՒՐՂԻ

*«Մատենագ. Հայկ. Թարգմանութեանց», էջ 391*

Թովմա Մեծոփեցի

*Զ*Մկրտիչ *վարդապետն* Մեծոփեցի *յիշեսջիք առաջի Քրիստոսի անմահ գառինն անարատի, որ զսուրբ գիրս Կիւրղի՝ գրեալ ձեռամբ սուրբ հօրն* Ներսիսի *[Լամբրոնացւոյ] երեր՝ ի մեզ հասոյց, ի պիտակ անուն վարդապետս* Թովմայ, *որ ես տեսի և ուրախացայ յոգի, և երկրպագութեամբ համբուրեցի, նաև զսիրելի եղբայրն մեր հարազատ զ*Մկրտիչ *վարդապետն* Աւրբելի *որդի, որ ստացաւ զսա...: Գրեցաւ* ՊԿԱ.*(1412):*

## 138

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 9223, ժա*

ա

Գրիչ
*վայր՝* Արճէշ

1 *...Արդ, գրեցաւ քարոզութիւն աւետարանիս Յիսուսի Քրիստոսի տեառն մերոյ՝ յամի գալըստեան փրկչիս հազարերորդի չորսհարիւրերորդի տասներորդի չորրորդի, և ի կատարման ութն և տասներեակ յորելինին՝ ի սկիզբն մտանելոյ տասն և մի ամաց յա-*

*բեթական տոհմիս տումարի, որ է ԳԿԱ. (1412) թվականիս մեծի, ի*
*նահանգիս* Բզնունեաց, *ի քաղաքիս* Ար[ճէշ] *կոչեցելոյ, ձեռամբ ան-*
2 *արժան | | |*, ի խնդրոյ պատուական և երջանիկ առն աստուծոյ ճըշ-*
*մարիտ և սուրբ կրաւնաւորին և փիլիսոփային* Թադէոս *քահանային։*
*Եւ ետ զսա ինքեան և ծնողաց իւրոց՝ հաւրն* Խընկայ, *և մաւրն իւրոյ*
Աւթային *յիշատակ բարի և հոգևոր զաւակ՝ յաստուածաբնակ և հրեշ-*
*տակերամ ուխտն* Մեծոփայ *վանք անուանելոյ։ Եւ ինքն գնաց ի*
*միշտ կենդա[նին | | |*…։ Արդ, աղաչանս բազմապիսիս առաջի վեր-*
*ծանողացդ այսմ սոփերի մատուցանեմք՝ յիշատակել բարի կամաւք*
*և սեռն սիրով ի պատկանաւոր խնդրուածս զաստուածապատիւ և*
*զքրիստոսունակ քահանայն* զԹադէոս, *և զհոգեւոր և զմարմնաւոր*
*ծնաւղքն իւր, և զամենայն արեան մերձաւորս իւր՝ զկենդանի և*
*զհանգուցեալ։ Այլ և զուսուցիչն իւր* զՍտեփանոս *փիլիսոփայն, և*
3 *զեղբայրն իւր* զՅովհանէս *վարդապետ զհանգուցեալք | | |*
*…Յիշեսջիք… զհեզահոգին՝ զմիայնակեացն* Եւատ, *որ ստացաւ*
*զսա ի հալալ արդեանց վաստակի քրտանց իւրոց, և ետ զսա վեր-*
*ստին դարձեալ յաստուածաբնակ ուխտս* Մեծոփայ *վանաց, ի դուռն*
*տաճարին Աստուածածնի կուսին՝ յիշատակ բարի [հոգ]ւոյ իւրոյ | | |*
*և բարեպաշտ երախտաւոր ծնողաց իւրոց, հաւրն իւրոյ* Հընդուին, *և*
*մաւրն* Թամամին, *և այլ ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝ կեն-*
*դանեաց և հանգուցելոց…։*

Բ

*Կազմող՝* Թովմա Մեծոփեցի

*Ընդ որս և ես՝ անպիտանս յամենայնի նուաստ և մեղապարտ*
*ի մանկունս եկեղեցւոյ վարդապետս* Թովմա, *և* Մատթէոս *կրաւնաւորս*
*աղաչեմք զեղբարքդ յիշել զմեզ, որ զսուրբ գիրս ծաղկել տուաք և*
*կազմեցաք, և աստուած զձեզ յիշէ, ամէն։*
4 *| | | և զազգականս իւր* զՄկրտիչ *հէրպետն, և զեղբայրն իւր*
զՍտեփանոս *ձեռնաւոր, և զորդիսն իւր* զՅովանէս, զՅոհանէս *քա-*
*հանայ,* զԱռիստակէս, զԳորգի-Մելիք, զՍոլթանշա, *և զամենայն բարե-*
*կամ և զսիրելիս իւր, ե որք աւգնական և առիթ եղեն ի գինս*
*գրոցս…։*

## 139

### *ՃԱՇՈՑ*

*Երևան 9093*

*Գրիչ՝* Դանիէլ
*Վայր՝* Աղթամար

429 ա *…Արդ, ես՝ անպտուղս ի բարեաց… բազմամեղ սուտանուն*
Դանիէլ *քահանայ, տեսի զսէր և զփափաք* Յովանէս *և* Ստեփանոս *կրաւ-*

---

** 3 տող պատռված։*

*նաւորի, զոր ունէին առ հոգևորսն և կատարեցի զսուրբ գիրքս զայս, բազում և մեծ աշխատանաւք հասուցի զսա յաւարտումն յաստուածարնակ կղզոյս* Աղթամար, *ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչիս և սուրբ Նշանիս, ի թուականութեանս Հայոց ՊԿԱ. (1412), ի հայրապետութեան տեառն* Դաւթի...։

*Դարձեալ և մեղապարտ* Դանիէլ *գրիչս... յիշեսջիք և զիմ ան-*
429 բ *արժանութիւնս ||... նաև զծնաւղքն մեր զ*Կարապետ *քահանայ և զ*Դուռմէլիք, *և զեղբայրս մեր զ*Թումայ *կրօնաւոր, որ աւգնական և ձեռնտու եղև մեզ. և զքորքն մեր, և զամենայն արեան մերձաւորքն մեր՝ զկենդանիք և զննջեցեալք, և զուսուցիչն մեր զ*Զաքարայ *փիլիսոփայ՝ հաւրեղբայր մեր, և զայնոսիկ որք երախտաւորք եղեն մեզ ի պէտս մարմնաւոր պիտոյից։ Այլ և զառաջնորդ և զսպասաւոր աստուածարնակ սուրբ տաճարին սրբոյ առաքելոյն Բարդուղիմէոսի՝ զպատուական և զընտրեալ եպիսկոպոսն զտէր* Ստեփաննոս, *և զ*Պետրոս՝ *քվերորդի նորա, և զդեռաբոյս ծաղիկն զտէր* Մեսրոպ, *և զհանգուցեալն ի Քրիստոս զ*Մարգարէ *վանից հայրն, որ հայրական և եղբայրական գթով խնամէր զմեզ, և զայլ ամենայն կրաւնաւորսն՝ զմեծ և զփոքր արժանի արասցէ Քրիստոս աստուած իւր սուրբ տեսլեանն...։*

## 140

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4157*

*Գրիչ՝* Ծերուն
*վայր՝* Ոստան

242 բ *...Սրբասնունդ քահանայն* Ստեփաննոս... *ցանկացաւ այսմ աստուածային աւետարանիս և ետ գրել զսա յիշատակ իւր, և ծնողաց իւրոց* Սարգիս Ներկարարի, *և մաւր իւրոյ* Խոնդի, *և կենակցի իւրոյ* Խաթուն-Մելիք *տիրունոյ, և բարի զաւակաց իւրոց* Մելքոնի *և* Սարգսի, *և այլ ամենայն արեան մերձաւորաց իւրոց։ Եւ արդ, ես՝ յետնեալ և աքսորեալս ի կարգաւորաց, բազմամեղ և անպիտան սուտանուն* Ծերուն, *հրաման առեալ ի պատուիրանադիր առաքելական բանէն, որ ասէ՝ Յոր կոչումն կոչեցար՝ ի նմին կացջիր։ Եւ արդ, իմ ոչ բերելով զայսպիսի վստահութիւն, այլ ունայն յամենայն բարեաց և թափուր, այլ յուսամ ի մարդասիրութիւնն աստուծոյ, զի իմ բազում մեղացն թողութիւն արասցէ։*

*Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի քաղաքիս* Ոստան, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և սրբոյն Ստեփաննոսի Նախավկայի, ի հայրապետութեանն Աղթամարայ՝ տէր* Դաւթի, *և ի թուին Հայոց ՊԿԱ. (1412), ձեռամբ մեղապարտ և անարժան* Ծերունի, *և անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բազում մեղաւք պաշարեալ, այլ*
243 ա *ըստ կարի մեր, զոր [Ետ | | | մարդասէր հոգին, բազում աշխատանաւք գրեցի անարժան ձեռաւք իմովք, ի ստոյգ և յընտիր աւրինակէ։*

*Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի*

սեղանոյս, որք պատահիք սմա տեսութեամբ կամ ընթերցմամբ, յիշեսջիք յաղաւթս ձեր զյառաջասացեալ ստացող [սորա] զՍտեփաննոս քահանայ [և] զծնողսն իւր....

Ընդ նոսին և զանպիտան գրիչ զՍերուն, և զծնողսն իւր զՍեփաննոս և զԹանխաթուն, և զկենակիցն իւր, որ աշխատեցաւ ի թուղթ կոկելն. և զերկու քուերքն իւր զՄելէք և զՀերիք, և զվարպետն իւր զԿիրակոս կր[աւնաւոր], և զՅոհաննէս կր[աւնաւոր], որ զգիրն ուսոյց, և զԳէորգ վարդապետն, որ զծաղիկն ուսոյց, և զայլ ամենայն արեան մերձաւորսն իւր՝ զկենդանիսն և զննջեցեալսն. Եւ որք զմեզ յիշէք սրտի մտաւք և դուք յիշեալ լիջիք յառաա յողորմութեանն աստուծոյ, որ է աւրհնեալ, գովեալ, բարեբանեալ, այժմ [և յաւիտեանս]։

243 բ Դարձեալ վերըստին յիշեսջիք զհոգեոր աներն իմ զՔաշիշաւղլի, և զկենակիցն իւր զԳոհար-Մելէք, և զորդին իւր զԽաչատուր՝ զփոխեցեալն ի Քրիստոս, և զՏիրատուր, և զՅորդանան, և զԴալար, և զԱւաք-Պարոն, և զդուստրն իւր՝ զհանգուց[եալ]ն ի Քրիստոս զԱյմէլէք, և զծնաւղսն իւրեանց։ Ընդ նոսին զերախտաւոր և զհոգեոր եղբայրն մեր զՄարտիրոս, և զծնաւղսն իւր զՍոկ (՞) Ստեփաննոս և զՇնոհաւոր, և զեղբարսն իւր զէլէքսան և զԹաւաքալ, և զկենակիցն իւր զԽաթուն-Մելէք: Դարձեալ, յիշեսջիք յաղաւթս ձեր զՅովաննէս, [և զ]կենակիցն իւր զՋուհար, և զեղբայրն իւր զԵղիայ, և զծնաւղսն իւր, ընդ նոսին և զՄարկոս, և զեղբայրն իւր զՄաթէոս, և զծնաւղսն իւրեանց, զԱռաքել և զծնաւղսն իւր։

Յիշեա Քրիստոս աստուած զՍտեփաննոս՝ զքեռի Ստեփաննոս քահանայի, և զգուստր նորին զԵղիսաբեթ, և զայլ ամենայն արեան մերձաւորսն իւրեանց՝ զկենդանիս և զհանգուցեալսն ի Քրիստոս, և ինքն, որ առատն է ի տուրս բարեաց՝ տացէ զիւր առատ ողորմութիւնն առհասարակ, որ շատ և որ սակաւ ! | |

## 141

### ԳԱՆՁԱՐԱՆ

Բրիտ. թնգ. Or. 2608, հց 54, էջ 120—121

Գրիչ՝ Վարդանէս

վայր՝ Արծըրունեաց գաւառ, Կոներաց վանք

Փառք... որ ետ կարողութիւն բազմամեղ ոգւոյ իմոյ Վարդանէս աբեղայի հասանել ի յաւարտ գանձարանիս յամի ՊԿԱ. (1412) թուականի Հայոց, յամսեանս քաղոց, որ օր Ե. (5) էր ամսոյս։ Աւարտեցաւ ի փառս աստուծոյ հաւր. Արդ, գրեցաւ սա ի գաւառին Արծըրունեաց, ի վանքս Կոներաց, ընդ հովանեաւ սուրբ ծովահայեաց Աստուածածնիս և այլ հաւաքեալ Նշխարաց սոցա, առ ոտս տէր Յոհաննէս վարդապետի և առաջնորդ սուրբ ուխտիս | | | որ է եղբայր վարդապետիս և ինձ հօրեղբաւր որդիք...։

Յիշեցէք զեղկելիս՝ զՎրդանէս աբեղայս, և զհայրն իմ զՀամա-

զասպն, և զմայրն իմ զՓաշա-Մելիք, և զեղբայրքն իմ զՄելքիսէթն և Զաքարէն, զՅովաննէս և զՄինաս, և զքոյրն իմ զԹաղա-Մ[ե՞լ]իքն, և զայլ ամենայն մերձաւորքն իմ յիշեսջիք ի տէր մեր։

Արդ, ես առաւել աղաչեմք զձեզ վասն խոշորութեան և սխալանաց սորա, զի ի յաշնանէ մինչ ի զատիկ՝ ապա վճարեցաւ, զի այս էր կար մեր* վասն խիստ ձիւնամեծիս և առաւել ցըրտիս, այս է։

Արդ, յիշեսջիք ի սուրբ յաղօթս ձեր զքարտիս կոկողքս՝ զդեռայբոյս աբեղայքս՝ զՅոհանէս և զԿարապետ և զՎարդան սարկաւագն, ամէն. այլ և զՄովսէս հեզահոգի աբեղայս, որ զօրինակն շնորհեաց և զայլ արեան մերձաւորքն իւր...։**

## 142

## ԼՈՒԾՄՈՒՆՔ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ԳՐՈՑ ՑՈՎՀԱՆՆՈՒ ՈՐՈՏՆԵՑՒՈՑ

Երևան 1701

Գրիչ՝ Ռըստակէս Սեբաստացի
վայր՝ Աւաք վանք

ա

271 ա ...Արդ, և ընդ արժանաւորացս յիշեսջիք և զանարժանս՝ զբազմաշարաւ անձս զըՌըստակէս Սեբաստացի, զվերջինս և զծոյլս յաշակերտաց տեառնս իմոյ՝ մեծի վարժապետի Գէորգէոս փաղերայի։ Զոր առեալ զսա գաղափարեցի ի Թուականութեան Հայոց Մեծաց երկքառասնից տասանց և եռակի քսանից, նեղակ թուով յաւելից (1412)։***

Եւ եղև զրաւ սորա ի մեծափառ անապատիս, որ կոչի Ավաք վանք, և ի յառաջ[նորդ]ութեան նոյն տեառնս իմոյ, յաւուր մեծի հինգշաբաթի, ի փառս Քրիստոսի։

բ

Ո՞հ, զի Աստուածածնին կրեցի զթուղթս ի յԱւագ վանքն և սուրբ Ցակոբիս՝ ի Կափոսիս կոււ գրեմ, սառնասառոյց ցրտութեամբ։

## 143

## ՈՍԿԵՓՈՐԻԿ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

Երևան 5118

Գրիչ՝ Ռըստակէս Սեբաստացի
վայր՝ Ավաք վանք

ա

197 ա Արդ, գրեցաւ քաղուածոյս աստուածաբանութեան ի հաւաքմանէ առն մեծի վարժապետի՝ անուն արթուն զուարթուն առն Գրիգորիսի, ձեռամբ եղկելի և կրկնամեռիկ անձին Ռըստակիսի, ի գերա-

* Տպված է «հրկար մեր»։

** Ձեռագրի 278 բ էջում խնդրում են հիշել իրենց ոմն Պօղոս քահանայ և Սահփանոս եպիսկոպոս Յարբերդու, ՊՁԴ. (1435) թվականին։

*** Պետք է հաշվել այսպես՝ $2\times40\times10(=800)+3\times20(=60)+1$ (նեղակ թիվ) $+551=1412$ թ.։

հռչակ անապատս որ կոչի Ավաք վանք, ընդ հովանեաւ տիրամաւր Աստուածածնին, և սրբոց Առաքելոցն, և այլ բազմահաւաք նշխարաց, և սրբոյն Կարապետին, և ի յառաջնորդութեան նորին հարազատի Գէորգէոս փաղերայի։ Արդ, յերես անկեալ աղաչեմ զհանդիպողսդ յիշել սրտի մտաւք զթշուառականս ոգորմայիւ ի տէր, հանդերձ ծնաւղաւք և ամենայն արեան մերձաւորաւք, և ասացեալն ի ձէնջ վասն մեզ կրկնապատիկ պարգևեսցէ ձեզ տէրն ամենագութ, յորժամ բանքս սպառի և թագաւորութիւն գործոց լիցի, և տեառն փառք անլռելի, ամէն, ամէն և եղիցի։

Գրեցաւ ի թվ. ՊԿԱ. (1412), յամսեանն աւգոստոսի, ի փառս Քրիստոսի։

Բ

287 ա Գանձս այս բազմազեղուն
Եւ մարգարիտ պատուելագոյն,
Ցանմահական ծովէ հոգոյն
Պարգև տուաւ մեզ ի վեհոյն,
Ցեռամեծէ բաբունոյն
Գէորգէէ սուրբ հաւրն իմում։

Զոր տէր աացէ սորին ունել զիշխանութիւն տան քաղաքի իւրայովքն ամենեցուն, որ և մեզ լիցի ընդ սորին իշխանութեամբ։ Բայց ես՝ պիտակ ոգի Ոքստակէս Սեբաստացի, աշխատասիրութեամբ զսա աւրինակեցի առ ի վայելումն ուսումնասիրաց եղբարց, որոց և լիցի։

Արդ, աղաչեմ անմեղադիր լինել մեզ վասն սխալանաց և անարհեստ քերդողութեանս, ներել աղաչեմ հայրաբար և ուղղել եղբայրաբար...։

## 144

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

ՄՑՀ հա. Ա. 73, էջ 153

Գրիչ՝ Ստեփանոս Ավաքերիցանց
վայր՝ Սիս

308 ...Գրեցաւ շարականքս, որ կոչի գետք և գիշերութեան ալէլուքս զկնի, ի թուիս Հայոց ՊԿԱ. (1412), ի մայրաքաղաքիս Սիսոյ, ընդ հովանեաւ սուրբ Կարապետին Մկրտչի և Ցակովբա հայրապետի, ձեռամբ մեղաւոր և անմար գրչի Ստեփանոսի՝ կոչեցեալ Ավաքերիցանց. ի վայելումն անձին սրբասէր քահանային Կոստանդնի, որ ետ գրել զսա յաղագս հսկմանց գիշերո, զի շարականն բոլոր ի սմայ է հաւաքած, զարդ ի հարցներոյն, զի է որ ծայրքաղ է, և է որ առաջաբան է, և է որ կատարեալ է. նոյնպէս և ութն ձայնի ալէլուքն՝ իր սարաւքն, զի մնա յիշատակ իւր, և ծնողաց նորա, և զուգակցին իւրոյ Իթլիշաճի, և դեռաբոյս զաւակաց նորա Լեւոնի և Յոհանէս դպրի, և ամենայն զարմից։

Արդ, յերեսս անկեալ աղաչեմ զձեզ վասն սիրոյն Քրիստոսի, որք հանդիպիք սմայ, յիշեսջիք ի Քրիստոս զծնաւղս իմ և զամե-

նայն նընչեցեալսն, և ինքն որ առատն է ի տուրս բարեաց նաև ձեզ պարգևեսցէ ըստ այնմ կերպի, զոր դուք մեզ խնդրէք։

Ո՜վ սուրբ քահանայք, շարականքս որ ի սմայ են, նաև վերջն է սկսած ու քաշած ծուռ՝ մինչև յառաջն. Թէ կամիս ուղորդ քաղել դու, յոր ձայն որ լինիս դու ի յերջքն սկսիր ի ձայնին ու քաղէ, ու զԹղԹերն ի յետ շրջէ, նայ տանի զքեզ ուղորդ՝ ըստ կամաց քոց. և ողալանաց սորա անմեղադիր լերուք դի կար մեր այս էր...։

## 145

## ՃԱՇՈՑ

Երևան 7448

Ստացող՝ Գարիանէ
վայր՝ Հայտար գիւղ

505 բ Ես՝ Գարիանէս, որ կու կենամ ի գեւղս Հայտարին, ետու զայս գիրքս ի յեկեղեցին՝ ի սուրբ Աստուածածինն, ինձ յիշատակ, և իմ կողակցին, և իմ ծնողացն, և իմ ամէն արեանառու ազգականացն, եդի յիշատակ ի յեկեղեցին ի սուրբ Աստուածածինն, որ է ի գեւղս ի Հայտարին, յիշատակ անջնջելի մինչև ի գալուստն Քրիստոսի։ Եւ եթէ ոք յանդքնեսցի՝ ի զաւակաց իմոց կամ ի յազգականաց ձեռնամուխ լինել ի գիրքս՝ ծախելով, կամ կրաւկան դնելով, կամ Թուղթ կտրելով, և Քրիստոս աստուած կտրեսցէ զինքն ընդ մէջ, և զմասն նորա ընդ անհաւատսն դիցէ, և որք հանդիպիք ի քահանայից, կամ ի սարկաւագացն, կամ ի սպասաւորաց եկեղեցւոյ խնամս տանի գըրոցս, մերկ ոչ պահէ, կամ մերկ ի վերայ քարի ոչ դիցէ, աւրհնեալ եղիցի <լիցի> ի Քրիստոսէ։ Բայց խնամարկու և վերակացու գրոցս՝ Յովաննէս քահանայ եղիցի։

Գրեցաւ յիշատ[ակարանս] ի Թվ. ՊԿԱ. (1412)։*

## 146

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԲԱՐԳՈՒՂԻՄԷՈՍԻ ՄԱՐԱՂԱՑՒՈՅ

Երևան 2184

5 ա Ես տէր Ջօմս.** տրհեպիսկոպոս ծախեցի զիմ Քարոզագիրքս ֆրա Կարապետին ԲԾԾ. (250) դեկան։

Ես Յոհան վարդապետս վկայ եմ, ես ֆրա Ղուկաս վկա, ես ֆրա Ղւպր.** քարոզս(°) վկայ եմ, ես ֆրա Յոհանէս վկայ եմ։ Թվ. մարդեղուԹեան ՌՆԺԲ. (1412)։ Աստուած վայելել տացէ։***

---

* Ստացողի այս հիշատակարանին նախորդում է գրչի ընդարձակ, բայց սակավարժեք հիշատակարանը, ուր Թվարկվում են նաև Գարիանէի մերձավոր ազգականները. այդ հատվածը բերում ենք ստորև՝ «Յիշեսջիք առ տէր զվերոյգրեալ Գարիանէ, և Սիմէոն՝ զայր իւր՝ զփոխեցեալն առ Քրիստոս, և ծնողաց իւրոց՝ հաւրն իւրոյ Շահրկան, մաւրն իւրոյ, և զաւակաց իւրոց՝ Հայոցին և Ուստիանէ, և որդոյ իւրոյ Մելիքէ, և ի յաստուած փոխեցեալ որդոյ իւրոյ Ցոհանեսին, և քեռորդոյ իւրոյ՝ Սարգիս մղաեսուն, և զամենայն արեան ազգայիննսն իւր» (էջ 505 ա)։

** Անունը հաղավված է, վերծանել դժվարանում ենք։

*** Հիշատակարանին կից կա մի-մեծ ձվաձև կնիք՝ լատիներեն գրուԹյամբ, որը լավ չի ընԹերցվում։ Կնիքը հավանորեն վաճառող Ջօմս. (Ջերօնիմոս) եպիսկոպոսինն է։



ՊԿԲ 1413

## 147

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ԵՒ ՄԱՏԹԷԻ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 1198

ա

Գրիչ՝ Յոհաննէս Եզնկացի
վայր՝ Տաթև-Հերմոն-Եղևարդ

457 ա ... Բայց պատահեալ երբեմն, զի վասն բազմանալոյ անաւրէ-
նութեան և չարեաց, նուազեալ ընդաղաւտացաւ ի մէնջ անհամե-
մատ պարգևս այս իմաստից, որպէս թէ սովէաք ի լսելոյ զբանն
աստուծոյ։ Յայնժամ, ամենագութ և անյիշաչար պարգևատուն՝ գթա-
լով ի հաւաս իւր փոքրիկ, ծագեաց որպէս ի մէջ գիշերի աջահն ան-
շիջանելի՝ զպէտն բաբունեաց, զքաջ հռետորն և զերկրորդ լուսաւո-
րիչն մեր զՅովհաննէս Որոտնեցի մականուն կախեալ ի սէրն Քրիս-
տոսի. և բազմաջան շառաւիղաւք զարգացեալ աճեցոյց ի պայծառու-
թիւն եկեղեցւոյ իւրոյ և ի վանումն ամենայն հակառակամարտից,
որ և նա ըստ շաւղաց ճշմարտասիրաց աստուածաբանիցն հետևեալ,
անսխալապէս հասեալ ի կէտ կոչման իւրոյ, փոխեցաւ առ փափաքելին
457 բ ամենեցուն՝ տէրն մեր Յիսուս Քրիստոս, ‖ և բազում շահս և ան-
թուելի բարեաց պատճառս թողեալ յեկեղեցի աստուծոյ, որոյ յիշա-
տակն աւրհնութեամբ եղիցի, ամէն։

Բայց ի նմանէ վարժեալք եղեն բազումք ըստ իւրաքանչիւր կարողութեան և տարողութեան, յորոց երիս ոմանս արեգակնանման ճառագայթիւք ցալլացեալ երևեցան ի մէջ բազմահոյլ բանասիրաց, համշիրակք և հարազատք միմեանց։

Եւ ոչ է ինձ կարողութիւն գտանել զկարգ շարադրութեան սոցայ, թէ զորս նախադաս գրեցից կամ զորս ըզկնի որոյ, զի զանազան պատուականութիւնս երևի ի սոսա, յիւրաքանչիւրսն անհամեմատ միմեանց։ Եւ համարձակիմ դնել առաջին զպատուեալն կրկին ալեաւք, իմաստիւք [խո̃հ]եմ և մարմնական ծերութեամբ, զանուանակիր տեառն եղբաւրն (Յակոբայ) և զսպիտակացեալ աղաւնին ի յոգի և ի մարմին, զմեծ րաբունապետն և զամենեցունց վարժիչն աշակերտակցաց իւրոց։ Եւ զկնի սորին՝ զանհամեմատ փարթամութիւնն, զբազմեբախտ հայրն համայնից, զպայծառացեալն իբրև զոսկի ի ք[ր՞]այումն ի մամուլս կրթութեան, որ ոչ սակաւ ինչ արդիւնս երևեցուցեալ մեզ ի բազում երկանց իւրոց, հաստակառոյց սիւնն եկեղեցոյ, անուանակիր լուսաւորչին մերոյ (Գրիգորի), նաև զգաւն և զուարթուն գոլով նման նմին, որ զամենայն բարիո[ք զ]ընթացս իւր կատարեալ, ժամանեալ էհաս մեծաւ ուրախութեամբ առ բաղձալին մեր Քրիստոս, զոր ի յիշելս

իմ գնա աստանաւր ոչ տան թոյլ վտակք արտասուացս ուղիղ հայել ի քարտեզս կամ ի մելանս։ Եւ զկնի սորին զբոլորովիմբ հոգիացեալն ի մարմնի, զանկշռելի բարեաց անուաթն և զհասուն ի ծայրս ամենայն իմաստից՝ տեսականին ասեմ և գործնականին, զպետս պուէտից և զնազելի հռետորն, զհոմայնից բաղձալին ասեմ՝ զմեծն Գէորգէոս, զանյաղթ զաւրականն Քրիստոսի՝ ընդդէմ բազմահնար մեքենայից չարին։

Արդ, մի ոք տկար մտաւք եպերանս համարեսցի, զի ի վերջոյ դրի զանուն րաբունոյն իմոյ Գէորգեա, զի ոչ թէ վասն անպատու[ու]թեան, քաւ և մի լիցի. զի ոչ ամենայն ուրէք առաջինն պատուական երեւի քան զվերջինն, նմանապէս և ոչ վերջինն քան զառաջինն, որպէս յայտ է ի բազում իրաց, զի առաջին է կենցաղս և ապա յաւիտենական և անսպառն, դարձեալ՝ առաջին է մարմին և ապա բանական հոգի, դարձեալ՝ ի ստեղծմանն յետինն է մարդն և առաջին՝ այլքն, դարձեալ՝ ի ծնունդն առաջին ախտաւորն և ապա հոգևորն, և ևս գերագոյն, զի թէ ի փառս տալն զորս և կամիս առաջին անուանես, զերրորդութեան անձինսն ոչինչ է առաւելութիւն և նուազութիւն.

Եւ սոքա երեքեան պետքս ըստ իւրաքանչիւր կարգի և յաջողուածոյ և դիպման, երկասիրութեամբ և բազում չարչարանօք ստացան մանգունս ստնդիայս կաթինն իմաստից։ Զոր տէր աստուած արդիւնական շահաւէտութեամբ պտղաբերեալ զարգացուցանէ ամենայն սրբոց բարեխաւսութեամբ, ամէն։

Ցորոց և ես՝ յետնեալս յամենեցունց Յոհանէս անուանեալս և ոչ ենթակայացեալս կրաւնաւոր և կամ սպասաւոր բանի, տկար մտաւք և տարտամ լեզուաւ կամեցա հետևել այսքան բարի արանց, թէպէտ
458 ա և ոչ է կարողութիւն, զի լինիցիմ հասու։ Եւ ժամանակս ինչ ‖ դեգերեալ եղէ առ ոտս երջանիկ րաբունապետին իմոյ Գէորգայ և ապա, լուեալ իմ զհամբաւս համալսարանի տանս Արևելեան, ցանգացա և զստցա տեսանել, և աղօթիւք սրբոց հասի փափագանացս։ Եւ ժամանակս ինչ, իբրև ամս երկուս անցեալ, և մեծ րաբունին Գրիգորիոս փոխեցաւ յաստեացս առ Քրիստոս, և անմխիթար սուք եթող համայն ազգիս. և ի նմին ամի պակասեցաւ և եղբայր և ընգերակիցն իմ Մելքիսեդեկ: Եւ ես բազում թախանձանաւք շրջշրջէի ի տունս Արևելեան, վասն զի բազումք յաշակերտաց սորին սկսեալ էին յարմարել դասատունս ըստ իւրաքանչիւր կարողութեան, ոչ համարձակէի դառնալ առ հայրն իմ հոգևոր՝ Գէորգէոս Մեծն։ Եւ յետ ժամանակաց ապայ այցելութեամբ տեառն եկն առ իս ոմն յեղբարց իմոց յուսումնակցաց՝ Ղազար սպասաւոր [րան]ի, և ապա նովաւ փարատեալ եղև տրտմութիւն իմ յաւտարութեան աստ։ Եւ յետ սուղ ինչ ժամանակի, դարձեալ ոմն բարեկամ եղբայր և ուսումնակից մեր եհաս առ մեզ՝ Առիստակէս անուն, որ և սա սիրաւղ և սպասաւոր բանի, յորմէ ոչ սակաւ դիւրութիւն եղև մեր տառապանացս։ Եւ եկեալ ի միտս մեր եդաք ի սրտի դառնալ անդրէն առ հոգևոր հայրն մեր Գէորգէոս, զոր

յուսամ յապենիազն աստուած, զի տեսութեան Նորին արժանաւորեսցէ զմեզ՝ բարեխօսութեամբ մաւր իւրոյ, ամէն։

Արդ, գրեցաւ և յանկ ելեալ աւարտեցաւ մատեանս աստուածային ձեռամբ անարհեստ և փցուն գրչի Յոհանէս Եզնկացոյ՝ սիրողի բանի, ի Թուաբերութեանս Հայոց յՊ-երորդի վաթսներորդի երկրորդի (1413), ի տունս Արևելեան, մասն ինչ ի վանս Եւստաթէի առաքելոյն Քրիստոսի, և մասն ինչ ի վանս Հերմոնի, առ ոտս բաբունոյն Յովհաննիսի՝ աշակերտի Գրիգորին, և մասն ինչ ի վանս Եղևարդու, ի գաւառս Այրարատեան, առ ոտս բաբունոյն Սիմէոնի, որ և սա աշակերտ նոյն Գրիգորի:

Արդ, աղաչեմ զամենեսեան զհանդիպաւղք այսմ տառի կարդալով կամ աւրինակելով և կամ միայն տեսանելով, յիշեսջիք յերկնաթռիչ աղաւթս ձեր առաջի մեղսաքաւիչ անարատ գառինն աստուծոյ զվերոյասացեալ պետքն մեր, նայ և զաւրինակի շնորհօղն՝ զՍիմէոն վարդապետն, որ զԱւետարանին [մեկնիչն] շնորհեաց, և զՄատթէոս գրոց աշակերտն, որ զՍաղմոսին [մեկնիչն] ետ, և զամենեսեան որք շատ և որ սակաւ աւգնական եղեն մեզ, վասն զի յամենեցունց բազում մարդասիրութիւն տեսաք աստ՝ զԹ. (9) ամ, զոր աստ կացաք։ Նաև զհամշիրակ եղբայրքս իմ՝ զՂազար և զԱռիստակէս, որոց ես եղէ պատճառ աւտարութեան սոցա, ի բնական տեղոյն և ի վարդապետէն և ուսումնասիրացն։ Դարձեալ, մեծ հառաչանօք անգանիմ առ ոտս ձեր, եղբայրք իմ գթասիրտք և ողորմածք, և արտասուաթոր կականմամբ հայցեմ անդադարապէս միով տէր ողորմայիւ յիշել զծնաւղսն իմ մարմնաւոր, վասն զի ոչ եմ կարող կամ աղաւթիւք, կամ նուիրաւք, կամ այլևայլ իրաւք օգնական լինել նոցա։ Եւ եթէ ոք խոնարհեսցի առ ժահահոտ-

458 բ եալս ազգի ազգի վիրաւք, || և յիշման արժանի արասցէ, և բան ինչ մխիթարական տացէ ինձ առ ի պատճառս բժշկութեան, այսինքն՝ զի զանուն ամենակարաւղ տեառնն կարդասցէ յաւգնութիւն տկարացելոյ անձինս, հաւատամ ճշմարտապէս, զի զփոխարէնսն հարիւրապատիկ առցէ աստ և ի հանդերձելումն, ամէն։

Արդ, որք ուղիղ և ցաւագին սրտիւ յիշեն զտառապեալս, և նոքա յիշեալ լիցին ի Քրիստոսէ աստուծոյ մերմէ, ամէն։ Եւ սխալանաց և անարհեստութեան գրոյս անմեղադիր [լեր]ուք, զի կար մեր այս էր։

Բ

Ուռ՝ Մովսէս

2 ա ԶՄովսէս կարճահասակս, որ է քաղցեալ յիշեցէք ի Քրիստոս։

Գ

Ստացող՝ Սարգիս վարդապետ

458 բ Ընդ առաջին և ընդ վերջին զստացող գրոցս՝ զպիտականուն Սարգիս վարդապետս, այլև զհայրն իմ զտէր Վարդան, և զեղբայրն իմ զԿարապետ յիշեցէք ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, և դուք յիշեալ լիջիք։

## 148

### ԱՌ ՈՐՍ ԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ

«Այրարատ», 103 (նմանահանութիւն)

Գրիչ՝ Մկրտիչ Եղեգեցի
վայր՝ Սաղմոսավանք

... Այլև զմեզօք մեռեալ ոգի
ԶՄկրտիչ Եղեգեցի.
Սուտանուն կարօտ բանի
Առնէք յիշման զիս արժանի,
Եւ ձեզ լիցի մասն ի բարի
Եւ ձեր ամէն յանցանք [ք]աւի.
Զմեզ յիշեցէք ի յաղաւթի։

Ի թուականիս հայոց ՊԿԲ. (1413) գրեցաւ լուծմունքս ի սուրբ մենաստանիս Սաղմոսի: Եւ ետու զգիրքս յիշատակ հոգոյ իմոյ հոգեւոր եղբաւր իմոյ Թովմա վարդապետի՝ աստուածարնակ ուխտին Մեծոփայ վանացն, վասն զի նա զԱռ որս գիրս Աստուածաբանին ինձ և ազգականին իմոյ Մարգարէ վարդապետին՝ ինքնագիր ձեռաւք գրեալ շնորհեաց մեզ։

## 149

### ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 917

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Խառաբաստ

ա

290 ա Զնուաստ ոգի Գրիգոր աշակերտ բանի մի մոռանայք, ո՛վ բարեմիտ ընթերցողք, այլ յիշեցէք ի բարի մասին։ Եւ խոշորութեան գրոյս անմեղադիր լերուք, զի նորուսումն էի յարհեստ գրչութեանս, և յօտար երկիր, և տառապեալ կեանք, և անձանձիր փոյթ ի կարդալ, ի վանս Խառաբաստա կոչեցեալ, ի թվ. ՊԿԲ. (1413)։

բ

279 ա | | | *Եւ ուրացաւ զտէր կենդանի
Վա ձեզ յաւուրն աներեկի,
Յորժամ փառօք գայ հայրենի,
Նստի յաթոռ դատաստանի,
Հրեղէն սրովք աներըթելի
Ընդ մէջ կտրէ զֆրաթանիդ,**
Զվայն տայ լսել յաւիտենից։

---

* Գրված է նշված էջի ստորին լուսանցքում, նախորդ թերթի ստորին լուսանցքը պատռված է, կարծում ենք, որ հիշատակագրության սկզբի մասը եղել է այդ լուսանցքի վրա։

** Խոսքն ուղղված է, ըստ երևույթին, հայ կաթոլիկ ունիթոռներին («Ֆրաթանի»— հենց պետք է նշանակի «եղբայրներ», ֆրանս. freres—եղբայր բառից), որոնք, գրչի կարծիքով, աստծու ահեղ դատաստանի օրը դատապարտվելու են դժոխքի արհավիրքներին։

Գ

4 բ Զյետինս ի բանասիրաց՝ զնուաստ տառապեալ ոգի վարդապետս Գրիգորի, յիշել աղաչեմ սրտի մտօք, նաև զիմսն ամենայն՝ զԹադէոս սրբասնունդ կրօնաւոր՝ քուէրորդի իմ, որ և տարաժամ մահուամբ փոխեցաւ ի Քրիստոս, և զԻսրայէլ և զՎրդանէս դպիրք և սաղմոսերգուք՝ եղբօրորդիք և աշակերտք մեր, որ և նոքա ընդ Թադէոսին հանգեան ի Քրիստոս և [ըն]կալան զպսակսն անապական։ Եւ որ զմեզ բանիւ հայցէ՝ ն[մա] գործով եղիցի ի Քրիստոսէ աստուծոյն մերոյ, օրհնելոյն յաւիտեանս յաւիտենից, ամէն, աւմխ, աւախ։

Դ

182 ա Քրիստոս աստուած, լուսաւորէ զհոգի Թովմա վարդապետին, որ մականուն Տկլոզ կոչիւր, զի զայս Բ. Թխթիկս նա գրեաց ի վանս Խառաքաստայ, յիշատակ նորին օրհնութեամբ եղիցի, ամէն։

Ե

224 ա Վա, ի գլխի ցաւէս, թէ որպէս նեղիմ, բայց փափաքումն բանիս կու յաղթէ։

Զ

391 ա [Այ]ս էջս Թովմա եպիսկոպոսն գրեաց՝ Ջուղայեցին, աստուած ողորմի նմայ։

Է

292 ա Վայ, զայս ապլահ և գէշ մարդս, որ երէկ ի մեր գլուխս ելo:

Ը

Գրիչ՝ Անդրիաս

285 բ Զանարժանս խաբեղայս զԱնդրիաս՝ զսակաւ գիրս գրեցի ծուռ ու մուռ, անմեղադիր լերուք, զի նոր կու ուսանիմ։

Թ

Գրիչ՝ Կարապետ

293 ա Զգծող էջիս՝ զնուաստ Կարապետ աշակերտ բանի [յիշեցէք]։

## 150

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

ԼՑՎ 1256, Լիմ

Գրիչ՝ Յովանէս

վայր՝ Խառաքաստայ վանք

... Ի թուականութեան հայկազեանս սեռի ՊԿԲ. (1413) գրեցաւ և յանկ ելեալ աւարտեցաւ մատեանս աստուածային, որ կոչի Հարցմունք, ի նահանգիս Քաջբերունի, ի մեծահռչակ ուխտս և ի հրեշտա-

կարնակ սուրբ մենարանիս՝ ի վանս Խառաբաստայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, և ի Սարգիս վարդապետի գերեզմանի, և յայլ սուրբ նշխարացս, զոր աստ կան ժողովեալ։ Եւ ես՝ պիտակ անուն Յովանէս գաւառաւ Քաջբեր[ունե]ի, ի վանից Սուհարա, [որ] կոչի այժմ Խառաբաստա վանք, վասն յօժարութեան սրտի ձեռն ի գործ [արկի] և գրեցի տխեղձ մատամբ և տկար անձամբ ի բոլոր ամի. և մի ամսոյ վճարեցաւ...։

[Աղաչեմ] յիշել... զհայրն [իմ] զՎարդանն, և զՍահակ, և զքոյրն իմ զՄարթա... և զիս՝ ըզգծողս՝ զՅովհաննէս, որ անուամբ միայն եմ քահանայ։

## 151

### ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

*Երուսաղէմ 1155, ՀԱ, 1925, սյուն. 566*

*Գրիչ՝* Յոհաննէս
*վայր՝* Ապահունեաց սբ. ուխտ

*... Գրեցաւ ի թվիս ՊԿԲ. (1413) և ի հոկտեմբերի ամսոյ ի ԻԵ. (25)։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ գրոցս յիշեսջիք յաղաւթս ձեր սուրբ՝ զպարծանք պարծանաց մերոց հոգւոյ և մարմնոյ, զհոգևոր եղբայրն իմ զՅակոբ աբեղայն, և զծնաւղսն իւր, և զեղբարսն իւր ի Քրիստոս Յիսուս, որ զօրինակն շնորհեաց։*

*Գրեցաւ ծաղկազարդ և վարդափըթիթ, մարգարտաշար գիրքս, որ կոչի Հարցմանց ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի* Յոհաննէս *աբեղայի, ի սուրբ և ի հրաշափառ և սքանչելագործ ուխ[տս°], ի վանս (°) | | | սուրբ Թ | | | Նի | | | և սուրբ | | | Սարգսի, և | | | աղաչեմք զամենեսեան որք հանդիպիք, ո՛վ սուրբ երամք ընթերցողաց, ընթեռնելով կամ գաղափարելով, յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր զգծող և զծրող սորայ* [զՅոհաննէս] *աբեղայ, և զհայրն իմ զտէր* Պապն, *և զմայրն իմ* զՍիրայն, *և զեղբարսն իմ, և զամենայն արեան մերձաւորսն իմ՝ զփոխեցեալսն առ Քրիստոս և զկենդանիս։ Ընդ նմին և զհարազատսն իմ՝ զհայր [վանացս]* զՄարտիրոս *աբեղայն և* զՄարուգէ *աբեղայն. ընդ նմին և զբազմերախտ, սրբասնունդ և պատճառաւոր այսմ գրոցս գրելոյ՝ զպանծալի հոգևոր եղբայրն մեր* զՅակոբ *աբեղայն, և* զԳրիգոր *աբեղայն, և* զԿարապետ *երէցն, ընդ նմին | | | միաբանք | | | աբեղայն, և* զՅովսեփ *աբեղայն | | | և* զՄկրտիչ *և* զՆերսէս *[երէց]անին, և | | |* զՄկրտիչ *[տնտեսն], և* զՅովանէս *| | | և* զՄխիթարն *| | | որք | | | բապէս՝ [զմե]ծ և զփոքր [միաբանսն սուրբ] ուխտիս։ Ընդ նմին և զ[*Պա°ւղ*]*ոս *| | | աբեղայն զ | | | սուրբ ուխտիս որ կոչի* Ապահ[ունեա°]ց *| | | վերջք գր | | | ա[ստ աւարտե]ցաւ, և մեզ եղբայրութեան սէր կատարեաց, զոր հատուցէ տէրն Յիսուս ի միւսանգամ գալուստն, և սուրբ [եկեղեցեաց] բարեխաւսութեամբ՝ սուրբ Նի[կողայոսի, և սուրբ] Աստուածածնին, և սուրբ Թէոդորոսի, և ամենայն սրբոց։*

*Քրիստոս աստուած մեր, որ առատն է ի տուրս բարեաց ձեզ՝ յիշողացդ սրտի մտօք, և մեզ՝ յուսողացս և յիշելոցս, առհասարակ, ողորմեսցի, և պարգևեսցէ զիւր երկնից արքայութիւնն, և նմա փառք յօիտեանս, ամէն։*

## 152

### ԵՒԹՆԱԳՐԵԱՆՔ

*Երևան 599*

Գրիչ՝ Թովմա̃յ
Վայր՝ Խլաթայ վանք

ա

61 ա *Զյետնեալս յամենայն շնորհաց և զծոյլս յամենայն կրաւնաւորաց, զբազմավէր ոգիս, զպիտականուն վարդապետս* աղաչեմ յիշել ի տէր, որ բազում աշխատութեամբ հաւաքեցի զայս գիրքս, որ ցրուեալ և ցընդեալ էր ի վաղուց հետէ և ոչ ոք գիտէր թէ զինչ էր սա։ Այլ և զհոգևոր և զմարմնաւոր ծնաւղքն մեր, մանաւանդ զ*Մաթէոս *քահանայ յիշեսջիք ի բարին Քրիստոս, և կաթ մի յարտասուաց ձերոց ցաւղեսցի ի թարախալից մեռեալ հոգիս և մարմինս մեր, և Քրիստոս աստուած զյիշողքդ յիշէ ի փառս իւր, ամէն. ՊԿԲ. (1413) գրեցաւ։*

Բ

62 ա *Աղաչեմ անպարսաւ [թողուլ զիս]։ Զայս ի հին գիրս գտի, ի* Խլաթայ վանսն:

## 153

### ԱՒԵՏԱՐԱՆ

*«Արարատ», 1905, էջ 728—729*
*Կիւմուշխանէ, Ս. Փրկչի վանքի ձեռագիր № 2*

Գրիչ՝ Զաքարիա
վայր՝ Վան

*... Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ* Զաքարիայի՝ *որդւոյ* Մկրտիչ *քահանայի...։ Գրեցի ձեռօք իմովք յընտիր և ի ստոյգ աւրինակէ, կենօք տառապանօք և բազում պանդխտութեամբ և անհանգըստութեամբ, ի քաղաքիս որ կոչի* Վան, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Սարգսի զաւրավարին և որդւոյ նորա Մարտիրոսի, և սուրբ Գէորգայ զաւրավարին, ի կաթողիկոսութեան հայկազեան սեռի տէր* Դաւթի Աղթամարեցւոյ, *և ի թագաւորութեան այլասեռից* Ղարա-Եուսուֆի, *զոր տէր աստուած Իսրայէլի պահէ անխախտ, որ չի սասանի զաթոռ մերոյս հայրապետի և զմերազին թագաւորին, զի յիշելով զանուն սոցա՝ սասանել սաքրին և ոչ ևս [եբեին] թշնամիք ճշմարտութեան։ Եւ էր մեծ թիւն Հայոց ՊԿԲ. (1413)...։*

* *Այս տողի շարունակությամբ, լուսանցքի վրա, գրված է եղել ինչ որ անուն, որից պահպանվել են միայն՝ «Թ» և «Ա» տառերը, վերից վար դասավորությամբ։ Հնարավոր է ենթադրել, որ այստեղ գրված է եղել գրչի անունը՝ «Թովմայ»։*

*Ցիշեցէք ի Քրիստոս զստացող սուրբ աւետարանիս* զՂուկաս *քահանայն, և զզաւակն* զՍիմէօն *քահանայն, և զնորաբողբոջ զաւակն* զՅովհաննէսն, *և զծնող* Սիմէոնին զՄարթէն, *և զկողակիցն* զՄամ-խաթուն… *և զանարժան գրիչս* զՁաքարիա, *և հայրն իմ* զՄկրտիչ *քահանայ, և զմայրն իմ ըստ մարմնոյ, և զմօրքուրն իմ* զԽերմելիք, *և զկրկին մայրն մեր* զԻլխաթուն, *որ առաւել [քան] մայր սնուցանէր զմեզ և դարմանէր, և զերկու եղբայրս իմ* զՅովհաննէս *գրիչ և* Ներսէս… *այլ և զհոգևոր եղբայրն իմ* զՅովհաննէս, *որ հանապազ կերակրէր զմեզ և ուրախացուցանէր։*

154

*ՃԱՌԸՆՏԻՐ—ՏՕՆԱԿԱՆ*

*ՄՑՀ, հա. Ա, 146, էջ 267—275*

*Գրիչ՝* Կարապետ

*վայր՝* Մոկաց երկիր, Ծպատայ վանք

ա

*…Եւ յիշեսցեն յաղաւթս իւրեանց զստացող սուրբ գրոցս* զԹադէոս *հոգևոր քահանայս, և զծնօղսն իւր՝ զհեզահոգին* զՎարդանն *հայրն, և զաստուածասէր մայրն* զԹամար, *և զկենակիցն իւր* զՇուշան, *և զգեղեցկատիպ որդեակն* զԱստուածատուրն, *որ տարաժամ հասակաւ փոխեցաւ առ Քրիստոս և սուք եթող անմոռանալի, զոր տէր աստուած դասեսցէ զհոգիս սոցա ի տեղիս հրեշտակաց, ի խորանս լուսեղէն, ամէն։ Կրկին մաղթանաւք աղաչեմ յիշել զփեսայքն իւր, որ աւգնական եղեն գրոցս, զպատուական տանուտէրն* զՅովհաննէս, *և զկենակիցն իւր* զՆազխաթուն, *զբարէմիտն* զՄովսէս, *և զհաւատաբիմ կինն իւր* զՄինայ…։

*Ո՛վ քահանայք՝ առաջինք և յետինք, լաւ խըն[ամ]ով պահեցէք և կարդացէք, զի գիրքն մարդոյ հոգի է և կեանք. իմ դատաստանն, թէ գրէանքս չէին՝ նա աշխարհըս ամէն ի կռապաշտութիւն անկանէր։*

*Աստուած փառաւորէ* զԹադէոսի *հոգին, որ* Ոզիմ *գեղիդ լուսաւորիչ եղև, ժողովեաց զաստուածային ծաղկունքն՝ աւետարան, տարեգիրք, յայսմաւուրք, տաւնական, ճշմարիտ աստուածն գիտէ, որ երախտիք է ի վերայ ձեր, ո՛վ պատուական տանուտըեայք և տանդիկնայք, մեծ և փոքր առհասարակ, լաւ հարկիք արարէք* Թադէոսիդ, *իբրև ծնաւղի ձերոյ, զի խիստ շատ աշխատեցաւ յերթևեկութիւն սուրբ գրոցս…։*

*Եւ արդ, ես՝ ունայնս ի գործոց բարեաց և փցունս ի գրչաց* Կարապետ *սուտանուն կրօնաւոր և անարժանս ի կարգաւորս՝ յանձն առի ըստ իմում կարի և գրեցի զսուրբ գիրքս դրոշմամբ մեղսամած մատամբ իմով, բազում և պէսպէս աշխատանաւք, վասն զի զիմ անարժանութիւնս յիշելոյ արժանի առնէք յերկնագնաց յաղաւթս ձեր և մեղաց թողութիւն խնդրէք ինձ և ծնողաց իմոց և ամենայն երախտաւորացն մերոց, աղաչեմ։*

*Արդ, գրեցաւ սա յերկիրս* Մոկաց, *ի վանքս* Ծպատայ, *ընդ հովանեաւ սուրբ Փրկչիս, ի հայրութեան տէր* Յոհաննիսի *հեզահոգւոյ*

և աղքատայսիրի, աստուած սմա բազում վարձս պարգևեսցէ, զի զմեզ խնամէ իբրև զիւր որդի, և միեղէն սուրբ եղբարցս աննախանձ կրօնաւորացս տացէ տէր աստուած զերկնից արքայութիւնն, ամէն։ Եւ ի հայրապետութեան Հայոց տեառն Դաւթի, ի դառն և ի վշտալից ժամանակի, որ հորկապահսնջութեամբ ազգս տապալի ի չար ազգէն նետողականի, ի Թուականութեանս Հայոց ՊԿԲ. (1413)...։

Արդ, ես՝ ամենամեղ գրիչս Կարապետ, աղաչեմ զամենեսեան հողացեալս ի գերեզմանի, զի ահաւասիկ կամ յաջ և յահեակ սպարապեալ հողով, և ոչ զօք ունիմ թէ աւգնեսցէ ինձ յայսմ տեղւոջս, և յոյժ սրտաբեկեալ կամ, զի զամենայն աւուրքս իմ կացի կեղծաւորութեամբ և մարդահաճութեամբ, որ համբաւեն զչարս բարի, զխաւարս լոյս կարծելով, զի ոչ գիտեն զմեղս իմ և ոչ ճանաչեն զխաբէութիւնս իմ, որ երևիմ սրբութեամբ և լի եմ աղտեղութեամբ, գիտեմ զարդարութիւն և գործեմ զանաւրէնութիւն, այլ արտասուալից աչաւք և հառաչմամբ սրտիւ դէմս ի ձեզ պաւինիմ, զի վասն իմ աղաչէք զողորմածն աստուած, զի ողորմեսցի ինձ՝ բազմամեղիս։ Եւ արդ, կարող է աստուած ի ձեռն այլոց աղաչանաց այլում ողորմութիւն շնորհել, և ինքն ողորմածն աստուած ողորմեսցի ամենեցուն, ես առաւել այնոցիկ, որ զմեզ յիշեն և մեր մեղացն թողութիւն խնդրեն, ամէն։

Ո՜վ դասք սրբազանից, որք հաճոյ եղէք սուրբ երրորդութեանն ... աղաչեմ զձեզ բարեխաւսեցէք առ տէր Յիսուս և աստուած բանն, զի շնորհեսցէ թողութիւն աստուածասէր քահանայրին Թադէոսի և իւրոցն ամէնի, և ամենայն աշխարհի զանշարժ զխաղաղութիւն, եկեղեցեաց Հայաստանեաց՝ զանսասանելի զհաստատութիւն, հայրապետաց՝ ուղղափառութիւն, աշխարհակալաց՝ սիրտ քաղցրութեան ի վերայ ամենայն քրիստոսադաւան ժողովրդոց, Թագաւորաց հաւատացելոց՝ արիութիւն ընդդէմ Թշնամեաց խաչին Քրիստոսի, իշխանաց՝ անդորրութիւն, կրօնաւորաց՝ ժուժկալութիւն, քահանայից՝ պարկեշտութիւն, սարկաւագաց՝ սրբութիւն, ժողովրդոց քրիստոնէից՝ պահպանութիւն յերևելի և յաներևոյթ Թշնամւոյն, պահել զանդաստանս մեր ի ցասմանէ կարկտոյ, ի սառնամանեաց, յերաշտութենէ, անձրևաց՝ առատութիւն, ծառոց՝ պտղաբերութիւն, սերմանց՝ բազմապատիկ շահեկանութիւն, անասնոց՝ անսխալ ծննդականութիւն, ծերոց՝ զգաստութիւն, երիտասարդաց և կուսանաց՝ զաւրութիւն ընդդէմ չարին, արանց և կանանց՝ աւրինապահութիւն, արդարոցն՝ համբերութիւն կեալ ի նմին արդարութեան, մեղաւորացն՝ դարձ և զղջումն ապաշխարութեան, ննջեցելոցն՝ մեղաց Թողութիւն, հանգիստ և ողորմութիւն, և Քրիստոսի աստուծոյ մորոյ փառք և պատիւ...։

Յիշեա Քրիստոս աստուած ի քո յահաւոր գալստեանն զՊետրոս կրօնաւորն, որ զգրելոյ տեղիքս երիտ...։

Աւա՜ղ, զգերիս յայսմ աշխարհի,
Ջևով նման աբեղայի,
Բարի անուն ժառանգեցի,

Զհոգիս բաղում չարեաւք լցի
Եւ անպաշար ի բաց թողի.
Կարգ տուին ինձ հրեշտակի՝
Զայն կորուսեալ եմ աշխարհի,
Սրբութիւնն ես ատեցի,
Զաղտեղութիւնն սիրեցի։
Վա՜յ աւուրն իմ ծննդեան,
Մայրն իմ յղացաւ զիս մեղաց որդի,
Այս կեանքս սուտ է և սնոտի,
Վա՜յ, որ ի սա ապաւինի.

Ո՜վ, Ողիմ գեղի սուրբ ժողովուրդք, հայեցէք ի ձեր նախնի ննջեցեալքն, որոց ոչ եւս երեւին, ոչ երեւանան.

Ո՞ւր են ձեր սիրասնունդ տղայքն,
Որ զէթ զվարդ գունով ծաղկեցան,
Եւ փոյթ ընդ փոյթ շուտով թառամեցան,
Գնացին՝ մտան հողիկն ի զնտան,
Որ ոչ լոյսնացոյց և ոչ պատուհան.
Կան և մնան մինչ ի դատաստանն։
Յորժամ գոչէ փող Գաբրիէլեանն
Յահեղ ձայնէն աշխարհ որոտան,
Սռքա յառնեն լուսով աննման,
Երթան ընդ յառաջ փրկչին տիրական,
Հանգչին ի գոգն մեծն աբրահամեան....։

Դարձեալ, կրկին մաղթանաւք աղաչեմ յիշել զպատուական և զաստուածասէր տանուտէրն զՄկր[տ]իչն, և զորդիքն իւր զԴաւիթ, զԹաժդին, զՀերպեան: Յուսամք յաստուած, որ պահեսցէ զսոսա մինչև ի խորին ծերութիւնն, զի զանդն տուին մեզ, որ այգի տնկեցինք։ Ինքն՝ արարիչն աստուած զանմահական պտուղն, զյաւիտենից երանութիւնն և զհանգիստն պատրաստէ Մկրտչին և ամենայն արեան մերձաւորացն իւրոց, ամէն։ Ու զպուճ արտն գնեցինք մեզ մուլք, ի մեր հալալ ըռուճկոն, ով որ յետ մեզ դաւի կամ աս ու կամ լիս առնէ՝ նա որոշեալ և կապեալ յաստուծոյ և յամենայն սրբոց, ամէն։

Ո՜վ ժողովուրդք, գիտութիւն լիցի ձեզ, որ Թադէոս երէցս գանգատէ ի ձեզանէ. ամէն մարդ ով որ գիրք է գրել գեղնցիքն էլ կուցանկան, թէ զմեզ էլ մասն լինի յայս գիրքս. սա իրք մի չխնդրեց ի ձէնջ, իմ դատաստանն, որ խիստ՝լաւ ջանաց։ Թէ բարի չէր ոք չար ընդէր իւրն երկոք մի ի պահ երիտ, նա չար կանանիքն ի վեր կալան, մեծ անաւրէնութիւն և անաստուածութիւն է։ Աստուած է այս բանիս վկայ, որ ամենայն մեղաց թողութիւն գտաք ու զրկանացն ոչ, մինչև ի տէրն դարձուցանեն անխախտ*, մի խաբիք, աստուած ոչ

* Տպված է «անբախա»։

արհամարհի, սատանայ խաբեց, առ զքո ամանադ, լաւ ըստայ* ամաչել քան յահեղ ատեանն հրապարակի։

Բ

931 Քրիստոս աստուած... ողորմեա ամենայն հաւատացելոց, եւս առաւել ստացողաց գրոցս Թադէոսի և Յոհաննէսի, և փեսայիցն իւրեանց Յոհաննիսին և Նազմէլիքին, և դեռաբուսիկ տղային, որ վաղվաղակի ծաղկեցաւ և շուտով թառամեցաւ, զՄովսէս և զՄինէն, որ աւգնական եղեն գրոցս, միոյն հազարապատիկ հատուցումն սանէ տէր աստուած սոցա և ծնուղացն, ամէն, ամէն։ Սոյնպէս և Յովաննէս եղև օգնական, տէր աստուած տացէ սմա զերկնից արքայութիւնն։**

Գրիչ՝ Յովաննէս

Գ

1162 ... Ողորմեա ստացողի գրոցս Թադէոս քահանային, և ծնողաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորացն, և զդեռաբոյս քահանայն Յովհաննէս...: Եւ ինձ՝ ստկաւ աշխատողիս՝ Յովաննէս գրչի, և ծնողաց իմոց, և կարդացողաց, և լսողաց...։

Ո՜վ եղբարք, անմեղադիր լերուք խոշորութեան գրիս, զի այս տետրս յետո գրեցաւ. վասն այն պատճառին մանտր է գիրս, զի այլ թուխթ չկայր։

Դ

1272 Ո՜վ եղբայր, դու զիս յիշեա,
Սառն լկաւ ես չիմացա,
Կաթիլս անկաւ ես վախեցայ,
Եւ ես կարի վայր մնացայ։

Ե

1318 Ո՜վ եղբարք, անմեղադիր լերուք, երկու տարպայ գրեցաւ, մոռացայ։

Զ

1338 Ո՜հ, ի պիղծ ճանճերոյս։

Է

1347 Ո՜հ, լարն կտրաւ, շատ վնաս պիտի 'առնէր։***

Ը

1350 Գրեցաւ Ճառընտիրս ի Մոքաց երկիրն, ի հռչակաւոր սուրբ Փրկչին, ի հայրապետութեան տեառն Յոհաննէսի, և յետոյ այլ հայրա-

* Իմա՝ ըստ այսօր։
** Կարապետ գրիչը նման և ավելի համառոտ հիշատակագրություններ շատ ունի։
*** Հավանաբար խոսքը այն լարի մասին է, որով գրչի շարժական տախտակ-սեղանը կապում էին առաստաղից։

*պետութեան Հայոց* Դաւթի, *աւարտեցաւ Ճառընտիրս այս ի սուրբ Փրկիչն, որ և յիշէք զստացողքս՝ զ*Թադէոս *երէցն և զ*Կարապետն *միով հայր մեղայիւ ողորմի ասացէք, ամէն, որ է թվ. ՊԿԲ. (1413)։**

## 155

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

*Փիրղ. նոտ. 42—44, Բաղէշ, Ամրդոլու վանք*

*Գրիչ՝* Յովհաննէս
*վայր՝* Հիզան

ա

*... Եւ արդ, ես... վերջինս ի մանկունս եկեղեցւոյ...* Յովհաննէս *պիտակ անուամբ սպասաւոր բանի, գծեցի ձեռամբ իմով զգիրս սուրբս յիշատակ ինձ և ծնողաց իմոց՝ հօրն իմոյ* Ալեքսան *քահանայի, և մօրն իմոյ, և հաւուն իմոյ* Յովանէս *քահանայի, և եղբարց իմոց ըստ մարմնոյ՝* Յակոբի *և* Պետրոսի՝ *կուսակրօն քահանայից....։*

*Բայց գրեցաւ ի ՊԿԲ. (1413) ամի,** յաստուածապահ և մեծափառ և գերահռչակ ուխտն, որ սուրբ Խաչ յորջորջի, ի գաւառիս* Հիզան *քաղաքի։ Եւ կամք մեք ընդ հովանեաւ ամենազօր աջոյ ձեռին աստուծոյ և պահպանութեամբ աստուածընկալ սուրբ խաչիս Քրիստոսի։ Նաև զյիշատակի արժանաւորսն՝ զհոգևոր հարքն մեր զ*Յովաննէս *և զ*Կիրակոս *բաբունիք, որ էին մեզ տածողք հոգեպէս և մարմնապէս և վարժիչք աստուածային պատուիրանացն՝ բարեաց յիշման ի տէր արժանի առնել։ Այլ և զմերս միաբան եղբարքս, որք կան հաւաքեալ ընդ հովանեաւ սուրբ Խաչիս, կուսակրօն և սրբասնեալ եղբարքս մեր, նախ և առաջին՝ գրոց որդիքս* Աւետիս, Բարսեղ, *և ապա այլքն ամենեքեան՝* Ներսէս, Պետրոս, Յակոբ, Գրիգոր, Յովհաննէս, Ստեփաննոս, Յոհաննէս, Մարտիրոս, Առաքել, Դաւիթ, Յակոբ, *և հանգուցեալքն՝* Կիրակոս *կրօնաւորն, և* Յովաննէս *միակեցն, և աշակերտն մեր* Գրիգոր, *որ յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս աստուած։ Նաև այլ միաբանք, որ կան ի դուռն սուրբ եկեղեցւոյս մեծաւ յուսով և սպասեն անճառ խոստմանցն աստուծոյ...։ Նաև* Կիրակոս՝ Շիրինի *որդին ի* Տիոյ***, *և իւր կողակիցն՝* Նազ-Խաթունն, *որ օգնական եղեն ի սուրբ գիրս։*

*Գծագրեցաւ սուրբ մատեանս ի դառն և ի բազմավրդով ժամանակիս, որ մահտարաժամ է անկեալ վասն մեղաց մերոց յաստուածասաստ բարկութենէն, և կոճոպէ և յափշտակէ զմատաղ մանկունս ի գրկաց ծնողացն և մորմոքեցուցանէ զծնողս և զեղբարս, ի թուականին ՊԿԲ. (1413)։*

---

* *Հրատարակիչը հայտնում է, որ այս հիշատակարանը հավանաբար ընդօրինակված պետք է լինի այժմ կորած նախնական բնագրից։*

** *Ձեռագրի ընդօրինակությունը, համաձայն Աւետեաց քարոզի սկզբում եղած հիշատակագրության, սկսվել է ՊԿ. (1411) թվականին։*

*** *Գյուղ է Հիզանի շրջանում։ Ղ. Փիրղալեմյանի ժամանակ ունեցել է 39 տուն հայ բնակիչ։*

Բ

Զերջանիկ և զփառաւորեալ ըաբունիք մեր՝ զՅովհաննէս և զԿիրակոս՝ զվերափոխեցեալսն ի Քրիստոս ուղիղ հաւատով, և զնոցին ծնողսն, և զիս՝ զանարժան գծողս յիշման արժանի արնէք ի բարին...։

Գ

Զառաջնորդ սուրբ ուխտիս (Հիզանոյ սուրբ Խաչի վանից)՝ զՄկրտիչ կրօնաւոր, և զծնողսն իւր, և զհոգևոր եղբարքս մեր և զորդիքս՝ զԹարսեղ, զԱւետիս, զՆերսէս, զԱռոմ, զՊետրոս, զՅոհաննէս, զՍտեփաննոս, զԳրիգոր, զՅակոբ, զՄարտիրոս, զՅոհաննէս, զԱռաքել կրօնաւորք, և զայլ միեղէն միաբան եղբարքս և զծնողք նոցին, առհասարակ, և զյետնետլս ի շարս բանասիրաց զՅոհաննէս ծրողս, և զեղբարսն և զծնողսն մեր, պատահողք սմին, ինչ կերպիւ և լինի, յիշելոյ արժանի արնեք...։

156

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՒՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 1317

Գրիչ՝ Սամուէլ
վայր՝ Ի գաւառիս Եկեղեաց,
ի վանս Սաղի ս. Ստեփաննոս

535 ա ... Արդ, այսմ համատարած ծովուս ալեացն կուտակ առեալ և զհոյլս բազմածին կենդանեացն զարհուրեցուցանեն, մանաւանդ զայնոսիկ, որ դոզն լաստիւ համարձակապէս արշաւեն անհոգութեամբ ընդ մկանունս նորա, առ ոչինչ համարելով զփրփրադէզ սաստիկ կոհակս գոչմանն, զոր և գազանացն, որ ի նմա ի սաստիկ մրրկածին աւդասաստ խառնակութեանն զարհուրեալք ելանեն ի բնակութեանցն երևելով հողածին կենդանեացն։ Իսկ նաւուղիղն՝ զիմաստութիւն խելացն յինքն բերելով, իբրև արիական պատերազմող զնաւն անվրդով սայթաքմամբ, առանց իրիք վնասու, ի նաւահանգիստն հասուցանելով, և ինքն պարծանաւք անցանիցի ի ցոյցս տեսողացն՝ բազմելով հրճուալից բերկրանաւք ի վերա բարձի։ Ապա զմթերս գանձուցն, զոր ի նաւարկութենէն շահել իցէ՝ բերեալ մատուցանիցէ սիրելեացն, պատմելով զանցս աղետիցն, զոր կրեալ էր, զնեղութիւնսն բազում տառապանաւք ի վերա ծովուն։ Իսկ յորժամ ժողովին սիրելիքն և պարապեն ուրախութեան գինոյ և զբաւսանաց ցանկալի հրճու[ու]թեան, մոռանայ զանցեալ իրս նեղութեան և դարձեալ ի նոյն յաւժարանայ նաւարկութիւն։

535 բ Արդ, նմանապէս երջանիկ և սուրբ վարդապետ ‖ տս այս Սարգիս անուն, ցանկորդեալ պատուական գանձիս և անգին մարգարտիս, զոր բազումք ի վարդապետաց եկեղեցոյ անփոյթ արարեալ զմեկնութիւն

Թղթոցս սուրբ առաքելոցն Յակովբա և Պետրոսի, Յոհաննու և Յուդայի։ Իսկ յառաջասացեալ մեծ վարդապետս այս Սարգիս, յաւժարական կամաւք անձամբ զանձն տուեալ տեառն ի ծառայութիւն, առ ոչինչ համարելով զմարմնաւոր վտանգս յաղագս սիրոյ հոգոյն՝ ձեռն զմաճով արկեալ ի խնդրոյ երջանիկ և սուրբ կաթուղիկոսին Հայոց տեառն Գրիգորիսի և հարազատ եղբաւր նորին տեառն Ներսէսի։ Արդ, մտեալ ի խորս աստուածային գանձուցն վերաբերելով զանգին մարգարիտս՝ տալով զսա մանկանց առագաստի ընդ հանուրց հաւատացելոց՝ ի խրատ և ի զգօութն ապաշխարութեան և ի լուսաւորութիւն համաւրէն ազգիս Հայոց տանս Թորգոմայ.

Արդ, գրեցաւ աստուածախաւս քնարս այս ձեռամբ Սամուէլի անիմաստ, փցուն և անարժան գրչի, ի գաւառիս Եկեղեաց, ի սուրբ ուխտս որ կոչի Սաղի սուրբ Ստեփաննոս, ընդ հովանեաւ սբրոյ Նախավկայիս և այլ բազմահաւաք սուրբ նշանացս և սուրբ նշխարացս, հրամանաւ Մարգարէի աստուածասիրի՝ առաջնորդի անապատիս, ծախիւք և արդեամբք Ոնոփրիոսի աւաք սարկաւագի, և Պետրոսի կուսակրաւն աբեղ[այ]ի, և Յակոբ կրաւնաւորի։

Արդ, ի սպառեալ դարուց և ի նուազեալ ժամանակաց մերոյս աղքատութեան՝ յայտնեալ ի հոգոյն սրբոյ, և զհուր աստուածային սիրոյն բորբոքեալ ի սրտի իւրեանց, ոչ անտես արարին զկտակ մատենիս, այլ ըստ իւրեանց յաւժարական սիրոյն, զոր ունէին առ խըմբարան սուրբ եկեղեցիս, նա և վասն անչափ խոնարհութեան հոգոյն, զոր ունէին՝ ոչ ամաւթ համարեցան գթալ հայրաբար ի վերա իմոյ անարժանութեան և ախմարութեան գրչիս, այլ հրամայեցին հայրաբար և տիրապէս, և ես կատարեցի որդիաբար և ծառայապէս։ Եւ տկար անձամբ և մեղուցեալ ոգով ջանացի, որչափ և կարացի ըստ իմում
536 ա կարի և ըստ բերման ժաման‖ակիս, գրելով ի սմա զմեկնութիւն Թղթոցս սուրբ առաքելոցն Յակովբայ և Պետրոսի և Յոհաննու և Յուդայի։

Արդ, գրեցաւ սա ի Թուականիս Հայոց ՊԿԲ. (1413), ի հայրապետութեան տեառն տէր Գրիգորի արքեպիսկոպոսի, զոր տէր աստուած խաղաղութեամբ պահեսցէ։ Արդ, աղաչեմ զամենեսեան արտասուալից պաղատանաւք, զի զամենեսեան յիշատակի արժանի առնիջիք զաստուածազարդ սուրբ կտակիս զստացող տառիս զՈնոփրիոս աւաք սարկաւագ՝ զհայր վանացս*, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոյ և ետ ի դուռն սուրբ Կարապետիս յիշատակ անջինջ։

Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ տեսանելով կամ գաղափար առնել[ով], յիշեցէք յաղաւթս ձեր զհայր Ոնոփր[ի]ոսն, և զեղբայրն իւր զՏիրատուր աբեղան, և զհայրն իւր զԴաւիթ՝ զհանգուցեալսն ի Քրիստոս, և զմայրն իւր զՍիրմայն, և զեղբայրսն իւր զԱստուածատուրն և զՍիմէոնն, և զաւակսն իւրեանց զտէր Աւագ և զՅակոբ, զոր աստուած հասուցանէ ի խորին ծերութիւն։

* Ձեռագրում՝ «զվայր վանացս», ուղղում ենք համաձայն 482 ա էջի հիշատակագրության, ուր գրված է «Ոնոփրիոսի՝ վանացս հաւրն» են։

*Յիշեցէք և զՊետրոս աբեղան, որ աւգնական եղև ի գրոցս գրե-
լէն Գծ. (300) դրամ, և զքուրն իւր զէլխաթունն, և զզաւակն սորա
զՍտեփաննոս սարկաւագն՝ զփոխեցեալն ի Քրիստոս, որ եթող սուգ
մեծ, և զամենայն արեան մերձաւորս սոցա՝ զկենդանիս և զհանգուցե-
ալսն։ Յիշեցէք և զՅակոբ աբեղան զփակակալն, և զծնաւղսն, և զեղ-
բարս նորա, և զՏաւնական երէցն, և զԹարսեղն՝ զծերունին, և զերկու-
դեռաբոյս կրաւնաւորքն*, և զամենայն աշխատաւոր և զգործաւոր և
զերախտաւոր սուրբ Կարապետիս...։*

*Ընդ նմին յիշեսջիք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր զա-
ռաջնորդ սուրբ անապատիս զսուրբ Ստեփաննոսու նախավկայիս՝ զհայր
Մարգարէ, որ բազում երախտիք ունի առ մեզ, և յորդորեաց ի բանս
յայսմիկ և հանգոյց, զոր տէր աստուած պահեսցէ ի կամս իւր, և
զծնաւղսն և զեղբարսն նորա, և զամենայն արեան մերձաւորս նորա՝
զկենդանիս և զհանգուցեալսն ի Քրիստոս։ Եւ զամենայն եղբայրու-*
536 բ *թիւնս առհասարակ՝ ‖ զՅովաննէս կրաւնաւորն՝ զհոգևոր հայրն մեր,
որ բազում աշխատութեամբ սնոյց և ուսոյց զիս, և նա եղև պատճառ
այսմիկ և զաւրինակն շնորհեաց, և զծնաւղս և զեղբայրսն նորա՝
զհանգուցեալսն ի Քրիստոս, և զքուէրորդիսն զՇաճրիարն, որ զգիրքս
գլխագրեաց, և զԿարապետն, և զՄատթէոս զկուսակրաւն աբեղան՝ զգա-
սակալս, որ զգիրքս ղորդեաց և աւգնական եղև մեզ բազում անգամ,
և զքուերորդին իւր զՄկրտիչ սարկաւագն, և զծնաւղսն նորա, և
զԱռաքել աբեղան՝ զհոգևոր եղբարս մեր, որ աւգնական եղև ի խա-
զելն, և զծնաւղսն նորա, և զՊաւղոս աբեղան՝ զճգնաւոր և զփակակալ,
որ աւգնական եղև ի պէտս մարմնականս, և զծնաւղս և զեղբարս նորա,
և զսպասաւորքս և զգործաւորքս և զաշխատաւորք սուրբ անապատիս։
Ընդ նմին և զմեղապարտ և զանարժան գրիչս զՍամուէլ աբեղաս,
զթոյլս և զտարտամս հոգով և զպարտապան բիւր քանքարիս, և զեղ-
բայրս իմ զՊետրոս՝ զբարեսէր և զհեզահոգի կուսակրաւն աբեղաս, որ
աւգնական եղև ի կոկելն և ի պէտս հանդերձից, զոր տէր աստուած
պահեսցէ յիւր կամս և մշակ առանց ամաւթոյ, և զեղբարսն իմ զԿա-
րապետ և զՊաւղոս, և զաւակսն իւրեանց, և զքոյրն մեր զՄեծ-խա-
թունն, զոր տէր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ, և զծնաւղսն
մեր զՍարգիս և զՃաշ՝ զփոխեցեալսն ի Քրիստոս....*

*Եւ ով ոք որ հանդիպիք այսմ տառիս կարդալով, կամ տեսանե-
լով, կամ գաղափարելով, նախախնամելով պահեսցէ զգիրքս և լաթով
բռնեսցէ և մի իշխեսցէ ի գրոցէս պարապ թուղթ կտրել, կամ ի յի-
շատակարանէս քերել և այլ անուն գրել։ Եւ ոչ ոք յազգականաց Ոնոփ-
բիոսին կամ ի Պետրոսին մի իշխեսցէ ծախել կամ գրաւկնել զգիրքս։
Ողորմեսցի Քրիստոս և համաւրէն ամենայն ազգի քրիստոնէից և ընդ-
հանուրց հաւատացելոց, տացէ խաղաղութիւն ամենայն աշխարհի, և*
537 ա *հաստատութիւն եկե ‖ ղեցոյ իւրում սրբոյ։ Եւ եթէ ոք յանդգնեսցի
ծախելով, կամ գրաւկնելով, կամ թուղթ կտրելով, կամ անպարկեշտ*

* Կրոնավորների անունները լրացնելու համար տեղ է բաց թողնված։

պահելով՝ Նա զմասն Յուդայի առցէ և զբաժին Նորա ընդ անհաւատսն դիցէ, և մեզ յիշեցելոցս և ձեզ յիշողաց, առհասարակ, զայն ձայնն լսել տայ, որ ասէ՝ Եկայք աւրհնեալք հաւր իմոյ, ժառանգեցէք զարքայութիւնն...:*

## 157

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

**Երևան 8435**

Գրիչ՝ Գրիգոր Խլաթեցի

364 բ Թարգմանեցաւ գիրքս խրատական սուրբ վարուց** հրամանաւ տղայ տէր Գրիգորիսին Հայոց կաթողիկոսի, եղբօրորդոյ տեառն Ներսէսի, յասորի լեզուէ ի հայս, յամի ՈԼԶ. (1187) թուականին:

Եւ ես՝ անիմաստ և մեղսամած գրծողս Գրիգոր պիտականուն խնդրողս բանի, ցանկացայ և գրեցի զսա յամի ՊԿԲ. (1413) թուականիս, ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ:

## 158

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

**Երևան 1573**

Գրիչ՝ Գրիգոր Խլաթեցի

340 բ Թիւն ՊԿԲ. (1413):

Գովեստ տացուք հօր անեղին
    և որածին բանի նորին,
Ռամից համայն արարողին,
    հոգոյն սրբոյ զարդարողին,
Ի յախտաժետ անձնէ յետին,
    որ սպասաւոր կոչի բանին,
Գրիգորէ մեղսասիրին,
    որ թաւալեալս եմ ի տղմին,
Որ ետ ինձ ոյժ տրկարս անձին
    ու զԴայն ու զՆուն հասոյց ի մին,
Ռամեալ զհամայնն, որ ի միջին,
    Դայն առաջին և Նուն յետին...,***

* Սամուէլ գրիչը մանր և ոչինչ նորութիւն պարունակող հիշատակագրութիւններ է թողել ձեռագրի 4 ա, 139 բ, 214 բ, 230 ա, 419 ա, 482 ա, 494 բ էջերում:

** Հիշատակարանը գրված է Փիլիքսիանոսի «Վասն սկիզբն առնելոյ ելանելոյ յաշխարհէս յայսմանէ» խրատական գրվածքի վերջում, ուստի և վերաբերում է նրան:

*** Ամբողջի սկզբնատառերով հոդվում է հետևյալ նախադասությունը՝ «Գրիգոր է այս բանքս թողուլ զմեզս»: Շարունակությունը անարժեք է, տարտամ տաղաչափությամբ Խլաթեցին գրվառում է Նարեկացու Մատյանի արժանիքները:

159

## ԱՒԵՏԱՐԱՆ

«Միարանք և այցելուք Երուսաղէմի», էջ 214—216»

Հետ ստացող՝ ԿոստանԴին Վահկացի
վայր՝ Երուսաղէմ

ա

... Յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր զտէր ԿոստանԴինս, և զծնաւղսն իմ զՎասիլ, և զմայրն իմ զՏիրուհի, և զաստուծոյ աւրինաւք ամուսին իմ զՄարիուն, և զաստուածատուր որդեակն իմ զԱկոբ, [որ] Ժ. (10) ամեայ փոխեցաւ ի Քրիստոս և ինձ մեծ սուգ և տրտմութիւն եղև, որ այլ չունիմ ինձ մխիթար յաշխարհս...,

Արծաթապատ զարդարեցաւ ի մեծ թվին Հայոց ՊԿԲ. (1413), և ի հայրապետութեան տեառն տէր Յակոբայ կաթողիկոսի՝ ընդհանուր ամենայն հայկազեան սեռի, և ի նորա աթոռակալութեան տէր ՎահրամինՆ...:*

Բ

... Տէր ԿոստանԴինս՝ ես անպիտան,
Ընծայեցի զաւետարանս
Ի սուրբ քաղաքս տնաւրինական՝
Յերուսաղէմս պանծական,
Որ Քրիստոսի է գերեզման,
Ինձ և իմոց պատճառ յիշման,
Որ զմեզ յիշէք միշտ անխափան...։
Տէր ԿոստանԴինս էր փակակալ,
Եպիսկոպոս Հայոց պատուեալ,
Զայս աւետեաց մատեան ստացեալ
Եւ աստուծոյ ընծայ տուեալ։
Սա յիշատակ բարեաց լիցի
Տէր ԿոստանԴի՝ իւր ստացողի,
Եւ իւր ծնողաց մարմնաւորի,
Եւ իւր որդւոյն պատանեկի՝
Յակոբ՝ անունն ցանկալի...։
Մնալ յիշատակ ի տաճարի,
Որ Յարութիւն անուն կոչի,
Ի Քրիստոսին գերեզմանի,

* Հրատարակիչը հայտնում է, որ ավետարանն ընդօրինակված է 1260-ին, Հռոմկլայում, Կոստանդին Բարձրբերդցի կաթողիկոսի համար, Թորոս Ռոսլինի ծաղկողությամբ։ Այնուհետև, նույն այս հիշատակարանի չհրատարակված մասի տվյալների հիման վրա, նա գրում է. «Այս թանկագին ձեռագիրը ժամանակ հետո գրավ կը գրվի ասորի խոճա Ասիլատին անուն մեկուն մոտ։ Վահկացին՝ դեռ եպիսկոպոս, փափաքող կըլլա ձեռագիր մը ունենալու. կիմանա որ հիշյալ ձեռագիրը գրավ կը մնա նոյն ասորիին մոտ, ամեն ջանք կը թափե և ԽԶ. (46) ֆլորիի կը գնե ու կ՚ստանա և ոսկեզօծել ու արծաթել կուտա զայն»։

*Ի Գողգոթա Խաչին տեղի,*
*Յերուսաղէմ մեծ քաղաքի,*
*Ի սուրբ Յակոբ եկեղեցի...։*
*Ոչ ոք հանէ սա ի յաստի,*
*Ոչ տայ ի ձեռս անօրինի։*
*Թէ յայլազգեաց ահ մի լինի՝*
*Դընեն պահուստ ի յամրոցի,*
*Կամ ի* Կիպրոս *կղզին տանի,*
*Մինչ բարկութիւնն այն անցանի,*
*Դարձեալ բերեն ի սոյն տեղի*
*Եւ վարձս առցեն ըստ վաստակի...։**

## 160

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Երևան 7463*

*Ստացող՝* Յովաննէս

ա

300 ա *... Ի թվականի Հայոց ազգի*
*Արեթական սերեալ տոհմի*
*ՊԿԲ. (1413)-երորդի,*
*Յամսեան Բ.-ն մայիսի,*
*Եղև գրաւ գրոցս այս պանծալի,*
*Որ Այսմաւուրք սա անուանի...։*
*Ի յիշատակ անջնջելի*
*Ինձ՝ անարժան քահանայի*
Յովաննէս *անուն բազմամեղի,*
*Եւ ի վայելումն դեռաբուսի՝*
*Որդւոյ իմոյ* Նիկողայոսի,
*Դաւանութեամբ սուրբ Գրիգորի*
*Հայաստանեայց լուսաւորչի,*
*Եւ իմ նախ[ն]եացն ամենայնի,*
*Երախտաւորաց մեր բոլորի,*
*Եւ արեանառու մերձաւորի։*
*Ջնջող զդիր մեր յիշատակի*
*Ոչ մնասցէ առանց պատժի,*
*Եւ յիշողացդ զմեզ ի բարի՝*
*Ի տեառնէ և իւր պարգևեսցի,*
*Ողորմութիւն մեզ խնդրողի՝*
*Ի Քրիստոսէ և Նմին տացի, ամէն։*
*Դարձեալ և այս յայտնի լիցի*
*Քահանայիցդ սուրբ կարգի,*

---

* *Այս երկու հիշատակարաններն էլ, ի դիմաց Կոստանդին Վահկացու, գրել է ոմն գրիչ՝ Աստուածատուր երէց։*

Զի ես Յովաննէսս նուաստ հոգի
Ստացայ զգանձս գովելի,
Եգի ի տաճար սուրբ Աստուածածնի՝
Ինձ յիշատակ անջնջելի
Եւ նախնեացն համայնի.
350 բ Բայց իշխանութիւն ‖ ոչ ոք չունի
Տալ գրաւական վասն արծաթի,
Կամ վաճառել ընդ քանքարի,
Զի է ազատ յամենայնի։
Բայց ընթերցցի աստ ի խրատի
Մինչ ի գալուստն Քրիստոսի։
Եւ թէ ոք յանդգնեսցի
Գրաւելով կամ ծախելով՝
Ի Քրիստոսէ ինք պատժեսցի։

Դարձեալ, աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ քահանայք և այլ[ք], որք կարդայք, կամ աւրինակէք, և որ հանդիպիք՝ լի և առատ սրտիւ մեղաց թողութիւն խնդրեցէք յաստուծոյ ինձ՝ անարժան քահանայիս Յովաննէսիս, որ լոկ զանունն ունիմ և ոչ զգործք, և եղբաւրն իմո Ղազար քահանային, և կենակցին իմոյ Զարմանդուխտին, և զաւակին իմոյ Խաչատրին, և Գրիգորին, և Հռիփսիմէ, և Յուստիանէ, և Մաքէոսին, և միւս Մաքէոսին, և Բագոսին, և Իրինէ, և Նիկողոսին, և միւս Հռիփսիմէ, և զՍտեփանոսին: Յիշեսջիք և զծնողսն իմ՝ զհայրն իմ զՄկրտիչն, և զմայրն իմ զԱղութն, և զնոցին ծնողսն՝ զՍտեփանոսն և Յուստիանէն, և զՄուրատն և զՀիլալն, և զքւերքն իմ՝ զԹանկ-Խաթունն, և ըզՍառան, և զՍայինն, և զԳրիգորն և զէմինն, և զՎարդերեսն, և զՄարտիրոսն, և զՄեղիտէն, և զՍարգիսն, և զԳոհար-Մելիքն, և զՇահրոցն, և զՀռիփսիմէն, և հաւրեղբայր իմ զԿարապետ քահանայն, և զքեռին իմ՝ զՍարգիս քահանայ, և զՄարտիրոս քահանայ, և զԽաչատուր կրօնաւորն, և զԿարապետ քահանայ, և զաներն իմ զՍտեփաննոս քահանայ, և զորդին իւր զՄարկոս քահանայ, և զմայրն իւր զՄարիանէն, և զԸնքնատն, և զՎարդերեսն, և զՍանդուխտն, և Սարգիս քահանայ, և զՇարերն, և զԳրիգորն, և զՅոհանէսն, և զԳոհար-Խաթունն, և Հռիփսիմէն, և զՅուստիանէն, և զՄարիանէն, և զՍիմէոնն, և զՍտեփաննոսն, և զՄելքիսեդեկն, որ աշխատեցաւ յետ մեզ, և զկնքահայրն իմ զԿիրակոսն, և զկնքամայրն իմ, և զՊաւղոսն, և զԵաւլթուխն, և զԱվրամն, և զուսուցիչքն իմ, և զամենայն արեան մերձաւոր, և զայնոսիկ, որ երախտիք ունին ի վերայ մեր, և զՍիմէոն երէց՝ զգրող գրոցս...։

Յիշեսջիք և զԸնքնատն, որ զգրոցս կոճակն շինեաց, յիշեսջիք և զՍիմէոն քահանայն, որ աշխատեցաւ ի յետ գրոցս։*

* Վերջին պարբերությունը գրված է նույն թանաքով, բայց այլ ձեռքով։

## 161

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*«Արարատ», 1905, էջ 734—735, Դիւսուշխանէ*

Գրիչ՝ Յովհաննէս

Աստտնաւր աւարտեցաւ քրիստոսաշնորհ վկայապատում մարգարաաշար ատոս այս ի Թվականիս Հայոց ՊԿԲ. (1413) և մայիս ԻԶ. (26), ընդ հովանեաւ սուրբ Թէոթորոսի մեծավառ և բարձրապատիւ ուխտի, և սուրբ Աստուածածնի, և սուրբ Սարգսի, և սուրբ Յակորայ՝ կենաց բարեխաւսի, և սուրբ Գրիգոր Լուսաւորչի, և այլ սուրբ նշանացս և սուրբ նշխարաց, որ աստ կան հաւաքեալ։

Արդ, աղաչեմք զամենեսեան՝ յիշել յաղաւթս ձեր զստացող գրոցս զՄատթէոս երէցն, և զհայրն իւր զԹորոս երէցն, և զմայր իւր զՄեծխաթուն, և զերախտաւորն իւր զԿարապետն և զՄելիքն, և զամենայն արեան մերձաւորսն իւր՝ զկենդանիս և զննջեցեալս առ Քրիստոս, և զԱռաքել երէցն, և զծնաւղսն և զեղբարսն իւր, ընդ նմին և զգրող սորա զՅովհաննէս աբեղայն, և զծնաւղսն իւր, և զեղբարսն իւր՝ զկենդանին և զհանգուցեալս առ աստուած, և զհայր վանացն Զաքարէ աբեղայն, և զծնողսն իւր, և զայլ սպասաւոր սուրբ ուխտիս, միաբանքն՝ զՄարտիրոս հին հայրապետն, և զՅովսէփն, և զԿիրակոսն, և զՎարդանն, և զՊետրոս, և զԱստուածատուր աբեղայքն, և զՄկրտիչ երէցն. որ մեզ սիրով սէր արարին, և զգործաւոր վանիցս՝ զՄկրտիչ տնտես, և զերկու Յակոբն, և զՅովհաննէս, և զԳրիգորն, և զԼուսպարոն, և զԽաչատուր, և զՍիօն սարկաւագերն...։

## 162

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7305*

Վաճառման գիր

209 բ Յանուն աստուծոյ, ես Մարտիրոս Աբրահամու որդի, Թադէոս քահանային եղբաւր որդի։ Յորժամ վաղճանեցաւ հաւրեղբաւրն իմ Թադէոս քահանայն, ես Մարտիրոս զնորայ աւետարանս ծախեցի Յակոբ քահանային՝ Ո. (600) դ[ահե]կ[ա]ն. գնին առի մին կով ու մին եզն, ու մատաղ արարի Թադէոս քահանային։ Ով ոք որ յայսմ հետէ դաւի առնէ այս աւետարանիս՝ կամ յիմ ազգէ, կամ յաւտարաց՝ ՅԺԸ. (318) հայրապետացն անիծած եղիցի, և մասն զՅուդային և զխաչահանուացն և զԿայէնին առցէ։ Մուսուլման Մուտամ-Փաշին վկայութեամբ, Խատկարին վկայութեամբ, Սատաթիարին՝ Սափատինին որդոյն վկայութեամբ, Կարապետ քահանային, Մկրտիչ քահանային, Յոհանէս քահանային՝ սոցա վկայութեամբ։ Եւ ես Բարսեղ քահանայս, որ զգիրս դրեցի՝ վկայ եմ։ Այլև տանուտերացս վկայութեամբ՝ Տիրատրին վկայութեամբ, Խութլուպէկին վկաութեամբ, Գրիգորին վկայութեամբ, Ամ—

սաչանին վկայութեամբ, Պապիկին վկայութեամբ, աստուծոյ վկայու-
թեամբ։ Մեք ամենեքեան վկայ եմք առաջի աստուծոյ, որ այս աւե-
210 ա տարանս գնեց Յակոբ ‖ քահանայն ի Մարտիրոսէն, ի վայելումն ան-
ձին իւրոյ և յիշատակ ծնողաց իւրոց։
Եւ ես Յակոբս անարժան քահանայս յերեսս անկեալ աղաչեմ
զամենեսեան, որք հանդիպիք այս սուրբ աստուածային և անապա-
կան գանձարանիս կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի բոլոր
սրտէ զծնողսն իմ, զհայրն իմ զՊեսիկ, և զմայրն իմ զՆազ, և զեղ-
բարսն իմ զՎարդան, և զՍեալան, զՄելիքշայ, զԱրբուխշայ, և զքոյրն
իմ զՎախախ, և զբազմերախտ հայրն իմ ըստ հոգոյ և զվարպետն
զՄկրտիչ քահանայ, և զամենայն աստուածային աւրհնութեանց ար-
ժանաւոր մայր վարպետին իմ զՍամար, վասն զի բազում և անչափ
երախտիս ունին ի վերայ մեր, և զայլ ամենայն արեան մերձաւորսն
իմ, զոր կան այժմ, և որոց գնացեալ են առ աստուած՝ զքեռին իմ
զՄարտիրոս, և զմեծ մամն իմ զՍրամարգ։ Ցորժամ յաղաւթս կայցէք
յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զվերոյասացեալքս ի սմա։
Եւ զիս՝ զՅակոբ քահանայս աղաչեմ յիշատակել առաջի անմահ
գառինն, ո՞վ սուրբ ընթերցողք, վասն զի բազում տենչանաւք և բա-
զում փափա[քա]նաւք ստացայ զսուրբ աւետարանս յիշատակ ինձ և
ծնողաց իմոց, զոր վերոյ գրեցաք, քանզի լուայ զհրաման տեառն,
210 բ որ ասէ, թէ՝ Երանի որ ‖ ունի յիշատակ ի Սիոն և ընտանի յԵրուսա-
ղէմ...։ Վասն որոյ զայս ամենայն մխիթարութիւնս ի մտի ունելով,
ի հալալ ընչից իմոց ըստացայ զսուրբ քաւարանս յիշատակ ինձ և
ծնողաց իմոց, և ի վայելումն որդոյ իմոյ Թումային, որ դեռևս մա-
նուկ է | | | տէր աստուած վայելել տացէ, ի թվ. Պ[Կ]Բ.* (1413՞)։
Սոցա վկայութեամբ, զոր վերոյ գրեցաւ։

---

* Թվականի թվանշանները հետագայում սև թանաքով նորոգված են, առաջին և երրորդ թվանշանների մասին կասկածներ չեն կարող լինել, սակայն երկրորդ՝ «Կ» (00) թվանշանը կասկածելի է. այն գրված է ջնջված ինչ-որ այլ տառի վրա, որը կարող է «Կ» եղած չլինել։



163

ՊԿԳ 1414

## Ճ Ա Շ Ո Ց

Երևան 6255

Գրիչ՝ Սարգիս Թմոքեցի
վայր՝ Աւշական գեղաւան

ա

432 ա ...Աւարտեցաւ քրիստոսահիմն և առաքելախաւս մարգարէաշէն հոգիաբուխ [Ճաշոցս ի ձեռն] փցուն և անարհեստ գրչի, ի խնդրոյ սրբասէր քահանայի Ներսեսի քաղցրանվագ փիլիսոփա[յի],՝ որ ստացաւ զշտր մարգարիտս և զանառիկ մեծութիւն՝ զպայծառութիւն սրբոյ եկեղեցոյ։

Արդ, որք աւգտիք այսմ հոգիանորոգ լուսերանգ վարդափթիթ
432 բ անուշահոտ բուրաստանիս, կամ աւրինա || կելով, [կամ] կարդալով, յիշեսջիք ի Քրիստոս ըզտէր Մանուէլն արհեպիսկոպոս Բըջնոյ և Արարատեան, և զտէր Յովաննէս, որք բազում աշխատութեամբ աւգտակարք եղեն աստուածաշունչ տառիս, ընդ նոսին և զՆերսէս քահանա, որ բազում աշխատութեամբ հալալ ընչից իւրոց ստացաւ զսա յիշատակ իւր, և վարդապետին իւրոյ Սեթեկի, և ծնողաց իւրոց՝ հաւրն իւրոյ Սարգսին, և մաւրն Սիթա-խաթունին, և կենակցին Մինա-խաթունին, և զաւակացն իւր՝ Անթառամին, և Յոհանիսին, Ջինին, Աւագին, և տէր Գրչին, և փեսային իմոյ Մկրտչին, և Խաչատրին, և Սարգսին՝ իմոյ աշակերտին, Գալըստին, և Հռիփսիմեացն, և Ալթաղին, և Աթա-Մէլիքին, և ամենայն ազգականաց, որք կենդանի, որք ննջեցին...։

Աղաչեմ զամենեսեան որք հանդիպիք այսմ հոգիանորոգ բուրաստանիս, յիշեսջիք ի Քրիստոս զսրբասէր քահանայն զՆերսէս, որ ստացաւ զսա յիշատակ հոգոյ իւրոյ և ամենայն արեան մերձաւորացն։

Ընդ նոսին և զեղկելի փծուն գրիչ, որ բազում չարչարանաւք հաւաքեցի, մի թէ յիշման արժանի առնէք զեղկելի գրիչ զՍարգիս, և զծնաւղսն իմ, և զեղբայրն զԴաւիթ, զհայրն իմ զԿիրակոս։

Աւարտեցաւ գիրքս աստուածաշունչ ի Թուաբերութեանս Հայոց ՊԿԳ. (1414), ի գեղաւանս յԱւշական, ընդ հովանեաւ ամէնաւրհնեալ կամակատար Աստուածածնիս, և Մեսրոբայ վարդապետիս, և այլ համաւրէն սրբոցս, ի թագաւորութեանն Ոսուփին և Փիր-Հուսինին, որգոյ Սանաթին։ Գարձեալ աղաչեմք զամենեսեան, զի ասիցէք բոլորով սրտիւ ամբիծք աւետարան, և Քրիստոս որդի աստուծոյ։ Եւ որք յիշէք և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ, ամէն։

Բ

438 բ Յիշեցէք ի Քրիստոս զփծուն գրիչս Սարգիս Թմոքեցի, որ բազում աշխատութիւն կրեցի։

164

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երևան 817

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Հերմոնի վանք–Եղվարդ

441 ա ...Ի թուաբերութեան Հայկազեան տոմարի Պ.-երորդի վացուներորդի երորդի (1414) եղև գրաւ այսմ աստուածայշունչ և հոգոյն աստուածային բղխեալ Հարցմանցս։ Եւ զարդարեալն ամենայն առաքինութեամբ՝ գունագեղ, ընտրող, զանցեալ գեղով բազմայշան մեծ րաբունին և իմաստասէրն Հայկազեան ազգի Գրիգորիոս պետն ամենայն հանճարի, որ առեալ զիմաստս բազմայշան և ազգի ազգի աստուածայշունչ հին և նոր կտակարանաց և արտաքին իմաստիցն քերթողն, բազում աշխատութեամբ և երկամբք ժողովեալ զամենայն իմաստս ճարտայսանից ի մի վայր և տուեալ մանգանց եկեղեցոյ ի զմայլումն և յընթերցումն և ուսումն ամենայն առաքինութեան, և պատասխանիք ընդդէմ ամենայն ազգաց՝ չարեաց և բարեաց։

441 բ Արդ, և ես՝ եղկելիս սուտանուն կրօնաւոր Գրիգոր սիրող բանի ցանկացա այսմ տառի և ըստ կարի մերում տառայտպեցի բազում աշխատութեամբ և յոյժ փափագանօք, ի վայելումն անձին իմոյ և յիշատակ ծնողաց իմոց՝ հօրն իմոյ Հասանին, և մօրն իմոյ Մամայխաթունին, և եղբօրն իմոյ Մկրաչին, և այլ ամենայն արեան մերձաւորաց, որք հանգուցեալ, և որք այժմ կան, որք ուգտիք յիշեցէք ի մաքրափայլ յազօթս ձեր, զի ձեզ՝ անաշխատելի բան, և մեզ՝ յոյժ գովելի պարգև, զի աստուած ի ձեռն այլոց ողորմի։

Գարձեալ, կրկին աղաչեմ զընթերցողսդ և զլսողսդ և զմայլողսդ, զի միով տէր-ողորմիւ յիշէք, և աստուած զձեզ յիշէ, զի բազում վշտօք ի բազում վայրի պարայգայ ամօք եղև աւարտ։ Զի եղև սկիզբն ի գաւառին Եղեգեաց որ կոչի Վայուձոր, ի վանս Հերմոնի, առ ոտս մեծ րաբունոյն Յովաննէս հեռեաորի, և միջայմուխ եղեալ ի ճգնողական յարկին Նորավանս, և աւարտ գրչութեան սորա ի գաւառս Արարդեան, ի գեղաքաղաքս յԵղիվարդ, ի վանքս սուրբ Ցակոբ, առ ոտս երջանիկ պետին Սիմէոն րաբունի, և յիշատակս ի հայրենի քաղաքս Կարբի, և որք յիշէք յիշեալ լիցիք ի Քրիստոսէ աստուծոյ մերմէ, ամէն։

ԼՇԲԼՑՇ, ԳՏԼՊ*

Բ

109 բ Ո՛, զմեղօք մեռեալս հոգով,
Եւ աղքատ ի բարիս գործով,
Եւ զծոյլս հեղգանալով,
Եւ զնժդեհս ժամանակով,

* Տառերի առաջին խումբը փոխարինագիր ծածկագրով կարդացվում է «Գրիգոր», իսկ երկրորդը՝ եղբայրագիր (անկանոն) ծածկագրով՝ «գրիչ»։

Վասն զի նեղիմք յայս տագնապով
Վասն այլազգեաց սեուից յոլով։
Աղաչեմ զձեզ սիրով,
Որք դայս կարդայք ընթեռնլով,
Զաղքատս յիշեա դու յոյժ սիրով,
Աստուած-ողորմի մեզ ասելով,
Զի տէրն առ[ա]տապարգև է յոլով,
Զի կար մեր այս է տառայտպելով։

## 165

### ԳԻՐՔ ՊԱՐԱՊՄԱՆՑ ԿԻՒՐՂԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՑ

Երուսաղէմ, Մ. Տ. Մ.

Գրիչ՝ Սարգիս Ղրիմեցի
վայր՝ Հերմոնի վա՞նք

...Զոր այսու յուսով տարփացաւղ եղեալ սորին ուղղութեան վերջինս ի ծնունդս եկեղեցոյ և տրուպս ի մէջ գրոց աշակերտաց Սարգիս Ղրիմեցի և որդի Հաքիմի, զոր ի վաղ ժամանակաց տենչացեալ կարտւտ էաք՝ յեղակարծ ժամու գտեալ եղև ի վարժապետական աթոռս, ի վանս որ կոչի Հերմոնի ...: Գծագրեցի զսա առ ոտս մեծ վարժապետին իմոյ Յովաննիսի՝ աշակերտին Գրիգորի Հայոց փիլիսոփայի, որ և կրկին ընթերցմամբ լուսաւորեալ առաջնորդեցայ ի նմանէ։ Ցորում էր թիւ շրջագայութեան տոմարի մեծի Պ. և ԿԳ. (1414) ամի...։ Ցիշել աղաչեմ... զառաջնորդ իմ զվերոյգրեալն Յովաննէս առաջնորդաց պետի, ընդ նմին և զհոգևոր եղբայրն իմ զտէր Ղազար սպասաւոր բանի։*

## 166

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՑ

Երևան 1122

Գրիչ՝ Սարգիս Ղրիմցի

Նաև զիս՝ զեղկելի,
Բազում չարեաւք հոգիս ի լի,
Մինչ զի ներկեալ և ի մարմնի,
Ղրիմցի Սարգիսս, որ գրեցի
Ցոյժ փափագմամբ և ծարաւի
Այս քաղցրահամ բուրաստանի,
Մինչ զի գրոյն փոյթ ոչ արի,

* Հիշատակարանն օգտագործել է Ալիշանն իր «Սիսականում» (էջ 125), համարելով 1415 թվականի։

Ոչ քարտիսի լաւագունի,
Զի չէր հասու ժամանակիս։*

## 167

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՄԱՏԹԷՈՍԻ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՑ

Կ. Պոլիս, Մ. Տ. Մ.

Գրիչ՝ Յակոբ
վայր՝ Սուխարայ վանք

ԶՅակոբ սպասաւոր բանի, և զԱնդրէաս կուսակրաւն աբեղայ, և միագումար զամենայն ազգայինսն յիշեցէք...։ Գրեցաւ ի թվին ՊԿԳ. (1414), ի վանս Սուխարայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս որ Արծուաբեր կոչի։

## 168

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՑ

Երուսաղէմ 2180

Գրիչ՝ Մելքիսէթ
վայր՝ Գոմուց վանք, մերձ ի Բաղէշ

Գրեցաւ ի գերահռչակ ուխտս Գոմուց վանք կոչեցեալ, մերձ աստուածաշէն քաղաքս Բաղէշ անուանեալ, ի յառաջնորդութեան տեղոյս գորովագութ պարծանաց հաւրս մերոյ Թովմա վարդապետի... ձեռամբ... Մելքիսէթ պիտակ անուն բանի խնդրողի... ի ՊԿԳ. (1414) թվին...։** [Ծնողքն գրչի՝ Տիրացու քահանայ և Մեծաիկին, եղբարքն Գրիգորիս և Մխիթար, քոյրքն Խաս և Աղութ...]։***

## 169

## ԱՒԵՏԱՐԱՆ

«Արցախ», էջ 145—146

Գրիչ՝ Յովսէփ քահանայ
վայր՝ Կտուց անապատ

Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի թվին Հայոց ՊԿԳ. (1414), ի դրան սուրբ Խաչին, և սուրբ Կարապետին, և սուրբ Գրիգոր լուսաւորչին... որ կոչի Կտուց...։ Ի հայրապետութեան տեառն Հայոց կաթողիկոսի տէր Դաւթի՝ սուրբ Խաչի Ախ[թ]ամարա առաջնորդի, և

* Անթվական այս հիշատակագրությունը տեղադրում ենք 1414-ի թվաշարքում, նույն Սարգիս Ղրիմեցու հիշատակարանին առընթեր։

** Շարունակությունը հիշատակարանի տվյալների հիման վրա իր խոսքերով համառոտակի շարադրել է ձեռագրի նկարագրող Մ. Տեր-Մովսիսյանը։

*** Ձեռագրում կա նաև հիշատակարան 1462 թվականից, գրված ստացող Յովհաննէս Երէց Երզնկացու կողմից, որը նկարագրողի կողմից մեջ չի բերված։

առաջնորդութեան սուրբ ուխտին սուրբ Կարապետին... արհիեպիս-կոպոսին Մխ[իթ]արա։

Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի դառն և ի նեղ ժամանակիս, որ հարկապահան[ջութեամբ ազգս տապալ[ ] | | | զի կարի ճանձրացեալ եմք յանաւրինաց բռնութենէ. ի քրԹէ, ի Թոթարէ և յայլ ամենայն | | |

## 170

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5523

Գրիչ՝ Թումա

վայր՝ Ոստան քաղաք

270 ա ...Ուստի տեսեալ զսորա անճառ փրկայգործութեան խորհուրդ իմաստուն քահանայ Կիրակոս և ստացաւ զսուրբ աւետարանս յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնողացն՝ հաւրն Սարգսի, և մաւրն Թանկ-խաթունին, և քուրոջն Թուխթանկ, և խաթուն-Մէլէք, և խաթունշայ, և զկողակիցն իւր

270 բ զՇարմէլէք։ ‖ Եւ արդ, ես՝ յետինս և բազմայմեղ սուտանուն քահանայ Թումա, հրաման առեալ ի պատուիրանադիր առաքելական բանէն, որ ասէ՝ Ծոր կոչումն կոչեցար ի նմին կացջիր, և արդ, իմ՝ ոչ բերելով զայսպիսի վստահութիւն, այլ ունայն յամենայն բարեաց և Թափուր, այլ յուսամ ի մարդասիրութիւնն աստուծոյ, զի իմ բազում մեղացն Թողութիւն արասցէ։

Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի քաղաքիս Ոստան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Ստեփանոսի, ի հայրապետութեան տէր Դաւթի, և ի Թուին Հայոց ՊԿԳ (1414), ձեռամբ մեղապարտ և անարժան Թումայ անիմաստ և անմար գրչի, և անընդունակ գոլով յարուեստ գրչութեան, և բազում մեղաւք ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին, բա-

271 ա զում աշխատանաւք գրեցի անարժան ձեռաւք իմովք։ ‖ Արդ, որք ճաշակիք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս, որք պատահիք ի սմայ տեսութեամբ կամ ընԹերցմամբ, յիշեսջիք յաղաւԹս ձեր զառաջ յիշեցեալ ստացող սորայ՝ զԿիրակոս քահանայ, և զծնաւղքն իւր զՍարգիս, և զմայրն իւր զԹանկ-խաթուն, և զեղբայրն զՅովանէս, և զՄկրտիչ, և զՍտեփանոս, և զԳրիգոր, և զքոյրն զԳուլշատ, և զմորքուրն զԱրուս, և զփեսայն զՇախրամիր, և զՅատուխչէն, և զՍարգիս, և զքեռին իմ զՅոհաննէս, և զՄարեմ, և զԳուլմէլէք, և զկնքաւորն իմ զՄկրտիչ, որ կամաւոր եղաւ սուրբ աւետարանիս, և զծնաւղքն իւր, և զՄարտիրոս, և զՍտեփանոս, և զՅովաննէս, և զԱւաք-Պարոն, և զեղբարքն իւր, և զԽաչատուրն՝ զփոխեցեալն ի Քրիստոս, լի բերանով աստուած—ողորմի ասացէք և աստուած զձեզ յիշէ, ամէն, և որք

271 բ շատ և որք սակաւ աւգնութիւն արարին ‖ միոյն հարիւրայպատիկ տացէ ըզկեանսն յաւիտենականս, ամէն։

## 171

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Փիրդ. Նոտ. 44, Աղթամար

Հետ. ստացող՝ Խնդուբէկ
վայր՝ Ռստան

[Ցիշեցէք] յետին ստացողի Յովաննէս անարժան քահանայի ... թվին ՊԿԳ. (1414)։

Եւ արդ, ես՝ Խնդուբէկ դերձակս՝ ի յՌստան քաղաքի գնեցի փ քրդէ, զի էր գերի բերած, յիշատակ ինձ....։

Ցետոյ տէրն [Յովաննէս քահանայն] եկն և գտաւ առ իս, և իմ յօժար սրտիւն ի տէրն տուի, որ յիւր սուրբ աղօթքն յիշեսցէ զիս...։

## 172

### Ժ Ո Ղ Ո Վ Ա Ծ Ո Ւ

Ախալքալաք, Արաղովա գյուղ, Մ. Տ. Մ.

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ յերկիրն Արծրունեաց

Գրեալ ի վայելս Երեմիայի, ի Թուականութեան Հայկազեան տոմարի Պ.-երորդի, Կ.-երորդի, Գ.-երորդի (1414), յերկիրն Արծրունեաց, ի վանքս որ կոչի Սքանչելագործ, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս Սքանչելագործի, օծեալ ձեռամբ առաքելոյն Թադէոսի։

## 173

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՑ

Երևան 2063

Գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Գամաղիէլի վանք, մերձ ի Հիզան

278 բ ...Եւ արդ, ես՝ Թախիծ մտօք և տառապեալ անձամբ, վերջինս ի մանգունս եկեղեցւոյ և յետնեալս ի շարս քահանայապետից Ստեփաննոս անուամբ այցելու պիտակ բանիւ և ոչ գործով, գրեցի ձեռամբ իմով զսուրբ տառս զայս յիշատակ Պետրոս կրօնաւորի, որ և գծողիս քըւերորդի, և ծնօղաց իւրոց՝ Յուսուֆի և էլխաթունի, և այլ ամենայն արեան մերձաւորացն՝ մերձակայից և հեռաւորաց, մեծի և փոքու, առհասարակ, նաև ամենայն աշխատաւորացն ի սուրբ մատեանս։

Բայց գրեցաւ ի Թուաբերութեանս մեծի ութհարիւրի և վաթսուն և երկրորդ (1413) ամի, յաստուածապահ և գերափառ և բարեհռչակ սուրբ ուխտս, որ Գամաղիէլ առաքելոյ անուամբն յորջորջի, ի

գաւառիս Հիզան քաղաքի։ Եւ կամք ընդ հովանեաւ ամենազօր աջոյ ձեռինն աստուծոյ և պտհպանութեամբ աստուածընգալ սուրբ խաչիս Քրիստոսի և առաքելոյս Գամաղիէլի, նաև զյիշատակի արժանաւորն զհոգևոր հայրս մեր, որ և մաքՍոյ արեանառուս մեզ զՆերսէս վարդապետս և զծնօղսն իւր, որ է մեզ տածօղ հոգեպէս և մարմնապէս, այլ և ուսուցիչ և խրատիչ, բարեաց յիշման ի տէր արժանի առնել։ Այլ և զՎարդան եպիսկոպոս և զայլ միեղէն եղբարքս, որ կան հաւաքեալ ի գուռն սուրբ տաճարիս և սպասեն անճառ խոստմանցն Քրիստոսի աստուծոյ, զոր և տացէ նոցա անսուտն աստուած զանըսպառ բարիսն և զանպատում երանութիւնսն, ամէն։

Արդ, ես՝ Ստեփ[աննոս] եպիսկոպոս, աղաչեմ զպատահողք սուրբ մատենիս յիշման արժանի առնել զիս՝ զանարժանս, և զծնօղսն իմ զԿիրակոս, և... զեղբարսն իմ, և զայլ ամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիք և զհանգուցեալք։ Եւ աստուած յիշողացդ և յիշելոցս առհասարակ ողորմեսցի, ամէն։

279 ա Գարձեալ, յերեսս անգեալ աղաչեմ աղերսալից գիմօք Պետրոս կրօնաւոր՝ անխոնարհս և անհնազանդս, հօղս և փոշիս սուրբ գարշապարացդ ձերոց, մաղթեմ ի խորոց սրտէ զհարազատգութ հարց և եղբարց մեր հոգևորաց, զի կաթ մի արտասուաց ի կաթիլ մի դուլէ ձերդ պաղատանաց ցօղեսցէ ի գերեզման իմոյ տապանաց և լուասցէ զբազմաշարաւ զաղրացեալ ոսկերս մեղօք մեռելոյս, քանզի գրեալ է, թէ՝ Կարօտին գնացեալ հոգիքն այլոց մաղթանաց, զի և ես՝ անարժանս գտայց ողորմութիւն յամենողորմ և բարերար փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ....

Բ

350 բ ...Արդ, յանդ ելեալ կատարեցաւ սուրբ տառս... ձեռամբ Ստեփ[աննոսի] եպիսկոպոսի։ Եւ զայս չափաւորս ես գրեցի՝ Յոհան պիտականուն բաբունի, տկար անձամբ և ներգևեալ մարմնով, յիշատակի վասն մեզ, և ծնօղաց մերոց, և եղբարց Յակոբի և Պետրոսի սրբասնունդ կրօնաւորաց, և այլ ամենայն արեանառուաց, նաև վարդապետացն մեր՝ Յոհաննէսի և Կիրակոսի՝ մեզ ծնօղք հոգևոր և տածօղք մարմնաւոր և մարզիչք յօրէնսն աստուծոյ։

Արդ, ցանգտցող եղեալ սուրբ մատենիս Պետրոս կրօնաւոր և ետ գրել զսա ըղձմամբ սրտի և յօժարութեամբ ոգւոյ, ի վայելումն անձին իւրոյ և այլոց բազմաց, և յետ աստեացս՝ յիշատակ ինքեան, և ծնօղաց իւրոց Յուսուֆին և էլխաթունին, և այլ ամենայն արեան մերձաւորաց, յիշատակ յետ իւր թողլով յերկրի. զի ով որ հանդիպի կարդալով, կամ գաղափարելով, կամ տեսանելով, յիշման արժանի առնէք զստացող սորին զՊետրոս կրօնաւորն և զայլ վերոյգրեալսն ի սմայ։ Այլև զՄկրտիչ կրօնաւոր և զառաջնորդ սուրբ ուխտիս, որ է կազմող մատենիս, և զծնօղսն իւր, և զայլ ամենայն արեանառուսն,

և աստուած յիշողացդ և յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի, յաւուրն
մեծի ատենի։

Բայց գրեցաւ սա ի սուրբ և ի բարեհռչակ ուխտս, որ սուրբ
Խաչ կոչի, յերկիրս ՀիզաՆ քաղաքի, ի Թուլ. ՊԿԳ. (1414), Դարձեալ
զմեր միաբան եղբարքս և զհամաշունչ, որ կան ի գաւռն սուրբ տա-
ճարիս, նախ՝ Աւետիս վարդապետ, և Բարսեղ գրոց աշակերտ, Ներսէս,
351 ա Ատոմ, Գրիգոր, Յակոբ, ՅոհաՆՆէս և Յոհ[աՆՆ]էս, ‖ Մարտիրոս, Դաւիթ,
Յակոբ, իսկ հանգուցեալքն՝ Կիրակոս վարդապետն և Յով[հաՆՆէս] միա-
կեցն՝ սիրելի և սիրասնունդ և սրբասէր կրօնաւորք, սպասեն ան-
ճառ խոստմանցն աստուծոյ, զոր և տացէ սոցա Քրիստոս աստուած
զանմահական զկեանսն և զանվախճան հանգիստն, զմշտաւետ ուրա-
խութիւնն, հանդերձ ծնօղօք իւրեանց, որ օգնական և կամեցող եղեն
ամենեքեան սուրբ գրոցս։ Այլ և զՆերսէս երէց՝ ծաղկող սորին, և
զծնօղսն իւր յիշեցէք...։

## 174

## ՔԱՂՈՒԱԾՈՑ ԼՈՒԾՄՈՒՆՔ ՍԱՂՄՈՍԱՑՆ, ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

*Երևան 3876*

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Տարբերունի գաւառ, Յուսկայ որդւոյ վանք

384 բ ...Արդ, ես՝ ունայնս ի բարեաց գործոց և լցեալս յաղտեղի
գործոց Մկրտիչ պիտակ անուն խնդրող բանի, փափագեցի և ցանկա-
ցող եղէ հոգիահրաշ բացայայտութեան սաղմոսացս Գաւթի, զոր արա-
րեալ է սուրբ հօրն մերոյ և նորոգ լուսաւորչի Գրիգորի բանիբուն
վարդապետի։ Եւ զի ոչ կարացի գծագրել իմով ձեռամբ վասն ծու-
լութեան բազմավրդով մարմնոյս և ժամանակիս բերման, այլ ետու
գրել զսա ձեռնասուն և հեզահոգի աշակերտիս իմոյ Մկրտիչ կրաւնա-
ւորի, ի վայելս սիրողաց բանի և ի սեղանաւորութիւն մանկանց նո-
րոյս Սիոնի սուրբ եկեղեցոյ, և յիշատակ բարի իմոյս հիքական ան-
ձին, զի թերևս ընկալայց յամենառատ սեղանոյ ձերոյդ աղօթից փշրա-
նրս ողորմութեան ի հրամանացդ վեհից, և որ տուողն է բարեաց
ձրի շնորհաց՝ թողութիւն մեղաց տացէ տուողաց մերս աղքատու-
թեանց զտեսութիւն փառաց անանցն կենաց, ամէն։

Նաև հոգևոր հաւրս մերոյ և բազմերախտ խրատաւղի Կարապետ
կրօնաւորի եղիցի մասն բարի յաւուրն ահեղ և սոսկալի։

Արդ, գրեցաւ սա ի Թուականութեանս Հայոց ՊԳԿ. (1414), ի գա-
ւառիս, որ կոչի Տարբերունի, ի սուրբ ուխտս, որ կոչի Ցուսկայ որդի,
ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Ցարութեանս, և սուրբ
Կարապետի, և սքանչելագործ սուրբ Նշանիս, որ կոչի Կարմիրակն,

ի հայրապետութեան տեառն Յակոբայ և ի բռնակալութեան պարոն Ուռուֆին, առ ոտս Ստեփանոս վարդապետի և հօր վանաց՝ Մելքիսեթի, որոց տացէ տէրն բարի զարքայութիւն անճառելի։

Արդ, ես՝ Մկրտիչ սուտանուն կրօնաւոր, որ զգիրքս գրեցի, յերես անկեալ աղաչեմ զմանկունս Նոր Սիոնի, որք հանդիպիք սմա ուսմամբ կամ օրինակելով և կամ հարաւանցի տեսութեամբ, յիշեսջիք առաջի զենման գառինն զլրազմավէր ոգիս՝ զՄկրտիչ գծօղս, և զծնօղսն իմ՝ զփոխեցեալսն ի Քրիստոս, զհայրն իմ զմահդասի Մուրատն, և զմայրն իմ զԴովլաթ[շա՞], և զամենայն արեան մերձաւորսն իմ, և զխրատիչքն իմ՝ զՄկրտիչ վարդապետ և զԿարապետ կրօնաւորն...։ Եւ աղաչեմ պաղատանօք, զի սխալանացն և խոշորութեան անմեղադիր լինիք, զի կար մեր այս էր և գիրս առաջին, և տէր աստուած զձեր սխալանսն թողու և դուք՝ զմերն։

Այլ և զաստուածապատիւ հոգևոր հարազատն իմ զՂազար կրօնաւորն, որ բազում աշխատութեամբ զգիրս կազմեաց, յիշեսջիք ի բարին Քրիստոս, հանդերձ ծնողօք և ամենայն արեան մերձաւորօք, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

## 175

## ՇԱՐԱԿՆՈՑ

**Երևան 6034**

Գրիչ՝ Ղազար

302 բ ...Աստանաւր կատարեցաւ տառս աստուածային, որ կոչի շա-
րակնոց, ի թուականիս ՊԿԳ. (1414), ի հայրապետութեան Դաւթի, և
ի բռնակալութիւն աշխար[հիս Հայ]ոց Ամիր-Եզդնի, ձեռամբ մեղսա-
մակարթ, փծուն և անարհեստ գրչի՝ Ղազար սուտանուն սարկաւագի,
ի խնդրոյ աստուածասէր և բարեպաշտ առն, որոյ անուն Հայրապետ
կոչի, որ ստացաւ զսա յիշատակ հոգոյ իւրոյ և ծնողաց իւրոց, և ի
վայելումն զաւակին իւրոյ Խաչատուր(՞) կրօնաւորի, որոյ տէր աստուած
վայելել տացէ, ամէն։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա, յիշեսջիք
զստացող սորա զՀայրապետն, և զհայրն իւր Նահապետ, և զմայրն իւր
303 ա [Թա՞]ն-Խաթունն, և զեղբայրն իւր զՅովա || ննէս, և զքոյրն իւր զԱրքա-
Տիկին և զՄարգարիտն, և զկենակիցն իւր զՄարգարիտ, և զաւակսն
իւրեանց զԹան-Խաթունն, և զԱստուածատուր, և զՏիրատուր, և զհաւր-
եղբայրն իւր զԿարապետ քահանայն, և զորդին իւր զՄխիթար, և
զմիւս կենակիցն իւր զՓաշա, և զմայրն իւր զՍառայ, և զքոյրն իւր
զՇախմէլէք, և զզաւակսն՝ զԽաչատուր, և զՏիրատուր, և զՄսըրմէլէք, և
զԱյմէլէք, և զամենայն արեան մերձաւորսն իւրեանց։ Եւ զիս՝ զանար-
ժան և զփծուն գրիչս, և զիմ ծնողսն՝ զհայրն իմ զԴանիէլ քահանայն,
և զհաւրեղբայրն իմ զՍամուէլ վարդապետն, և զմայրն իմ զՍառայ,
և զամենայն արեան մերձաւորսն իմ՝ զկենդանիսն և զհանգուցեալսն
առ Քրիստոս...։

## 176

## Մ Ա Շ Տ Ո Ց

Երևան 7873

Ստացող՝ Գրիգոր
Վայր՝ Կաֆայ

...Արդ, ցանկացաւղ եղեալ այսմ աստուածախաւս մատենիս
Գրիգոր քահանայն և իւրքն ամենայն, և ետուն գրել զսա յիշատակ
210 բ անջինջ և կտակ յաւիտենական ոգւոց իւրեանց՝ աստ ‖ և ի հան-
դերձելումն։ Վասն որոյ աղաչանաւք հարկաւորեմք աղերսական պա-
ղատանաւք զդասս երջանիկ քահանայիցդ և զբոլոր լրութիւն ուխտի
եկեղեցւոյ սրբոյ՝ զմանկունս պանծալի լուսակիր մաւր մերոյ հոգևո-
րի սրբոցն Սիոնի, որք հանդիպիք մատենիս սրբոյ և պատուականի,
յիշեսջիք ի Քրիստոս՝ ի տէր մեր զստացաւղ սորա զԳրիգոր քահա-
նայն, և զիւրիցակինն իւր զՄարթա–խաթունն, յիշեսջիք ի տէր զհայրն
իմ զՆորճատն, և զմայրն իմ զԴիմաթն, և զաներն իմ զՄխիթար քա-
հանայ, և զոքանչն իմ զՎարդխաթունն, և զեղբայր իւր զպարոն Գոր-
գըն, և զմիւս եղբայրն զՅակոբն, և զկենակիցն իւր զՄարթա–խաթուն,
և զզաւակսն իւրեանց, և զքոյրն իւր զՀեղինէ, և զՄելիքն, և զեղիսա-
բէթն, յիշեսջիք ի տէր և զայլ ամենայն ազգայինսն՝ զպապն իւր
զԳրիգորն, և զմամն իւր զՀեղինէ, և զմիւս պապն զՅեվատն, և զմամն
զԱղութ–խաթուն, յիշեսջիք ի Քրիստոս զփեսայքն իւր զՍաճակն և
զՍիմէոնն, հանդերձ զաւակաւքն իւրեանց, և զԱստուածատուրն, և
զզաւակսն իւր, զՄարտիրոս քահանայ, և զԿուլա–խաթունն, և ըզաւակ-
սըն իւր, այլ և զամենայն ազգայինս իւր՝ զայժմու կենդանիքս և
211 ա զկանխաւ ննջեցեալսն ‖ իւրոց ...։ Յուսկ յետոյ իբրև անարգի միոջ
յիշեսջիք և զծրագրաւղս զԳրիգոր՝ զմեղաւոր հողս՝ զսուտանուն քա-
հանայ, զհայրն իմ և զմայրն իմ՝ զփոխեցեալսն առ Քրիստոս, նաև
զզաւակսն իմ՝ զԽաչատուրն և զՅակոբ կրաւնաւորն, և զմայր նոցին,
և հարազատ եղբայրն իմ՝ զՄարտիրոսն։ Եւ ինքն Քրիստոս՝ կոչաւղն
աշխատողաց և ծանրաբեռնից, յիշեսցէ զյիշողքդ վերոյգրեալ արանցս,
և որ ի նիւթս աշխատեցան, որք սեռն սիրով ի պատկանաւոր խըն-
դրուածս ի միտս բարիս հայցէք ի տեառնէ զթողութիւն և զողոր-
մութիւն, և ինքն Քրիստոս աւրհնեալ յաւիտեան։

Արդ, գրեցաւ սա ի քաղաքս Կաֆայ, առ ոտս սրբուհւոյ Աստուա-
ծածնին, որ Յարութիւն կոչի, ի թվ. Հայոց ՊԿԳ. (1414)։ Ո՜վ ըն-
թերցաւղ և լսաւղք, յիշեսջիք ի տէր զշնորհաւզ աւրինակիս՝ զեղ-
բայրն մեր ըստ հոգւոյ զԱբրահամ քահանայ, և դուք զնոյն ընկալ-
ջիք ի տեառնէն...։

## 177

## Մ Ե Կ Ն Ո Ւ Թ Ի Ւ Ն Ք

Երևան 8429

Հետ. ստացող՝ Սարգիս

1 ա Կամաւն աստուծոյ ես՝ Սարգիս վարդապետ ստացա զգիրքս։ Ցով
անկանի ի Ե. (5) աւր պատարագ ինձ առնէ։ Ցօրայ մեկնիչն է կէսն

*և Բարձրացուցէքն։ Ով չառնէ [զպատարագն]՝ դատի ի տեառնէ, մեր մեղացն պարտական է առաջի անաչառ ատենի։*

*ՊԿԳ. (1414)։**

## 178

## *ԺՈՂՈՎԱԾՈՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆՑ*

*Երևան 1391*

ա

*Գրիչ*՝ Կիրակոս

271 բ *...Արդ, որք հանդիպիք աստուածային գանձուցս վայելելով կամ բեզ[մ]նաւորաբար պտղաբերելով, զամենայն գովութեանցն արժանաւորն և զպայծառ Ջահն հաւատոյ և զանդրդուելի սիւնն եկեղեցոյ՝ զՍիմէոն վարդապետն յաղօթս յիշեսջիք, որ եռափափաք սիրով կամեցաւ յիշատակ մանկանց եկեղեցոյ թողուլ և ժրաջան ընթեցողաց ուսումնասիրաց...։*

272 ա *Ի թվ. Հայոց Պ. և ԿԳ. (1414) գրեցաւ, ձեռամբ յոգնամեղ և տխմար և անարհեստ գրչի սուտանուն* Կիրակոսի, *որ ամաչեմ յիշել զիս կրօն[աւ]որ, քանզի աղքատ եմ ի բարեաց և առաւել փարթամ ի չարեաց...։*

Բ

*Ստացող և վերջին մասի*
*գրիչ*՝ Սիմէոն

300 բ *Զվերջինս ի ծնունդս եկեղեցոյ, զվերջացեալս յամենայն բարեաց՝ տեսականաց և գործոց, զգծօղ վերջին բանից և գործոց աստուածաբան աւետարանչի [Յովհաննու], ի թուիս ՊԿԵ. (1416), զՍի*մէոն *վարդապետ՝ պարտական բիւր քանաքարոյ, յիշեսջիք սրտի յօժարութեամբ ի մաքրափայլ յաղօթս ձեր, բարեխօսութեամբ մաքրեցելոյ և սիրելի աշակերտին Ցոհանու, և աստուած զձեզ յիշէ, ամէն։*

## 179

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 4817*

*Հետ. ստացող*՝ Յովաննէս

74 ա *Ո՛վ սուրբ նշան աստուածային...*
*Զքեզ աղաչեմ ողորմագին,*
*Լեր բարեխաւս* Տիրացու *քահանային,*
*Իւր ծնաւղին։*

---

* *Թվականը գրված է նույն էջի ներքևում, Ցրբի մասին գրած ոտանավոր ուղերձի մեջ (սկ. «Սուրբ Ցոր արգար և ողորմած...»)։*

*Հիշատակագրության և ուղերձի ձեռագրերը տարբեր են, բայց ժամանակով ոչ հեռու միմյանցից։*

*Ըստ նմին և գըրողին՝*
*Յովաննէս մեղապարտին,*
*Եւ իր ծնողին և ամենայն հաւատացելոց։*

*Ցետին ստացողին Յովաննէս անարժան քահանային, և դեռաբոյս Յովանէս քահանային, աստուած ողորմի իւրէն Մարդայ կողակցին. ով զմեզ յիշէ՝ Քրիստոս յիւր միւսանգամ գալուստ զինքն յիշէ։*
*Թվ. ՊԿԳ. (1414)։*

## 180

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

**Երևան 5405**

*Գրիչ՝* Յունան

ա

71 բ *Եւ ես՝ անարհեստ և մեղօք մածեալ գրչակն, սուտ տէր Յունան սիրող բանի, գոչեմ ընդ անառակին, խնդրելով յարարչէն ամենեցուն, զի և ինձ շնորհեսցէ զըազմութիւն պարտուց յանցանաց և որք զամէնն ասասցեն։ ՊԿԳ, (1414) գրեցաւ։*

բ

94 բ *Զբտզում մեղօք զառածեալս և ի հոգոց աշխարհի տատանեալս՝ զՅունան անարհեստ գրիչ և զանպիտան սպասաւոր բանի, որ գրեցի զսա ի վայելումն անձին իմոյ տառապելոյ և յիշատակ ոգւոյ իմոյ և ծնողաց, աղաչեմ զամենեսեան որք հանդիպիք սմա, զի ասիցէք բոլորով սրտիւ զաստուած-ողորմին, որ և դուք գտանիցէք յանյիշաչարըն տեառնէ, ամէն։*





## 181

## ՅՈՎԱՆՆՈՒ՝ ԱՇԱԿԵՐՏԻ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՑ, ՀԱՒԱՔԵԱԼ Ի ԼՈՒՍԱՒՈՐ ԲԱՆԻՑ ՍՈՒՐԲ ՎԱՐԴԱՊԵՏԱՑ, Ի ՊԱՏՃԱՌՍ ԻՄԱՍՏԻՑ... ՄԱՐԳԱՐԷԻՆ ԵՍԱՅԵԱՅ

Երևան 1128

Հեղինակ Յովաննէս Կոլոտիկ
վայր՝ Հերմոնի վանք

192ա Եւ ի կատարումն գրոցս՝ զկատարումն արարածոցս և զհատու-
ցումն ըստ գործոց յայտնէ, թէ արդարքն նորոգին և մեղաւորքն
տանջին ի հուրն անշէջ և ի յորդն անմահ։ Ցորոց փրկեսցէ զմեզ
Քրիստոս աստուած զամենայն հաւատացեալս անուան նորա, բարե-
խօսութեամբ սուրբ մարգարէիս, և ամենայն բարի և աստուածահա-
ճոյ արանց մեկնողացն սորա՝ սրբոյն Յովհաննու Ոսկերերանին, և Եփրեմի
երանելւոյ, վիմին ուղղափառ հաւատոյ Կիւրղի Աղեքսանդրացոյ, և
Սարգսի մերոյինս ազգի լուսաւորչի, որ ի վանքն Խորանաշատոյ, մա-
կանուն Կունտ կոչեցելոյ, և հօրն մերոյ և երջանիկ պետին Գէորգեայ,
և մեծ վեհին Յոհաննու Որոտնեցոյ, և աշակերտի նորին Գրիգորի՝
կրկին լուսաւորչին ի վերջացեալ ժամանակի և անպտղացելոյ յար-
գասեաց բարոյ։ Տացի խաղաղութիւն անդամոց քրիստոսադաւան
տոհմից, նաև քաւութիւն մեղաց և սրբութիւն մտաց և խորհրդոց, զի
կարասցուք հասանել մասին ժառանգութեան սրբոցն ի լոյս, հանդերձ
ամենայն վարդապետօք և երախտաւորօք մերովք, անսպառ յաւիտե-
նիւ յաւիտեանս, ամէն։
Դարձեալ, աղաչեմք զհանդիպողսդ ի սմա, մի մեղադրեալ մեզ,
զի ոչ եթէ վասն ազարտելոյ զբանս նախնեացն մերոց ձեռնարկեցաք
ի գործս, որ ի վեր էր քան զկար մեր, այլ այս եղև պատճառ գրու-
թեան սորա. նախ, զի վեհն իմ և երախտաւորն* հրամայեաց ինձ
վճռաւ երդման և կապանաց առնել զքաղուածոյս, զի առաջ քաղուա-
ծուին չէր հաւան, զի ի տղայութեանն էր արարեալ, և երկրորդ՝
մեր՝ զարմանալով յանարգամեծարութիւնն աստուծոյ, որ բանայ
զբերան անարժանից ի յօգուտ այլոց, մանաւանդ ընդ անյիշաչարու-
192բ թիւն պարգևատուին, որ ներգործ ‖ եաց առ մերս անարժանութիւն,
և ես՝ աշակերտակից եղբարց աղաչեցեալ, հարկեցայ։ Եւ դուք ներե-
ցէք իմում յանդգնութեանս, զի յօժարութիւն մտացս բոնադատեաց
մոռանալով զտկարութիւնս իմ։ Զի թէ գտցի ի սմա բան ինչ ըստ

* Գրիգոր Տաթևացու մասին է խոսքը։

*հաճութեան մտաց ձերոց՝ տեառն շնորհ և գովութիւն և վեհին իմոյ վարժողին, և թէ պակաս և անհաճոյ բարեսէր կամաց ձերոց՝ մեզ լիցի անսխալութիւն յեղբայրական գթոց ձերոց։*

*Դրեցաւ տխեղծ մատամբ* Յովաննէս *պիտակ պետի, ի թվս. ՊԿԴ. (1415), ի վանքս* Հերմոնի, *առ դրան սուրբ Լուսաւորչիս և սուրբ դամբարանաց սուրբ վարդապետաց* Տիրատրոյ, Գրիգորի *և այլոց, ի սակաւ կրթութիւն և ի վարժ մանկանց Սիոնի, և ի փառս և ի գովեստ ուրհնելոյն յամենայն արարածոց Քրիստոսի աստուծոյ մերոյ յաւիտեանս, ամէն։*

## 182

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԿՈՏԱՍԱՆ ՄԱՐԳԱՐԷԻՑ ՆԷՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՅ

**Երևան 3276***

*Գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Հերմոնի վանք

454 ա *Արդ, բաբունապետ մի գովելի ընտրեալ յազգէս հայկազենի, որ գաւառաւ էր Սիւնեցի, և բնակութեամբ էր յաթոռոյն Եւստաթէի, որ* Սիմէոն *անուն կոչի, յողորմութենէ սուրբ հոգւոյն եկեալ ի գաւառս* Արարատեան *և դաս հրամեալ բազում ժամանակ, որպէս ի Քրիստոսէ շնորհեալ մեզ։ Եւ ապա ի խնդիր ամենայն աստուածաշունչ գըրոց և մեկնչաց, և ստացեալ բազում՝ զոմանս գրելով, զոմանս գըրել տալով հալալ ընչիւք, որ և զայս Երկոտասանից [մարգարէից] մեկնիչս ստացաւ ի վայելումն անձին իւրոց և աշակերտաց իւրոց, և յետ աստեացս անջինջ յիշատակ իւր, և ծնողաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց։*

*Արդ, գրեցաւ սա ի վանքն* Հերմոնի, *ձեռամբ* Գրիգորի, *ի թուականիս Հայոց ՊԿԴ. (1415)։ Արդ, յերես անկեալ աղաչեմ զամենեսեանսդ, յիշեսջիք զվերոյ ասացեալ զմեծ բաբունապետն, որ որբոց խնամիչ է և տնանկաց մխիթարիչ...։*

## 183

## ՇԱՐԱԿՆՈՑ

**Վենետիկ 230, Մ. Տ. Մ.**

*Գրիչ՝* Յովաննէս
*վայր՝* Մեծոփայ վանք

*Ի թվ. Հայոց ՊԿԴ. (1415), ի յերկիր* Քաջբերունւոյ, *ի սուրբ մենաստանիս որ կոչի* Մեծոփայ վանք, *ի յառաջնորդութեան երիցս*

* № 3276 ձեռագիրը տարբեր նյութերի ժողովածու է։ Գրիչն այստեղ ընդօրինակել է նաև իր գաղափար օրինակների հիշատակարանները։

երանեալ արհիեպիսկոպոսի տեառն Յովհաննու, և առ ոտս լոյս վարդապետիս Թովմայի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Յակոբայ, և սուրբ վարդապետաց գերեզմանացս, ձեռամբ ... Յովաննէս խաբերայի, ի խնդրոյ ... կրօնաւորի Անդրէասի, ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ բարի ծնողաց իւրոյ պարոն Ստեփան և Խութլամէլիքին ...]։

## 184

## ՅԱՂԱԳՍ ԽՈՐՀՐԴՈՅ ԵԿԵՂԵՑԻՈՅ, ԹՈՎՄԱՅԻ ԱՔՈՒԻՆԱՑԻՈՅ

Վրաց թանգարան 10

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Շահապօ՞նք

353 բ Գերամեծար և գերահարգելի հայր[ն] մեր ֆրա Յովսէփ, կոչեալ մականուամբ Շահապօնեցի, սկսեալ զաստուածային խորհրդաւոր գործա[ռն]ութեան մատեանս, և ոչ առեալ զաւարտ վասն վրդովման ժամանակին և ի խստութենէ այլազգեաց, և մնացեալ թերատ բազում ամ, և յետոյ շնորհեաց մեզ ի խնդրոյ մեր՝ լնլով զթերին։ [Յա]ղագս որոյ ես՝ նուաստ ի Քրիստոսէ և յետին որդիս Սիօնի, ապիկար ոգիս ֆրա Գրիգոր սպասաւոր բանի... սկսեալ կատարեալ յանկեցաւ ...։

Արդ, մակագրեալ եղև աստուածային մատեանս յամի հազարերորդի չորեքհարիւրերորդի* տասներորդի հինգերորդի, յուլիս ամսոյ ԻԳ. (23), և ի թուականութեանս Հայոց ՊԿԴ. (1415)։

Վասն որոյ աղաչեմ զաստուածաբան ընթերցօղսդ և վայելօղսդ զսխալանս մեր որ աստ՝ հարազատաբար սիրով ուղղել և մեզ, հանդերձ ծնօղօքն մերովք՝ հոգևորօք և մարմնաւորօք, ի տէրութիւն բարիսն յիշատակել ... և զուսուցիչն իմ՝ հոգևոր հայրն զսրբակրօն քահանայ զֆրա Պետրոս, զմարմնաւոր ծնօղսն իմ՝ զտառապեալ հա[յ]ր[ն] իմ զԽոջադեղ, և զմայրն իմ զԹանկիկ, և զեղբայրն իմ զԲեկի, որ կայ այժմ, և այլ ամենայն արեան մերձաւորքն իմ ...։**

## 185

## ԱՒԵՏԱՐԱՆ

«Աղուանից երկիր», էջ 247, Վարգաշէն

Գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Նարեկ

Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ անարժան Ստեփաննոսի անիմաստ և տխմար գրչի ... այլ ըստ կարի մերում աշխա-

* Հիշատակարանը հասել է ԺԸ. դարի ընդօրինակությամբ (ընդօրինակողն է Արթանաս եպիսկոպոսը)։ «Չորեքհարիւրերորդի»-ի փոխարեն ձեռագրում սխալմամբ գրված է «երեքհարիւրերորդի»։

** Հիշատակարանի ընդօրինակությունը շնորհակալությամբ ստացա ընկ. Ս. Լալաֆարյանից, որը ձեռնարկել է Վրաց թանգարանի հայերեն ձեռագրերի մանրամասն ցուցակագրման կարևոր աշխատանքին։

ութեամբ գրեցի զսուրբ աւետարանս... յընտիր և ի ստոյգ աւրինակէ, ի թուականութեանս Հայոց ՊԿԴ. (1415), ի հայրապետութեան տեառն Դաւթի և յիշխանութեան գաւառիս մերոյ Բէլէք-Բէկի...։ Գրեցաւ սուրբ աստուածաբնակ գիւղս, ուր հանգուցեալ է աստուածընդունակ նշխար սրբոյն Գրիգոր վարդապետի, որ կոչի Նարեկացի, ընդ հովանեաւ սուրբ տաճարացս լուսոյ մօր Աստուածածնի և միածնի իւրոյ։

## 186

## ՃԱՌԸՆՏԻՐ

Փիրգ. Նօա. 44—45, Կտուց անապատ

Գրիչ՝ Ստեփաննոս
Վայր՝ Տշող գիւղ

...Եւ արդ, ես անպտուղս ի բարեաց Ստեփաննոս գրիչս տեսի զսէր և զփափաք բարի ծառային Քրիստոսի Ստեփաննոսի, և իմ տկար անձամբս յանձն առի և ամենակարող զօրութեամբն աստուծոյ կատարեցի զսուրբ գիրքս ի դառն ժամանակիս, յորում էր թիւս Հայոց ՊԿԴ. (1415)։ Եւ արդ, գրեցաւ սա ի գեաւղս որ կոչի Տշող, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Ստեփանոսիս, և սուրբ Սիօնիս, և սուրբ Կիրակոսիս, և այլ սրբոց առհասարակ։ Ստեփաննոս քահանայ յիշման արժանի արնէք, և զծնողսն իմ... [Գրիգոր քահանայ], և զհօրեղբայրն մեր Մարտիրոս կրօնաւորն... որ մարտիրոսացաւ... և զօրինակի տուողքն զՅովհաննէս փիլիսոփայն՝ զսրբասէր քահանայն, և զՊօղոս քահանայ...։

## 187

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Փիրգ. Նօա. 45, Ռշտունեաց Բէլու գիւղ

Գրիչ՝ Ղազար
Վայր՝ Իլոյվանք գիւղ

...Արդ, գրեցաւ աստուածապատում տառս ի գեղս որ կոչի Իլոյվանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս... ձեռամբ Ղազար գրչի, ի խնդրոյ տանուտէր Յոհաննու, ի հայրապետութեան տէր Դաւթի... ի թուականիս Հայոց ՊԿԴ. (1415), ի ժամանակիս ղանութեան Ղարայ-Ուսուֆիս, ի յամիրութեան Եզդինշէրին և որդւոյ իւր Մելիքին:

Եւ ետուք զսա նուէր և ընծայ ի դուռն սուրբ Յակոբայ, և սուրբ Աստուածածնին, և Յոհանայ, որ ի տեղն կենայ։

## 188

### ՅԱՃԱԽԱՊԱՏՈՒՄ ՃԱՌՔ

Երևան 6775

ա

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Երուսաղէմ

315 ա ...Որոց (Ճառից) ցանկացայ հողս Գրիգոր՝ խնդրողս բանի և մեծաւ ջանիւ և աշխատութեամբ գրեցի զսա, ե ետու իմ համշիրակ եղբօրն՝ Մկրտիչ վարդապետին, ի վայելումն անձին իւրոյ և մեզ յիշատակ։ Զի ԿԶ. (66) ամաց եմ ես ու ԽԸ. (48) տարւոյ աբեղայ, և զայս ճառերս չէմ տեսել, և ոչ ի մեր երկիրն կային սոքա՝ Յաճախապատումս և կամ Ներբողեանքս ասացած ի Վարդանայ բանիբուն վարդապետէ։ Վասն որոյ փափագանօք գրեցի յԵրուսաղէմս, յորժամ և գտի, ընդ հովանեաւ սրբոյն Յակոբայ և տէր Պօղոսի եպիսկոպոսի, որ քան զարժանն մեր ի վեր ընկալաւ զմեզ և հանգոյց, ՊԿԴ. (1415) Թւին։

բ

Ստացող և վերջին մասի գրիչ՝ Մկրտիչ
վայր Մեծոփայ վանք

367 ա ...Կատարեցաւ լուսաւոր վարդապետութիւնս որբոյն տեառն Ներսէսի երկրորդ լուսաւորչի, գիրքս որ կոչի Ընթ[ան]րական և խըրատ ամենայն հասակի, [ի] Թըւականութեանս Հայոց ի ՊԿԷ. (1418), ի վանս Մեծոփայ սուրբ Աստուածածնիս, յերկիրս Քաջբերունեաց։ Որք ընթեռնուք կամ աւրինակէք յիշեցէք ի Քրիստոս զսուրբ հայրն մեր՝ զմեծ րաբունապետն զարթուն անուն, զերկրորդ աստուածաբանն, զբազմերջանիկն, զաղքատասէր և զհեզահոգին, և զքաղցր եղանակաւ
367 բ երգեցիկն, և լի ամենայն աստուածային շնորհաւք ‖ զԳրիգոր վարդապետն, որ՛զ[Յ]աճախապատումն ետ ինձ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, որ և տացէ նմայ Քրիստոս զերկնից արքայութիւնն, ամէն։ Այլ և զտէր Կարապետն, որ զաւրինակն ետ, և զԱկոբ այրեղայն սրբակրօն, որ փոքր մի աւգնական եղև գրելով, և զԳրիգոր կազմող գրոցս, և զառաջնորդ սուրբ ուխտիս զԿարապետ վարդապետ, և զամենայն միաբանքս, որ կան ի տեղիս յիշեցէք ի Քրիստոս։

Դարձեալ, աղաչեմ զամենեսեան՝ զմեղսամած գրիչս զՄկրտիչ պիտականուն վարդապետ, և զծնաւղսն իմ՝ զՆահապետ և զԹանգուղխ, և զամենայն արեան մերձաւորսն յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր, և աստուած զձեզ յիշէ, ամէն։ Դիտութիւն լիցի, զի կար իմ այս է, ոչ գիտելով գիր, այլ յաւժարութիւնս յաղթեաց և սէր գրոցս, որ և սիրոյն Քրիստոսի արժանի արասցէ զմեզ և զամենայն հաւատացեալս, ամէն։

## 189

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 1950

Նվիրաբերող՝ Յիսէ
վայր՝ Մսր

Ի թվ. ՊԿԴ. (1415) երեկ Երուսաղէմայ եպիսկոպոս տէր Պաւղոս ի մայրաքաղաքս ի Մսրս: Ես Յիսէ՝ որդի Սարգիս իրիցուս, որ տվի զաստուածաբան աւետարանս յԵրուսաղէմ՝ ի սուրբ Յակոբ, յիշատակ իմ հաւրն Սարգիս իրիցուն, և իմ աղբաւրն Յովանիսին, և իմ մաւրն Աղբէրացին, որ յաստուած են հանգուցեալ: Ես՝ Յիսէս և իմ քոյր Մարիամս, որ տվաք մեր սրտի կամաւքն և յաւժարութեամբ զարծաթապատ աւետարանս յիշատակ մեզ և մեր ննջեցելոցն, և մի ոք իշխեսցէ հանել սուրբ աւետարանս ի սուրբ Յակոբայ, կամ ծախելով, կամ տալով, կամ գողանալով, կամ այլ հնարիւք: Որ հանին զաւետարանս ի սուրբ Յակոբայ՝ նա այնպիսին զանէծքն առցեն յաստուծոյ և ի սուրբ Յակոբայ և այլ սուրբ տնաւրինականացն:

## 190

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՎԱՐԴԱՆԱՑ ԱՐԵՒԵԼՑՒՈՑ

Երևան 5163

Գրիչ՝ Կիրակոս

ա

279 բ Ի թու[ականիս] հայոյկազմեան տոմարի ՊԿԴ. (1415) գծագրեցաւ Մեկնիչ Սաղմոսի ձեռամբ տխմար և մեղապարտ գրչի Կիրակոսի սուտանուն կրաւնաւորի, որ ամաչեմ յիշել զիս կրաւնաւոր, ի յիշատակ ժրաջան քաջակրաւն, հոգով բարի լցեալ և առաքինութեամբ ծաղկեալ Յովանէս րաբունոյ, զոր աէր աստուած վաելեալ տացէ իւր ամենայն մերձաւորաւք և սպասաւորաւք բանի, ամէն ...:*

բ

275 բ ...Տէր աստուած շնահաւոր արասցէ և վաելեալ տացէ զՄեկնիչ սուրբ Սաղմոսի աստուածահաւրն Դաւթի, ամէն. և [պա]տուելի երկնայնոցն և երկրայնոցս յոգիազարդ անձին՝<ի>-սպասաւորի բանի և հարազատի՝Յովանիսի հռետորի յերկար ժամանակաւ, մինչ ի խորին ծերութիւնն, ի պարծանս Սիոնի և մանկանց առագաստի, և մխիթար տարակացեալ հաւատա[ց]ելոց, ջահ անշիջանելի, և սիւն անդրդուելի կայցէ, ամէն: Զիս մի մոռանար ընտրեալ սուրբ վարդապետ, զի կարաւտ եմ

* Համանման հիշատակագրություններ կան նաև ձեռագրի 188ա, 279ա և այլ էջերում:

*շնորհաւք լցեալ հոգևոր և աստուածատուր գետաւքէն և ամենալից ջրո ե հացի, զի ձերիւ աղաւթիւք յագեսցի և զովեսցի սովալլուկ յոգիս իմ, ամէն։*

## 191

### *ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ*

*ԼՕՎ 1267*

*Գրիչ՝* Կարապետ

*Արդ, սուրբ հարք և եղբարք, որ բաղձալի փափագմամբ ընթեռնուք զՔարոզգիրքս, զոր արարեալ է մեծ քորունոյն եռամեծին* Գրիգորի, *և աւգտիք ի լուսատու բանից սորա՝ յիշեցէք զգրիչս՝ զ*Կարապետ *սուտանուն աբեղայ, և զծնողսն իմ, նաև զամենայն առաքինութեամբ լցեալ եղբայրն իմ* զՅակոբ *աբեղայն, որ բազում աշխատեցաւ ի կոկել թղթիս և ի սպասաւորութիւն անարժանիս։ Տացէ սմա տէր աստուած զանճառ բարին։*

*Գրեցաւ ի թվին ՊԿԴ. (1415)։*



**ՊԿԵ** **1416**

## 192

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՏՈՒՄԱՐԻ ՅԱԿՈԲԱՑ ՂՐԻՄԵՑԻՈՑ

***Երեւան 2914***

*Հեղինակ՝* Յակոբ Ղրիմեցի
*վայր՝* Մեծոփայ վանք

*...Արդ, ես՝* Յակոբ *վարդապետ* Ղրիմեցի, *ի Թվիս Հայոց ՊԿԵ. (1416), զՏումարն դաս ասացի ի հռչակաւոր վանքս* Մեծոփու, *ի խնդրոյ* Թումայ *րաբունապետին** *և աշակերտաց նորին։*

185 ա *Արդ, վասն զի բազում տումարատեարք, որ աստ կային՝ պատճենք նոցա ոչ համաձայն գտանէին միմեանց ըստ շարադրութեան կարգի, այլ յետ և յառաջ շարագրեալք էին։ Վասն որոյ հարկ եղև մեզ ըստ կարգի նոր մեկնչիս, զոր արարաք ի շնորհաց սուրբ հոգոյն, շարագրել զտումարս մեծ Հայոյն, զի դիւրին լիցի ուսումնասէր մակացու արանց։ Այլ և ի շար սորայ զՀռոմայեցոցն և զԵբրայեցոցն պատճէն ևս եդաք, զի այս Գ. (3) ազգիս հարկաւորք են ի աումարտգիտութեան գործս, զի դրունք և մուտք յերկոտասան յազգս տումարաց սոքայ են։*

*Այլ և զմեկնիչն տումարիս զկնի սոցա եդաք շարագրեցաք, զի առ ձեռն պատրաստ լիցի խնդրողին զսայ...։*

*Արդ, յիշեսջիք յաղօթս ձեր զ*Յակոբ *վարդապետս* զՂրիմեցիս,
186 ա ‖ *որ շարադրեցի զտումարս և զմեկնիչս, և լի բերանով աստուածողորմի ասացէք ի սէրն Քրիստոսի ծնաւղաց իմոց և ամենայն արեան մերձաւորացն։*

*Բայց աղաչեմ զօրինակողսդ, որ ուշիմ մտօք շարագրէք զսայ, զի տումարական արհեստն աննհար է առ ի ներընդունել զյաւէտն և զնուազն, զի բոլորովին արհեստս այս ի վերայ ճշմարտութեան է հիմնարկեալ, և ստութիւն ի սայ ամենևին անկար է առ ի ներգործել։ Զի որպէս անհնար է միակ թվին երկուս լինել և կամ երկուցն զմիակի անունն յինքն բերել, այսպէս և տումարական մակացութիւնս անհնար է զաւելի և զպակաս շարագրածութիւնն ներընդունել, զի համարողական արուեստիւ գոյանայ, որ մէկն մէկ է և երկուս չէ, և երկուսն երկուս է և մէկ չէ։ Վասն որոյ աղաչեմ, յորժամ սրբագրես և օրինակես՝ հոգաբարձութեամբ զաւելորդն հանես և*

---

** «Մեկնութիւն տումարի» աշխատության որոշ ձեռագրերում պահպանվել է Յակոբ Ղրիմեցու ուղերձը՝ պատվիրատու Թովմայ Մեծոփեցու հասցեին։ Բուն հիշատակարանից հետո տալիս ենք այդ ուղերձի բնագիրը երկու խմբագրություններով՝ Ա—Երևանի № 5975 ձեռագրից և Բ—Փիրղալեմյանի «Նոտարք»-ից (էջ 159)։*

զպակասն գրես, զի զվարձս յաստուծոյ առցես և զաստուած-ողորմի լսելն արդարութեամբ վայելես։*

Ուղերձ առ Թովմայ Մեծոբեցի

ա

137 բ Փառք... որ ետ հասանել մեզ յաւարտ տումարական մեկնութեանս՝ ի յուրախութիւն ուսումնասիրաց անձանց։

Արդ, ով բաբունապետդ սուրբ և առաքինի, ահա և զայս ես զխնդիր քո կատարեցի բազում աշխատութեամբ։ Եւ առցես զսայ և ըստ ուշիմ և նրբահայեաց մտաց քոց որոնեսցես՝ զպակասն լցուսցես և զաւելորդն կշռեսցես. և զոր ինչ հաւանական գտցես՝ տեառն մատուցանիցես զշնորհս և զփառս, զի նորա են ամենայն գանձք իմաստութեան, և յոչ հաւանականսն՝ տկարութեանս մեր ներեսցես, զի խնդիրդ քո ի վեր է քան զկար մեր, այլ սիրով խնդրելոյդ յաղթեալ ձեռնարկեցաք։ Վասն որոյ աղաչեմ զհեզութիւնդ քո քոյին սիրովդ, զի յիմաստասիրելն քո զքո հոգւոյ աղքատս՝ զՅակոբ Ղրիմեցի սոսկանուն վարդապետս, ի հառաչալիր աղօթս քո մի մոռասցիս, այլ ի յիշելն քո և զաստուած ողորմին յիշեսցես, ողջ լեր։**

բ

...Արդ, ով բաբունի և աստուածաբան, աստուածային իմաստութեան ցանկացող, որդեակ իմ հոգևոր և եղբայր ցանկալի և բաղձալի վարդապետ Թումայ՝ առաջնորդ աստուածաբնակ քրոբէագումար հռչակաւոր սուրբ ուխտին Մեծոփայ վանք անուանելոյ։ Ահա զայս ես խնդիր քո կատարեցի բազում աշխատութեամբ, և առցես զսա և ընդ ուշիմ մտաց քոց նրբահայեաց որոնեսցես, և զպակասն լցուցանիցես, վասն որոյ աղաչեմ զքոյին հեզութիւնդ սիրով բաղձանաց, զի մօտասիրելն քոյովդ հանդերձ զհոգւոյս աղքատս քո զՅակոբ Ղրիմցիս՝ սոսկանուն միայն վարդապետս ի յառաջալիր յաղօթս քո մի մոռասցիս։***

* Սույն հիշատակարանը փոքր ինչ աղավաղումներով և ստացողների անվանց հավելումով ընդօրինակված է նաև նույն այս ձեռագրի 195ա—196ա էջերում, ՌԽԴ. (1595) թվականին։

** Այս նույն (№ 5975) ձեռագրի 150բ էջում, «Ցաղագս բնութեան մարդոյ» հոդվածի վերջում՝ պահպանվել է Յակոբ Ղրիմեցու հիշատակագրությունը որպես ընդօրինակողի։ Նա գրել է «Զմեղուցեալ գրիչս զՅակոբ Ղրիմեցի՝ զսպասաւոր բանի աղաչեմ յիշել յաղօթս՝ աստուած-ողորմի ասելով. և տէր ձեզ ողորմեսցի, ամէն»։

Ե՛վ Ղրիմեցու ուղերձը և՛ այս հիշատակագրությունը պահպանվել են ԺԵ. դարի կեսերին ոմն «մեղուցեալ գրիչ Ստեփանոսի» կատարած ընդօրինակություններով։

*** Այս ուղերձը Գ. Փիրղալեմյանը թյուրիմացությամբ հրատարակել է 1448-ի թվաշարքում։

## 193

### ՅԱՂԱԳՍ ԱԶԳԱԿԱՆՈՒԹԵԱՆՑ ԲԱԺԱՆՄԱՆ, ՅԱԿՈԲԱՅ ՂՐԻՄԵՑԻՈՅ

Փիրգ. Նօտ. 159

Հեղինակ՝ Յակոբ Ղրիմեցի

Եւ այսքան շատ լիցի, որ ցուցեալ եղև ի մէնջ, ամէն։ Ի խնդրոյ Թովմայ վարդապետի հրեշտակարնակ սուրբ ուխտիս Մեծոփայ, և ես ծառայաբար կատարեցի՝ Յակոբ վարդապետս Ղրիմեցի՝ աշակերտ Գէորգայ վարդապետի և քաջ դիտաստեղի Եզնկացւոյ, յաղագս ազգականութեանց բաժանման։*

## 194

### ՅԱՂԱԳՍ ԱՆՑԱՑՏ ՆՇԻ, ՅԱԿՈԲԱՅ ՂՐԻՄԵՑԻՈՅ**

Երևան 8076

73 բ Զհոգևոր հայր մեր և զվարդապետ Յակոբ Ղրիմեցի՝ ճգնաւորն և շարագրօղ գծիս այս, և զԹովմա հեզահոգի վարդապետն, խնդրող բանիս ի տէր վարձատրեսցէք, և տէր զձեզ վարձատրեսցէ, ամէն։

## 195

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7043

Գրիչ՝ Վարդան

281 բ ...Եւ արդ, գրեցաւ սա ի թուականութեանս Ը.*** հարիւր և ԿԵ. թվի (1416°), ձեռամբ [անարժան] Վարդան աբ[եղայի | | |, ի ժամ]անակի, որ [կա՛]յր [անհնա՛ր]ին հալածումն | | | ի վերա | | | քրիս[տո]նէից [յա՛զգ]աց իսմաէլեան, որ հանապազ ոչ դադարէին ի խնդրելոյ հարկս ի քրիստոնէից, և ամենեքեան գրաւեալ կային ընդ ձեռամբ նոցա, որպէս թէ կապեալք ի շխթայս իբրև զհինն Իսրայէլ առ Փարաւոնիւ։ Եւ ոչ ուստէք ունին ակն փրկութեան, բայց միայն զփրկիչն մեր Քրիստոս, որ մերձ ընդ մերձ կորուսցէ զհալածիչսն

* Սույն և հաջորդ հիշատակարանները անթվական են, տեղադրում ենք Յակոբ Ղրիմեցու «Մեկնութիւն տումարի» աշխատության հիշատակարաններին առընթեր։ Սակայն դրանք կարող են գրված լինել ինչպես ավելի վաղ, այնպես էլ Յակոբ Ղրիմեցու կենդանության հետագա տարիներին։ Երևանի № 9100 ձեռագրի 343 էջի վրա պահպանված տվյալի համաձայն Ղրիմեցին վախճանվել է 1426 թվականին։ Այնտեղ գրված է. «Թվին Հա[յոց] ՊՀԵ (1426) մեծ վարդապետն Յակոբ Ղրիմեցին փոխեցաւ ի Քրիստոս, ի քաղաքն Արծկէ, և եդաւ ի տաճար սուրբ Աստուածածնին»։

** Աստվածաբանական դատողություններով համեմված երկրաչափական փոքրիկ աշխատություն է։

*** Հիշատակարանը մաշված ու եղծված է։ Ը. (8) թվանշանի տակ աղոտ կերպով նշմարվում է «Ութն» բառը, ըստ որի հիշատակարանի գրությունը՝ հարյուր տարի առաջ ընկնելով դառնում է 1316-ը։ Հիշատակարանը տեղադրում ենք 1416-ի թվաշարքում կարծելով, որ գործ ունենք գրչական սխալի հետ։ Ընդօրինակողն սկզբից սխալմամբ գրել է «Ութն» բառը, բայց հետո, նկատելով իր սխալը՝ ջնջել է այն և վրան գրել Ը. (8)։

քրիստոնէից և քարագլխեսցէ Թաւագլորելով | | | [ըստ] չարութեան
282 ա [իւրե]անց և ըստ գործոց։ ‖ Եւ հաստատեսցէ զհաւատացեալս անուան
իւրոյ ան | | | սնելի մինչև ի սահմանեալ կէտ կոչման և պահեսցէ
անսայթաք և անգթելի ի վերա վիմի հիման մաւր մերո Նոր Սիոնի,
ամէն,*

196

# ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4300

Գրիչ՝ Սարգիս

ա

273 բ Զմեղսաներկ և զսեւ[ացեալ հոգով, չարագործ մարմնով աչօք
կուրացածս Սարգիս աղ[աչեմ յ]իշել ի տէր, և աստուած զձ[եզ յիշէ].
ի թվ. ՊԿԵ. (1416),

բ

279 ա Ո՛վ պատուական սուրբ հանդիպողք, պաղատելով աղաչեմք զձեզ,
որ և զքաջ հով[ու]ապետքն մեր զտէր Զաքարայն, զտէր Թադէոսն,
զտէր Ստեփաննոսն, զտէր Գրիգորն, զտէր Աղեքսիանոսն, զտէր Վանա-
կանն, զտէր Մարկոսն, զտէր Անդոնն, զտէր Յովանէսն, և զտէր Սար-
գիսն աղաչեմ յիշել ի տէր, և աստուած զձեզ յիշէ ի յիւր միւսան-
գամ գալուստն, ամէն, և զիս՝ զմեղապարտ գրչակս, ամէն։

գ

213 բ Զտառապեալս և զմեղսաներկս անձն և հոգով մեռեալս և մարմ-
նով մոլորեալս Սարգիս գրիչ՝ անուամբ եպիսկոպոս և գործով Թա-
բաւր ի յամենայն քահանագործութենէ, և սեվերես դիմաւք կամ ի
պատրանք աշխարհիս անդարձ մեղաւորս, հանդերձ ծնողաւք և ազ-
գականաւք աղաչեմ յիշել ի տէր, և աստուած զձեզ յիշէ ի տէր աս-
տուած, ամէն։

ԶԹադէոս քահանայ և զՍարգիս քահանայ աղաչեմ յիշել ի տէր,
և աստուած զձեզ յիշէ։

դ

294 ա Ընդ նմին զհոգևոր եղբայրն մեր՝ զՄատթէոս քահանայն և զՅո-
վանէս քահանայն, հանդերձ ծնողաւք և ազգականօք, աղաչեմ յիշել ի
տէր, և զիս՝ զանարժանս, ամէն։

ե

100 ա Վայ, որ ձեռս կու դողայ, ու ազգի ազգի կիրս կու ‖ աւիրեմ,
ինչ առնեմ, որ ծեր եմ ու աչքս վատատես է. Խ. (40) տարի է, որ
գիր կու գրեմ, Թողութիւն արարէք։

* Շարունակությունից (2,5 սյունակ) կարդացվում են միայն որոշ բառեր ու նա-
խադասություններ, որոնցով գրիչը խնդրում է հիշել իր ծնողներին և իրեն։

Գ

184 ա Վայ, որ գծեոս ի դողմանէ, ու աչքս վատա || տես, և ես ծերացեալ կամ։ Խ. (40) տարի է, որ կու գրեմ։

Է

206 ա Վայ, որ գծեոս կու դողայ, ինչ առ || նեմ, ուժեղ չեմ կարել, որ չգրեմ, Թողութիւն արարէք վասն աստուծոյ։

Ը

70 բ Զտառապեալ և զսեվացեալ] հոգով անձն Սարգիս կոչեցեալ եպիսկոպոս և գործովք Թափուր ի յամենայն մասանց բարեաց աղաչեմ յիշել ի տէր, և աստուած զձեզ յիշէ, ամէն։
Ը. (8) օրն գրեցաւ գլուխս [Մատթէոսի]։*

## 197

## ՄԱՇՏՈՑ

Երևան 3670

Գրիչ՝ Սարգիս

154 ա Եւ զնուաստ գրչակս փծուն՝ զտառապեալ անձն զՍարգիս եպիսկոպոս** յաղաւԹս յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ յիւր ամենագութ յողորմութիւնն, ամէն, ժսհտ։***

## 198

## ԹՈՒՂԹ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ

Կ. Եղեան, Պետերբուրգ 72

Նուիրատու՝ Սարգիս

Կամաւն աստուծոյ մեք՝ նուաստ ոգի Սարգիս եպիսկոպոս, իմ սրտի կամաւ և յաւժարութեամբ տուաք զգիրքս զայս ըստ հոգոյ որդոյն իմոյ և ձեռայսնոյց աշակերտին՝ Մարտիրոս աբեղային, զոր տէր աստուած վայելել տացէ։

Արդ, եթէ ի մերոց սուտ ազգականաց կամ յաւտարաց հակառակին այսմ հայրէնատուր աւանդութեանս՝ նայ այնպիսի[քն] մասն և բաժին զՅուդային և զխաչահանուացն առցեն և ընդ անիծիւք եղիցին։

* Ութ օրում Սարգիս գրիչն ընդօրինակել է 70 թերթ, ավելի քան 88,000 տպագրական նիշ։ Եթե նույն արագությամբ է նա աշխատել նաև ձեռագրի հաջորդ մասերն ընդօրինակելիս, ապա ամբողջ ավետարանի ընդօրինակությունն ավարտած պետք է լինի շուրջ մեկ ամսվա ընթացքում։ Արտակարգ արագաշարժ և վարժ գրիչ է։

** Ամենայն հավանականությամբ նախորդ համարի տակ բերված հիշատակագրությունների հեղինակը Սարգիս եպիսկոպոսն է։ Ըստ այդմ էլ այս և հաջորդ անթվական հիշատակարաններն տեղադրում ենք նրան առընթեր՝ 1416-ի թվաշարքում։

*** Փոխարինագիր ծածկագրով կարդացվում է «ամէն»։

## 199

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երեւան 2074

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Կափոսի վանք

428 բ Փառք... որոյ ողորմութեամբն սկսա եւ աւգնականութեամբ նորին աւարտեցի զփափագելի եւ ղտենչալի զգիրս զայս Քարոզաց, արարեալ երիցս երանեալ մեծ հռետորին Գրիգորի րաբունապետին՝ ի պայծառութիւն տօնից տէրունականաց եւ ի գովեստ սրբոց նորին եւ սիրողաց, նաեւ ի զուարճութիւն մանկանց եկեղեցոյ։ Զոր ես եղկելիս, թափուրս յամենայն բարեգործութեանց, ծոյլս եւ տարտամս յամենայնի, Գրիգոր բանի սպասաւրս, պետ կոչեցեալ ըստ անուանեցելոցն եւ ոչ ենթակայեցելոցն, նմանապէս եւ ես անուանս սոսկալոյ հաղորդեալ եւ ի յարմար գործոյ սորին ամենեւին տարակացեալ, յերկուցն ասեմ առաքինութեանց՝ տեսականին եւ գործնականին, մանօանդ թէ եւ տեղի տուեալ սերմանցն չարին։ Եւ թէպէտ այսու ամենայնիւ զգածեալ էի, սակայն փափագող եղէ այսմ՝ շնորհաբուխ մատենիս, եւ զի որպէս հոգով հիւանդացեալ, սապէս եւ մարմնովս տկարացեալ՝ աչաւք շլացեալ եւ գլխով ցաւեցեալ, եւ բոլորովին անգամօք անպիտանացեալ։ Այլ քանզի յաստուած խրախուսեալ եւ ի սատարութիւն իմոցս հարազատաց, ի բաց եգեալ ղանձին տկարութիւն՝ գրեցի զսա, մանաւանդ յորդորմամբ եւ նպաստաւորութեամբ բազմերախտ եւ գորովագութ հօրս իմոյ հոգեւորի ուսուցչի՝ տէր Սարգիս բանի սիրողի եւ քաջ երաժշտապետի, զոր տէր Յիսուս գրեսցէ զսա՝ իւրաւաքն հանդերձ ի գիրն կենաց անջնջելի։

Արդ, գրեցաւ սա ի սուրբ մենաստանիս, որ յորորջեալ կոչի Կափոսի, ընդ հովանեաւ սրբոյն Յակոբայ սքանչելագործ հայրապետին Մծբնա, ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս եռամեծի եւ քաջ փիլիսոփայի՝ բազմերախտ հօրս մերոյ եւ վարժապետի Գէորգեա՝ արի եւ քաջ րաբունապետի։ Զոր յայսմ ժամանակի զսա տեսանեմք օթեան հոգոյն սրբոյ եւ հանգուցանող կամացն աստուծոյ, զոր եւ տէր Յիսուս պահեսցէ զսա յերկարեալ ամօք եւ բազմերամ ժամանակաւք մինչեւ ի խորին ծերութիւնն՝ անսասան կենօք եւ երկու աշխարհօք, ամէն։

Այլ եւ գրեցաւ սա ի թվականութեան հայկազեան տումարիս յաբեթականս տոհմի ՊԿ.-երորդի Կ. եւ Ե. յաւելորդի (1416), ի դառն եւ յանբարբ ժամանակի, ի վերջ եկեալ անցաւորիս։ Նաեւ առ մեզ կատարի բանն տէրունի, թէ՝ Յաւուրն յայնոսիկ յարիցէ ազգ յազգի վերայ եւ եղիցին սրածութիւնք եւ մահք տարաժամք, զոր եւ միոյն ականատես եղաք եւ միւսոյն ականջալուր։ Քանզի առ մեզ եղեալ մատ սաստիկ յեկեղեաց գաւառիս, զոր ով կարասցէ ընդ գրով արկանել զաղէտս տարակուսանացս։ Այլեւ գնացեալ անօրէն բռնաւորն Խարա-Ուսուֆ կոչեցեալ, վառեալ չարութեամբ, եւ մտեալ ի Տուքն Վրաց, եւ առեալ զքաղաքն Յաղլծխա, եւ զամենեսեան, առհասարակ, զարսն ի

սուրն սուսերի մաշեալ, և զկանայս և զմանկունս գերի վարեալ. և այլ այսպիսի յոլովս գոյ տեսանել ի հասեալ ժամուս։

Արդ, յերեսս անկեալ աղաչեմ զսիրողքդ բանի, որք յետ մեր հանդիպիք, յիշել ի Քրիստոս զվերոյգրեալ զգծող սմին՝ զտառապեալս ոգի, և բազում և անթիւ սխալանաց մերոց՝ բանիցն և գործոցն, կամայիցն և ակամայիցն ներումն թողութեան հայցել, նաև ծնողաց մերոց, և եղբարց, և ամենայն ազգականաց մերոց, և ամենայն աշխատողաց ի սմա, զոր և ձեզ և մեզ և ամենայն հաւատացելոց, առհասարակ, ողորմեսցի Քրիստոս ի միւսանգամ գալըստեանն իւրում, և երանաւէտ ձայնին արժանի արասցէ, ամէն։

Այլև աղաչեմ յիշել ի տէր զպանծալի եղբայրս մեր զյիմաստայեղձ փեսայն եկեղեցոյ զՂազար բաբունին, և զհամշիրակ եղբայր մեր զԹումա բանի սպասաւոր, որ զօրինակն շնորհեցին մեզ, զոր տէր Յիսուս պարգևեսցէ ինքեանց և ծնօղաց իւրեանց դերկնից արքայութիւնն, ամէն։

## 200

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆՑ

Երևան 5869

Գրիչ՝ Աւետիք

ա

402 բ Այլ և զիս՝ զանարժանս և զեղկելի զփցուն գրիչս՝ զԱւետիք սպասաւոր բանի և սոսկ անուամբ վարդապետ, աղաչեմ զսուրբ ընթերցողսդ և զամխոյժ մտաւորսդ յիշել ի սուրբ և ի մաքրափայլ աղաւթս ձեր, և մեղաց թողութիւն հայցել մեզ, և ծնողաց մերոց, և ուսուցչաց, և ամենայն մերձաւորաց. և աստուած զձեզ յիշեսցէ և կատարեսցէ զխնդրուածս ձեր, ամէն։

Այլ և աղաչեմ յիշել ի տէր զպատուական եղբայրս մեր զԹումայ գրոց աշակերտս, որ պատճառ եղև աւրինակի գրոցս, որ բազում հնարիւք առեալ մեզ պարգևեաց, զոր տէր Յիսուս գրեսցէ զսա ի գիրն կենաց անջնջելի, հանդերձ ծնօղօք իւրովք, ամէն։

Այլ և աղաչեմ անմեղադիր լինել սխալանաց և խոշորութեան գրոցս, զի աւրինակն թագուն էր և խիստ ըշտապով։ Ի թվականիս ՊԿԴ. (1415)։

բ

321 բ ...Այլ և եղկելիս յամենայնի և թշուառացեալս ոգի, անարժանս և յետնեալս յամենայնի Աւետիք պիտականուն փափագող բանի՝ գծող այսմ տառի, յերեսս անկեալ մաղթեմ զամէներջանիկ բանասէրքդ, որ յետ մեր հանդիպիք սմա յընթերցումն կամ ի գաղափարումն, զի ի մաքրափայլ աղօթս ձեր յիշման արժանի առնիցէք

զմեզ՝ հանդերձ ծնօղօք մերովք և ամենայն արեան մերձաւորօք։ Եւ սխալանացն և խոշորութեան գրոյս անմեղադիր լինել աղաչեմ, զի այսչափ էր կար մեր, այլև կարի շտապով էր։ Գարձեալ աղաչեմ յիշել ի տէր զհոգևոր հայրս իմ և զլոյժ երախտաւոր ուսուցիչս իմ զտէր Սահակ րաբունի սպասաւորս և զքաղցրաձայն երաժիշտս, զոր տէր Յիսուս գրեսցէ զսա ի գիրն կենաց անջնջելի, ամեն։ Այլ և զհամշիրակ եղբայրն մեր զՅոհաննէս րաբունին, որ զօրինակս շնորհեաց, այլ և զպատուական եղբայրս մեր զԹումա րանի սպասաւորս, որ բազում աշխատութեամբ առեալ զօրինակն և մեզ շնորհեաց, նայ և զամենայն երախտաւորս ի սմա աղաչեմ յիշել ի տէր և մեղաց թողութիւն հայցել, զոր և ձեզ յիշողացդ և մեզ, առհասարակ, ողորմեսցի Քրիստոս ի միւսանգամ գալստեանն իւրում, և եկայք ձայնին արժանաւոր արասցէ լսել, ամէն։

Ի թվականիս ՊԿԵ. (1416).*

## 201

## ՄԱՇՏՈՑ

«Լոյս», 1905, էջ 140—141, Բաւու

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Երզնկայ

Գրուած է Երզնկայի ս. Յակոբ (Մեծրնա) եկեղեցին «ձեռամբ յոգնամեղ և անպիտան գրչի Յովանիսի, որ անուամբ եմ քահանայ և գործովքս զազրալի»։ Գրութեան թուականն է ՊԿԵ. (1516)....։ Գիրքըն գրուելուն ծախքը ևլն. հոգացողն է Նուրախաթուն. Թէպէտ միևնոյն ատեն կը յիշուին Յովհաննէս աւագերէց մը և իր որդին Մկըրտիչ, որ սարկաւագ է եղեր։ Ասոնք գրել կուտան իրենց եկեղեցիին համար որուն անունն է Լուսաւորիչ....։

## 202

## ՄԱՇՏՈՑ

Նոր-Ջուղա 420

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Վան

171ա ...Արդ, գրեցաւ մաշտոցս ի քաղաքիս որ կոչի Վան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Վարդանա, ձեռամբ յոգնամեղ և անարժան, սուտանուն քահանայի Կարապետի, ի թվ. ՊԿԵ. (1416)։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա տիրելով, կամ կարդալով, կամ աւրինակելով յիշեցէք ի սուրբ և յարժա-

* Այս տողը գրված է կարմիր թանաքով։

նաւոր յաղաւթս ձեր զստացող սորա զԿիրակոս կուսակարաւն քահանայ, և զծնողքն իւր՝ զհայրն Մկրտիչ և զմայրն Աղբրաց, և զհոգևորհայրն զԱստուածատուր քահանայ, և զքուերորդին զԱւետիս քահանայ և զՍտեփանոս, և զծնաւղքն իւրեանց՝ զհայրն Սարկաւագն, և զմայրն Գուճար: Դարձեալ, յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զԱստուածատուր տնտեսն, որ աւգնական եղև մաշթոցիս, և զեղբայրն զՅակոբ, և զծնօղսն իւրեանց՝ զհայրն Գրիգորէս, և զմայրն Արղուն-Մելիք, և զյառաջ յիշեալսն զԿիրակոս քահանայ և զԱւետիս.... Ընդ նմին և զանարժան գծողս զԿարապետ աշխարհի երէց... և եղբաւրն իմ Վարդան սարկաւագի, և իմ ծնողացն՝ հօրն իմ Յովանէս քահանայ, և մաւրն իմ Ջմրութի, ամէն։

Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զյառաջ յիշեցեալն զԿիրակոս քահանայ, և զԱւետիս քահանայ, և զԱստուածատուր տնտես, որ ըստացան զսա յարդար վաստակոց իւրեանց և ետուն ի դուռն սուրբ Աստուածածնին Սղզայոյ։

## 203

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երուսաղէմ 2179

Գրիչ՝ Յովճանէս
վայր՝ Հիզան, ս. Խաչ վանք

...Նաև զհօրեղբայրս իմ զՅովանէս և զՄարտիրոս, նաև զյիշատակի արժանաւորն՝ զհոգևոր հարքն մեր զՅոհանէս և զԱւետիս բաբունիքս [յիշեցէք]...։ Գրեցաւ ...ի գերահռչակ ուխտս որ կոչի Աւաք սուրբ Խաչ... ի Թուականիս ՊԿԵ. (1416), ի գաւառիս Հիզանքաղաքիս։

## 204

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 2148

Գրիչ՝ Մելքիսէդ

ա

377 բ ...Արդ, գրեցաւ սա ձեռամբ բազմամեղ գրչի Մելքիսէդ պիտականուն բանի խնդրողի, ի վայելումն եղկելի անձին իմոյ, այլ և մանկանց եկեղեցոյ։ Եւ ստացայ զսա եռափափաք սիրով անջինջ յիշատակ ինձ անարժանիս, և ծնաւղաց իմոց, և ամենայն արեան մերձաւորաց, ի շրջագայութեան Հայկազան տաւմարի ՊԿԵ. (1416) թուիս։

Արդ, յերեսս անկեալ աղաչեմ զամենեսեան սրտառուչ մաղթանաւք՝ զհանդիպողսդ այսմ աստուածային և հոգէկեցոյց գանձիս կարդալով կամ գաղափարելով, կամ տեսութեամբ, յիշեսջիք ի մաք-

րափայլ տղաւթս ձեր ջերմեռանդ սիրով զիս՝ զանպիտան և զփցուն գծող սորա, և զծնաւղսն իմ՝ զհայրն իմ զՏիրա[տուր | | ]*

Բ

Կաֆայ ասացեալ

Աւրհնեալ ես Քրիստոս աստուած
Եւ գովեալ յամէն բերանոյ,
Որ զամենեցուն կարիս
Կատարես առանց հոգալոյ.
Այսաւր ղանպիտան գրչիս
Լցուցեր զիղձս տենչալոյ,
Զի յիս չունէի կասկած
Զայսպիսի գործ վճարելոյ։
Ով հաստատ ի քեզ յուսա
Զանկանի ի գործ ամաւթոյ
Ինքն, դու հնար առնես
376 ր 'Ի աւարտես առանց հո||գալոյ։
Քեզ փառք և պատիւ տացուք,
Գոհութիւն ընդ հաւր և հոգոյ,
Որ զմեզ արժանի առնես
Ցառագասան մտանելոյ։

205

ՀԱՐԱՆՑ ՎԱՐՔ

Երևան 4921

Գրիչ՝ Յակոբ
վայր՝ Ղրիմ

248 բ ...Արդ, եղև գրաւ գրչութեանս ի թվականիս Հայոց || ՊԿԵ. (1416), յաշխարհս Հոնաց, որ կոչի այժմ Ղրիմ, ի վանքս որ է յանուն սուրբ Խաչին, որ մերձ է | | |, ի հայրապետութեան տեառն Պօղոսի, և յարհիեպիսկոպոսութեան ամենայն հիւսիսայնոցս տէր Կիւրեղի, ձեռամբ անարժան և պիտականուն կրօնաւորի Յակոբի մեղայպարտի։

Արգ, յերես անկեալ աղաչեմ զձեզ, ով դասք լուսերամից և գումարք խաչակրօնից, որք հանդիպիք ի սմա կարդալով կամ օրինակելով, թողութիւն մեղաց հայցեցէք եղկելի գծողիս և ծնողաց իմոց՝ հօր իմոյ և մօր իմոյ, և եղբօր իմոյ Ամիր-Սարգըսին, և ամենայն արեան մերձաւորաց իմոց...։

Այլ և տգեղութեան գրոյս անմեղագիր լերուք, զի կար մեր այսչափ էր, և թէ մեղադրէք, նա զայն դուք գիտէք, ձեր կամք է և

* Մի թերթ պատռված։

*մեր արժանք։ Նւս առաւել յիշեսջիք զօրինակիս շնորհօղն՝* զՄելքիսեդեկ *կրօնաւորն, և զնորին աշակերտն՝* զՎարդան *կրօնաւորն, և քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։*

## 206

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Նոր-Ջուղայ 547, Ս.Տ.Ա. և Մ.Տ.Մ.*

*Կազմող՝* Թումայ Թավրիզեցի

343 բ *...[Ցիշեցէք] զվերջին ստացող քառավտակ սուրբ աւետարանիս զհեզահոգի և զսրբասնեալ քահանայ* զԶաքարիայ, *որ ետ վերստին նորոգել զսուրբ աւետարանս ի վայելումն անձին իւրոյ։ Արդ, որք հանդիպիք սմայ տարազաւ իւիք՝ յիշեցէք... զստացող սորա* Զաքարիայ *քահանայ, և զհայրն իւր* զԱմիր-Սարգիս, *և զմայրն իւր* զՀերիք, *և ծաղկեալ անդրանիկ զաւակն իւր* զԱլէքսիանոս, *և զհամշիրակ եղբարքըն իւր՝* զըԹաւաքալ *և* զԾրանշահն, *և զամենայն ազգայինս իւր՝ զկենդանիս և զհանգուցեալսն։ Ընդ նոսին և զեղկելի կազմողակս՝* զԹումայ էրէց Թավրիզեցիս *և զմերսն ամենայն։ Եւ ինքն, որ առատն է ի տուրս պարգևաց, որ տա առատապէս և ոչ նախատէ, ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշելեացս, առհասարակ, ողորմեսցի, ամէն։ ՊԿԵ. (1416) Թուականիս կազմեցօ։*

## 207

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրգ. Նօտ. 49, Արճէշ*

*Գրիչ՝* Յոհաննէս
*վայր՝* Երուսաղէմ

*...Արդ, գրեցաւ սա ձեռամբ* Յոհաննէս *սուտանուն քահանայի*... ի մեծափառ և ի գերահրաշ աստուածակոխ քաղաքս* Երուսաղէմ, *ի Թուականի Հայոց ՊԿԵ. (1416), ի մէջ Ցարութեանս, ի դուռն սուրբ գերեզմանիս, և ընդ հովանեաւ սուրբ Գողգոթայի և այլ տնօրինականացս Քրիստոսի աստուծոյ մերոյ։*

## 208

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

*Փարիզ 31, Մ.Տ.Մ.*

*Գրիչ՝* Ղազար

83 բ *Այլ և զիս՝ զանարժան և զեղկելի զփցուն գրիչս և* զՂազար *սպասաւոր բանի և սոսկ անուամբ վարդապետ աղաչեմ զսուրբ ընթերցմամբ յիշել...։*

---

** Սրա մասին մանրամասնություններ կան ստացող Կարապետ վարդապետի հիշատակարանում, տես 1421-ի Թվաշարքում։*

Այլ ես աղաչեմ անմեղադիր լինել սխալանաց և խոշորութեան գրոյս, զի գրչութեան արհեստին այսքան հմուտ էաք, և կար մեր այս է։ Զաւելին ջնջէ և զպակասն ուղղէ և զաստուած-ողորմիսն ասա, և աստուած զքեզ յիշէ, ամէն։

Այլ և մարթաւորս տկար սաստիկ և մարթաւոր ընչից ես առաւել աղքատ, որ անգամ թղթի գին ոչ ունէի. ի թվիս ՊԿԵ. (1416)։

## 209

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ԳՐՈՑ

Երևան 5674

Գրիչ՝ Անդրիաս

ա

238 ա ...Աստանաւր յանկ ելեալ կատարեցաւ տառ[ս] այս իմաստայպատում, որ կոչի Լուծ[մունք] արտաքնոց, բացայյայտեալ զսա մեծ վարդապետն Հայոց Գրիգորի, ի թվիս ՊԿԵ. (1416), ձեռամբ Անդրիաս սուտանուն խաբեղայի, որ զանունս ունիմ և զգործս ոչ։ Այլև զըստացող սուրբ տառիս՝ զԿարապետ վարդապետ, և զեղբայրն իւր Յովանէս կրաւնաւոր, և զամենայն մերձաւորս՝ զկենդանիսն և հանգուցեալսն ի Քրիստոս, ամէն։

Արդ, որք հանդիպիք սմա ուսմամբ կամ աւրինակաւ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զԿարապետ վարդապետս։

բ

16 բ Աստուած լուսաւորէ զԹումայ վարդապետի հոգին։

գ

151 բ Զներսէս կրաւնաւոր, որ սիրով ընկալաւ զիս, [յիշեցէք]։

## 210

## ԳԱՆՁԱՐԱՆ

Փիրդ. Նօա. 49, Վարագ

Գրիչ՝ Յովհաննէս

Որք նուազէք աստուածային անուշաձայն եղանակաւ առ դրան սուրբ Աստուածածնիս և սուրբ Սարգսի զօրավարիս՝ յիշեցէք... գրիչս Յովհաննէս... քահանայ, հօրն իմ Մկրտիչ քահանային....։

Այս է առաջին գիրն, զոր գրեցի, ի թուականիս Հայոց ՊԿԵ. (1416)։

## 211

## ՈՏԱՆԱՒՈՐ ՆԵՐԲՈՂԵԱՆՔ Ի ՎԵՐԱՅ ՍՐԲՈՑ ԵՒ ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 8689*

*Գրիչ՝* Մատթէոս Մոճոզոճ
*վայր՝* Գանձասար

ա

86 ա *Փառք քեզ կերտող գոյեղինիս, և բոլորող կիսագնտի և եթերի, և
կառուցող հաստահիմն դեմետրի և նիւթոյ պարզոյ, և ջոկտրող ի
միջոցի աստ սեռի և տեսակի և մանրամաղ հիւղէի՝ հայր և որդի և
սուրբ հոգի, որ ներեցեր քոյին մարդասիրութեամբդ առ բովանդակ
մեղանչականս յերիս սեռս՝ մատնադէտ և փծուն գրչիս* Մատթէոսի՝
*անարժան քո ծառայի հասանել ի վերջք աստուածախումբ տառիս և
հայել խոհական մտօք և տեսանել զգալի աչօք զվերջիս գիծ տառիս...։**
87 ա *...Արհեստաւորք յայտ կացուցանեն յանպատշաճ իրաց զպատ-
շաճաւորն և զպիտանին, որպէս հիւսունք ի մայրից՝ սեղան և աթոռ,
կարուակք յօդից՝ կօշիկ և զգեստ, դարբինք ի քարանց՝ երկաթ, և եր-
կաթոյ՝ սուսեր և այլ ինչ գործի. ահա այսոքիւք նըմանին մարդիկ
աստուծոյ, և արարչակից կոչին...։*
*Յորոց մի էր և ոմն* Մանուէլ *քահանայ՝ վերջին ի ծնունդս ման-
կանց եկեղեցւոյ, որ թէպէտ յանկար հասակի այն ինչ յարբունս հա ||-*
87 բ *սեալ երիտասարդական ձեռոյ և կերպարանաց, ի մանկութենէ կրելով
զխիղճ մտացն և ելս ի մտի դնելով ի հովտէս տրտմութեանց։ Վասն
որոյ նախքան զայս գործառնութիւնս թողեալ զմեզ և զծնօղսն իւր և
զեղբայրսն լալագին երեսօք՝ հետևեաց տեսանել զտեղի կոխման գար-
շապարաց մարմնացեալ բանին աստուծոյ* յԵրուսաղէմի *և երկիրպա-
գանել սուրբ տեղացն, ուր կացեալ են ոտք նորա, ըստ մարգարէին։
Յորում ճանապարհին բանսարկուն ոչ սակաւ փորձութիւնս յարուց-
եալ՝ ալեկոծութիւն ի ծովու և ծփանս ի մէջ կոհակացն՝ ամսօրեայ
ժամանակօք, որպէս* Պօղոսին *յաւուրս աշնան, յորոց զերծուցեալ աս-
տուած և տարեալ հասոյց յիւր սուրբ տնօրէնութեան տեղեացն տե-
սումն...։*
88 ա *...Եւ մարգարեն յառաջագոյն գոչէ զպատուականութիւն սմին իրի.
թէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի* Սիոն, *որ է գիրք, և ընտանի* յԵրու-
*սաղէմ, որ է յիշատակ նորին յորքայութեանն աստուծոյ։ Զայսպիսի
բանքս ի միտ ածեալ յորժամ դարձաւ* յԵրուսաղէմէ՝ *յետ երկուց
ամաց, առեալ զնիւթ թղթիս ի* Դամասկոսէ, *և եկն խաղաղութեամբ*

* *Բաց ենք թողնում մի ընդարձակ հատված, որի մեջ գրիչն անում է աստվածաբանական դատողություններ։*

առ մեզ. և Թախանձեալ զհոգիս իմ առ ի փափագմանն կատարուﬓ, գրել զյիշատակարան մատենից բոլոր տարոյն, որ է ի բանից ատուածաշունչ տառից, յարմարեալ ի հարցն սրբոց շարժեալք ի հոգւոյն, կարգեալ կերակուր հոգւոց իւրաքանչիւր աւուր ըստ կարգի։ Եւ իմ տեսեալ զջերմեռանդ սէր նորա, մանաւանդ հայեցեալ յաղքատութիւն ձեռինն և ի կատարեալ սէրն՝ ոչ խնայեցի յիս, այլ մոռացեալ զտկարութիւն ծերութեան իմոյ և զգառնութիւն ժամանակիս՝ յանձն առի գրել բազում և դառն չարչարանօք, նախ՝ զի օրինակ ոչ գոյր կատարեալ, և այն որ կայր՝ Թերի և սղալ և պակաս, զի ի մինն աւետարանն կայր յետ և յառաջ գրեալ և սաղմոսն ոչ, և միւսն՝ ներհակ սորին։ Զոր զկսկիծ մտաց կրեցի գնելով երիս օրինակս, և յերիցն զուգորդն ընտրեցի՝ որչափ և կարացի, որպէս տեսանէ աստուած և ի
88 բ Թերեացն լիապէս գծագրեցի, շարագրելով զբոլոր ա || մենին՝ զտըւընջեանն և գիշերոյ, ի հեշտութիւն համբակն և անտարակուսելի ﬓալ, այլ սկսեալ ի ծնընգենէն մինչև ի նոյն՝ վճարի։

Եւ այս եղև ի տունս Աղուանից, ի Թվականութեանս Հայոց տումարի ՊԿԶ. (1417), յորում ամի կատարեցաւ ընԹացք լուսնին ըստ Թուոյ մասանց նորին, զոր գրեալ էին նախնիքն մեր։ Յորում ամի եղև երաշտ սաստիկ, և չորացան ամենայն բոյսք, և ջուրք ցամաքեցան, ի հայրապետութեան տէր Կարապետ կաԹուղիկոսի տանս Աղուանից, ի ժամտնակի անիշխանութեանն քրիստոնէից։ Քանզի այն, որ կայր ﬓացեալ շառաւիղ տանն Բիւրթելեանց՝ գնաց փախըստական ի Տունն Վրաց, որոյ անուն Սըմբատ կոչիւր, և անդ՝ ի յօտարութեանն վախճանեցաւ։ Եւ ﬓացեալ Բ. որդիք իւր եկին ի հայրենիս իւրեանց, և ոչ են տեարք իշխանութեանն իւրեանց, այլ ընդ ձեռամբ անօրինաց։ Իսկ տանս Խաչենոյ բարեպաշտ ոﬓ կայր՝ Զազայ անուն, այն փոխեցաւ յաստեացս, և ﬓացեալքն յազգէ սորին՝ Ջալալն և որդիք նորին, և որդիք Զազային՝ Արղութէն և Ջալալադաւլէն, և եղբայրք նորին՝ Էլէգումն և Էլէդանն՝ են ի ներքոյ ձեռին անօրինացն. և այսպէս պակասեալ է իշխանութիւն տանս Հայկազեան։

Զի դառնացաւ ժամանակս և Թագաւորեաց ոﬓ Թուրքման անունն
89 ա Ուսուֆ, զի || ճանաչիւր ըստ Թոյլ տալոյն աստուծոյ լինել կշտամբիչ, ըստ այնմ Թէ զչարսն չարեաւ կորուսցէ, զի ի բառնալ գազանին չորրորդի Թամուրն կոչեցեալ Կաղն, բռնացեալ Ուսուֆն, պատերազմեալ ընդ որդիսն նորա երիցս անգամ, և սպան զնոսա, և ﬓացեալքն փախըստական գնացին յաշխարհն իւրեանց։ Իսկ զընական խանն Անմատ կոչեցեալ, որ եկն կամաւն իւրով ի Բաբելոնէ ի քաղաքն Թաւրէզ, և ի վերայ նորա եւս յարուցեալ Ուսուֆն, և սպան զնա։ Եւ ﬓացեալ աստանօր միայն ամիրայն Շըրուանայ, յորոյ յապստամբելն երիցս անգամ եկն ի վերայ նորա Ուսուֆն, և ի վերջին գալն՝ ձեռբակալ արար զնա և զբազումս ի միջի նոցա, եսպան զԹշուառական Թագաւորն Վրաց զԿոստանդին, որ եկեալ էր յօգնականութիւն իշխանին Շըրուանայ, և զերկիրն առ աւար և գնաց։ Զայս չափ չարիս առ գլխաւորս աշխարհիս հասոյց Ուսուֆն, իսկ առ փոքունսն զﬓնչ

*ասացից։ Զի վայրենացեալ զինուորք նորա ուր և հասանէին, ոչ զըն-
տանիսն գիտէին և ոչ զօտարսն, Թալանէին և կոփէին զձեռնհասն իւր-
եանց, թէ ի ճանապարհի, թէ ի տան, թէ առանձին, թէ ի քաղաքի,
և այսպէս ոչ գոյր Թիւ աղաղակի մերոյ։*

89 բ *Ահա այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց ‖ մերոց։ Եւ դեռևս
ի տարակուսի եմք, ոչ գիտելով թէ յառաջիկայսն զի՞նչ ծնանի մեզ և
կամ թէ որպէ՞ս տի զերծանիմք յայսպիսի դառն նեղութեանցս, ակն
ամենեցուն արտասուաթորր առ աստուած նայի, թերևս գթասցի ի մեզ
ողորմութեամբ։*

*Յայսպիսի գառն և ի նեղութեանց միջի գծագրեալ եղև գիրքս
իմով ձեռամբ՝ նուաստ և յետինս բանասիրաց, սապղար ծնունդս
եկեղեցւոյ* Մաաթէոս ՄոՆոզոնս, *որ ի ծերացեալ .արգանդէ ծընայ տե-
սանել զայս ամենայն վիշտս և այլ բազում ցաւս, զոր ոչ գրեցի։ Իսկ
տեղիք գծագրութեան սորա եղև ի սուրբ ուխտս* ԳանՃասարայ, *յեր-
կիրս* Արցախական, *որ այժմ կոչի* Խաչէն, *ընդ հովանեաւ սուրբ նըշ-
խարացս Յովհաննու Կարապետին, որ ի բերանոյ տեառն գովեցաւ և
ի նմանէ վկայի հաճոյ լինել, որ յամենայն ամի երիցս և չորս լոյս
ծագելով ի վերայ սուրբ նշխարացն՝ ակներև ամենեցուն, որում կարի
եմք ցանկացեալ, և վասն սիրոյ նորին ոչ կարեմք հեռանալ աստի,
զի է ի վերայ ճանապարհի։ Եւ յայսմ աղէտիցս, որ վերոյ ասացաւ
նախ քան զգրել գրոցս* պատահեցաւ մեզ յաւար անկանիլ կրկին ան-
դամ ի նոյն չարասեռ ազգէն Թուրքմանայ։ Զի ի գնալն ի* Շրուան
*մեք նոցա հանդիպելով՝ նախ զմեզ յաւար հարին, և ապա գնացեալ*
90 ա *ածին զմատունս ի ծակ իժ ‖ ից, և դարձեալ բերին ի վերայ մեր զա-
նօրէն ազգն Թաթարաց, և յաւար հարին կրկին զսուրբ ուխտս, և ոչ
ինչ ի մարմնաւոր ընչից Թողին, բայց միայն մեք և սրբութիւնքն։*

*Իսկ յետ այսր ամենայնի ծփանաց և խռովութեանց և աւարի,
Թախանձեաց զմեզ սիրեցեալ որդիս մեր* Մանուէլ *քահանայն, և ետ
գրել զսա ոչ ձրի, այլ գոյիւ չափ, զոր ինչ ունէր արկ առաջի մեր։
Եւ մեք ողորմութեամբն աստուծոյ և պարգևաց նորին սկսեալ, և
հանկ հանեալ հասոյց ամենողորմ աստուածն իմ, որում գոհութիւն
պարտիմ տալ յաւուրն բիւրս բազումս, որ ոչ յիշեաց աստանօր զմեղս
իմ և ոչ Թերի եթող, այլ արար առ իս ողորմութիւն և զիղձս կա-
տարեաց։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ աստուածա-
զարդ բուրաստանիս օրինակելով, և ընթերցմամբ, և կամ սոսկ տե-
սութեամբ, յիշեսջիք ի մաքրափայլ աղօթս ձեր զստացող սորին*
[զՄանուէլ] *քահանայ։***

* *Հավանաբար ակնարկում է ստորև մեջ բերվող Բ. հիշատակարանը։*

** *Սույն հիշատակարանը պահպանվել է ԺԷ. դարի ընդօրինակությամբ։ Ձեռագրի
մեծ մասի (էջ 39ա—226բ) ընդօրինակող գրիչը ստացողի անվան փոխարեն գրել է.
«զայս անուն և զ.», չկամենալով կրկնել Մանուէլ քահանայի անունը։ Մաաթէոս Մոնո-
զոնի կողմից գրված բնագրով պահպանվել է այս հիշատակարանի միայն սկզբի մասը և Բ.
հիշատակարանն ամբողջությամբ, որովհետև այն գտնվում է ձեռագրի հին մասում*

Եւ ի կատարման գրոցս պարտիք՝ Երանի որում թողան մեղք, ասել, և Քրիստոս որդի աստուծոյ, և զյիշատակա[րա]նս ընթեռնուլ յամենայն ամի , զի և ձեր յիշատակն ընթերցցի առաջի աստուծոյ ի դպրութիւն կենացն յաւիտենից։ Ցետ ամենեցուն ժտեմ և ես մեղսամակարթ անձնս, ներգեեալս և սևացեալ ոգիս, փերևետեալ և ձևագրեալ ի տիպս ողջանդամի, և ամենայն անդամօք հոգւոյ և մարմ-
90 բ նոյ || անբժշկելի վիրօք խոցոտեալ ի բանսարկուէն, քանզի յերեւելիսս օդիս և ի ներքոյ գայլ, ասացեալ բանիւք բազմօք, հեռացեալ յամենայն անխորժելի կրից որում հաճոյանայ աստուած, յետինս ի բանասիրաց և կրտսերս յորդիս եկեղեցւոյ՝ Մատթէոս Մոնոզոնս, որ բազում տառապանօք գծեցի ըստ իմում կարի, և ոչ կարացի որպէս վայել էր ձերում մեծանձնութեանդ զգեղեցկատիպն նկարել, որ վայելչականն է աչաց և դիւրընկալ մտաց. այլ ըստ մոլորեալ մտաց իմոց անցուցի զհարկ գրելեացս՝ ոչ հետեեալ ձեոյն և արհեստագրչութեանն, այլ միայն ճշմարտութեան և ուղղութեան և անթերի գոլոյն ի կարգի ընթերցուածսն։ Վասն որոյ երես անկեալ աղաչեմ մտադիւրութեամբ ընթեռնուլ և գծագրել որք գաղափարէք, զաւելորդն կշռել և պակասութեանն ներել իմում տկար անօթոյս. և յորժամ զուարճանայք ընթերցմամբ յիշեսջիք ի մաքրափայլ աղօթս ձեր, խնդրելով ի Քրիստոսէ զթողութիւն անթուելի յանցանաց իմոց, զի թերևս իջցէ մասն ինչ ի սրբանըւէր աղօթից ձերոց և յողորմութեանցն աստուծոյ յոսկերս հնացեալ մեղօք մեռելոյս և լուասցէ զաղտ մեղաց իմոց, և ջնջեսցէ զձեռագիր իմոյս յանցանաց և արժանի ·արասցէ յետին մշակացն…։

Բ

17 ր Այլ, ողբալլի որդիք մարդկան,
Որ նախքան զգալն ի դատաստան
Եհաս վճիռ ատենական՝
Մահ տարաժամ յանկարծական,
Եհար զորդիս իմ զորբական՝
ԸզՄկըրտիչ մանուկ տըղայն,
Եւ ըզՆերսէսն աղքատական,
Եւ զԴանիէլ՝ մանուկ բարի,
Այն ինչ հասեալ տիս հասակի,
Ոչ հասարակ կենաց գիպեալ
Եւ ոչ բարեաց այսմ աշխարհի,
Այլ ի կանաչ ի հասակի
Թառամեցան ի մին տեղի։
Եւ այս եղև վասն իմ մեղաց,
Որ շատացաւ ի յիմ կամաց

(էջ՝ 1ա—38բ)։ Համեմատելով հիշատակարանի սկզբի մասի բնագիրը ԺԷ. դարի ընդօրինակության համապատասխան մասի հետ, համոզվում ենք։ որ այն կատարված է մեծ ջանասիրությամբ և գրեթե առանց սխալների, ուստի և հրատարակվող բնագիրը լիարժեք է։

*Եւ բարկացոյց ըզմեծն աստուած,*
*Որով ի յայս ժամըս էած.*
*Ապա եհաս ինձ ժամ լալոյ*
*Եւ ըզփըլըցուկս իմ թափելոյ,*
*Զի քոն զայս ամս գիրս գըրելոյ,*
*Երիւք ամաւք յառաջ այսոյ**
*Սպանաւ արքայն* Վըրացւանոյ՝
*Այն* Կոստանդին՝ *գերեալն յոգւոյ,*
*Ի ձեռըն չար ազգ Թուրքմենոյ,*
*Որոյ* Ուսուֆ *անուն գոլոյ.*
*Եւ մեզ էած սուգ գերագոյ*
*'Առ երկուց դիմաց և խորհըրդոյ,*
*Զի փոխանորդ զնա ունէաք*
*Մեր մեծ ազգին, զոր կորուստք,*
*Եւ ի տեղի աղտեղութեան,*
*Որ գայլք և հաւք ըզնա կերան.*
*Եւ կարապետ մեծի վըշտիս*
*Եղև ուէր մերոյ վանիս.*
*Նախ* Փիրումար *ոճ ի չարեաց,*
*Որ էր իշխան նորին զօրաց,*
*Եկն ի վերայ դաշտին* Վատնեաց:
*Եւ նախ ըզվանքս մեր թալանեաց,*
*Եւ ի վաղիւն էանց, գընաց,*
*Եւ զեղկելի դաշտըն կոխեաց,*
*Մասն ինչ զնոցին ապականեաց.*
*Իսկ որ իշխանն էր այն դաշտին*
*Էառ ըզզօրըս* Շըրվանին,
*Էանց յայս կոյս ի* Կուր *գետին,*
*Նախ ըզմեր վանքս կոխեալ յոտին*
*'Ի ապա զվերին լերին սորին,*
*Ցոր մընացաք խնամօք վերին*
*Թափուր 'ւ ունայն և լալագին.***

## 212

### ԲԱՌԳԻՐՔ

*Երևան* 3202

Գրիչ՝ Զաքարայ
*վայր*՝ Խիզան

ա

230 ր ...*Արդ կատարեցաւ գիծս, որ կոչի Բառագիրք, ձեռամբ անիմաստ և ախմար գրչի* Զաքարայի *սուտանուն քահանայի* | | | *** *կո-*

** Զափածոյ այս հիշատակարանը, ըստ երևույթին, գրված է գլխավոր հիշատակարանից մի երկու տարի առաջ՝ հավանաբար 1415 թվականին։*

*** Հիշատակարանի սկզբում, ընդգծված տառերով, գրված է «Այս գրոցս չէ, այլ աշխարհի զրաղմանցն, զինչ անցք անցեալ է զայն է գրեալ ի վերայ իւրայնոցն»։*

**** Երկու բառ քերված։*

չեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Սարգսի զօ-
231 ա րա ‖ վարին և որդւոյ նորա Մարտիրոսի, և սուրբ Գէորգեայ զօրա[վա-
րին]։ Զպատահօղք սորա զամ[ենե]սեան աղաչեմ զինչ կերպիւ և իցէ
յիշել ի պաղապանծ յաղօթս ձեր զստացօղ սուրբ գրոցս՝ զԱւետիս
վարդապետն և զհարազատ եղբայրն իւր զՆերսէս կրօնաւորն՝ զգով-
եալն յամենայնէ, և զմարմնաւոր ծնօղքն իւրեանց, և զամենայն արեա-
նառուսն՝ զվերափոխեալսն առ Քրիստոս աստուած, աղաչեմ յիշ-
ման արժանի առնէք և աստուած յիշողացդ նովին չափով տացէ զիւր
առատ ողորմութիւնն։ Դարձեալ աղաչեմ յիշման առնել արժանի զմե-
ղաւոր գրիչս և զհայրն իմ զՄկրտիչ քահանայ՝ զփոխեալն ի Քրիս-
231 բ տոս | | |*

Այլ և գրեցաւ տառս ի յայսմ ամի, որ յարեան հարք[ի] վերայ
որդւոց և | | |զքա[ղաք]ն և գնային ի Ղարա-Յուսուֆ[Ն | | | ի
ԺԱ. հարիւր—Ռ. (1,100—1000), և նեղէ[ին] զքրիստոնեայս | | | ծե-
ծել[ով] Թուրքերուն, և բազումք փ[ա]խեան և զերծան ի ձեռաց նոցա,
զոր տէր աստուած այց արասցէ | | | Հայոց, ամէն։ Եւ էր Թվ. ՊԿԶ.
(1417)։

Եւ այս եղև ի զօրութենէ աւագ սուրբ խաչին,
Որ վրէժխնդիր եղև Ամիր-Դայութիւն,
Զի յանցեալ ամին, որ զսուրբ խաչն առին
232 ա Զղա ‖ ւլն և զերդումն իւրեանց փոխեցին,
Եւ սուրբ խաչին տուգանք հասուցին.
ԾՌ. (50,000) յառաջըն ալւին
Եւ ԻՌ. (20,000) ետև օգնեցին։
Նոյնպէս և հայրն Ամիր-Դայութին
[Ե՞տ իւ]րո զհումքն ի յիւրեն որդին,
Երբ որ չեկաց ի յիւր հրամանին,
Դարձեալ էառ 'ւ աքսորեաց զորդին,
Եւ այս եղև զօրութեամբ խաչին։

Այլ և սխալանաց և խօշորութեան գրիս անմեղադիր լեր, զի
հանապազ ի տարտարոս ի ներս կայինք, և չփոթէր միտքս իմ ի հոգս
աշխարհիս։

Բ

Հետ. ստացող՝ Բարսեղ

Զվերջին ստացող այս սուրբ տառիս, որ կոչի Բառգիրք՝ զտէր
232 բ Բարսեղ երիցս երանեալ րաբունապետն, որք ընթեռն ‖ ուք յիշեսջիք
առաջի ան[մահ]ին և միշտ էին, ի յաներեկ օրն վե[րջին]։**

* 231 բ էջի սկզբի երկու տողն ամբողջապես, և մյուս տողերի ծայրերը՝ 2—3 տառի չափով, մաշվել ու դարձել են անընթեռնելի։

** Ըստ հնագրական տվյալների հիշատակությունը գրված է ԺԵ. դարի վերջին։

## 213

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 5444

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Հիզան

307 բ ...Ուստի և տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ
ոՑ ի լուսածնունդ զարմից սրբոյ Միոֆնի Ստեփաննոս անուն, կրօ-
նաւոր գոլով ցանկացող եղև այսմ հոգիանորոգ և կենսաբեր սուրբ
աւետարանիս, զոր ի վաղուց հետէ փափագէր այսմ լուսալըական և
աստուածախօս մատենիս։
Այլ և գրեցաւ սա ձեռամբ [յո]քնամեղ և փցուն [գր]չի Յովա-
նիսի, ի քաղաքիս Հիզան կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուա-
308 ա ծածնի, և սր || բոյն Սարգսի զօրավարի, և սրբոյն Գէորգեայ, որ է
սակաւ մի հեռի, կենաւք տառապանօք և բազում պանդխտութեամբ։
Ի Թուականութեանս Հայոց ՊԿԶ. (1417), և ի հայրապետութեանն Նա-
հանգին Կիլիկեայ տեառն,* և մերոյ հայրապետութեան տեառն Դաւթի
Աղթամարեցւոյ, հեզահոգի և հացատու ամենայնի և բարի ընդդէմ
չար հատուցանողաց։
Արդ, ստացաւ զսա սրբասէր կրօնաւորն Ստեփաննոս, որ է ամե-
նայն առաքինութեամբ զարդարեալ. նախ՝ զի հեզ է և խոնարհ, և ոչ
սրտմտող բնաւ և կամ բարկացող. և իբրև զԳրիգորիոսն վկայասէր՝
սիրող եղև սա ամենայն աւուրս իւր [աստուածա]խօս և աստուածա-
[շունչ մատե]նից և միշտ աշխատել[ով] ըստ տէրունական հրամանին,
բռամբ [յափշտա]կէր** զարքայութիւնն [երկ]նից ինքեան և այլ[ոց,
զ]ողորմութիւն տալով [օգնէ]ին], զի եղիցի որպէս և սուրբ ա[ւետա]-
րանս այս ի յիշատ[ակ հո]գւոյ իւրոյ և ծնող[աց իւ]րոց, հօրն Յովանի-
ս[ին, և մօ]րն՝ Ազըզին, և ամենայն երախտաւորա[ց | | | ...։***
308 բ ...Եւ արդ, աղաչեմ զամենեսեան՝ զմանկունսդ նորածնունդ սըր-
բոյն Միոֆնի, որք հանդիպիք աստուածախօս սուրբ աւետարանիս կար-
դալով կամ օրինակելով, յիշեսջիք ի Քրիստոս զվերագրեալքս ի սմայ՝
զՍտեփաննոս կրօնաւոր, և զծնօղսն իւր, և զամենայն արեան մեր-
ձաւորսն իւր, և զանարժան գրիչս և զծնօղսն իմ ...։

Ի [յիշատակ մերոյ բանիս]
[Պարտիմք խառնել զբան աղէտիս]

* Անվան լրացման համար տեղ է բաց թողնված։

** Ձեռագրի աջ եզրին նորոգման ժամանակ թուղթ են փակցրել, այդ թղթի տակ են մնացել տողերի վերջին 4—6 տառերը։ Լույսի տակ պահելով դրանք աղոտ կերպով նշմարվում են ու տրված են մեր կողմից ուղղագիծ փակագծերի մեջ։

*** Շարունակությունը՝ 14 տող, պատռված է, պահպանվել են միայն նորոգման ժամանակ փակցված թղթի փակ եղող տողավերջերը, որոնք, սակայն, հնարավորություն չեն տալիս վերականգնելու պատռված մասի բովանդակությունը։

[Թէ որպէս] յայժմ դառնա...*

. . . . . . . . . . . . . .

Ց... անուոյն...

...սայ...ն... մեր ազգ[իս]

[Եղ]բայրն եհան եղբօրն ի...

Ջարիւնն ջուր եցոյց, վ[այ] զիս։

Ուստի և նոյն...յայս դարիս

Տարած[եցաւ] ի յօր վերջինս,

Ցարոյց... չար մերոյ ազգիս,

Զյետինս չար քան զառաջինս։

Վկայելով Գող[ոս]...նիս

Թէ վիշտս յազգէ եհաս առիս,

Որպէս և ազգ իսմայէլիս,

Որ հալածէ զՒսահակիս։

Անունն է չար սոցա մեծիս,

Թուրքըստանաց խըրոխտ ղանիս,

Ղարա-Յուսուֆ սև մակագրիս,

Որ սևէ զազգս մեր և զազինս։

Նայ կայ 'ւ իշխէ Մերդնայ բերդիս

Եւ Թավրիժու մեծի թաղթիս,

Նըւաճելով զքուրդ և զպարսիկս,

Գահանջէ հարկ և տոկոսիս։

Իսկ ընդ այս մեծ տրտմութիւնս

Մեզ յաւելաւ շատ [հ]եծութիւնս,

Ընդ յոյժ... մեր նեղութիւնս

....աւաց հե...թիւնս

Մ....տեցաւ....

Ցոյժ**

Բ

Ցա Զբազմամեղ սուտանուն ծաղկողս՝ զՅովանէս յիշման արժանի արարէք, աղաչեմ, ով ոք որ հանդիպի սմայ, և աստուած, որ առատն է ի տուրս բարեաց, մեզ և ձեզ առհասարակ ողորմեսցի, ամէն։

---

* Այս երեք տողը վերցնում ենք Ղ. Փիրղալեմյանի «Նոտաքք»-ից (էջ 152), ուր բերված է այս հիշատակարանից 11 տող։

** Էջի ներքին մասը պատռված է և շատ տողեր մաշված են։ Հնարավորին չափով աշխատեցինք վերականգնել բացակայող և մաշված մասերը։ Շարունակությունը, վերջին թերթի կորուստի պատճառով, չի պահպանվել։ Պահպանված տների սկզբնատառերով հոդ-վում է գրչի թերի անունը՝ «Ի Ցովանիս[է]»։

Գ

Ստացող՝ Ստեփաննոս

7բ Ես՝ Ստեփաննոս սուտ քահանայ,
Որ աբեղայ անուանեցայ,
Ի մահուանէ զարհուրեցայ,
Մանուկ տիաւք չարչարեցայ,
Ոչ տուն և տեղ ես ստացայ,
Արծաթ 'ւ ոսկի խորեալ չը կայ,
Զի քո խոստմանց տէր ցանկացայ,
Զոր Պետրոսի տուեր յապայ։
Մարգարէի բանին լւայ,
Որ երանի մարդոյ նայ տայ,
Թէ ում զաւակ ի Սիոն կայ՝
Ցաւիտենից ուրախանայ։
Արդ, աէր, ընկալ զայս, որ ստացայ,
Զորդի հոգւոյս որով ծնայ.
Եւ ընդ որդւոյդ աստուծոյ սայ
Քանքար բարեաց ինձ բազմանայ։*

214

ՇԱՐԱԿՆՈՑ

Փիրդ. Նոտ. 52, Լոնդոն, Բրիտ. Թնգ.

Գրիչ՝ Մարտիրոս
վայր՝ Հաղբատ

...Արդ, գրեցաւ գիրքս այս որ կոչի շարակնոց ի Թուականու-թեանս հայկազեան ՊԿԶ. (1417) ամի, ի սուրբ ուխտս Հաղբատայ, ընդ հովանեաւ սուրբ Նշանիս, և սուրբ Կաթուղիկէիս, և սուրբ գե-րեզմանիս Սարկաւագ վարդապետիս, և Շուշանայ սուրբ վկային. ի վարդապետութեան մեծ րաբունոյս և քաջ հռետորիս Յովհաննէս վար-դապետիս, ի յառաջնորդութեան տէր Զաքարէի, ձեռամբ փծուն գրչի Մարտիրոսի սուտանուն աբեղայի, ի վայելս անձին, և յետ մահուն յիշատակ հոգւոյ կրկին ծնողաց և եղբարց...։ Յիշեցէք ... և զհօրեղ-բայրն իմ՝ զտէր Յուհան, զհայրն իմ զԽոցատեղ, և զմայրն իմ զՍոնդիկ, զեղբայրն իմ զՍարգիս, և զամուսինն զՄամքան, և զաւակսն իւրեանց, զքոյրն իմ զՈւստիանէ, որ միամտութեամբ սպասաւորեաց մեզ...։

* Սույն հիշատակագրությունը գրված է ստացող Ստեփաննոս քահանայի նկարին առընթեր։ Ստեփաննոսը նստել է ծալապատիկ էջի ձախ անկյունում և ձեռքերը պարզել վեր, ուր մեծ գիրքով իր «չորեքկերպյան» աթոռի վրա բազմել է Քրիստոսը։

## 215

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 4841**

ա

*Գրիչ՝* Յովհաննէս
*վայր՝* Ջերմաձորոյ երկիր, Ակոռոյ վանք

*...Կատարեցաւ սուրբ աւետարանս ի յերկիրս* Ջերմաձորոյ, *ի*
361 ա ‖ *վանքս* Ակոռոյ, *ընդ հովանեաւ սրբոյն Ստեփաննոսի Նախա[վկայի],*
*ի յիշատակ ինձ և եղբօրն իմոյ* Մարտիրոս *քահանային, [որ դեռևս*
*տղա գոլով փոխեցաւ առ Քրիստոս և մեզ սուգ անպակաս եթող],* և*
*միւս եղբօրն* Սարգսին, *և ծնօղացն մերոց* Յակոբայ *և* Մինայի:
*Քրիստոս աստուած, թէպէտ որ անարժան ձեռօք յանդգնեցայ ի*
*գործ աւետարանիս քո, բայց դու մի խպառ բարկանար ինձ և մի*
*յիշեր զանթիւ չարիք տնաւրէնութեան իմո։ Ո՜վ մանկունք նոր Սիո-*
*նի սուրբ եկեղեցւոյ, ապաւինիմք ի Քրիստոս և ի սուրբ աղօթս ձեր,*
*զի յորժամ կարդայք կամ օրին[ակ]էք [յիշեցէք] ի Քրիստոս աստուած*
*զեղկելի անձն իմ զ*Յովհաննէս *գրիչ և զեղբայրքն իմ զ*Մարտիրոս *քա-*
*հանայն և զ*Սարգիս, *և զծնաւղսն մեր զ*Յակոբ *և զ*Մինայ, *և զհանիկն*
*իմ զ*Տիրանց, *որ բազում աշխատեցաւ ի սպասաւորութիւն մեզ։ Այլ*
*և զհօրեղբաւր որդին մեր զ*Պետրոս *քահանայ, որ և մասնակից եղե*
*սմա, և զծնօղսն իւր՝ զ*Թումէն *և զ*Գոհարն, *և զձեզ յիշէ աստուած ի*
*բարին, ամէն։*
*Դարձեալ, աղաչեմք զձեզ դասք լուսերամից, յիշել ի տէր աս-*
361 բ *տուած զհօրեղբաւր դուստրն մեր զ*Թամա ‖ րն, *որ մայրաբար գութ*
*տարաւ ի մեզ...։*
*Դարձեալ... միոյ աստուած-ողորմոյ արժանի արարէք զկիսա-*
*մահ անարժան գրիչս* Յոհ[աննէս], *որ ոչ մեռած եմ և ոչ կենդանի, և*
*զեղբարքն իմ զ*Մարտիրոս, *և զ*Պետրոս,** *և զ*Սարգիս, *և զկենակիցն*
*իւր, և զզաւակսն նոցա, այլև զ*Մկրտիչն, *և զկենակիցն իւր զ*Թամարն,
*և զորդիսն նոցա զ*Մխիթարն *և զ*Յովաննէս *քահանայ, և զամենայն*
*արեան մերձաւորքն մեր...։*
*Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի լաւ և յընտիր աւրինակէ ի*
*թվարերութեանս Հայկազեան տումարի ՊԿԶ. (1417), ի հայրապետու-*
*թեանս Հայոց տէր* Դաւթի:
*Եւս առաւել ողորմեա տէր աստուած* Սիրունին, *և կողակցոյն*
Համեմին, *և տղայոց՝* Հանէսին *և* Վանէսին, Հայրապետին, Թուրւանդին,
Մուդամին, *և* Նարընջին, Գուլստանին, *և* Առաքելին, *ամէն։****

---

** Փակագծերի մեջ առնված նախադասությունը մեջ ենք բերում հիշատակարանի սկզբի անհետաքրքիր մասից։*

*** Ձեռագրի 6 ա էջի վրա Աստուածատուր ծաղկողը նկարել է Յովաննէս գրչին և նրա աջ ու ձախ կողմերում՝ ստացողներ Մարտիրոսին և Պետրոսին, որոնք ծալապատիկ նստած են դահի վրա բազմած Քրիստոսի ներքևում (տե՛ս Նկ. 8)։*

**** Վերջին պարբերությունը գրված է գրչին ժամանակակից այլ ձեռագրով։*

Բ

*Ծաղկող՝* Աստուածատուր

15 բ *Ո՜վ եղբարք, կարաւտելոցն ողորմութիւն արարէք, զի և դուք զձեր կարօտութիւնն առնուք ողորմածէն աստուծոյ։ Աղաչեմ զձեզ յիշել աղաւթիւք զիս՝ զանարժան արեղայ* Աստուածատուր, *որ ծաղկեցի զսուրբ աւետարանս, և զհանգուցեալ հայրն իմ զ*Ատոմ, *և զմայրն իմ զ*Շաքար, *և զեղբարսն իմ զ*Թումաբէկ *և զ*Յոհաննէս, *և զհանգուցեալ զքոյրն իմ զ*Շահըրման, *և զհանիկն իմ զ*Գօհար, *և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։*



*Նկ. 8. Յոհաննէս գրչի և ստացողներ Մարտիրոսի ու Պետրոսի պատկերները։*

216

## *ՈՍԿԵՓՈՐԻԿ*

*Փիրգ. Նոտ. 53, Հզուն աւանի եկեղեցի*

Գրիչ
*վայր՝* Ցիպնայ վանք

*...Աւարտեցաւ ճառս որ կոչի Ոսկեփորիկ ի վանքս* Ցիպնայ, *ընդ հովանեաւ Կաթուղիկէիս, սուրբ Ստեփաննոսի և սուրբ Նշանիս Վասիլ Թագաւորի... ի Թուականութեան Հայոց ՊԿԶ. (1417), ի ղանութեան* Ոսուֆին, *և ի կաթուղիկոսութիւն Սըսայ* Գրիգորի *և յԱղթամարայ կաթողիկոսութեան տէր* Դաւթի, *ի չար և ի դառն ժամանակի ... առ ոտս մեծ բաբունապետիս մերոյ* Գրիգորի, *որ մականուն* Տերենց *կոչի։ Սա բազում աշխատութեամբ ուսոյց ինձ զգիրս ...։*

## 217

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

*Փիրզ. Նօտ. 52—53, Մշոյ ար. Կարապետ*

*Գրիչ՝* Աստուածատուր
*վայր՝* Նարեկայ վանք

...*Ի թուականութեանս ՊԿԶ. (1417), ի հայրապետութեան տեառն* Դաւթի, *և թագաւորութեան...* Ղարայ-Յուսուֆի...: *Իսկ իշխանութեան գաւառիս մերոյ* Մելիք-Մահմուտի. *լաւ պահէ զմեզ, աստուած զինքն հետ իւր առաջնորդին դասէ, ամէն։*

*Արդ, աւարտեցաւ սուրբ տառս, զոր արարեալ է եռամեծին* Գրիգորի *քաջ հռետորի և անյաղթ փիլիսոփայի։ Գրեցաւ ի վանս* Նարեկայ, *ընդ հովանեաւ սուրբ Վարդանայ զօրավարին, և աւարտեցաւ ի մեծ և հռչակաւոր սուրբ ուխտս սուրբ Յակոբ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, և սուրբ Յոհաննէս աւետարանչիս, և սուրբ Յակոբ հայրապետիս, և սուրբ Երից մանկանց, առ սուրբ աղբերս, զոր բղխեաց սուրբն Յակոբ, ձեռամբ գրչի* Աստուածատուր *կրօնաւորի։*

## 218

### ՄԱՇՏՈՑ

*Փիրզ. Նօտ. 50—51, Աղթամար*

*Գրիչ՝* Ստեփաննոս
*վայր՝* Տշող գիւղ

...*Յիշեցէք* ...զՍտեփաննոս *քահանայ, որ գրեցի զսա, և զհայրն իմ* զԳրիգոր *քահանայ, և զմայրն՝* զԽութլումէլիք, *զհօրեղբայրն՝* զՄարտիրոս *կրօնաւորն, որ... մարտիրոսացաւ, և զհարազատ եղբարսն իմ՝* զՅովհաննէս *և* զԱռաքել *սրբասէր քահանայք, գրեցաւ ի գեաւղս, որ կոչի* Տշող, *ընդ հովանեաւ սուրբ* Աստուածածնին, *և սուրբ Սիոնին, և սուրբ Կիրակոսին, և սուրբ Ստեփաննոս Նախավկայի, ի հայրապետութեան տէր* Դաւթի, *յոր էր թիւս ՊԿԶ. (1417), ի խնդրոյ կօշկակար բարեպաշտ* Թովմայի:

## 219

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Վրաց Թանգարան 17*

*Գրիչ՝* Բարսեղ

*Փառք ...որ ետ կարողութիւն և ժուժկալութիւն ինձ՝ տկարի և մեղսամակարթ և անարժան ծրողի* Բարսեղ *անուամբ եպիսկոպոս այլ ոչ գործաւք՝ հասանել յաւարտ աստուածախաւս մատենիս...։*

212բ ...Առաքեալ *ոմն անուն քահանա, սա կեցեալ յաշխարհի բազում վայելչութեամբ և յիշեաց զի յունայն և յանցաւոր և կորըստական է,*

ապա յոյս ի մտի եդ ստանալ յանցաւորաւքս զանանցն և մարմնաւորաւքս զհոգևորն. զամենայն ինչ զոր ունէր վաճառեաց ըստ տէրունական բանին և գնաց զհետ Քրիստոսի, ինքն երթեալ կնաւն իւրով փափաքանաւք տեսանել զտեղի տնաւրէնութեանն Քրիստոսի։ Եւ բազում նեղութեամբ գնացեալ նաւարկութեամբ՝ յերից ամսաւք նաւակածեալ, և անտի առաջնորդեալ վերին խնամովն՝ հասեալ փափաքանաց իւրոց, և դարձեալ ի գալն՝ անկեալ ի ձեռս աւազակաց, սրախողխող լեալ վիրաւորեցաւ։ Սայ էր բնական ի Հերգա գաւառէ, ի նահանգէ Առանա, ի քաղաքէ Բարտաւա, ի գեաւղջէ որ կոչի Պարիս, ժառանգ ունելով զՔրիստոս։ Վասն զի որք հետևին բարոյն ոչ յագին. յետ ամենայն բարեաց զոր գործեաց յաւել ևս՝ և ստացաւ զաւետա-

215 բ րանս ‖ զայս յիշատակ իւր, և ծնողաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց, և ամուսնոյ իւրոյ։

Նաև որք ընթեռնոյք զսուրբ աւետարանս, յիշեցէք ի Քրիստոս զԱռաքեալ քահանայ, և զամուսինն իւր զՀերիքն, և զհայրն նորա զԱմիրն, և զմայր նորա զԱրուզն, և զեղբայր նորա զՏպէլն, զՄխիթարքն, հաւրեղբայրն զԽոցադեղն, և զզաւակն զՅակորն, և ծնաւղս ամուսնոյն իւրոյ զէդիլն և զՋանխաթունն, և զեղբայրսն զՄխիթարն և զԴամուր-Բուղէն, և զամենայն արեան մերձաւորսն նորա։ Նայ և զիս՝ զբազմամեղ գրիչս զԲարսեղ միայնամեղօրս, [որ] չեմ իսկ արժանի յիշման, այլ յուսամ ի սուրբ յաղաւթս ձեր, զի ձերով բանիւ և խնդրուածաւք շնորհեսցէ աստուած զյանցանս մեր և գտայց ողորմութիւն ի նմանէ․․․։

Գրեցաւ ի թվ. ՊԿԶ. (1417)։

## 220

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՏԹԷԻ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 1303

Գրիչ՝ Գրիգոր.

ա

284 ա ․․․Արդ, ես՝ Գրիգոր սուտանուն կրօնաւոր տառատպեցի զայս աստուածային գանձս իմաստից բազում աշխատութեամբ ի բազում վայրի, յիշատակ | | |* և այլ ամենայն արեան մերձաւորաց՝ հանգուցելոց և կենդանեաց՝ գանձ աստուածային, ի յընթեռնուլն աշակերտողաց բանի ի մամու[լ]ս աստուածային վարժարանի։

Արդ, հայցեմք ի ճաշակողացդ յայսմ սեղանոյ յոքնարկն և ախորժահամ մատենիս, յիշատակել զմեզ ի մաղթանս ուղիղս և ի պատկանաւոր խնդրուածս սեռն սիրով ի միտս բարի՝ միով տէր-ողորմայիւ, որ և դուք եղիջիք գրեալ ի մատեանս կենաց վերին դպրութեանն, ամէն։ Ի թվ. ՊԿԶ. (1417)։

* 1424 թ. ստացող Կիրակոսը ջնջել է նախկին ստացողների անունները և ջնջված երկու տողերի վրա գրել՝ «Կիրակոս վարդապետին, իւր հաւրն՝ Մարտիրոսին, և Եղաւթին»։

Բ

90 ա *Աւախ, զի առաւօտ է և ես մեղօք երեկոյ, աւա՜խ։*

Գ

94 բ *Եւ. զեղկելի գրիչս՝ զԹափօրս ի գործոց բարեաց՝ զԳրիգոր, աղաչեմ յիշել ի տէր, զի խիստ ըշտապ գրեցի, մանաւանդ՝ գիշերով։*

Դ

96 ա *Աւախ, զմեղօք մեռելոյս յիշեայ, ո՜վ ընթերցող, զայս էջս յայլ երկիր և միւսն յայլ աշխարհ։*

Ե

184 ա *Աւա՜խ, թէ դառն եմ և տնանկ ի յիմ խելացս, ո՜վ եղբայր, յիշեայ զմեղօք մեռեալ ոգիս, զի միտքս խիստ ժխոր է, և օրինակս նոտր է, և միտքս ի գնալն խիստ քան զկենալն։*

Զ

212 ա *Աւա՜խ, զմեղօք մեռեալ հոգիս, զի ընդ հոգոյս և մարմինս է ցաւօք հեծեալ, թէ յիշես և դու յիշեալ լիցիս։*

Է

217 բ *Փառք Քրիստոսի, որ հասայ ի վերջս գծի, ո՜վ եղբայր, աղաչեմ յայսմ վայրի, զի միտքս յոյժ է աղտեղի և բազում խորհրդով ի լի, զի զոր սկսա՝ չկատարեցի, զայս կարդայ և զմեզ յիշեայ ողորմելի, զի աստուած ի տուրս է խնդրողի, և ձեզ և մեզ ողորմեսցի, ճրագով զայս նկարեցի, զաւուր պատճառն, որ կարգի, զի մեծ բարունին իմ պանծալի, որ* Յովաննէս *վարժող կոչի, և նայ ծասկի միտս ցանկողի այսմ տառի։*

Ը

256 ա *Քրիստոս անիծէ զմեծաւոր և զամբախտ մարդն, որ յականջէն ի բերանն որչափ է։**

## 221

## ՃԱՇՈՑ

*Երևան 9087*

*Գրիչ*՝ Եզեկիէլ

162 բ *Յայսմաւոր յիշատակ սրբոյն* Սահակայ Թաւրիզեցոյ, *որ ի* Շամախի *քարկոծեցաւ, ի թվ. Հայոց ՊԿԶ. (1417), յապրիլ ամսոյ ԻԱ. (21), յայս հինգշաբթի աւրս նահատ[ակ]եցաւ ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ։*

---

* Բ–Ը հիշատակագրությունները գրված են նշված էջերի ստորին լուսանցքներում, մանր տառերով։

222

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

«Արարատ», 1914, էջ 1035, «Ազգուլիս և շրջակայք»

Գրիչ՝ Քրիստոսատուր
վայր՝ Ղրիմ, Քիմճակի վանք

299 ր Փառք... որ ետ կարողութիւն ապիկար ծառայիս և զաւրացոյց ղմասունս բազկիս և հասոյց յաւարտ այսմ հոգենուագ մատենիս։

Արդ, եղև գրաւ գրչութեանս ըստ հոլովման շրջագայութեան ամաց թվակի ազգանաղեան ազինս աբեթական տումարի երկեակ՝ քառից հարիւրոց և տասանց վեցից և թուոց վեցից (1417), յաշխարհս Հոնաց, որ կոչի Ղրիմ։ Ի հայրապետութեան տեառն Գրիգորի և մերոյ արքեպիսկոպոսին տէր Կիւրեղին, ձեռամբ թարմատար և փցուն գրչի Քրիստոսատուր պիտակ անուն կրաւնաւորի, ընդ հովանեաւ հռչակաւոր երկնահանգէտ և սուրբ ուխտիս, որ կոչի Քեմճակի վանք, յանուն կենսակիր մօրն լուսոյ սուրբ Աստուածածնին, և առ հանգստարան երջանիկ և սուրբ հօրն մերոյ խաչաչարչար խոտաճարակ մեծ ճգնաւորին Քրիստոսի և տիեզերալոյս Աւետիք վարդապետին՝ յոյժ վայելուչ զուարթատեսիլ և տրամահալած լեառնային և դաշտային ծովահայեաց։ Արդ, այսմ հոգեպատում սուրբ կտակիս... ցանկացաւղ եղեալ սրբասնեալ և կուսակրաւն քահանայն Մաղաքիա, և ըստացաւ զսա արդեանց իւրոց, ի վայելումն անձին իւրոյ և հրահանգ և վարժիչ հոգւոյ և մտաց, և յիշատակ ծնաւղաց իւրոց...։

## 223

### Ժ Ո Ղ Ո Վ Ա Ծ Ո Ւ

*Կիպրոս, Նիկոսիա. ՀԱ, 1938, սյուն. 227—229*

Ցանկ գրոց ոմն գրասիրի

*Ի թուականիս ՊԿԷ. (1418) ի հոկտեմբերի ԻԵ. (25)-ն, ի յանուն աստուծոյ, գիրք որ կայ ինձ այսչափ.*

*Ա. Մէկ Աւետարան մի.*
*Բ. Մէկ Աւետարանի մեկնիչ Յոհան գլխոյն, Անան[իայ]ին.*
*Գ. Մէկ Նատր Նարեկ մի.*
*Դ. Մէկ Նատր Նամաւս մի, առանց կող.*
*Ե. Մէկ մեծ Կանոնք, վարդապետին տված.*
*Զ. Մէկ այլ Նամաւս, միջակ գրի, ցանկն ի վերջքն.*
*Է. Մէկ այլ Պրոկլի Դիադոխոսի.*
*Ը. Մէկ Կիւրղի պարապմանց, Նատրգիր, Մելքիսե[թ].*
*Թ. Մէկ Հաւաքմունք, իմ գրած է.*
*Ժ. Մէկ Արտաքին՝ Սահմանք և Սոկրատ և Պէրի արմէն[իաս].*
*ԺԱ. Մէկ Սաղմոսի մեկնիչ, ընդ կանոնի Վարդանա.*
*ԺԲ. Մէկ Աւետարանի մեկնիչ Յոհաննու ժողովածու Վարդանա, դասի.*
*ԺԳ. Մէկ Երգ երգոցի մեկնիչ, Նարեկա Գրիգորի.*
*ԺԴ. Մէկ Բառգիրք և Գրչութեան խրատ՝ ի մի.*
*ԺԵ. Մէկ Քարոզգիրք, ախթարմի է.*
*ԺԶ. Մէկ Կանոնք, ծաթգիր.*
*ԺԷ. Մէկ փոքրիկ Նարեկա լուծմունք.*
*ԺԸ. Գրիգորի Նիւսացոյ կազմութեանց.*
*ԺԹ. Մէկ գեղեցիկ Հաւաքմունք աւետարանաց.*
*Ի. Մէկ Մեկնիչ արարածոց, Եփրեմի.*
*ԻԱ. Մէկ Ղուկասու մեկնիչ, կրկին՝ Իգնատիոսի և Կիւրղի։*
*ԻԲ. Մէկ այլ իմաստասիրական՝ Պրոկլի.*
*ԻԳ. Մէկ մեծ արարածոց մեկնիչ դասի, ժող[ով]ած Վարդան վարդապետի.*
*ԻԴ. Մէկ Աղուանից գաւազանք.*
*ԻԵ. Մէկ Եւսեբի գաւազանք, մագաղաթ ձեռագիր։*
*ԻԶ. Մէկ Լուծմունք իմաստասիրաց Պերիմեն (իմա՝ Պերի արմենիաս)*
*ԻԷ. Մէկ մեծ Քարոզգիրք, լաւ.*
*ԻԸ. Մէկ այլ փոքր Նատ[ր] և ֆռանկի թուխտոն.*
*ԻԹ. Մէկ Հարցմանց։*

## 224

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀՆԳԱՄԱՏԵՆԻՆ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

*Երևան 1094*

400 բ Արիստոտէլեան *գրէնքն, որ կայ՝ այս է. Բ. Տաւնապաաճառ, Ա. Սաղմոսի մեկնիչ, Ա. Արարածք, Ա. Արարածոց մեկնիչ, Ա. Առակս, Ա. Յեսայի, Ա. Ճառընտիր, Ա. Տետր, Ա. Նեղոս, Բ. Նոհ (°), Բ. Ջուխտ սարծուղտ, չարմին, հացզորեն (°)։**

## 225

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

*Երևան 3525*

ա

*Խմբագրող՝* Յակոբ Ղրիմեցի

336 ա *Արդ, ես՝* Յակոբ *մեղաւոր վարդապետս* Ղրիմեցի, *որ ի խաչելութեան քարոզս աշխատասիրեցայ, աղաչեմ զձեզ յիշել ի տէր միով բանիւ։*

բ

*Գրիչ՝* Յովանէս

486 բ *...Ի թըւիս Հայկազան տոմարի Պ.-երորդի Կ.-երորդի և Է.-երորդի (1418) գրեցաւ և յանկ ելեալ [աւարտեցաւ] տառս աստուածային, և բուրաստանս երկնայ[ի]ն, դըրախտ եդեմային, և ծառս կենաց անմահութեան պտղոյն...։*

*Արդ, աւարտեցաւ սա յերկիրս | | |,*** *ընդ հովանեաւ սուրբ*

487 ա *Աստուածածնիս | | | քանզի ըստ ասիցն իմաստասիրին, թէ այս պատկեր է առն վեհին Պղատոնի, զոր գովելոյ անգամ ոչ եմ արժանի...։*

*Արդ, ես՝* [Յովանէս]*՝ մեղօք մեռեալ և բազմավէր ոգի Նվաստ վարդապետս շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի բազում և յոյժ տառապանօք և խիստ ջանիւ։*

*Արգ, աղաչեմ զձեզ, որք հանդիպիք սմա ուսմամբ կամ օրինակելով. յիշեցէք ի մաքրափայլ և ի սրաթուիչ յաղօթս ձեր* զՅովանէս *ստացողս և զծնօղսն իմ, զհայրն իմ | | | և զմայրն իմ | | | և զքոյրն իմ | | | և զայլ ամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիս և զփոխեցեալսն ի Քրիստոս, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք նոցա, աղաչեմ զձեզ, և դուք որ յիշէք՝ յիշեալ լիցիք ի Քրիստոսէ։*

---

* *Տեղագրում ենք նախորդ հիշատակարան—գրացանկին առընթեր, նկատի ունենալով ամբողջականության ընդհանրությունը։ Ըստ հնագրական տվյալների գրված է ԺԵ. դարում։*

** *Ուղղահայաց երեք գծիկներով այստեղ ցույց ենք տալիս հետագա ստացողներից մեկի կողմից միտումնավոր քերված բոլոր այն բառերն ու տողերը, որոնք վերաբերել են ձեռագրի գրչության հանգամանքներին։*

Դարձեալ, ես առաւել ծունր կրկնեալ աղաչեմ զսուրբ հանդիպողքդ յիշել ի սուրբ յաղօթս ձեր զհոգևոր հայրն իմ և զբազում երախտաւորն | | |, զի նա պատճառ մեզ այսմ ամենայն բարութեան, զոր աղաչեմ յիշատակել յաղաւթս ձեր | | |, զոր տացէ նմա տէր աստուած մեր փոխարէն զարքայութիւնն երկնից...։

Դարձեալ յիշեցէք յաղօթս ձեր [զՅակոբ վարդապետ Ղրիմեցին]*, որ եկն ի հեռաստանէ և բազում աշխա[տութեամբ | | |** զայս ՃՀԷ. (177) քարոզս և է ինչ, զի ինքն շարադրեաց ի շնորհաց սուրբ հոգոյն, զոր տացէ նմա տէր աստուած մեր զփոխարէն վաստակոց իւրոց։ Այլ և | | | եղբայր մեր, որ աշխատութեամբ սպասաւորեաց մեզ։ Այլ և | | |, որ հոգաբարձու եղև մեզ, հատուսցէ նոցա տէր աստուած մեր ըստ վաստակոց նոցա զարքայութիւնն իւր։ Եւ դուք խոշորութեան գրոյս անմեղադիր լերուք, զի օրինակն յայլ աշխարհ կերթայր, և զիս փութացուցանէին։

## 226

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

Երևան 2137

ա

Խմբագրող՝ Յակոբ Ղրիմեցի

123 բ Զմեղուցեալ Յակոբ վարդապետս Ղրիմցի, որ զքարոզս շարադրեցի ի շնորհաց հոգւոյն յիշեցէք ի տէր Քրիստոս, աղաչեմ։

բ

Գրիչ՝ Իգնատիոս

192 բ Ցորոց փրկեսցէ զմեզ Քրիստոս աստուած բարեխօսութեամբ սուրբ աստուածածնին՝ մանաւանդ ստացողի սորա Յովսէփ վարդապետի, և գծօղի Իգնատիոս սուտ կրօնաւորի, և շարադրողի Յակոբ վարդապետի Ղրիմեցւոյ, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն․

գ

234 ա Զստացող լուսազարդ կտակիս զՅովսէփ վարդապետն, և զհարազատ եղբարքն՝ զՆիկողայոս քահանայն և զՅովաննէս, և զքուերքն իւր Մարթա և զՄրւարթ, և զամենայն արեան մերձաւորս իւր յիշեցէք առ բարին աստուած։

դ

5 բ Զաստուածարեալ և զխաչընդուս կրօնաւորն զԱնդրէաս աղաչեմ յիշել ի տէր, որ փոքր մի աւգնական եղև մեզ ի գլխագրելն և համարագրելն, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

---

* Նույնպես քերված է, սակայն երկար և ուշադիր քննությունից հետո հնարավոր եղավ վերծանել։

** Քերված է 1,5 տող։

## 227

## ԱՌԱԿՔ ՎԱՐԴԱՆԱՑ ԱՅԳԵԿՑԻՈՅ ԵՒ ԱՅԼ ԳՐՈՒԹԻՒՆՔ

Երևան 601

Գրիչ՝ Տուճանան
Վայր՝ Խորին անապատ

ա

201 բ ...Գրեցաւ գիրս այս ի Խորին անապատիս՝ ի հռչակաւոր և ի սուրբ ուխտիս, ընդ հովանեաւ սուրբ Կարապետիս և կենսաբեր սուրբ Նշանիս, ձեռամբ յոգնամեղ Տուճանան մեղապարտիս։

Արդ, յերես անգեալ աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնուք յիշեցէք զմեղապարտ ծերուկս,ամենայն մերձաւորաւք և ամենայն զարմիւք՝ կենդանեաւք և ննջեցելեաւք, և զմեր տէր Կիրակոս եպիսկոպոս, և զմիաբանքս ամենայն, ի խնդրոյ դեառաբոյս կրաւնաւորիս՝ զՍիմէոնս՝ ծնողիւք և ամենայն զարմիւք...։

Գրեցաւ ի թվին ՊԿԷ. (1418)։

Արդ, աղաչեմ կրկին զամենեսեան, որ զայս գիրս ընթերցի՝ գրոյս մեղադիր ոչ լիցի, և որ յիշէ զմեզ ի բարին՝ նոյն և ինքն յիշեսցի։ Եւ որ զայս գրկունքս ընդ ձեռամբ ունիցի, աղաչեմ. զի հանապազ ընթերցի, այնչափ տարոյ իւր մեղքն և իւր ծնողացն և ամէն զարմիցն թողցի, նոյնպէս և լսողն այսմ տառի, և տէրն ամենեցուն մեզ և ձեզ ողորմեսցի, ամէն, և որ զամէնն ասէ, ամէն։

Հետ. ստացող՝ Ջուլաճա՞կ

բ

Արդ, աղաչեմ կրկին զամենեսեան, որք հանդիպիք այսմ տառիս յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացող տառիս | | |*
202 բ Ջ]ուլաճակս, և | | | ան, և զաւա[կս Նորա՝ զհանգուց][ եալսն ի Քրիստոս, և զամենայն արեան մերձաւորս իւր՝ զկենդանիս և զհանգուցեալս, որ ստացան զսայ ի հալալ արդեանց իւրեանց, յիշատակ իւր և ծնողաց իւրեանց, ՃՁ. (180) գրամ, և ետուն ի Վասկերա, ի ձեռն Աղազար էրիցուն, որ քանի ի հաւն կենայ՝ կարդայ, ու եփ երթայ՝ ի հետն տանի, և մի իշխեսցէ զսայ ծախել կամ գրաւկան դնել, այլ հանապազ ընթեռնուլ։ Եւ որ զայս գիրքս ընդ ձեռամբ ունիցի, աղաչեմ, զի հանապազ ընթերցի, և յիշել զմեզ ի բարի. ընդ նմին յիշեցէք զՀայրապետ քահանայն, որ յորդորեաց զՋուլաճակ, որ ետ զգիրքս ի Ղազար էրէցն, Ժ. (10) դր[ամ] ես տուի, ու ՃՁ.(180) Ջուլա[ճակն | | | ողորմեսցի առհ[ասարակ | | | ն, ամէն։**

---

* 202-րդ թերթը ներքևից պատռված է, վերջին երեք տողերի կեսից ավելին չի պահպանվել։

** Սույն հիշատակարանի գրության տարեթիվը հայտնի չէ, ըստ հնագրական տվյալների գրված պետք է լինի ԺԵ. դարում, ձեռագրի գրությունից (1418 թ.) ոչ շատ հետո։

## 228

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երևան 2143

Գրիչ՝ Յակոբ
Վայր՝ Խառաբաստայ վանք

486 բ ...Արդ, ի յամի ծննդեան փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի
հազարերորդի չորսհարիւր և քսաներորդի և ի Թուականիս Հայկա-
զեան տոհմիս տումարիս ըստ հոլովման ամաց ՊԿԷ. (1418), գրեցաւ
գիրքս քարոզութեան յերկուց հատորաց մեծ վարժապետին քաջ հռե-
տորի և անյաղթ փիլիսոփային, արթուն անուն դերապատիւ սուրբ
րաբունապետի Գրիգորի՝ աշակերտի Յովհաննու Որոտնեցւոյ, ի կարգէ
աստուածաբան վարդապետաց՝ երանելոյն Գրիգորի աստուածաբանի,
Կիւրղի և Աթանասի՝ միաբանութիւն դաւանողաց զբանն աստուած
միացեալ ի մարմնի, որոց յիշատակն աւրհնութեամբ եղիցի, և աղօթք
սոցա ի վերայ ամենայն աշխարհի, ձեռամբ անարհեստ և անի-
մաստ, մեղսամած, մատնադեղև սխալագիր գրչի Յակոբի՝ անարժան,
ծոյլ և մեղսասէր կրաւնաւորի, ի յիշատակ և ի վայելումն աստուա-
ծապարփակ հոգիընկալ և երանաշնորհ քաջ րաբունապետին և տիե-
զերալոյս վարդապետին Կարապետի, ի վայելումն անձին և ի յիշա-
տակ բարի ծնողաց իւրոց և ամենայն արեան մերձաւորացն...: Այլ
և զաստուածամերձ և զաստուածարեալ զհոգևոր հայրն իւր զտէր
Զաքէոս եպիսկոպոսն, որ բազում ջանիւ և աշխատութեամբ աշխա-
տել է ի յուսուցանել և ի յառաջնորդելն սուրբ ուխտիս, զոր և տէր
աստուած գասաւորեսցէ զհոգի նորին ընդ սուրբ հայրապետացն
Գրիգորի, Ներսէսի և այլ սուրբ հայրապետացն, ամէն:

Գարձեալ, աղաչեմ զամենեսեան սիրողս Քրիստոսի, որք հանդի-
487 ա պիք այսմ հոգիաբուխ պատգամացս, յիշել || առաջի անմահ գառինն
Յիսուսի Քրիստոսի զաստուածաբան վարդապետն զԿարապետ, որ
մեծաւ տաժանմամբ և եռափափաք սիրով ետ գրել զտենչալիս ոգւոյ
և զգերահրաշ իմաստութիւն և զոգէշահ լուսաւոր վարդապետութիւն
մեծ հռետորին Գրիգորի, զոր և պաղատիմք առ բարերարն աստուած
պահել զսա անփորձ և անբասիր մինչ ի խորին ծերութիւնն, ամէն:

Արդ, գրեցաւ սա ի յերկիրս Քաջբերունի, ի սուրբ ուխտս Խա-
ռաբաստայ, ի հրեշտակաբնակ կայարանս սրբոց վարդապետաց և
ճգնաւորացն առաջնոց, ի դրունս տիրամօր Աստուածածնիս, և սուրբ
Ստեփանոսի, և սուրբ Սարգսի, հրամանաւ գիտնական և արդիւնա-
կան հռետորի Կարապետ վարդապետի, ծնունդ և ի սնունդ մաքրա-
փայլ որդւոց մօր մերոյ Սիոնի, ի յիշատակ իւր և իւրոցն ամենայ-
նի՝ հարազատ եղբարցն խաչաչարչար մշակին և կենդանի նահատա-
կին Յովանէս սրբասէր կրօնաւորի՝ առաջնորդի սուրբ ուխտիս, զի չէ
պակաս յառաջին սուրբ հարանցն, զոր և տէր աստուած պահեսցէ
զսա ի կամս իւր և յետ աստեացս ընդ սուրբ հարանցն դասեսցէ և
պսակե[սցէ | | | զԱգիգբէկ և զզաւակսն [իւ՞ր], ամէն:

Այլ և զմարմնաւոր ծնօղսն՝ զՄարգարէն, և զմայրն, և զհոգևոր

*հայրն աէր Զաքէոս եպիսկոպոս՝ զհանգուցեալն ի Քրիստոս, և զքուերորդին՝ զտէր* Սանփանոս *նորընծայ եպիսկոպոս սուրբ ուխտիս, և զայլ ամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիս և զհանգուցեալսն, լսել տայ զերանաւէտ ձայնն, որ ասէ՝ Եկայք աւրհնեալք հօր իմոյ, ժառանգեցէք պատրաստեալ ձեզ զարքայութիւնն, ամէն։*

*Դարձեալ աղաչեմ զամենեսեան, որք օգտիք ի սմանէ յիշեցէք յերկնարացիկ և յաստուածամերձ յաղօթս ձեր զիս՝ զանիմաստ և զսխալ գրիչս* զՅակոբ, *որ գրել սորա ի հարկէ և ի սիրոյ եղև և ոչ մակացութիւն արուեստից։ Եւ հայցեմք յամենայնէ ներումն գտանել սխալանաց, որ աստ գտանի, քանզի կար մեր այս էր։*

*Զի թէ օգուտ ումեք լիցի՝ շնորհակալութիւն հոգւոյն շնորհաց եղիցի՝ և կաթիլ աղօթից ձերոց ցօղեսցէ ի տապան իմ գերեզմանի և սուրբ հոգևոր հօրս իմոյ* Կարապետ *վարդապետի, որ տեսականաւն և գործնականաւն զարդարեալ է։ Որ օգնական եղև մեզ յօժար կամօք*
487 բ *և անկեղծ սիրով կերակ || ր[եաց զմեզ քա]ջալերելով, և ամենայն պիտոյիւք, զոր հատուսցէ սորա միոյն հարիւրապատիկ, հազարապատիկ և բիւրապատիկ, կրկին կենաւք, ամէն։ Այլ և յետ Քրիստոսի երախտաւոր հոգևոր հայրն իմ զմեծ վարդապետն* Գրիգոր, *որ զսակաւ գիրս ուսոյց մեզ, նաև զուսուցիչն և զմարմնաւոր երախտիքն զոր ունին ի վերայ մեզ՝ զաստուածապարփակ հոգին* զԹումայ *վարդապետն, որ զօրինակն շնորհեաց և յաջողեաց, և* զՄաթէոս *կրօնաւորն, որ բազում երախտիք կա ի վերայ մեզ։ Այլ և զաստուածաբեալ կրօնաւորքն՝ հարազատ եղբարքն, որ զպակասութիւն սորա լցին օրինակ շնորհելով, և* զՄկրտիչքն, *որ սակաւ ինչ աշխատեցան ի պակասութիւն սորին։ Եւ դարձեալ, աղաչեմք զամենեսեան, որք օգտիք ի սմանէ ուսանելով, և կամ օրինակելով, և կամ այլ ինչ իւիք, յիշեսջիք ի բարին Քրիստոս զվերոյասացեալքն՝* զԿարապետ *վարդապետ, և զեղբարքն իւր, և զայլ ամենայն արեան մերձաւորսն, և զայնոսիկ, որ ի սուրբ գիրքս երախտիք և աշխատանք ունին՝ մեզաց թողութիւն խնդրեցէք և լի սրտիւ և առատ բերանով աստուած-ողորմի ասացէք, և աստուած ձեզ ողորմի և ձեր ննջեցելոցն, ամէն։*

## 229

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Փիրզ. նոտ. 54—55, Բերկրի՝ ի վանս Տէր Յուսկան որդւոյն (Արգելան)*

*Գրիչ՝* Յակոբ
*վայր՝* Բերկրի

*...Արդ, գրեցաւ քարոզութիւն սուրբ աւետարանիս Քրիստոսի աստուծոյ մերոյ... ի թուականութեան Յաբեթական տոհմիս տումարի ՊԿԷ. (1418)-երորդի, ի լուսազարդ և քրիստոսաբնակ անապատիս տէր* Յուսկայ *որդւոյ... ի գաւառիս* Տարբերունեաց, *որ այժմ* Բերկրի *[կոչի], ընդ հովանեաւ սուրբ եկեղեցեացս, սուրբ մօրս լուսոյ Տիրամայր աստուածածնի կուսին, և սուրբ Կարապետին, և սուրբ*

*Ցարութեան, ձեռամբ յոգնամեղ գրչի* Յակոբ *սուտանուն կրօնաւորի, ի խնդրոյ սրբասէր* Մկրտիչ *քահանայի, որ է կարգեալ ի սպասաւորութիւն ժողովրդեան Քրիստոսի, յիշատակ բարի իւր և ծնողաց իւրոց՝ հօրն* ՕզբէկինՆ, *և մօր իւրոյ* Խութլու-ԽաթունԻՆ, *և ծաղկեալ զաւակաց իւրոց* ՊետրոսինՆ *և* ԹումայինՆ... *ի հալալ արդեանց մօրեղբօր իւրոյ և քեռոյն* ՍտեփաննոսինՆ, *և* ՄարտիրոսինՆ, *քրիստոսասէր և բարեպաշտ տանուտէրացն* Բերկրոյ...։

*[Յիշեցէք] զերջանիկ և զբանաշնորհ քարոզն կենաց, զարժանին յիշման՝ զերախտաւոր հայրն մեր* զՄկրտիչ *վարդապետ, ղառաջնորդ սուրբ ուխտիս, որ բազում բարութեան մեզ պատճառ եղև, որ և պահեսցէ զսա Քրիստոս աստուած անփորձ և անբասիր կենօք մինչև ի խորին ծերութեան, ամէն։*

## 230

## ԳԻՐՔ ԳԱՆՁՈՒՑ ԿԻՒՐՂԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՅ

*Երևան 4009*

*Ստացող՝* Յովաննէս
*վայր՝* Հերմոնի վանք

231 բ *...Արդ, ես՝ վերջինս և անպիտանս ի ծնունդս եկեղեցոյ* Յովաննէս *պիտակ խնդրող բանի ի յոլով ժամանակս ցանկացող եղէ սուրբ և հոգիընկալ և աստուածունակ մատենիս լուսաւոր և լուսաւորիչ բանիցս, սուրբ և հռչակաւոր ախոյանին սուրբ և ուղղափառ հաւատոյ՝ առնն աստուծոյ սրբոյն* Կիւրղի: *Եւ ետու գրել զգանձարանս աստուածային միեղէն եղբարց աշակերտեալ անձանց, որպէս զի և գրեսցին նոքա ի գիրն կենաց անջնջելի դրոշմամբ։ Այլ և ես՝ տկար անձամբ զպակասն լցի յետոյ՝ ի կազմած ժամանակս։ Արդ, որք հանդիպիք ի սմա ընթերցմամբ կամ օրինակելով՝ յիշէք ի մեղսաքաւիչ և ի սրբարար յաղօթս ձեր* Յովաննէս *մեղսանէրկ անձն, ասելով թէ՝ տէր աստուած Յիսուս Քրիստոս, ողորմի մեղաւոր և բազմավէր* Յովաննէս *սուտանուն վարդապետին, և աստուած զյիշողք յիշէ յիւր յարքայութիւնն, ամէն։*

*Գրեցաւ ի վանքս* Հերմոնի, *ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչիս, ի թվ. ՊԿԷ. (1418), ի փառս և ի գովեստ սուրբ երրորդութեանն և միոյ աստուածութեանն՝ ուրհնելոյն յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

| · | | | | · | · | | | | ⁞ ⁞ | ⁞ | | ⁞ | | ⁞ | · | | | | ·
| · | | | ⁞ | · | | | | ⁞ | | | | ⁞ | | | ⁞ ⁞ | | ⁞ | ⁞ ⁞
| · | | | ⁞ | | ⁞ ⁞ | | | ⁞*

* *Կետագծային ծածկագրով կարդացվում է «Առաքել ծառայ աստ[ծ]ու, ամէն»։*

## 231
## ՑԱՑՍՄԱՒՈՒՐՔ
*Փիրղ. Նոտ. 55—56, Վան*

*Գրիչ՝* Մկրտիչ
*վայր՝* Բաղիշոյ գաւառ, Գոռ գիւղ

| | | *Ըստ որում և սրբազան և մաքրամիտ կրօնաւորն* Մար-
տիրոսն՝ *խնդիր եղեալ եռափափագ սրտիւ և ստացաւ զկարմրերանգ
և զլուսաբորբոք կտակս... ի վայելումն անձին իւրոյ... յիշատակ
բարի ծնողաց իւրոց՝* Աբրահամուն *և* Քամալին, *և եղբարց իւրոց* Կի-
րակոսին *և* Մկրտչին...: *Եւ ես... մեղսամած և տարտամ ոգի* Մկրտիչ
*գրիչս, որ կոչիմ սարկաւագ, բայց բացասութեամբ և ոչ ստորասու-
թեամբ, զի գործով և խորհրդով ես վատթարագոյն գտանիմ քան
զամենայն ոք ի ռամկաց, և զարտուղի մարմնական գնացիւքս, քան-
զի շնչմունք զանազան տապախառն փորձութեանց շուրջ զմեօք մա-
ծեալ կայ, և ախտք անհնարինք և հեշտութիւն ձգիչ, կարիք ի ձե-
ռին, և անմտութիւն մերձ, ծուլութիւն խաւարեցուցիչ և անարիու-
թիւն պատեալ զինև: Արդ, թէ սխալանաց հանդիպիք՝ վասն այսր
ամենայնի անմեղադիր լերուք...:*

*Ի մեծ տարակուսանս կայի վասն դառնութեան ժամանակիս և
աւերման աշխարհիս. այլ զազգիս մերոյ զտառապանս ով կարէ ընդ
գրով արկանել. քանզի ի բազմանալ մեղաց մերոց փակեցաւ դուռն
ողորմութեան աստուծոյ, և պատուհանք բարկութեան բացան և ի
մերում ժամանակիս...:*

*Գրեցաւ սա ի գաւառն* Բաղիշոյ, *ի գեաւղս որ կոչի* Գոռ, *ընդ
հովանեաւ մեծաշնորհ և տիեզերահամբաւ սուրբ և գերապատիւ առա-
քելոյն Անանիայի և սուրբ Գէորգայ, ի կաթուղիկոսութեան մեր
աթոռոյն տէր* Պօղոսի, *յամի* ԳԿԷ. *(1418) Հայոց թուականիս, բայց
եղև կատարումն գրոյս արաց ամսոյ ԻԱ. (21), յաւուրն հինգշաբթի:*

## 232
## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ
*Երևան 5175*

*Գրիչ՝* Նիկողայոս
*վայր՝* Վարագ

*...Արդ, եղև պատճառ մակագրութեան սորա վասն չորից:
Նախ, զի ես՝* Նիկողայոս, *անկիրթ գոլով ուսման և կարդալոյ, վասն*
Ճանգարման *ժամանակիս և ծուլութեան իմոյ, զսայ իբրև զվարժա-
րան և լցուցիչ թերութեան իմոյ գծագրեցի: Երկրորդ, զի յայսմ
309 ա ժամանակիս վարժայպետն մեր* Գրիգորիոս *կրկին նորոգ || եաց զեկե-
ղեցիս Հայոց բազում գրեանս առնելով և զխոր և զխրթին բանս
գրոց ի յայտ ածելով: Եւ ես՝ սուտանուն աշակերտ և յետին, որ և
յետնեալ գտայ քան զամենայն, վասն զի լուս[աւ]որ հոգի վարդա-
պետն իմ* Վարդան *յաստուած փոխեցաւ, և ես տարակուսեալ մնացի
ժամանակ ինչ թափառական, շրջեցա ի բազում տեղիս, և ոչ ուսայ
զգիրս վասն ծուլութեան իմոյ: Ապայ յետոյ ցանգացայ սմայ և ի*

չատէն զսակաւն, ի մեծէն զփոքրն գրեցի, զի յիշատակ նորին անջինջ եղի[ցի] յեկեղեցի։ Երրորդ, և ես՝ անարժան[ս], ոչ ունելով ինձ յիշատակ բարի յեկեղեցի, որպէս բազումք զբազում ինչս ստանան ի վերինն Սիոն, ես զսա ստացա ինձ յիշատակ, զի որպէս զնքարակիտ այրի կնոջն ընգալ, և զսայ ընգալցի բազմապարգ[և]ն տէր։ Զորրորդ, զի զամենայն տնաւրինական տաւն փրկչին և զիւրաքանչիւր սրբոցն սովաւ կատարելով պայծառ տաւնախմբութեամբ, զի և ինձ լիցի մասն կաթիլ մի շնորհի յառատաձիր պարգևի բարերարի փրկչին իմոյ Յիսուսի, և համաւրէն սրբոց նորին բարէխաւսի, և ի ձերդ աղերսի, որք փոյլիք միշտ յեկեղեցի։

Արդ, գրեցաւ լուսաւոր և հոգեկեցոյց վարդապետութիւնս մեծ հեռետորին և արի և քաջ ախոյանին ընդդէմ ամենայն հերձուածողաց և չարափառացն գնդին սատանայի ի գերայհոչակ և յերկնայհանգէտ և աստուածաբնակ ուխտս Վարագ, ընդ հովան[ե]աւ սուրբ և աստուածահրաշ Նշանիս, և սուրբ մաւրս լուսոյ Աստուածածնիս, և այլ բազում եկեղեցեացս որ աստ կան կառուցեալ, ձեռամբ բազմամեղ և՛ անարժան գրչի՝ Նիկողաոսի պիտականուն աշակերտի, ի թիվս Հայոց ՊԿԷ. (1418), ի յառաջնորդութեան սորա աստուածաբան և քաջ րաբունապետիս մերոյ Մարգարայ վարդապետիս։ Արդ,
399 բ յերես անգեալ մոխրամած գիմօք || աղաչեմ զձեր սրբութիւնդ, ով մանգունք սուրբ եկեզեցոյ որք հանդիպիք՛ այսմ տառի, յիշեցէք յերկնաթռիչ յաղաւթս ձեր զՆիկողայոս քահանայ՝ անարժան յիշման, նայ և զծնաւղսն իմ՝ զհայրն իմ զՄարտիրոս, և զմայրն իմ զԳոհար՝ զհանգուցեալսն առ Քրիստոս, և զեղբարսն իմ զՀայրապետն և զՍախապետն, և զեղբաւրորդին իմ՝ զդեռաբոյս ծաղիկն եկեղեցոյ զՍտեփանոս կրօնօորն, և զքոյրն իմ զՀռիփսիմէ, և զհանգուցեալ եղբայրն իմ առ Քրիստոս՝ զՏիրատուրն, և զամենայն արեան մերձօորսն իմ....*

## 233

## ԱԻԵՏԱՐԱՆ

**Երևան 5512**

Գրիչ՝ Թումայ
վայր՝ Աղթամար

297 ա ...Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Նշանի, ի հայրապետութեան տէր Դաւթի, և ի թուին Հայոց ՊԿԷ. (1418), ձեռամբ մեղապարտ և անարժան Թումայի անիմաստ և ախմար գրչի, և անընդունակ գոլով յարւեստ գրչութեան, և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ

* 6 ա էջի վրա Գեղարքավանքի մի վանական թողել է մի քանի ուշագրավ պատմական դեպքերի մասին համառոտ գրանցումներ, դրանք են՝ «Թվ. ՌՃԻԸ. (1679) մայիս ամսոյ աւրն Գ, չորեք[շաբթի] շարժ եղև Երևան։
Սուրբ Գեղարդայ եկեղեցոյ շինուած թվ. ՌՃԽԵ. (1696)։
Սահփան[ոս] կաթուղ[ի]կոսի մեռանելն թվ. ՌՃԽԷ. (1698)։
Թվ. ՌՃԽԸ. (1699) ճաղացն սելաւ եկաւ տարաւ, գեղս | | |
Թվ. ՌՃԽԸ. (1699) զարպասին ձեռն ուրինք, սոյկայն կատարած[ն] աստուծոյ է գիտելիս։

կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին՝ բազում աշխա-
տանաւք գրեցի անարժան ձեռաւք իմովք, ի ստոյգ և յընտիր աւրի-
նակէ՝ կենաւք տառապանաւք և բազում պանդխտութեամբ։
Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի
սեղանոյս, որք պատահիք սմա տեսութեամբ կամ ընթերցմամբ, յի-
շեսջիք յաղաւթս ձեր զյառաջ յիշեցեալ ստացող սորա զխաչատուր,
297 բ և զծնողքն իւր զԹումայ ‖ և զԹամար, և զհաւրեղբայրն զԵղիայ, և
զազգն ամենայն յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք։ Ընդ նոսին
և զանպիտան Թումայ գրիչ, և զմեր ծնաւղքն՝ զԿարապետ քահանայ
և զԴուռմէլիք, և զուսուցիչն մեր և զեղբայրն՝ զԴանիէլ քահանայ, որ
ծաղկեաց և կազմեաց զսուրբ աւետարանս, և զհաւրն մեր զՇամսա-
խաթուն, և զքոյրքն մեր, և զողայքս՝ զՋաքարայ և զԿարապետ, և
զՎարդան կրաւնաւոր, որ աշխատեցաւ ի կոկել Թղթիս, և զամենայն
ազգականքն մեր՝ զկենդանիք և զհանգուցեալք։ Եւ որք զմեզ յիշէք
սրտի մտաւք և դուք յիշեալ լիջիք յառատ յողորմութեանն աստու-
ծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։
Ես՝ խաչատուրս, ստացայ զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց
իմոց, և ետու զսայ ի վայելումն Աստմ քահանային, յիշատակ ինձ և
ծնաւղաց իմոց...։
298 ա Արդ, աղաչեմ զհանդիպեալքդ սմա տեսութեամբ կամ կարդալով,
յիշեցէք զմիջնորդ սուրբ աւետարանիս զխոջայ Աստմ, և զծնաւղքն՝
զԱնդրէաս և զխաթուն-Մէլիք, և զկենակիցն զԳուրջի-խաթուն, և Քրիս-
տոս աստուած ամենեցուն առհասարակ ողորմեսցի, և Թողութիւն
մեղաց շնորհեսցէ, և երկնից սուրբ արքայութեանն արժանի արասցէ,
և նմա փառք յաւիտեանս, ամէն։

## 234

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Ն. Ակինեան, Ջաւախք, Ազգ. հնդ. 1897, Բ., էջ 286

Գրիչ՝ Թումայ
վայր՝ Աղթամար

[Ընդօրինակեալ] Թումայ մեղուցեալ գրչի մեղսամած մատամբ
ի յաստուածաբնակ և յանառիկ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ
Նշանիս և աստուածամուխ սուրբ Գեղարդեան, ի հայրապետութեան
տեառն Դաւթի, Հայոց ի ՊԿԷ.(1418)։

## 235

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Երևան 4931

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Վան

ա

290 բ ...Արդ, այսմ աստուածեղէն և փարթամ գանձիս և լուսափայլ

մարգարտիս ցանկացաւ աստուածասէր և բարեպաշտ տանուտէրն Ղազար, և ետ գրել զսա յիշատակ իւր և բարի ծնողացն իւր, հաւրն՝ Շամօին, և մաւրն Մարեմայ, և եղբարցն Մովսէսի, և Խաչկայ, և Մանուկի, և քուրսջն Սուրաթի, և կենակցին Գուհարի, և որդոյն Պետրոսի, որ տարաժամ փոխեցաւ ի Քրիստոս և սուգ անմխիթար եթող ծնողացն, և ամենայն արեան մերձաւորացն իւրոց...։

291 բ Արդ, յանկ ելեալ կատարեցաւ սուրբ աւետարանս ... ի քաղաքիս Վան, ընդ հովանեաւ սուրբ առաքելոցս Պետրոսի և Պաւղոսի, և սուրբ հայրապետին Ստեփանոսի, և սուրբ Տիրամաւր Աստուածածնին, և սուրբ զաւրավարացն Վարդանեանց։

Եւ ես՝ Թափուրս ի բարեաց գործոց, մեղանչականս յանմեղաց, անչիշելիս ի գրչաց, անկարգս ի կարգաւորաց՝ Կարապետ անարժան քահանայ, որ զանունս ունիմ և զգործս ոչ, ընդ հովանեաւ սորոցս կատարեցի զսուրբ աւետարանս, մեղսամած մատամբս յաւրինեցի, միթէ քաւի մեղս ի մարմնի։

Ի թուական հայկազեան տաւմարիս ՊԿԷ. (1418), ի հայրապետութեանն տեառն Պաւղոսի և յաշխարհակալութեանն Ղարայ–Ուսուֆի...։

...Այլ յերես անկեալ ես առաւել աղաչեմք զձեզ, յիշեցէք ի
292 ա Քրիստոս և ի սուրբ յաղաւթս ձեր զիս՝ զանարժան գծողս || զԿարապետ սուտանուն քահանայ, և զծնողքն իմ՝ զհայրն իմ զՍտեփաննոս քահանայ, և զմայրն իմ զՄինայ, և զհաւրեղբայրն իմ զՄովսէս, և զեղբարքն իմ զՅովաննէս քահանայ և զՄելքիսէթ՝ զհանգուցեալքն ի Քրիստոս, և զՅակոբ քահանայ, և զՅոհաննէս քահանայ՝ զերախտաւորքն մեր, և բոլոր սրտիւ և լի բերանով աստուած-ողորմի ասացէք, և ինքն՝ Քրիստոս աստուած, որ առատն է ի տուրս բարեաց, ձեզ և մեզ առհասարակ ողորմեսցի և լսել տացէ զբարբառն, որ ասէ, թէ Եկայք աւրհնեալք հաւր իմոյ, ժառանգեցէք պատրաստեալ ձեզ զարքայութիւնն, ամէն։

Բ

14 ա Զքաղցրաբարբառ... Զքազմամեղ ոգի զԿարապետ սուտանուն քահանայ յիշեցէք, որ գրեցի և ծաղկեցի զսուրբ աւետարանս, և անարհեստութեանս անմեղադիր լերուք, քանզի այս առաջին ծաղիկ էր, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

236

## ՄԱՇՏՈՑ

Վիեն. 108, Տաշ. Ցուց. էջ 383—384

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Վան

188 ա ...Զոր տեսեալ զայսպիսի գանձս աստուածասէր եւ բարեպաշտ տանուտէրն Յովաննէս, եւ ցանկացաւ այսմ լուսափայլ մարգարտիս,

եւ ստացաւ զսա յարդար վաստակոց իւրոց, յիշատակ իւրն, եւ ծնողաց իւրոց՝ հաւրն Անդրիանոսի, եւ մաւրն Խոնդի, եւ որդւոյն Ստեփաննոսի, եւ դստերն Ազիզի, եւ կենակցին Շնովհորի, եւ այլ տղայոցն, եւ ետ զսա անջինջ յիշատակ ի դուռն սուրբ Աստուածածնին՝ ի գիւղն Յատականց. եւ ի յայսմ ամի շինեցաւ եկեղեցիս, որ գիրքս գրեցաւ...։ Եւ արդ. գրեցաւ սա ի քաղաքս որ կոչի Վան, ընդ հովանեաւ սուրբ առաքելոցս Պետրոսի և Պաւղոսի, ձեռամբ անարժան քահանայի Կարապետի, ի հայրապետութեան տեառն Պօղոսի, եւ ի թվականիս Հայոց ՊԿԷ. (1418)։

Արդ, դուք հան[դիպո֊ղք | | |

## 237

## ՄԱՇՏՈՑ

Փիրգ. Նօտ. 54, Վան

Գրիչ՝ Կարապետ

վայր՝ Մոկաց երկիր, [Փութկոյ] սուրբ Գէորգ

...Գրեցաւ սուրբ տառս աստուածային ի թուականիս Հայոց ՊԿԷ. (1418), ձեռամբ պարտաւոր գրչի՝ սուտանուն Կարապետ աբեղայի, յարքունական յերկիրս Մոկաց, ի յանապատիս սուրբ Գէորգ, և առաջնորդիս մերոյ, որ անուն տէր Ստեփաննոս յորջորջած, ի խնդրոյ Մարգարէ պատուական քահանայի, որ մականուն Յակոբ Ասորի կոչի...։

## 238

## ՄԱՇՏՈՑ

Երևան 4151

ա

Գրիչ՝ Աստուածատուր

վայր՝ Ռշտունիք, Ս. Վարդանի անապատ

...Զոր տեսեալ զայսպիսի գանձս աստուածային և պայծառ լուսով զարդարեալ... քրիստոսասէր տանուտէրն Ստեփանոս, և ջերմեռանդ սիրով որ առ աստուած և մեծաւ փափագմամբ ստացաւ
372 բ զսա ի հալալ արդեանց իւրոց... և ետ զսա ընծայ և նըւէր ի սուրբ եկեղեցին, որ է շինեալ յանուն սրբոյն Ստեփաննոսի Նախավկային, ի մայրաքաղաքիս Ոստան, յիշատակ բարի հոգւոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց՝ Քրիստոսատրին և Փաշամէլէքին, և եղբաւրն իւրոյ՝ տարաժամ հանգուցելոյն առ աստուած ի հասակ երիտասարդական՝ Աստուածատրուն, և հօրեղբաւրն իւրեանց Աւաք-Պարոնին, և կենակցին Ստեփանոսին՝ ստացողի տառիս Բուլղանին, և զաւակացն իւրեանց Քրիստոսատրին, և Աւետիսին, և Մելքիսէթ սարկաւագին, և պարոն Ազբգին հանգուցելոյն ի Քրիստոս, և այլ ամենայն արեան մերձաւորացն իւրոց՝ կենդանեացն և հանգուցելոցն, և որոց տէր կամեսցի։

Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց, մեղաւորս յարդարոց և ան-
373 ա կատարս ի կա ‖ տարելոց... Աստուածատուր սոսկանուն աբեղայս...
կատարեցի զսուրբ գիրքս զայս ի գաւռն և ի նեղութեան ժամանա-
կիս, ի թուականութեան հայկազեան տումարիս ՊԿԷ. (1418), և ի
հայրապետութեան տեառն Դաւթի, ի յերկիրս Ըռըշտունեաց, ի սուրբ
և ի հռչակաւոր անապատս, որ կոչի սուրբ Վարդան, որ է հանդէպ
Գաւաշից, ի դուռն սուրբ Աստուածածնիս և ի սրբոյ Վարդանայ զաւ-
րավարիս, ի ղանութեանն պարոն Յուսուֆին, և ի բռնակալութեան
373 բ մերոյս նահանգի ‖ Ամիր-էզդնին և որդոյն իւրոյ Մելիք-Մահմադին,
որոց աւգնական և պահապան լիցի նոցա տէր աստուած, վասն զի
յոյժ խնամածուք են ազգիս Հայոց...։
375 ա ...Դարձեալ, յերես անկեալ աղաչեմ զսրբութիւնդ ձեր ես՝ մե-
ղուցեալ և անարժան ծառայս ծառայիցդ աստուծոյ Աստուածատուր
սոսկանուն աբեղայս՝ ծրագրող սորա, ով պատուական հարք իմ և
եղբարք, ընթերցողք և լսողք այսմ կտակի... յիշեցէք ի սուրբ և
յերկնաթռիչ յաղաւթս ձեր և զիմ անարժանութիւնս, մանաւանդ
զերջանիկ և ղքրտնաջան մշակն եկեղեցոյ՝ զցանկալին հրեշտակաց և
մարդկան, զգովելին յամենայն բերանոյ, զհնազանդ և զաստուածա-
սէր հոգին, զսուրբ և զընտրեալ բարունին իմ զՅակոբ վարդապետն՝
375 բ զուսուցիչն իմ, ‖ որ է հոգի թեթև ի թանձր մարմնի, մշակ Քրիս-
տոսի առանց ամաւթոյ, զարդարեալ ամենայն հոգեկան և մարմնա-
կան առաքինութեամբ, որ է հայր իմ ըստ հոգոյ և քեռի ըստ մարմ-
նոյ, որ ըստ քաղցր բարէմտութեանն իւրում էառ զիս և սնոյց և
ուսոյց ինձ զամենայն կարգ և զբարէձևութիւն, զոր ոչ առնեմ բնաւ՝
զՍաղմոս, զՃաշական, զգիր, զծաղիկ, զոսկել և զկազմել, և այլ բա-
զում բարութիւն՝ հոգեկան և մարմնական առատապէս ընձեռեաց ինձ,
և ես ոչինչ ունիմ նմա փոխարէն հատուցանելոյ՝ վասնորոյ հայցեմ
ի ձէնջ պաղատանաւք, ով պատուական հարք իմ և եղբարք, խնդրե-
ցէք յաստուծոյ, զի բազմաժամանակեա և յերկար ամաւք պահեսցէ
զսա աստուած ի պարծանս ինձ և ամենայն աշխարհի, և յետ աս-
376 ա տեաց ելանելոյ ընդ սրբոց վարդապետացն դա ‖ սակցեսցէ զնա և
պսակեսցէ ընդ Ոսկիբերանին, և Աստուածաբանին, և նմանեաց նոցին,
և զծնաւղսն իւր զԱտոմ և զՂըբէլ, և զեղբայրն իւր զՑովաննէս արժանի
արասցէ Քրիստոս ողորմութեան իւրոյ, ամէն։
Այլ և ըստ մարմնոյ ծնաւղացն իմոց աղաչեմ զձեզ աստուած-
ողորմի ասել՝ հաւրն իմոյ Ատոմի, և մաւրն իմոյ Շաքար-խաթունի,
և եղբարցն իմոց Թումաբէկի և Յոհաննիսի, և քըւերցն իմոց հանգու-
ցելոցն ի Քրիստոս Շահըրմանի և Գուլիշայի, և մեծ մամուն իմոյ
Գաւհարի, և հաւրքըւերն իմոյ Թավրէզ-Մէլիքի, և որդւոց նոցին էվա-
տին և Մուրատին և Ստեփաննոսին, և մօրքըւերն իմոյ Գաւհար-Մէլիքին,
և որդւոյն իւրոյ պարսն Ումէկին. և այլ ամենայն արեան մերձաւո-
րացն իմոց՝ կենդանեացն և հանգուցելոցն, և որոց ինքն կամեսցի
ողորմեսցի Քրիստոս, ամէն։
376 բ Դարձեալ, աղաչեմ յիշել ի Քրիստոս զՍտան քաղաքի քահա-

*նայքս, որք սպասաւորք են սրբոյն Ստեփաննոսի նախավկային և վայելողք և ընթերցողք այսմ տառի՝ զտէր Թումա և զտէր Յովաննէս. փիլիսոփայքն, զՍտեփանոս քահանայն և զորդին իւր զՅովաննէս, զՋաքարա և զՄկրտիչ, զՅոհաննէս և զերիս Ստեփանոսեանքն, զՎարդան և զԹումա և զՅովանիսեանքն, և զծնաւղսն նոցին ամենեցուն, առհասարակ...։*

Բ

*Ստացող՝* Ստեփանոս.

*Եւ արդ, ես՝ մեղուցեալ ծառայս աստուծոյ* Ստեփանոս, *ստացա զսուրբ գիրքս զայս ի հալալ արդեանց իմոց և ետու զսա ընծայ և նուէր սրբոյն Ստեփաննոսի նախավկային, ի քաղաքիս* Ոստան: *Եւ*
377 ա *մի ոք իշխեսցէ ‖ հեռացուցանել զսա ի դրանէ սուրբ տաճարիս ծախելով, կամ գրաւելով, կամ գողանալով: Եւ ով ոք յանդըգնի և հեռացուցանէ զսա այսքան պատճառաւքս՝ և ինքն հեռասցի յողորմութենէն աստուծոյ և պատիժ պատուհասի կրեսցէ յաստուծոյ ընդ Կայենի և ընդ Յուդայի և ընդ խաչահանուացն, ամէն։ Իսկ որք սրտացաւաբար և խնամարկութեամբ սպասաւորեն սուրբ գրոցս՝ գտցեն ողորմութիւն և թողութիւն մեղաց ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

Գ

*Կազմող՝* Թումա.

377 ա *Առաչեմ զսրբասէր ընթերցողսդ և զքրիստոսասէր ունկնդիրսդ՝ յիշման արժանի առնել ե զիմս անարժանութիւն՝ զբազմամեղ և զսուտ կանուն աբեղայս* Թումա, *և զծնաւղսն, որ սակաւ ինչ գծագրեցի ի գիրքս ե կազմեցի զսա։**

239

## Ճ Ա Շ Ո Ց

*Երևան 4551*

*Գրիչ՝* Աստուածատուր.

326 ա *Ցիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացաւղ սուրբ գրոցս* զԱրևշահն, *և զծնաւղսն իւր* զՄելէքշայն *և* զխաթունն, *որ յուսով և հաւատով ստացան զսուրբ գիրքս յիշատակ հոգոյ իւրեանց և ամենայն մերձաւորացն, ամէն։ Նաև զյիմար գրիչս* Աստուա–

** Երկու տող հետո, այլ ձեռագրով, գրված է* Ասինանցի Սարգսի *հիշատակարանը, «որ թափեաց զսուրբ գիրս ի ձեռաց յանաւրինաց»։ Հնագրական տվյալներով այդ հիշատակարանը կամ ԺԵ. դարի վերջից է, կամ ԺԶ. դարից։*

*Ձեռագրի 1ա—1բ էջերում կա նույն ժամանակների (ԺԵ/ԺԶ դար) մի այլ հիշատակարան՝ պարոն Թադէոսի որդի պարոն Բաղշայիշի և նրա խոջա եղբայրների կողմից ձեռագրի ձեռք բերման մասին։*

ծառուր* անարժան, և զծնաւղսն իմ զԱտոմ և զՇաքար-խաթունն, և ձեզ ողորմեսցի Քրիստոս աստուած, ամէն։**

## 240

### ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրգ. Նոտ. 56, Վանի շրջան, Մանգան գիւղ

Ստացող՝ Շաքար
վայր՝ Գաւառք

...Ի թուաբերութեանս Հայոց տումարի ի ՊԿԷ. (1418), ի կաթուղիկոսութեան տեառն Գրիգորի, որ մականուն Խանձողատ կոչի, ի վիճակիս առաջելայս Բարթուղիմէոսի, ի հայրապետութեան տէր Մեսրոպի, ի յերկիրս որ Գաւառս կոչի։ Ես ցանկացող եղէ այս սուրբ աւետարանիս՝ Շաքար, և ստացայ զսա յիշատակ ինձ և կողակցին իմոյ Մարեմի։

## 241

### ՎԱՐՔ ՀԱՐԱՆՑ

Վենետիկ 536

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Աւագ վանք

Խաչատուր կրօնաւոր և պանդխտակից եղբայրն իմ Յովհաննէս արքեպիսկոպոս յիշեցէք...։ Գրեցաւ ի թվիս Հայոց ՊԿԷ. (1418) փետրրվար ԺԳ. (13), ի դրան սուրբ Աստուածածնին և սուրբ Ովանիսին և սուրբ Առաքելոյն, որ կոչի Աւագ վանք։

## 242

### ԱՒԵՏԱՐԱՆ

Շիրակ, Ղուլիճան գիւղ, Մ. Տ. Մ.

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Վրաց գաւառ, գիւղ Օթայ

Ի թուաբերութեանս Հայոց տումարիս ի ՊԿԷ. (1418), ի գաւառիս Վրաց, ի գիւղն որ կոչի Օթայ, ի հայրապետութեան տեառն Ներսսի և տէր Յակովբոսի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին...։ Յիշեցէք զվարպետն իմ զտէր Յովհաննէս, որ մականուն կոչի Ոսկեփոր, ընդ նմին և զեղկելի գրչակս զՄկրտիչ...։

---

* Հիշատակարանը տեղադրում ենք 1418-ի թվաշարքում՝ նույն այս Աստուածատուր գրչի թվակիր հիշատակարանին կից։ Որ գործ ունենք նույն գրչի հիշատակարանների հետ՝ այդ երևում է նրա ծնողների անուններից՝ Ատոմ և Շաքար-Խաթուն։

** Համանման բովանդակությամբ հիշատակագրություններ կան նաև ձեռագրի 21 բ, 87 բ, 111 ա, և 330 բ էջերում։ Ձեռագիրը հարուստ է լուսանցազարդերով և բարձրորակ մեծագիր մանրանկարներով։

## 243

## ՀԱՄԱՌՕՏ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԳՐՈՑՆ ԱՐԱՐԱԾՈՑ ԳՐԻԳՈՐԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԽԼԱԹԵՑԻՈՅ

*Երևան 1053, նաև 5574*

*Հեղինակ՝* Գրիգոր Խլաթեցի

94 ա *Ցելիցն Ադամա ի դրախտէն մինչև. ի վախճանն Մովսիսի ԳՌ. և ԷՃ. ու ԻԶ. (3726) ամ է, և ի մահուանէն Մովսիսի մինչ ի Քրիստոս Ռ. ու ԴՃ. և ԺԱ. (1411) ամ է. և [ի] Քրիստոսէ մինչ յայս, որ գիրքըս գրեցաւ՝ Ռ. ու ԴՃ. և Ի. (1420) ամ է, զի Պ. և ԿԷ. (=1418) ամին դրեցաւ։*

## 244

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7224*

*Գրիչ՝* Սարգիս

**ա**

249 ա *Զստացող սուրբ աւետարուխ աւետարանիս՝ զ*Դաւիթ *կուսակրաւն աբեղայս, հանդերձ ծնողաւք և ազգականաւք, աղաչեմ յիշել ի տէր, և աստուած զձեզ յիշէ, ամէն։ Եւ զմեզ յիշեայ, և մայր իմ* Թանգաղ, *որ յայսմ ամի ի Քրիստոս փոխեցաւ։ Թվ. ՊԿԷ. (1418), աշխարհայկալութեան* Ուսուֆին:

**բ**

249 բ *Զմեղապարտ* Սարգիսս *աղաչեմ յիշել ի տէր, և աստուած զյիշաւղքդ յիշէ, ամէն։*

## 245

## ԼՈՒԾՄՈՒՆՔ ԳՐՈՑՆ ՊՈՐՓԻՒՐԻ

*ԲՑՎ 143*

*Գրիչ՝* Անդրիաս

*...Կատարեցաւ տառս այս իմաստայպատում, որ կոչի լուծմունք Արտաքնոցս, բացահայտեալ ղսա մեծ վարդապետին Հայոց* Գրիգորի, *ի Թվիս ՊԿԷ. (1418), ձեռամբ* Անդրիաս *սուտանուն խաբեբայի...։ Այլ և զստացող սորա զ*Կարապետ *վարդապետ և զեղբայրն իւր* Յովանէս *կրօնաւոր [յիշեցէք]...։*





## 246

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 3714**

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Ցիպնայ վանք

268 բ ... Որոյ (Աւետարանիս) ցանկացող եղեալ բարեմիտ և ողջախոհ քահանայն Յոհանէս, և ստացաւ զսա ի վայելումն անձին իւրոյ, զի նորընծայ է ի կարգ և յաստիճան քահանայութեանն։ Վասն որոյ եռափափագ ըղձիւ ստացաւ զգանձս աստուածային յիշատակ իւրն և բարի ծնողաց իւրոց՝ Դանիէլ քահանայի, և Խիկարի՝ հանգուցելոյն ի Քրիստոս, և եղբարց իւրոց հարազատաց՝ Մովսէս քահանայի և Ներսէսի, այլ և զբազմերախտ քեռոյն իւրոյ՝ տէր Աւագ քահանայի։

Եւ արդ, գրեցաւ սա ի վանս Ցիպնայ, ընդ հովանեաւ ամենա-
269 ազօր սուրբ Նշանի և սուրբ Ստեփանոսի, ձեռամբ յոգնամէղ և ան ‖ -



Նկ. 9. Ձեռագրի ստացող Յոհաննէս երեցը
և նրա հայրը՝ Դանիէլ քահանան

*իմաստ գըչի Գրիգորի պիտականուն վարդապետի, յամի ՊԿԸ. (1419) Թըւականի, ի հայրապետութեան տեառն Պաւղոսի և յաշխարհակալութեան Ղարայ-Ուսուֆին։ Ցորում ամի և մարախ ել յարևելից ի վերայ երկրի, և Թանձրախիտ ծածկեաց զդաշտ և զլերինս, զսար և զձոր, միահաղոյն, ի Սալմաստայ մինչ յԱրզըռումն, և կերաւ շատ վաստակ ի բազում տեղիս, յորմէ սասանեցան մարդիկք, և եղև սըղութիւն։ Արդ, որք հանդիպիք սուրբ աւետարանիս յիշեցէք ի միտս բարիս զստացող սորա զՅօհանէս քահանայ*, և զծնօղսն իւր, և զեղբարսն։*



Նկ. 10. № 3714 ձեռագրի գրիչ Գրիգոր վարդապետը դասավանդելիս

* Ձեռագրի 15ա էջի վրա, նստած դիրքով, նկարված է ձեռագրի ստացող «Յոհանէս երէց»-ը՝ ձեռքին բռնած ավետարանը, իսկ նրա դիմաց, աջ կողմում, նստած է ավելի ծեր մի քահանա, հավանաբար ստացողի հայր Դանիէլը (տես նկ. 9)։

Մեծ հետաքրքրություն է ներկայացնում նաև 14բ էջի նկարը։

Ձախ կողմում՝ աթոռի վրա բազմել է մի վարդապետ, ձախ ձեռքին բռնած ունի խարազան, աջ ձեռքին՝ մի տախտակ, վրան գրված՝ «Երանեալ է այր որ [ոչ գնաց ի խորհուրդս ամբարշտաց]»։ Նրա դիմաց, ձեռքերը կրծքին ծալած կանգնած է դաս պատասխանող աշակերտը, ավելի աջ՝ հատակին ծալապատիկ նստած է մեկ ուրիշը, ձեռքին թարմ ճիպոտներ, որոնք պետք էին գալու վարդապետին աշակերտներին խարազանելու համար (տես նկ. 10)։

## 247

## ՃԱՌԸՆՏԻՐ

*Փիրղ. Նոտ. 59—69, Վարագ և Երևան 3790**

*Գրիչ՝* Ստեփաննոս
*վայր՝* Ռշտունիք, Տայշող գիւղ

*... Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց... սուտանուն քահանայ* Ստեփաննոս *գրիչս, տեսի զսէր և զփափաք սրբասէր քահանային* Յովանիսի, *և իմ տկար անձամբս յանձն առի և ամենակարօղ զօրութեամբ աստուծոյ կատարեցի զսուրբ գիրքս ի դառն ժամանակիս, որ և ի ծովացեալ մեղաց մերոց և ի չար գործոց եկն ազգի-ազգի պատուհաս ի վերայ երկրի՝ սով, սրածութիւն, մահտարաժամ։ Եւ յայսմ ամի եկն մարախ բազում ի յաշխարհս մեր, և եկեր զամենայն բոյս դալարի, և եղև նեղութիւն մեծ, յորում էր թիւս Հայոց ՊԿԸ. (1419), ի նաւասարդի ամսոյ Ի. (20), ի հայրապետութեան տէր* Դաւթի, *և փոքր* Զաքարիայի, *և ի բռնակալութեան աշխարհիս* Ղարայ-Յուսուֆի *և* Ամիր-Էզդընի:

*Արդ, գրեցաւ յերկիրս* Ռշտունեաց, *յանուանի և հռչակաւոր գեաւղս որ կոչի* Տայշող, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, և սուրբ Ստեփաննոս Նախավկայի, և սուրբ Սիոնի, և սուրբ Կիրակոսի։ Ի խնդրոյ երիցս երանեալ պատուական քահանային* Յովհաննիսին, *յիշատակ բարի հօրն իւրոյ* Ստեփաննոսին, *և մօրն* Մռջանին, *և եղբօրն* Յուսէփին, *և քուերն* Փաշմելեքին, *և քեռացն* Մարկոսին, *և իւր կենակցին* Շաքար-խաթունին...: *Նաև զիս յիշեցէք՝ զ*Ստեփաննոս *քահանայ գրիչս, որ գրեցի զսա, և զհայրն իմ զ*Գրիգոր *քահանայ, որ առ աստուած փոխեցաւ, և զմայրն իմ զ*Խութլու-Մելիքն, *և զհարազատ եղբարքն իմ զ*Յովհաննէս *և զ*Առաքել *սրբասէր քահանայքն, և զհօրեղբայրն մեր զ*Մարտիրոս *կրօնաւորն... և զկենակիցն իմ զ*Մինա-Թագունին, *որ սպասաւորէր մեզ ի մարմնաւոր պիտոյիցս։ Յիշեցէք և զսրբազան քահանայքն զ*Աւետիս *և զ*Յովանէս, *որ զօրինակ գրել ետուն՝ զհանգուցեալքն առ աստուած։***

---

* № 3799 *ձեռագրի մեջ եղող հիշատակարանը ամենայն հավանականությամբ ընդօրինակված է Ղ. Փիրղալեմյանի կողմից օգտագործված ձառընտրից։*

№ 3790 *ձեռագրում հիշատակարանը պահպանվել է շատ վատ վիճակում, բազմաթիվ բառեր ու տողեր դարձել են անընթեռնելի։ Միևնույն հիշատակարանի այս երկու ընդօրինակությունների միակ նշանակալից տարբերությունը վերաբերում է գրչության վայրին։* № 3799 *ձեռագրի հիշատակարանի մեջ որպես գրչության վայր նշված է՝ «Գեաւղա[քաղաքս Բ]արերդ, ընդ հովան[եաւ սուրբ Յովհա]ննիսին»,ի տարբերություն այս հիշատակարանի, որ գրված է Ռշտունիքի Տայշող գյուղում։*

** № 3790 *ձեռագրի 7բ էջում կա նաև հետևյալ հիշատակագրությունը. «Ի յայս տեղս մարգիկ եկին ու կոիւ արարին. նայ այս երեսս ի մէջ անցաւ (այսինքն՝ անգրեյ թաց), անմեղագիր լերուք»։*

## 248

## ԱԻՆՏԱՐԱՆ

*Երևան 2676*

*Գրիչ և ծաղկող՝* Աստուածատուր
*վայր՝* Ռստան

ա

*... Որք պատահիք սմա ընթերցմամբ կամ աւրինակելով, յի-*
*շեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացաւղ սորա* զՄուրատշէն,
325 բ *և զիւր ծնաւզսն, ‖* զԱնպէտն, զԹավրէզն, զէվատն, զՍտեփաննոսն,
զՔամալն, զԳաւհար-Մելիքն, զՂարիպշահն, *զկենակիցն՝* զՀալիմ-խա-
թունն, *և զիւր քվերսն, և զամենայն արեան մերձաւորսն։ Ընդ նոսին*
*և զանպիտան գրիչս՝* զԱստուածատուր *աբեղայ, և զծնաւղքն իմ՝*
զԱտոմ *և* զՇաքար-խաթունն, *և զհարազատ եղբարսն իմ՝* զԹումարէկ
*և* զՅոհաննէս, *և զհանգուցեալ քվերսն իմ՝* զՇահըրման *և* զԳուլիշայ,
*և զմեծ մայրն իմ* զԳաւհար-Մելիք, *և* զՂարիպշահն*։ Նաև յիշեցէք ի*
*Քրիստոս զվարդապետն իմ* զՅակոբ, *որ բազում աշխատեցաւ ի վերայ*
*իմ և ուսոյց ինձ զսաղմոս, զշարական, զ[խազ]տետր, զգծագրութիւն*
*և զամենայն բարեձևութիւն, զոր ոչ առնեմ. Քրիստոս աստուած յեր-*
*կար կենաւք պահէ ի գլուխս մեր, և յետ աստեաց զերկնից արքայու-*
326 ա *թիւնն ժառանգէ ընդ ‖ երկնաւոր վարդապետին, ամէն...։*

*Այլև, գրեցաւ սուրբ աւետարանս ի յանապատիս սուրբ Վար-*
*դանայ, ընդ հովանեաւ սուրբ* Աստուածածնիս *և սուրբ Վարդանայ*
*զաւրավարիս, ի հայրութեան* Թումայի, *ի հայրապետութեանն տեառն*
Դաւթի, *և ի թուականութեանս Հայոց ՊԿԸ. (1419), ձեռամբ* Աստ-
ուածատուր *աբեղայի՝ անիմաստ և տխմար գրչի, բազում մեղաւք*
*ցնորեալ և ափշեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ*
*մարդասէր հոգին, բազում աշխատանաւք կատարեցի զցանկ և զբառն*
326 բ *‖ յայն աւետարանէն որ ի* Սիս *էր գրած։**

*Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս* զՌստան *քաղաքի քահանայքս՝*
*զկենդանիքս և զհանգուցեալսն՝* զՅոհաննէս *քահանայն և աւագերէց*
*սուրբ Աստուածածնին, և* զՅոհաննէս *փիլիսոփայն* զԱմիրլուսենց, *և*
զԳորգ *փիլիսոփայն, և* զՍտեփաննոս *քահանայն, և* զԱստուածատուր
*փիլիսոփայն, և* զԱտոմ *փիլիսոփայն,* զՍերուն *գրագիրն, և* զՍարգիս
*քահանայն, և այլք, որ գնացին առ Քրիստոս, ջնջէ Քրիստոս աստ-*
*ուած զիւրեանց ձեռագիր յանցանացն։ Իսկ զկենդանիքս՝* զՍտեփան-
նոս *քահանայն, որդի* Յոհաննէս *քահանային, և զորդի նորին* Յովան-

** Ավետարանիչների նկարներից դատելով ընդօրինակությունը կատարված է Սար-*
*գիս Պիծակի մի ձեռագրից։ Այդ նկարների պատճենահանումը կատարված է այն աստի-*
*ճանի ծառայաբար, որ նույնիսկ կարելի է ցույց տալ գաղափար օրինակը՝ որն իրոք*
*ծաղկված է Սարգիս Պիծակի կողմից (Երևան, № 5786), 1336 թվականին։ Աստվածա-*
*տուրի նկարչական շնորքն ու հմտությունը երևում է սկզբից եղող 14 թերթ նկարների*
*ու խորանների մեջ, որոնք կատարված են Վանի մանրանկարչական դպրոցին հատուկ*
*տրադիցիայով ու տեխնիկայով։*

ՆԷս քահանայ։ Այլ և զաւագերէց սուրբ եկեղեցոյս՝ զտէր Թումայ, և
զՅովանէս փիլիսոփայ, զՍտեփաննոս որդի Աստուածատուր փիլիսոփա-
յին, զոր ի վերոյ յիշեցաք, և զմիւս Ստեփաննոս որդի Ատոմ քահա-
327 ա նային, և Զաքարիայ որդի Սաե ‖ փաննոս քահանայի, և զԹումայ որ-
դի Ծերունին, զՄկրտիչ, զՍտեփաննոս, զՅոհաննէս, զՄկրտիչ, զՎար-
դան...։

Բ

15 բ Ո՛վ եղբայրք, թէ ես յայս աւետարանս յոսկելն յիշտապել եմ
ու անփոյթ առնել, նա աստուած զիմ մեղքն ոչ թողու, ապա ճաճք
առնէին զիս, թէ զմեր գիրքն ի մեզ չի տալ, ի նաւասարդի ամիս ոս-
կել տուին, ու թանաքն ամէն մսաւ, յիշ[տ]ապաւղքն ամօթով լինին
յաստուծոյ։

Գ

Ստացող՝ Մուրատ

Ես՝ Մուրատս, որդի Անպետին, տուի զսուրբ աւետարանս Ոս-
տան քաղաքի կաթուղիկէ եկեղեցոյն ընծայ, յիշատակ հոգոյ իմոյ և
327 բ իմ ծնաւ ‖ ղացն։ Եւ արդ, մի ոք իշխեսցէ ձեռնարկել ի սա ծախելով
գրաւելով, գողանալով, կամ այլ ինչ հնարք առնելով՝ հեռացուցանել
ի սուրբ Ստեփաննոսէն։ Ով որ զայս առնէ ան[էծս | | |*

Եւ արդ, ով եղբարք, զաւակ ոչ ունիմ յաշխարհիս, և ստացայ
զսուրբ աւետարանս յիշատակ ինձ, ով որ | | |**, թէ եղբայր, թէ որ-
դի, թէ քահանայ, թէ աւագերէց, թէ եպիսկոպոս | | |***

Դ

Գերութիւնից ազատող՝ խոջայ Ջանգիշա

329 բ ... Եւ արդ, ես՝ խոջայ Ջանգիշա ստացայ և գնեցի զսուրբ աւե-
տարանս ի յանաւրինաց, ի յարդար վաստակոց իմոց, ի ԾՁ. (180)
շախուխի, և եդի ի դուռն սուրբ Առաքելոցն՝ ի Վան քաղաքի, և մի
ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ սուրբ Առաքելոցն գողա-
նալով, կամ ծախելով, կամ գրաւելով։ Եւ եթէ ոք յանդգնի և հեռա-
ցուցանէ, նա զմասն զՅուդային առցէ և զայլ խաչահանացն։****

---

* Ցոթ տող, ուր գրված են եղել անեծքի խոսքեր գրավողի կամ գողացողի հաս-
ցեին, գանակով քերված է՝ հավանաբար ոՃ գողացողի կողմից, կարդացվում են միայն
առանձին տառեր, որոնցով ենթադրաբար դուրս են գալիս «[դժոխ]նին առցէ... և զխա-
չահանուացն...» են։

** Մի բառ քերված է։

*** Երեք տող քերված է։

**** Խոջայ Ջանգիշայի հիշատակարանի սկիզբը չի պահպանվել, ուստի և գրության
տարեթիվն անհայտ է։ Ըստ հնագրական տվյալների գրված պետք է լինի ամենաուշը ԺԵ.
դարի երկրորդ կեսերին։

## 249

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 8765*

*Գրիչ՝* Սարգիս
*վայր՝* Գեղազունի

ա

82 բ *Զտառապեալ և սեվաց հուրով* Սարգիս *կոչեցեալ քահանայ և գործովք Թափուր աղաչեմ յիշել ի տէր. և աստուած զձեզ յիշէ, ամէն։*
*Թ. (9) օրն աւարտեցաւ գլուխս։**

բ

218 ա *Զտառապեալս և զժահայհոտս, ներկեալ շարաւալի հոտով, յերկարեալս մինչև ի յայսմ տեղիս՝* Սարգիս *մեղաւք լցեալս, ի բազում ժամանակս, որ կամ և մնամ հայեալ ի մեծն աստուած, միթէ զվերջքն արասցէ ի կէտ վերջինս ի բարի, աղաչեմ յիշել տերամբ, և աստուած զձեզ յիշէ, ամէն։*
*Թվիս ՊԿԸ. (1419), ի մուտն մարերի։***

գ

*Գրեցաւ ի* Գեղազունի, *ի դուրս սուրբ Գրիգորի Լուսաւորչի, ի Թվ. ՊԿԸ. (1419), մարերի Ը. (8), և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։****

277 բ *Նաև յիշման արժանի առէք զծնողքն մեր՝* զՍուլթանշահն, զՄինա-խաթունն, զՏիրիկն, զԽուանդն, զԹանկսուղն, *և զայլ արեան մերձաւորքն մեր, և զերախտաւորքն մեր, և զսիրալի եղբայրն մեր զտէր* Դանիէլն, *և զճգնաւոր* Սիմէոն *սրբոյի, և զկերակրողքն մեր, որ բազում նեղածացեալ(՞) կա՝* զՄաղաքիա, զԱմիրազիզն, *զկենակցին իւր* զԹանկսուղն, *և զայլն, որ կան ի վերայ մեր երախտաւորք։*

*Զհոգևոր տէրքն մեր՝ զտէր* Ստեփանոս, *զտէր* Յովանէս, *զտէր* Ստեփանոս, *զտէր* Թադէոսն, *զտէր* Սանփտնոսն, *զտէր* Գրիգորն, *զտէր* Ալեքսիանոսն, *զտէր* Վանականն, *զտէր* Մարկոս, *զտէր* Անտոն, զԽսային, *զտէր* Մաթէոս *քահանայն, ոք ի* Քրիստոս *[փոխեցաւ],* զԱստուածատուր *քահանայ, և զամենեսեան, որ բազում աշխատեալ կան ի վերայ մեր, որում փառք յաւիտեանս, ամէն։*

*Եւ որպէս զմեզ յիշեն, նոյնպէս և Քրիստոս զձեզ յիշէ։ Գիտեմք զպակասութիւն գրոյդ, ապա ծեր եմ ու աչք չի տեսնուլ, ձեռս կու դողայ, այնոր համար գիրդ ձագուձու(՞) երեկ, վասն աստուծոյ թողութիւն արարէք։*

---

* *Իմա՝ Մատթէոսի ավետարանը։*

** *Իմա՝ Մարերի ամսվա 1-ին։*

*** *Եթե Սարգիս գրիչը նույն արագությամբ ընդօրինակել է նաև մյուս երկու (Մարկոսի և Ղուկասի) ավետարանները, ապա 277 թերթից բաղկացած ձեռագրի ընդօրինակությունը նա կատարել է բացառիկ արագությամբ, շուրջ մեկ ամսվա ընթացքում։*

## 250

### ՏՕՆԱՊԱՏՃԱՌ

*«Բազրևանդ», էջ 185—186*

*Կազմել տվող՝* Թովմայ Մեծոփեցի

*Արդ ... [գրեցաւ] ի վանս Ցովանու, ընդ հովանեաւ սրբոյ Կարապետիս, ի խնդրոյ տոն ումեմն կոչեցելոյ* Անդրէաս՝ *այր աստուածասէր և գովելի, ձեռամբ* Աբրահամու, *աշխատութեամբ և ջանիւ մեծաւ, ի պանդխտութեան ժամանակիս։ Արդ, յերես անկեալ հայցեմ յամենեցունց յիշել ի մաքրամատոյց և գերաստիճան յաղաւթս ձեր զստացող սորին և զգծող...։*

*Այլ և զխաչատուր վարդապետ* Կեչառուեցի *յիշել աղաչեմ, որ յետոյ ժամանակի ստացայ զսա յիշատակ հոգւոյն, աստուած զնա յիշէ։**

*Այլ և ես լցեալ մեղաւք և անպտուղ ամենայն բարեաց, յերես անկեալ պաղատիմ մանկանցդ եկեղեցւոյ վարդապետ* Թովմայ *Մեծոփայ վանուց, և աղերս մաղթանաց արկանեմ առաջի հմտականացդ և ընթերցողացդ՝ յիշել զամենամեղս* զԹովմա *ի մաքրափայլ և հասողական յաղաւթս ձեր, ընդ սմին և զծնողսն մեր՝ զհոգևոր և զմարմնաւոր, որ ետ[ու] սա վերստին կազմել զգիրս զայս հոգևոր հաւր իմոյ* Մաթէոս *կրօնաւորի, և աստուած զձեզ յիշէ, ամէն...։*

*Ի թուականութեանս մեր ՊԿԸ. (1419) կազմեցաւ, ի փառս աստուծոյ։*

## 251

### ՃԱՇՈՑ

*Փիրգ. Նոտ. 57—58, Վան, Կարմրաւոր Աստուածածնի վանք*

*Գրիչ՝* Թումայ
*վայր՝* Աղթամար

*... Փափագմամբ ստացաւ զսա յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնողացն՝* Ապրիլուսի *և* Մարթայի, *և եղբարցն* Աբրահամու *և* Մարտիրոսին, *և կենակցւոյ նորա* Բաղդատին, *որդւոյն՝* Յորդանանու. *Ու ետ զսա նուէր և ընծայ ի գուռն սրբոյն Սանդխտոյ, ի գերեզման սուրբ և սքանչելագործ վարդապետին Գրիգորի Նարեկացւոյ...։ Անկարգս ի կարգաւորաց* Թումայ՝ *մեղօք դառնացեալ կրօնաւոր... գծագրեցի զսուրբ գիրքս զայս... ի յաստուածաբնակ կղզիս* Աղթամար, *ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և այլ սրբութեանց որ աստ կան, ի հայրապետութեան տեառն* Դաւթի, *ի թուականութեան Հայոց ՊԿԸ. (1419)։*

---

** Կազմել տվող Թովմա Մեծոփեցու հիշատակարանը սկսվում է այս պարբերությունից հետո։ Մինչ այստեղ գրված է Աբրահամ գրչի կողմից, հավանաբար ԺԴ. դարի սկզբներին։*

## 252

### ԱԻԵՏԱՐԱՆ

*ԼՑՎ 145, այուն. 320*

Գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Նարեկ գիւղ

*... Գրեցաւ... ի թուականութեանս Հայոց ՊԿԸ. (1419), ի հայրապետութեան տեառն* Դաւթի, *և իշխանութեան մերոյ նահանգիս՝* Միլիքի՝ *որդոյ* Ամիր-էզըդին *մէլիքին։ Արդ, և գրեցաւ սա յաստուածապահ գեաւղս* Նարեկ, *ուր հանգուցեալ կայ աստուածընդունակ նշխարք սրբոյն Գրիգորի վարդապետի, ընդ հովանեաւ սուրբ տաճարացս՝ լուսամաւր Աստուածածնի և միածնի իւրոյ, սուրբ Յարութեան, և սուրբ Առաքելոցն, և Գրիգորի սուրբ Լուսաւորչի, և սրբոյն Սանդըխ[ա]ոյ կուսին...։*

## 253

### ՀԱՐԱՆՑ ՎԱՐՔ

*Երևան 847*

Գրիչ
*վայր՝* Ի վանս Պառվագրակի

ա

272 բ *... Յազգանազեան մեծ տումարի*
*Հայոց Մեծացս թվականի,*
*Երկեակ քառիցս հարիւրի,*
*Վեցից տասանց և ութ աւելի (1419),*
*Աւարտ եղև այսմ տառի,*
*Որ Հարանց վարք սա յորջորջեալ,*
*Զի զվարս սուրբ հարցն պատմեալ...։**
273 ա *Որ ոք սիրով սա ընթերցի*
*Եւ փափաքմամբ ընդ սա խաւսի՝*
*Սրբոցս, որ աստ յիշատակի,*
*Փառաց նոցին հաղորդ լիցի։*
*Հոգենորոգ այսմ տառի*
*Յոյժ ցանկացեալ տարփմամբ սրտի,*
*Հոգով աղքատ կրաւնաւորի,*
*Որ* Յոհանէս *անուն կոչի։*

բ

95 բ *Ո՜վ սուրբ ընթերցողք, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զեղկելի գծողակս, որ եմ յեղելեացն և ոչ յերանելեացն, և զծնօղս իմ, և զեղբայրս իմ, և զ*Յովանէս *կրօնաւորն, և զ*Մէլքիսէթ *կրօնաւորն, որ զօրինակն շնորհեաց, և զ*Ոքսաակէսն*, որ պատճառ եղև գրելոյ գրոցս, և թողութիւն մեղաց հայցեցէք։*

---

** Բաց ենք թողնում ընդարձակ մի հատուած «Հարանց վարք»-ի բովանդակության մասին։*

գ

135 բ Զեղկելի գծողակս յիշեա, ով սուրբ ընթերցողք, և զՅովանէս կրօնաւորն, որ կարեկից եղև մեզ ի պանդխտութիւնս...։

դ

Ստացող՝ Յովանէս

Ես՝ Յովանէս սիրող բանի,
Որ եմ ի վանս Գառվագրակի,
Ի դուռն սուրբ Կարապետի,
Ըզգիրքս որ Հարանց վարք կոչի.
Ինձ յիշատակ զսայ եդի,
Ծնողաց իմոցն, իմոց,
Եւ հաւր իմոյ Իղխտիարի,
Եւ եղբաւրն իմոյ Առքառնի,
Եւ ամենայն զարմից իմոց,
Որ հանգուցեալ են և կենդանի,
Ըստ փափագման իմոյ սրտի,
Զի խնդրելին իմ կատարի,
Զի որ ընթեռնու և բան ուգտի,
Նա զիս յիշէ անմոռնալի,
Ի դուռն սուրբ Կարապետի,
Եւ առաջի աստուածընկալ սուրբ Նշանի,
Որ է յոյս ամենայն Քրիստոնէի։

Ո՛վ եղբայրք, չունի ոք հրաման, որ զգիրքս ի սուրբ Կարապետէն հանէ կամ ձեռնամուխ լին[ի]՝ թէ իմ է, ոչ հայր վանիցս և ոչ իմ ազգական, այլ միշտ և հանապազ կարդան և խնամով պահեն, և պահաւղքն և կարդացաւղքն աւրհնին յաստուծոյ և ի մէնջ, ամէն։

ե

Կազմող՝ Սարգիս

273 ա Զկազմող սորայ՝ զՍարգիս սուտանուն աբեղա, աղաչեմ յիշել յաղաւթս ձեր։

254

## ՔԱՂՈՒԱԾՈՑ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՄԱՏԹԷՈՍԻ, ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 1306

Գրիչ՝ Մկրտիչ Նաճապետանց
վայր՝ Յուսկան որդոյ վանք

ա

142 բ Զլիս ամենայն չարութեամբ և զպակասելս յամենայն բարութեանց՝ ի գործնական և ի տեսական առաքինութենէ, զպիտականուն վարդապետ Մկրտիչ՝ մականուն Նաճապետանց, միով տէր-ողորմայիւ յիշեցէք ի Քրիստոս ասուած, և աստուած զձեզ յիշէ յարքայութիւնն։ Գրեցաւ ի տէր Ցուսկան որդոյ Վանս։